ԱՐԱ ՊԱՊՅԱՆ

# ՀԱՅՐԵՆԱՏԻՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅՈՑ ՊԱՀԱՆՋԱՏԻՐՈՒԹՅԱՆ ԻՐԱՎԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ՀԱՐԱԿԻՑ ՀԱՐՑԵՐ

*ՆՎԻՐՎՈՒՄ Է ՇՈՒՇԻԻ ՓԱՌԱՀԵՂ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ 20-ԱՄՅԱԿԻՆ*

հոդվածների ժողովածու

Modus Vivendi
www.wilsonforarmenia.org

ԵՐԵՎԱՆ
2012

ՀՏԴ 941(479.25):341(045)

*Գրքի տպագրությունը հովանավորել է ՀԻՔՍՈՍ հիմնադրամը՝
ի հիշատակ ազգային հերոս գեներալ Անդրանիկի:*

Պ234 Պապյան Ա. Հայրենատիրություն. Հայոց պահանջատիրության իրավական հիմունքները և հարակից հարցեր: Հոդվածների ժողովածու: Երևան, Ասողիկ, 2012: 488 էջ:

Սույն ժողովածուն բաղկացած է նախաբանից, երեք մասերից, ամփոփումից և հեղինակի համառոտ կենսագրականից: Գիրքը ներառում է 119 հոդված, որոնք գրվել են 2006-2011թթ. ընկած ժամանակահատվածում:
Աշխատությունը յուրօրինակ ուղեցույց է Հայկական հարցով զբաղվող տարբեր մասնագետների (թուրքագետներ, արևելագետներ, դիվանագետներ, միջազգայնագետներ, պատմաբաններ, քաղաքագետներ և այլք), ինչպես նաև նույն հարցով հետաքրքրվող լայն հասարակության համար:

Համակարգչային շարվածքը և ձևավորումը՝
*Դավիթ Օ. Աբրահամյանի*

ԳՄԴ՝ 63.3(2Հ) + 67.91g1

Modus Vivendi

www.wilsonforarmenia.org
www.modusvivendicenter.org




**facebook.com/modus.vivendi.center**

**ISBN 978-9939-50-190-1**
**«Ասողիկ» հրատարակչություն**

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ՄԱՍ II. ՀՆՉԵՑՐԵ՛Ք ԶԱՆԳԵՐԸ, ՍԱ ՄԵՐ ՎԵՐՋԻՆ ՍԱՐԴԱՐԱՊԱՏՆ Է




# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ԹՈՒՐՔԻԱՅԻ ՄԻՋԵՎ ՆԵՐԿԱՅԻՍ *DE JURE* ՍԱՀՄԱՆԸ

## ԸՍՏ ԱՄՆ ՆԱԽԱԳԱՀ ՎՈՒԴՐՈ ՎԻԼՍՈՆԻ ԻՐԱՎԱՐԱՐ ՎՃՌԻ

**22 նոյեմբերի, 1920թ.**

## ՆԱԽԱԲԱՆ

Այն գիրքն է իսկական հաջողություն գտնում, որը վերաքննության է ենթարկում տասնամյակներ շարունակ համազգային բանավեճերում գերիշխած հարցերը և, ըստ այդմ, նոր ուղի է հարթում այդ գործընթացի մեջ, ինչը լինում է հույժ սակավադեպ: Այս գիրքը մեկն է այդ սակավներից: Այն հայ ժողովրդի դժվարին կացությունը վերաիմաստավորում է մի շարք ըմբռնելի, լավ ուսումնասիրված խնդիրների և ձևակերպում է դրանք որպես հայոց պետականության և հայ ազգի արտաքին քաղաքականության օրակարգային հարցեր:

Հեռանալով քաղաքական ճարտասանությունից և անցնելով իրավագիտական ուսումնասիրությունների ու փաստահավաք հետազոտությունների ոլորտ՝ այս գիրքը որոշում կայացնողներին, ինչպես նաև շարքային քաղաքացիներին, տեղեկացված լինելու և իմաստավորված որոշումներ կայացնելու հնարավորություն է տալիս այնպիսի հարցերի վերաբերյալ, որոնք անցյալ դարի ընթացքում իրենց վրա են գամել հայերիս եռանդի և ուշադրության մեծ մասը՝ Հայոց ցեղասպանության ճանաչում և հատուցում, Վիլսոնի իրավարար վճիռ, Արցախի ինքնորոշում: Մինչ շատերը թվարկված հարցերի առնչությամբ տարված էին սոսկ արդյունք ակնկալող գործունեությամբ, որն իր հերթին խարսխված էր հնարավորի կամ ընդունելիի սեփական պատկերացումների վրա, Արա Պապյանը, հիմնվելով արխիվային փաստաթղթերի, պայմանագրերի, իրավական նախադեպերի, *opinio juris*-ի և *lex specialis*-ի վրա, վերլուծության էր ենթարկում նշյալ հարցերը և կռվաններ էր բերում հօգուտ հայերի սեփական իրավունքներին տեր դառնալուն:

Հայկական հարցերը ներկայումս այն հարցերը չեն, որոնց համար հնարավոր լինի դյուրությամբ միանշանակ լուծումներ գտնել: Դրանք մոլորվել են երբեմն-երբեմն գործադրվող դիվանագիտական ջանքերի մեջ, խճողվել քաղաքական հաստատությունների խարդավանքներում և խճճվել հասարակական կարծիքի ցանցում, այսինքն միջազգային իրավունքի և քաղաքականության միջև ընկած այն ճապաղ գոտում, որտեղ ճամարտակությունը, շահախնդրությունն ու ուժն են ծնում իրավունքը: Մարտի այս դաշտում քաջակազմ փաստերը և հմտամիտ կռվաններն են պահանջատիրության հիմնական միջոցներն ու պաշտպանության հիմքերը: Սա այն գործիքակազմն է, որը մշտապես պիտի հղկվի և պահվի պատրաստի վիճակում: Մարդիկ, ովքեր միջազգային հարաբերություններում որոշումներ են ընդունում, բազմիցս են դրսևորել առասպելական անտարբերություն մինչևիսկ սեփական տհաս և շահամոլ որոշումների հետևանքների նկատմամբ: Նույնիսկ, երբ այդ մարդիկ առաջնորդվում են լավագույն նկատառումներով, ապա հաճախ են լինում եսամոլ, մտացրիվ տարբեր հարցերով, թերի տեղեկացված և ժամանակ ու համբերություն չեն ունենում խորանալու փոքրաթիվ ժողովուրդների *մանր-մունր* խնդիրների մեջ: Հետևաբար, այս կարճառոտ, ոչ խրթին և դյուրամարս հոդվածները կարող

են նրանց ուշադրությունը սևեռել այնպիսի մանրամասների վրա, որոնք նրանք հավանաբար կանտեսեին: Այս ժողովածուն կարող է նաև պաշտպանիչ վահան դառնալ մի շարք անհետաձգելի իրավիճակներում, որոնք վերջին մեկուկես դարում այդքան թանկ են նստել հայերիս վրա:

Այս գրքի արժանիքներից մեկն էլ այն է, որ նշավակում է առավել չարանենգ ուղիները, որոնց միջոցով միջազգային համայնքում որոշում կայացնողները ի հաշիվ հայ ժողովրդի լուծել են իրենց խնդիրները կամ վճարել են իրենց տնտեսական ու աշխարհաքաղաքական շահերի համար, դրանով իսկ, թերևս ոչ կանխամտածված, սերմանել ձգձգվող հակամարտություններ: Հայերն անշուշտ իրավունք ունեն ապրել իրենց պապենական հողերի վրա, լինել ազատ և ապահով: Հետևաբար, խղճի դեմ է, երբ որոշ ազգեր, ապավինելով հզոր դաշնակիցների աջակցությանը, ինքնագոհ պնդում են՝ իբր ընդունելի է և արդարացված ապրել այլոց զրկանքի և տառապանքի հաշվին:

Մեր զինանոցում հոդվածների նման ժողովածուն ունենալը կարող է էապես օգտակար լինել ռազմավարություն մշակելու, սպառնալիքները վնասազերծելու, սխալներից խուսափելու, չմտածված *փոխզիջումներից* խույս տալու և նպատակից չշեղվելու համար:

Խնդրո առարկա հարցերը պետք է լավ ըմբռնվեն ոչ միայն հայերի, այլև միջազգային ասպարեզում որոշումներ կայացնողների, ինչպես նաև վերջիններիս վրա ազդեցություն ունեցողների կողմից. երբեմն դրանք լրատվամիջոցներն են ու հանրությունը, սակայն առավել հաճախ դրանք անդեմ դիվանակալներ են և որոշակի հաստատությունների ընտրախավը: Պայյանի ջանքերը ոմանց կարող են հեռահար կրակոց թվալ: Բայց պետք է նկատի ունենալ, որ դա կարող է միակ կրակոցը լինել: Պատերազմում՝ հողի վրա, հաղթողները, երբեմն կարող են պարտություն կրել բանակցությունների սեղանի շուրջ: Հայությունը՝ Առաջին աշխարհամարտում հաղթող կողմի *փոքրիկ դաշնակիցը*, դա ցավով սերտեց այն ժամանակ, երբ *հաղթողները* տեղի տվեցին, թերևս նույնիսկ խրախուսեցին, հայերի հողերի բռնազավթումը *պարտվածների* կողմից: Ինչևէ, պատմությունը ցույց է տալիս, որ գաղափարները հաստատ ունենում են հետևանքներ: Լավ հղկված և ճիշտ ժամանակին առաջադրված գաղափարները, որոշակի աջակցության դեպքում, կարող են հաստահեղյուս անկյունաքարեր դառնալ բարձր և հզոր նպատակների համար:

Ուրեմն, գաղափարները դեռևս ունակ են հաղթելու անգամ միջազգային իրավունքի և աշխարհաքաղաքականության որոգայթաշատ անդաստանում: Այս ժողովածուն ամրապնդում է այդ հույսը:

*Թոմաս Սամուէլեան, J.D., Ph.D.*
Հայաստանի ամերիկյան համալսարանի
Իրավագիտության ֆակուլտետի դեկան
Երևան, 2011թ.

# Մաս I

# ՀԱՅՈՑ ՊԱՀԱՆՋԱՏԻՐՈՒԹՅԱՆ ԻՐԱՎԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ



- 17 -

Done in duplicate at the city of
shington on the twenty-second day
f November, one thousand nine
hundred and twenty, and of the
Independence of the United States
the one hundred and forty-fifth.

Woodrow Wilson

the President:

Bainbridge Colby
Secretary of State.

## Ա. Վուդրո Վիլսոնի իրավարար վճիռը Հայաստանի և Թուրքիայի սահմանի վերաբերյալ



*Տարեվերջին՝ դեկտեմբերի 28-ին [2006թ.], լրանում է ԱՄՆ 28-րդ նախագահ (1913-1921թթ.), Խաղաղության նոբելյան մրցանակի դափնեկիր (1920թ.), հայ ժողովրդի մեծագույն բարեկամ **Վուդրո Թոմաս Վիլսոնի** (Woodrow Thomas Wilson) ծննդյան 150-ամյակը:*

Համաշխարհային քաղաքագիտական միտքը բազմիցս է անդրադարձել Վուդրո Վիլսոնի քաղաքական ժառանգությանը, սակայն գրեթե ոչինչ չի արվել վեր հանելու համար ԱՄՆ նախագահի հետևողական և աննկուն ջանքերը հանուն հայ ժողովրդի դարավոր իղձերի իրականացման և, ամենակարևորը, արժևորելու համար այդ գործունեության բարձրակետը հանդիսացող Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև սահմանը որոշող և մեկընդմիշտ ամրագրող **իրավարար վճռի (arbitral award)** քաղաքական անանց կարևորությունը մերօրյա Հայաստանի Հանրապետության ներկայի և ապագայի համար:

***Իրավարար վճռի նախընթացը***

1920թ. ապրիլի 25-26-ին Դաշնակից և ընթերակա ուժերի Գերագույն խորհուրդը (Supreme Council of Allied and Associated Powers), բաղկացած Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և Ճապոնիայի ներկայացուցիչներից, որոշում կայացրեց դիմել ԱՄՆ նախագահին 2 խնդրանքով.

ա) ստանձնել Հայաստանի մանդատը,

բ) իրավարար վճռով որոշել Հայաստանի և Թուրքիայի սահմանը:[1]

Երկրորդ խնդրանքը նաև պաշտոնապես ամրագրվեց խաղաղության վեհաժողովի նախագահի՝ Ֆրանսիայի վարչապետ և արտգործնախարար Ալեքսանդր Միլերանի, 1920թ. ապրիլի 27-ի պաշտոնագրով:[2] Նույն խնդրանքը, 89-րդ հոդվածի տեսքով, ներառվեց Սևրի դաշնագրի մեջ և արդեն Հայաստանի ու Թուրքիայի, ինչպես նաև դաշնագիրը ստորագրած գրեթե 20 երկրի, անունից հղվեց ԱՄՆ նախագահին: ԱՄՆ նախագահը, իրավասու մարմինները (պետքարտուղարությունը, պաշտպանության նախարարությունը և նախագահի վարչակազմը) և համապատասխան աշխա-

տանքային խումբը (պրոֆ. Վեստերմանի գլխավորությամբ), մանրազնին ուսումնասիրեցին հայցը և կայացրին իրավարար վճիռը:

Վուդրո Վիլսոնն ***իրավարար վճիռը*** ստորագրեց ***1920թ. նոյեմբերի 22-ին***: Այն դեկտեմբերի 6-ին պաշտոնապես փոխանցվեց Փարիզ՝ դաշնակից ուժերի Գերագույն խորհրդին: Սույն վճռի պաշտոնական և ամբողջական անվանումն է. *«Ամերիկայի Միացյալ Նահանգների նախագահի որոշումը Թուրքիայի և Հայաստանի միջև սահմանի, Հայաստանի դեպի ծով ելքի և հայկական սահմանին հարակից թուրքական տարածքի ապառազմականացման վերաբերյալ» 22 նոյեմբերի, 1920թ.*:

***Իրավարար վճռի բովանդակությունը***

Ըստ իրավարար վճռի՝ Հայաստանի Հանրապետության տիտղոսն ու իրավունքները ճանաչվում էին նախկին Օսմանյան կայսրության ***Վանի, Բիթլիսի, Էրզրումի և Տրապիզոնի*** նահանգների վրա՝ ընդհանուր առմամբ 103.599 քկմ: Դա կրկնակի քիչ էր այն տարածքից, որի վրա Մուդրոսի զինադադարի 24-րդ հոդվածով ճանաչվել էր հայկական տիտղոսը: Նման էական կրճատումը պայմանավորված էր այն հանգամանքով, որ արդեն այդ ժամանակ ի հայտ էին եկել հայերի իսկայական մարդկային կորուստները՝ Հայոց ցեղասպանության հետևանքով:

***Իրավարար վճռի ներկա կարգավիճակը***

Իրավարար վճիռը վերջնական է և պարտադիր է կատարման համար:[3] Այն չունի ժամանակային սահմանափակում,[4] և նրա կարգավիճակը կախում չունի վճռի հետագա ճակատագրից: Միջազգային իրավունքը, մասնավորապես Հաագայի միջազգայնագրի /կոնվենցիայի/ (1907թ.) 81-րդ հոդվածը, որով ամփոփվել և ամրագրվել է իրավարար վճիռների կարգավիճակը, ընդհանրապես չի նախատեսում վճռի չեղյալ հայտարարում:[5] Ըստ միջազգային իրավունքի՝ կողմերը, համաձայնվելով իրավարար որոշմանը ներկայացնել իրենց վեճը, մեկընդմիշտ ընդունում են, որ իրենց կողմից կատարման համար պարտադիր կլինի իրավարարի ցանկացած վճիռ:[6] Իրավարարությունն ի կատար ածելու կողմերից մեկի մերժումը չի ազդում վճռի վավերականության վրա: Ըստ այդմ, քանի որ իրավարարության հայցը ներկայացվել է ոչ միայն Հայաստանի և Թուրքիայի, այլև 16 այլ երկրի կողմից, ուստի վճիռը պարտադիր է բոլոր հայցվորների համար, որոնք ներկայումս հետևյալ երկրներն են՝ Միացյալ Թագավորություն, Կանադա, Ավստրալիա, Նոր Զելանդիա, Հարավային

Աֆրիկա, Հնդկաստան, Պակիստան, Բանգլադեշ, Ֆրանսիա, Իտալիա, Ճապոնիա, Բելգիա, Հունաստան, Լեհաստան, Պորտուգալիա, Ռումինիա, Չեխիա, Սլովակիա, Սերբիա, Խորվաթիա, Սլովենիա, Բոսնիա, Հերցեգովինա, Մակեդոնիա և Մոնտենեգրո: Այն պարտադիր է նաև իրավարարի՝ Միացյալ Նահանգների համար, քանի որ ԱՄՆ նախագահի ցանկացած պաշտոնական դիրքորոշում հանդիսանում է երկրի դիրքորոշումը[7] և իրավարարությունից բխող քայլերը պարտադիր են կատարման համար:[8]

Հայաստանը, որպես ՄԱԿ-ի անդամ երկիր, կարող է ՄԱԿ-ի միջազգային դատարանի միջոցով (Միջազգային դատարանի կանոնադրության 36-րդ հոդվածի 2 կետի (ա) և (բ) ենթակետերի հիման վրա) հավաստել Վիլսոնի իրավարար վճռի վավերականությունը և դրանով իսկ վերահաստատել իր տիտղոսը իրավարար վճռով Հայաստանին հատկացված տարածքի վրա:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. The Treaties of Peace, 1919-1923, vol. I. NY, 1924, p. xxxii.
2. Papers Relating to Foreign Relations of the United States, 1920. Washington, 1936, v. III, p. 780.
3. A Dictionary of Arbitration and its Terms (ed. Seide K.). NY, 1970. p. 32.
4. Wildhaber L. Treaty Making Power and Constitution. Basel-Stuttgart, 1971, p. 98.
5. Sorensen M. Manual of Public International Law. New York, 1968, p. 693-4.
6. A Dictionary of Arbitration and its Terms. Ibid, p. 27.
7. Wright Q. The Control of American Foreign Relations. NY, 1922, p. 38.
8. Collier J. The Settlement of Disputes in International Law. Oxford, 1999, p. 265.

*առաջին անգամ փպագրվել է ԱԶԳ օրաթերթում,*
*28 դեկտեմբերի, 2006թ., էջ 3*

## Բ. Ամերիկայի Միացյալ Նահանգների սահմանադրությունը, Հայկական հարցը և Վուդրո Վիլսոնի իրավարար վճիռը

Վերջին շրջանում տեղական և համաշխարհային ԶԼՄ-ները լայնորեն լուսաբանում են ԱՄՆ Կոնգրեսում Հայոց ցեղասպանության հնարավոր ճանաչման հարցը: Թուրքիան իր հերթին, ինչպես բազմաթիվ անգամներ անցյալում, փորձում է վիճարկել երկրների խորհրդարանների իրավունքը՝ գնահատականներ տալու անցյալում տեղի ունեցած իրադարձություններին:

Այս թոհուբոհի մեջ մեր ուշադրությունից վրիպում է մի շատ ավելի կարևոր հանգամանք՝ ԱՄՆ Կոնգրեսի սահմանադրական իրավասությունը՝ գնահատականներ տալու միջազգային իրավունքի խախտումներին և քայլեր նախաձեռնելու մեղավորին պատժելու համար: Ըստ ԱՄՆ սահմանադրության 1-ին հոդվածի 8-րդ մասի 10-րդ կետի, ԱՄՆ Կոնգրեսն իրավասու է որոշել միջազգային իրավունքի խախտումները և պատժել խախտողներին. *“The Congress shall have power … to define and punish … offenses against the law of nations” (Article 1, Section 8, §10)*: Առավել ևս սա վերաբերում է այն դեպքերին, երբ միջազգային իրավունքի հիման վրա որոշումների կայացմանը մասնակցել է ԱՄՆ բարձրագույն պաշտոնյան՝ երկրի նախագահ Վուդրո Վիլսոնը: Ըստ այդմ, Կոնգրեսի ցանկացած անդամ կամ անդամների խումբ Կոնգրեսի պալատներից յուրաքանչյուրում կարող է հանդես գալ հետևյալ հարցապնդումով.

*Արդյո՞ք Թուրքիայի կողմից ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի հայ-թուրքական սահմանի վերաբերյալ իրավարար վճռի (22.XI.1920թ.) չկատարումը հանդիսանում է միջազգային իրավունքի խախտում: Եթե այո, ապա ինչպիսի՞ քայլեր է ձեռնարկում ԱՄՆ գործադիր իշխանությունը՝ պատժելու համար միջազգային իրավունքը խախտողին:*

Կոնգրեսը, վստահաբար, հաստատելու է Թուրքիայի կողմից միջազգային իրավունքի խախտումն առնվազն 2 հիմունքով.

- **<u>Հիմունք առաջին – Սենատի նախադեպային դիրքորոշումը</u>**.

Դեռևս 1927թ. Սենատը հստակ դիրքորոշում է արտահայտել Վիլսոնի իրավարար վճռի վերաբերյալ: Այսպես, հունվարի 18-ին ԱՄՆ

Սենատը, որի իրավասությունների շրջանակում է միջազգային պայմանագրերի վավերացումը, մերժել է վավերացնել ամերիկա-թուրքական պայմանագիրը (Լոզան, 6 օգոստոսի, 1923թ.), հետևաբար ճանաչել ներկայիս Թուրքիայի հանրապետությունը:[1] Ըստ այդմ, ամերիկա-թուրքական հարաբերությունները մնացել են առկախ վիճակում:[2] Պայմանագիրը մերժելու համար եղել է 3 պատճառ, և դրանցից առաջինը եղել է ԱՄՆ նախագահ Վիլսոնի իրավարար վճռով Հայաստանի նկատմամբ Թուրքիայի ստանձնած պարտավորությունների չկատարումը. *"failed to provide for the fulfillment of the Wilson award to Armenia"*:[3] Հետագայում ԱՄՆ պետքարտուղարությունն այլևս փորձ չի արել Սենատում վավերացնել ամերիկա-թուրքական պայմանագիրը: Այն Սենատում մնացել է ևս 7 տարի՝ մինչև 1934թ. հունվարի 16-ը, երբ ԱՄՆ նախագահ Ֆրանկլին Ռուզվելտի խնդրանքով ետ է ուղարկվել նախագահի վարչակազմին:[4] Թուրքիան իր հերթին երբեք չի ամբողջացրել վավերացման գործընթացը:[5]

- **<u>Հիմունք երկրորդ – Դեմոկրատական կուսակցության ծրագրային հիմնադրույթները</u>.**

ԱՄՆ Դեմոկրատական կուսակցության 1924թ. և 1928թ. ծրագրային հիմնադրույթների *(Party Platform)* մեջ միանշանակորեն շեշտվել է Թուրքիայի կողմից ստանձնած պարտավորությունների կատարման անհրաժեշտությունը և Հայաստանի Հանրապետության իրավունքը «Վիլսոնյան Հայաստանի» նկատմամբ. *"Fulfillment of President Wilson's arbitral award respecting Armenia"* (1924թ. ծրագիր): Դեմոկրատական կուսակցության 1928թ. ծրագիրը ոչ միայն վերահաստատել է հայերի իրավունքները, այլև իր զորակցությունն է հայտնել ԱՄՆ այն հետևողական ջանքերին, որոնք նպատակամղված կլինեն Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ և դրանից հետո, ԱՄՆ և Դաշնակից ուժերի կողմից Հայաստանին ու հայ ժողովրդին տված խոստումների և պարտավորությունների կենսագործմանը. *"We favor the most earnest efforts on the part of the United States to secure the fulfillment of the promises and engagements made during and following the World War by the United States and the allied powers to Armenia and her people"*:[6] Անհրաժեշտ է ընդգծել, որ **Հայաստանին տված ԱՄՆ միակ անկատար խոստումը եղել և մնում է Վիլսոնի իրավարար վճիռը**:

Հաշվի առնելով այն, որ ԱՄՆ ներկա Կոնգրեսի 2 պալատներում էլ դեմոկրատները մեծամասնություն են կազմում, միանգամայն հնարավոր և տրամաբանական է, ԱՄՆ Սահմանադրության ընձեռած իրավասության հիման վրա, Ներկայացուցիչների պալատում և Սենատում որոշել-սահմանել *(define)* Թուրքիայի կողմից միջազգային իրավունքի խախտումը *(offences against the law of nations)*՝ ԱՄՆ նախագահի իրավարար վճռով ստանձնած պարտավորությունների չկատարումը, և գործադիրին դիմել իրավախախտին պատժելու *(punish)* համար:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Unperfected Treaties of the United States of America (1776-1976) (ed. & ann. Wiktor C.L.), 1919-1925, NY, 1984, v. 6, p. 421; Gordon L.J. Turkish-American Political Relations. Am Polit Sci Rev 1928;22(3):721.
2. Trask R.R. The United States Response to Turkish Nationalism and Reform 1914-1939. Minneapolis, 1971, p. 36.
3. Lausanne Treaty is Defeated. Davenport Democrat, 19 Jan 1927, p. 1.
4. Trask R.R. Ibid, p. 48.
5. Unperfected Treaties... Ibid, p. 421.
6. National Party Platforms (1840-1968) (compl. by Porter K., Johnson D.), Urbana-Chicago-London, 1972, p. 277.



*առաջին անգամ տպագրվել է ԱԶԳ օրաթերթում,*
*28 փետրվարի, 2007թ., էջ 5*

## Գ. Հայկական հարցի լուծման իրավական հիմքերն ու ուղիները

*/ելույթ Հայ դատի հանձնախմբերի խորհրդաժողովի ժամանակ/*

Հարգելի՛ ներկաներ, մեծարգո՛ բարեկամներ,

Ներկայումս Հայաստանի Հանրապետությունը կանգնած է բախտորոշ ճամփաբաժանի առաջ: Մեր հետագա քայլերից է կախված, թե մեզ համար ինչպիսին կլինեն առաջիկա տարիները՝ կորուստների, թե՞ ձեռքբերումների: Մեր առջև ծառացել է առկա մարտահրավերները չեզոքացնելու և դրանք դրականորեն հեղաշրջելու հրամայականը:

Քանի որ ՀՀ-ի, ինչպես նաև հայ ժողովրդի հավաքական ներուժը քաղաքական, տնտեսական կամ ռազմական ոլորտներում զիջում է, և առայժմ զիջելու է, Թուրքիայի ու Ադրբեջանի ընդհանուր ներուժին, ուստի անհրաժեշտ է պայքարի ու դիմակայության ողջ գործընթացը տեղափոխել այլ ոլորտ, ուր ՀՀ-ն ոչ միայն չի զիջում նրանց, այլև ունի շոշափելի առավելություն:

**Այսինքն, անհրաժեշտ է հայ-թուրքական հարաբերությունները տեղափոխել իրավական դաշտ և այդ հարաբերություններում առկա բոլոր խնդիրներին տալ իրավական լուծումներ և ձևակերպումներ:**

Միևնույն ժամանակ, հայաստանաբնակ ժողովրդի մեջ հետևողական աշխատանքով պետք է հաստատել այն ըմբռնումը, որ Հայ դատի նպատակները սերտորեն և ամիջականորեն վերաբերում են ՀՀ-ի ոչ միայն ներկային, այլև՝ ապագային: Անհրաժեշտ է համոզիչ փաստարկներով ցույց տալ, որ մեր առջև ծառացած արտաքին մարտահրավերների մի զգալի մասը հնարավոր կլինի չեզոքացնել միմիայն մեր հարևանների վրա նոր և ազդեցիկ լծակների ձեռք բերումով: Ընդ որում, պետք է հիմնավորել, որ նման հնարավորություն մեզ կարող է ընձեռել Հայ դատի հաջող ելքը, այսինքն՝ *de jure* ՀՀ-ի մաս կազմող, սակայն առայժմ թուրքական ռազմակալության տակ գտնվող տարածքների վրա մեր իրավունքների վերահաստատումը: Իսկ սա անելու համար կա միանգամայն իրատեսական և իրագործելի ուղի: Ասածներս հստակ պատկերացնելու համար հարկ է միջազգային իրավունքի տեսանկյունից վերլուծել բոլոր այն փաստաթղթերը, որոնք վերաբերում

են հայ-թուրքական սահմանին, հստակեցնել դրանց ներկա կարգավիճակը, նախանշել մեր անելիքները:

Նախ սկսենք միջպետական պայմանագրերից:

Առաջին Համաշխարհային պատերազմի ավարտին նախորդող ժամանակահատվածում և հաջորդող տարիներին կնքվել է 6 պայմանագիր, որոնք այս կամ այն չափով վերաբերել են հայ-թուրքական սահմանին:

*Նախ ի՞նչ բան է **միջազգային պայմանագիրը:***

Ըստ ՄԱԿ-ի պաշտոնական ուղեցույց-ձեռնարկի, *«միջազգային պայմանագրերը համաձայնություններ են միջազգային իրավունքի սուբյեկտների միջև, որոնց միջոցով նրանք ստեղծում, փոփոխության են ենթարկում կամ դադարեցնում են փոխադարձ իրավունքներն ու պարտավորությունները»:*[1] Այսինքն, պայմանագրի օրինականության համար անհրաժեշտ է, որ պայմանագիրը կնքող կողմերից յուրաքանչյուրը լինի միջազգային իրավունքի սուբյեկտ, այն է՝ միջազգայնորեն ճանաչված պետության օրինական կառավարության լիազոր ներկայացուցիչ: Այս տեսանկյունից էլ, ժամանակագրական կարգով, անդրադառնանք հայ-թուրքական սահմանին վերաբերող պայմանագրերից յուրաքանչյուրին և որոշենք դրանց կարգավիճակն ըստ միջազգային իրավունքի:

***1. Ժամանակագրական առումով առաջինը Բրեստ-Լիտովսկի պայմանագիրն է և նրա հավելվածը՝ կնքված 1918թ. մարտի 3-ին:***

1917թ. հոկտեմբերին, զինված հեղաշրջման ճանապարհով գալով իշխանության, բոլշևիկներն արդեն մի քանի ամիս հետո հայտնվել էին ծայրահեղ ծանր վիճակում: Նրանք 1918թ. մարտի 3-ին Բրեստ-Լիտովսկում խայտառակ պարտվողական պայմանագիր կնքեցին, որով հսկայական տարածքային զիջումների գնացին Եվրոպայում: Միջին արևելքում բոլշևիկներն էական զիջումների գնացին պարտվող և կործանման եզրին կանգնած Օսմանյան կայսրությանը: Մասնավորապես, Բրեստ-Լիտովսկի պայմանագրի 4-րդ հոդվածի 2-րդ և 3-րդ պարբերություններով բոլշևիկները պարտավորվեցին թուրքերին վերադարձնել ոչ միայն պատերազմի ընթացքում գրավված Արևմտյան Հայաստանի տարածքները (կամ *«Արևելյան Անատոլիայի նահանգները»*, ինչպես գրված է պայմանագրում), այլև 1878թ.-ից Ռուսական կայսրության մաս հանդիսացող *«Արդահանի, Կարսի և Բաթումի մարզերը»*:

Համառոտակի քննության առնենք Բրեստ-Լիտովսկի պայմանագիրը միջազգային իրավունքի տեսանյունից: Սույն պայմանագիրն ***անօրինական է ու անվավեր***, ըստ այդմ որևէ իրավական հետևանք չունի հայ-թուրքական սահմանի համար, 2 պատճառով.

ա) Բոլշևիկները 1918թ.-ին չէին հանդիսանում Ռուսաստանի օրինավոր և ճանաչված իշխանությունները, հետևաբար՝ իրավասու չէին միջազգային հարաբերությունների մեջ մտնել, առավել ևս պայմանագիր կնքել, Ռուսաստանի անունից (այս հիմնադրույթին ավելի հանգամանալից կանդրադառնանք Մոսկվայի և Կարսի պայմանագրերը քննելիս);

բ) Բրեստ-Լիտովսկի պայմանագիրը չեղյալ է հայտարարվել իրենց իսկ կնքողների կողմից (1918թ. սեպտեմբերի 20-ին Ռուսաստանի, իսկ 1918թ.-ի հոկտեմբերի 30-ին՝ Թուրքիայի կողմից (Մուդրոսի զինադադարի 11-րդ հոդվածով)):

***2. Ժամանակագրական առումով հաջորդ պայմանագիրը <u>Սևրի պայմանագիրն</u> է՝ կնքված 1920թ. օգոստոսի 10-ին:***

Սևրի պայմանագիրն ***<u>օրինական է</u>***, քանի որ կնքող բոլոր կողմերն իրենց երկրների օրինական և ճանաչված իշխանություններն էին: Պայմանագրի շուրջ, ըստ սահմանված կարգի, ընթացել են երկարատև բանակցություններ և Օսմանյան կայսրության անունից պայմանագիրը ստորագրել է լիազոր պատվիրակությունը: Սևրի պայմանագիրը չի արժանացել լիակատար վավերացման (հետևաբար մնում է *ոչ կատարյալ (unperfected)*, սակայն այն նաև երբևէ չեղյալ չի հայտարարվել (հետևաբար մնում է *օրինական, բայց ուժի մեջ չմտած (valid but not in force)*:

Սխալ է այն տարածված պատկերացումն, իբր Սևրի պայմանագիրն է որոշել Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանը: Այդպես չէ՛: Սևրի պայմանագրի 89-րդ հոդվածով կողմերը համաձայնվել են Հայաստանի և Թուրքիայի սահմանը իրավարար վճռով որոշելու խնդրանքով դիմել ԱՄՆ նախագահին և այդ վճիռն ընդունել անմիջապես: Նույն պայմանագրի 90-րդ հոդվածով Թուրքիան վերահաստատել է իր դիրքորոշումը՝ ամրագրելով. *«սկսած իրավարար որոշման օրից Թուրքիան հրաժարվում է [Հայաստանին] փոխանցվելիք տարածքի նկատմամբ իր բոլոր իրավունքներից և փիփողոսից»*:

ԱՄՆ նախագահ **<u>Վուդրո Վիլսոնը</u>** Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանի վերաբերյալ **<u>իրավարար վճիռը</u>** ստորագրել և

հաստատել է **ԱՄՆ պետական կնիքով** 1920թ. նոյեմբերի 22-ին: Այսինքն, **1920թ. նոյեմբերի 22**-ից իրավարար վճիռը մտել է ուժի մեջ: Այդ օրվանից նախկինում Օսմանյան կայսրության մաս կազմող **Վանի, Բիթլիսի, Էրզրումի և Տրապիզոնի** նահանգների նկատմամբ (ընդհանուր առմամբ **103 599 քկմ**) չեղյալ են հայտարարվել թուրքական իրավունքներն ու տիտղոսը և *de jure* ճանաչվել են Հայաստանի Հանրապետության իրավունքներն ու տիտղոսը:

ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի իրավարար վճռին, որպես հայոց իրավունքների ամենազորեղ կռվանի, ավելի հանգամանալից կանդրադառնանք ստորև:

### *3. Ժամանակագրական առումով հաջորդը Ալեքսանդրապոլի պայմանագիրն է՝ կնքված 1920թ. դեկտեմբերի 3-ին:*

Սա սովետահայ պատմագրության ամենասիրելի թեմաներից մեկն էր, քանի որ հնարավորություն էր տալիս դաշնակցությանը մեղադրել դավաճանության մեջ, իսկ բոլշևիկներին ներկայացնել որպես ազգի փրկիչներ: Մեր խնդիրը չէ պատմական քննարկումներ կատարել: Մեր նպատակն է քննել Ալեքսանդրապոլի պայմանագիրը միջազգային իրավունքի տեսանկյունից: Ալեքսանդրապոլի պայմանագիրն **անօրինական է ու անվավեր**, նախ այն պատճառով, որ կնքող կողմերից և ոչ մեկը չի ունեցել դրա իրավասությունը: Պայմանագիրը հայկական կողմից կնքողներն ***արդեն*** իշխանություն չէին, իսկ Թուրքիայի կողմից կնքողները ***դեռևս*** իշխանություն չէին: Երկու կողմերն էլ գործել են *ultra vires*,[2] այսինքն՝ գերազանցել են իրենց իրավասությունները: Հանրահայտ փաստ է, որ ՀՀ վերջին օրինական կառավարության կողմից իշխանության հանձնումը տեղի է ունեցել 1920թ. դեկտեմբերի 2-ին՝ *«ՌՍՖՍՀ լիազոր ներկայացուցչության և Հայաստանի Հանրապետության կառավարության միջև»* կնքված համաձայնագրով:[3] Այս մասին տեղյակ էր նաև Քյազիմ Կարաբեքիրը, երբ դեկտեմբերի 3-ին (2-ի լույս 3-ի գիշերը)[4] ստորագրում էր Ալեքսանդրապոլի պայմանագիրը: Ալեքսանդրապոլի պայմանագիրն անօրինական է նաև այն պատճառով, որ ստորագրվել է միջազգային իրավունքի սկզբունքները ոտնահարող **ուժի կիրառման բացահայտ սպառնալիքով**:[5]

### *4. Ժամանակագրական առումով հաջորդ պայմանագիրը Մոսկվայի պայմանագիրն է՝ կնքված 1921թ. մարտի 16-ին:*

Ինչպես գրված է Մոսկվայի պայմանագրի նախաբանում, այն կնքվել է *«ՌՍՖՍՀ կառավարության և Թուրքիայի Ազգային մեծ ժո-*

*ղովի կառավարության»* միջև: Քանի որ ցանկացած պայմանագրի կարգավիճակ ածանցվում է այն ստորագրողների իրավական կարգավիճակից, ուստի առաջին հերթին անհրաժեշտ է հստակեցնել նրանցից յուրաքանչյուրի կարգավիճակը 16.03.1921թ. դրությամբ:

*ա) Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետության (ՌՍՖՍՀ) կարգավիճակը 1921թ.-ին.*

Պայմանագիրը կնքելու պահին **չկար** *«Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետություն»* ճանաչված պետություն, հետևաբար՝ միջազգային իրավունքի սուբյեկտ: Բնականաբար դրա կառավարությունը չուներ որևէ միջազգային պայմանագիր կնքելու իրավասություն: ՌՍՖՍՀ-ի, արդեն ԽՍՀՄ տարազով, միջազգային օրինական ճանաչումը սկսել է միայն 1924թ. փետրվարի 1-ից՝ Մեծ Բրիտանիայի ճանաչումով:[6] Մինչև 1924թ.-ը տեղի ունեցած, այսպես կոչված, ճանաչումները, չեն առաջացրել որևէ իրավական հետևանք, քանի որ իրենց հերթին բխել են չճանաչված երկրներից կամ վարչախմբերից: Որպեսզի ճանաչումն օրինապես համարվի այդպիսին, այն պետք է կատարվի իր հերթին օրինականորեն ճանաչված միջազգային իրավունքի սուբյեկտի կողմից:[7] Օրինակ, 1920թ.-ին սովետական կառավարությունը ճանաչեց Բալթյան երկրները, սակայն այդ ճանաչումը չընդունվեց Դաշնակից ուժերի կողմից այն հիմնավորմամբ, որ սովետական կառավարությունն իր հերթին օրինապես[8] ճանաչված չէ:[9] Նման մոտեցումը երկրորդվել է դատական վճիռներով: Այսպես, ՌՍՖՍՀ-ն ընդդեմ Սիբրարիոյի *(RSFSR vs. Cibrario)* դատական գործում (1923թ.) ԱՄՆ դատարանը մերժել է ընդունել սովետական կառավարության հայտն այն հիմնավորմամբ, որ վերջինս ճանաչված չէ:[10] Նմանատիպ վճիռ, նույն հիմնավորմամբ կայացրել է Շվեդիայի Գերագույն դատարանը Սովետական կառավարությունն ընդդեմ Էրիքսոնի *(Soviet Government vs. Ericsson)* դատական գործում (1921թ.):[11]

Վերոհիշյալ և տասնյակ այլ դատական վճիռներ ու կառավարական որոշումներ վերահաստատում են միջազգային իրավունքի այն սկզբունքը, որ առանց ճանաչման կառավարություններն իրավական տեսանկյունից գոյություն չունեն, հետևաբար որևէ իրավական գործունեություն (պայմանագրերի կնքում, քաղաքացիության շնորհում կամ զրկում, մասնակցություն դատական գործընթացին և այլն) չեն կարող ծավալել:[12]

*բ) Թուրքիայի Ազգային մեծ ժողովի կարգավիճակը 1921թ.-ին.*

Ըստ էության, սովետական իշխանության և կառավարության վերաբերյալ վերն ասվածը ամբողջովին վերաբերում է, այսպես կոչված, Թուրքիայի Ազգային մեծ ժողովի կառավարությանը, որի անունից թուրքական կողմը ստորագրել է Մոսկվայի պայմանագիրը: Հիշարժան է, որ անգամ քեմալականներն իրենք որևէ հավակնություն չունեին օրինական իշխանությունների առկայության դեպքում իրենց համարելու Թուրքիայի լիազոր ներկայացուցիչներ: Նրանք պայմանագրերը կնքում էին ոչ թե Թուրքիայի կամ Թուրքիայի կառավարության անունից, այլ *«Թուրքիայի Ազգային մեծ ժողով»* կոչվող կառույցի *«կառավարության»* անունից: Թուրքիայի Ազգային մեծ ժողովն իր կարգավիճակով հասարակական կազմակերպություն (NGO) էր և նրա մեջ միավորված էին նախկին պատգամավորներ, պաշտոնանկ զինվորականներ ու պաշտոնյաներ: Նախկին պաշտոնյաներ միավորող կազմակերպություններ եղել են ու կան աշխարհի զանազան երկրներում, այդ թվում նաև Հայաստանում, սակայն նրանցից և ոչ մեկն իրավունք չունի միջպետական պայմանագիր կնքելու երկրի անունից: Մուստաֆա Քեմալի վարչախումբը որևէ իրավական հիմք չուներ միջազգային հարաբերություններում ներկայացնելու թուրքական պետությունը: Աներկբայորեն, առնվազն մինչև 1922թ. նոյեմբերը, այսինքն սուլթան Մուհամմեդ VI-ի մեկնումը Թուրքիայից, վերջինիս կառավարությանն էին վերապահված միջազգային հարաբերությունների մեջ մտնելու լիազորությունները, միայն սուլթանը կարող էր լիազորել որևէ անձի՝ գործելու երկրի անունից:[13]

Ընդհանրապես քեմալականների շարժումը սկզբնավորվել ու ընթացել է օսմանյան սահմանադրության ոտնահարումով և միջազգային իրավունքի խախտումով, որ է երկրի օրինական իշխանության՝ սուլթան-խալիֆի, դեմ ապստամբությունը և Մուդրոսի զինադադարի (30 հոկտեմբերի, 1918թ.) ոտնահարումը: Քեմալը 1921թ.-ին պարզապես փախուստի մեջ գտնվող քրեական հանցագործ էր: Այդ իսկ պատճառով դեռևս 1920թ. ապրիլի 11-ին կայսրության բարձրագույն կրոնավորի՝ շեյխ-ուլ-իսլամի, ֆեթվայով (կոնդակով) Քեմալը մահվան էր դատապարտվել: Նրա նկատմամբ նույն տարվա մայիսի 11-ին մահապատժի վճիռ էր կայացրել նաև թուրքական ռազմական դատարանը: Այս դատավճիռը 1920թ. մայիս 24-ին հաստատվել էր սուլթանի կողմից:

Ի լրումն սրա, Մոսկվայի պայմանագրի Հայաստանին վերաբերող մասը միջազգային իրավունքի ևս մի խախտում է, քանի որ պայմանագրերը կարող են վերաբերել միայն պայմանագիրը ստորագրող կողմերին և որևէ պարտավորություն կամ իրավունք չեն ստեղծում պայմանագրին մաս չկազմող երրորդ կողմի համար:[14]

***5. Հայ-թուրքական սահմանին վերաբերող հաջորդ պայմանագիրը <u>Կարսի պայմանագիրն</u> է՝ կնքված 1921թ. հոկտեմբերի 13-ին:***

Միանշանակ է, որ Կարսի պայմանագիրն <u>**անօրինական է և անվավեր**</u>, քանի որ պայմանագիրը կնքած կողմերից և ոչ մեկը չի եղել միջազգային իրավունքի սուբյեկտ: Ալեքսանդրապոլի և Մոսկվայի պայմանագրերին վերաբերող հատվածում քեմալականների մասին արդեն խոսվեց: Անդրադառնանք ՀՍՍՀ կարգավիճակին, որն էլ հանդիսացել է քեմալականների հետ պայմանագիրը կնքած կողմերից մեկը: Անվիճելի է, որ Սովետական Հայաստանը երբեք չի եղել միջազգային իրավունքի սուբյեկտ: Այն երբեք ճանաչված չի եղել միջազգային իրավունքի որևէ այլ սուբյեկտի կողմից, երբեք չի ունեցել այլ երկրների հետ հարաբերությունների մեջ մտնելու կարողություն: Պարզ ասած՝ այն երբեք չի ունեցել դեսպանություններ և ՀՍՍՀ անունից երբևէ ոչ մի դեսպան չի հավատարմագրվել: Իսկ *«այլ պետությունների հետ հարաբերությունների մեջ մտնելու կարողությունը» (capacity to enter into relations with the other states)* հանդիսանում է պետականության 4 չափորոշիչներից մեկը, որն ամրագրված է Մոնտեվիդեոյի պետությունների իրավունքների և պարտականությունների մասին 1933թ. *(Convention on Rights and Duties of States, Montevideo, 1933)* կոնվենցիայի առաջին հոդվածի 4-րդ կետում: ԽՍՀՄ կազմում պարզապես եղել է *«ՀՍՍՀ»* վարչատարածքային միավորը:

***6. Ժամանակագրական առումով վերջին պայմանագիրը, որին հարկ ենք համարում անդրադառնալ, <u>Լոզանի պայմանագիրն</u> է՝ կնքված 1923թ. հուլիսի-ի 24-ին:***

Նախ մի շատ տարածված մոլորության մասին: <u>**Լոզանի պայմանագրի կնքումով Սևրի պայմանագիրը չեղյալ չի հայտարարվել**</u>: Որևէ պայմանագիր կամ միջազգային պարտավորություն նոր պայմանագիր կնքելու պարագայում ինքնըստինքյան չեղյալ չի լինում: Պայմանագիրը չեղյալ է դառնում ոչ այլ կերպ, քան չեղյալ հայտարարումով: Ընդ որում, պայմանագիրը կարող է չեղյալ հայտարարվել միմիայն նախորդ պայմանագրի մաս հանդիսացող

բոլոր, կրկնում եմ **բոլոր, կողմերի համաձայնությամբ**՝ դրա մասին հստակ հայտարարումով և այդ իրողության ամրագրումով հաջորդ պայմանագրի մեջ: **Լոզանի պայմանագիրը չեղյալ չի հայտարարել Սևրի պայմանագիրը**: Լոզանի պայմանագրի մեջ ընդհանրապես որևէ հիշատակում չկա Սևրի պայմանագրի մասին: Այո՛, ըստ միջազգային իրավունքի, պայմանագիրը կնքած երկրներն իրավասու են հաջորդ պայմանագրով վերատեսության ենթարկել նախորդ պայմանագրի դրույթները: Սակայն փոփոխված կամ նորամուտ դրույթներն իրավական ուժ ունեն միայն նոր պայմանագիրը ստորագրած երկրների համար, իսկ մնացածների համար շարունակում են ուժի մեջ մնալ նախորդ պայմանագրի դրույթները: Սա հստակորեն ամրագրված է Վիեննայի Պայմանագրերի իրավունքի մասին կոնվենցիայի 39, 40 և 41-րդ հոդվածներում: Սևրի պայմանագիրը ստորագրել է 18 երկիր, իսկ Լոզանի պայմանագիրը՝ ընդամենը 7-ը: Այսինքն, Լոզանին չմասնակցած երկրների համար իրավական է Սևրի պայմանագիրը, իսկ Լոզանի պայմանագիրը ստորագրած երկրների համար իրավական են Սևրի պայմանագրի այն դրույթները, որոնք չեն փոփոխվել Լոզանի պայմանագրում:

Ավելին, Լոզանը ոչ միայն չեղյալ չի հայտարարել **հայոց իրավունքները**, այլև **16-րդ հոդվածով վերահաստատել է** դրանք: Այսպես, Լոզանի պայմանագիրն անդրադառնում է թուրք-բուլղարական, թուրք-հունական և թուրք-սիրիական սահմաններին, ըստ այդմ՝ հստակեցնում Թուրքիային պատկանող տարածքները միայն երկրի այդ հատվածներում: Իսկ քանի որ Լոզանի պայմանագրի 16-րդ հոդվածը հայտարարում է, որ Թուրքիան հրաժարվում է բոլոր այն տարածքներից, որոնց վրա Լոզանի պայմանագրով չի ճանաչվել Թուրքիայի ինքնիշխանությունը, իսկ Վիլսոնի իրավարար վճռով Հայաստանին հատկացված տարածքների վրա Լոզանի պայմանագիրը չի ճանաչել թուրքական ինքնիշխանությունը, հետևաբար Թուրքիան մեկ անգամ ևս հաստատել է վիլսոնյան Հայաստանից իր հրաժարումը:

Հիմա ամփոփենք մեր քննության արդյունքները և անդրադառնանք բազմիցս հիշատակված և իմ համոզմամբ Հայ դատի հիմնասյունն ու նրա հաջողության գրավականը հանդիսացող ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի իրավարար վճռին:

Սակայն, մինչ այդ հստակեցում:

Ճիշտ է, որ Պայմանագրերի իրավունքի մասին Վիեննայի կոն-վենցիան ընդունվել է 1969թ.-ին և հետադարձ ուժ չունի, ինչպես հայտարարված է կոնվենցիայի 4-րդ հոդվածում, այնուամենայնիվ հստակ է, որ բոլոր այն չափորոշիչային հիմնադրույթները, որոնցով քննության առանք վերոնշյալ պայմանագրերը, միջազգային իրա-վունքում առկա են եղել և գործել են դարեր ի վեր, այսինքն, լատի-ներեն ասած, եղել են ***jus cogens***, այն է՝ **բոլորի համար պարտադիր ու անբեկանելի**: Դրանք պարզապես վերամրագրվել են Վիեննայի կոնվենցիայի մեջ: Եւ ինչպես հաստատում է նույն կոնվենցիայի 53-րդ հոդվածը, պայմանագիրն անվավեր է, եթե կնքելու պահին ոտնահարվել է միջազգային իրավունքում ճանաչում գտած որևէ անբեկանելի հիմնադրույթ, այսինքն՝ որևէ *jus cogens*:

Հետևաբար, վերը քննության առած 6 պայմանագրից 4-ն անվավեր են, քանի որ դրանցից յուրաքանչյուրը կնքվել է միանգամից մի քանի *jus cogens*-ների ոտնահարմամբ:

**Անվավեր պայմանագրերն են.**

- ~~**Բրեստ-Լիտովսկի պայմանագիրը**~~**,**
- ~~**Ալեքսանդրապոլի պայմանագիրը**~~**,**
- ~~**Մոսկվայի պայմանագիրը**~~ **և**
- ~~**Կարսի պայմանագիրը**~~**:**

**Սևրի պայմանագիրն օրինական է և վավեր, սակայն այն ուժի մեջ չի մտել, քանի որ լիովին չի վավերացվել:**

**Իսկ վավերական ու օրինական Լոզանի պայմանագիրը, ինչպես ասվեց, Հայաստանին վերաբերում է անուղղակիորեն:**

Հիմա, ինչպես ասացի, Հայ դատի հիմնասյունը և հաջողության գրավականը հանդիսացող **ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի *իրավարար վճռի (Arbitral Award)*** մասին:

Նախ մի փոքր պատմական ակնարկ: 1920թ. ապրիլի 25-26-ին Դաշնակից և ընթերակա ուժերի Գերագույն խորհուրդը *(Supreme Council of Allied and Associated Powers)*, բաղկացած Մեծ Բրիտա-նիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և Ճապոնիայի ներկայացուցիչներից, որոշում կայացրեց դիմել ԱՄՆ նախագահին երկու խնդրանքով.

ա) **ստանձնել Հայաստանի մանդատը**,

բ) **իրավարար վճռով որոշել Հայաստանի և Թուրքիայի սահմանը**:[15]

Նույն խնդրանքը, 89-րդ հոդվածի տեսքով, ներառվեց Սևրի դաշնագրի մեջ և արդեն Հայաստանի ու Թուրքիայի, ինչպես նաև դաշնագիրը ստորագրած գրեթե 20 երկրի անունից հղվեց ԱՄՆ նախագահին: ԱՄՆ նախագահը, իրավասու մարմինները (պետքարտուղարությունը, ՊՆ-ն և նախագահի վարչակազմը) և համապատասխան աշխատանքային խումբը (պրոֆ. Վեստերմանի գլխավորությամբ), մանրազնին ուսումնասիրեցին հայցը և կայացրին իրավարար վճիռը: Վուդրո Վիլսոնն իրավարար վճիռը ստորագրեց **1920թ. նոյեմբերի 22-ին**: Այն դեկտեմբերի 6-ին պաշտոնապես փոխանցվեց Փարիզ՝ դաշնակից ուժերի Գերագույն խորհրդին: Սույն վճռի պաշտոնական և ամբողջական անվանումն է. *«Ամերիկայի Միացյալ Նահանգների նախագահի որոշումը Թուրքիայի և Հայաստանի միջև սահմանի, Հայաստանի դեպի ծով ելքի և հայկական սահմանին հարակից թուրքական տարածքի ապառազմականացման վերաբերյալ» 22 նոյեմբերի, 1920թ.*:

***Իրավարար վճռի բովանդակությունը***

Ըստ իրավարար վճռի՝ Հայաստանի Հանրապետության տիտղոսն ու իրավունքները ճանաչվում էին նախկին Օսմանյան կայսրության Վանի, Բիթլիսի, Էրզրումի և Տրապիզոնի նահանգների վրա՝ ընդհանուր առմամբ 103 599 քկմ: Դա կրկնակի քիչ էր այն տարածքից, որի վրա Մուդրոսի զինադադարի 24-րդ հոդվածով ճանաչվել էր հայկական տիտղոսը: Նման էական կրճատումը պայմանավորված էր այն հանգամանքով, որ արդեն այդ ժամանակ ի հայտ էին եկել հայերի հսկայական մարդկային կորուստները:

***Իրավարար վճռի ներկա կարգավիճակը***

Իրավարար վճիռը **վերջնական է և պարտադիր է կատարման համար**:[16] Այն ***չունի ժամանակային սահմանափակում***[17] և նրա կարգավիճակը **կախում չունի վճռի հետագա ճակատագրից**: Միջազգային իրավունքը, մասնավորապես Հաագայի կոնվենցիայի (1907թ.) 81-րդ հոդվածը, որով ամփոփվել և ամրագրվել է իրավարար վճիռների կարգավիճակը, ընդհանրապես **չի նախատեսում վճռի չեղյալ հայտարարում**:[18] Ըստ միջազգային իրավունքի՝ կողմերը, համաձայնվելով իրավարար որոշմանը ներկայացնել իրենց վեճը, մեկընդմիշտ ընդունում են, որ իրենց կողմից **կատարման համար պարտադիր կլինի իրավարարի ցանկացած վճիռ**:[19] Կողմերից մեկի մերժումը՝ ի կատար ածելու իրավարարությունը, չի ազդում վճռի

վավերականության վրա: Ըստ այդմ, քանի որ իրավարարության հայցը ներկայացվել է ոչ միայն Հայաստանի և Թուրքիայի, այլև 16 այլ երկրի, կողմից ուստի վճիռը պարտադիր է բոլոր հայցվորների համար, որոնք ներկայումս հետևյալ երկրներն են՝ Միացյալ Թագավորություն, Կանադա, Ավստրալիա, Նոր Զելանդիա, Հարավային Աֆրիկա, Հնդկաստան, Պակիստան, Բանգլադեշ, Ֆրանսիա, Իտալիա, Ճապոնիա, Բելգիա, Հունաստան, Լեհաստան, Պորտուգալիա, Ռումինիա, Չեխիա, Սլովակիա, Սերբիա, Խորվաթիա, Սլովենիա, Բոսնիա, Հերցեգովինա, Մակեդոնիա և Մոնտենեգրո: Այն պարտադիր է նաև իրավարարի՝ Միացյալ Նահանգների համար, քանի որ ԱՄՆ նախագահի ցանկացած պաշտոնական դիրքորոշում հանդիսանում է երկրի դիրքորոշումը[20], և իրավարարությունից բխող քայլերը պարտադիր են կատարման համար:[21]

Հիմա ամենակարևորի մասին:

***<u>Որո՞նք պետք է լինեն մեր հետագա քայլերը</u>***:

Առաջին հերթին մենք ոչ միայն պիտի հայտարարենք, որ **<u>պետություն ունեցող ազգ ենք, այլ պիտի գործենք որպես այդպիսին</u>**: Այսինքն՝ պիտի օգտվենք միջազգային սուբյեկտի մեր կարգավիճակից:

Քանի որ միջազգային իրավունքը և միջպետական բազմաթիվ փաստաթղթեր, ինչպես օրինակ Եվրոպայում անվտանգության և համագործակցության Հելսինկիի 1975թ.-ի եզրափակիչ փաստաթուղթը (մաս 10, §1), որի տակ կա նաև Թուրքիայի ստորագրությունը, հանձնառու երկրներից պահանջում է միջազգայնորեն ստանձնած պարտավորությունների *«բարեխիղճ կատարումը, լինեն դրանք ածանցված միջազգային իրավունքի համընդհանուր ճանաչում գտած սկզբունքներից և կանոններից, թե ածանցված լինեն պայմանագրերից կամ այլ համաձայնագրերից, որոնց այդ երկրները մաս են կազմում համաձայն միջազգային օրենքի»*, ուստի Հայաստանի Հանրապետությունը կարող է և պարտավոր է միջազգային իրավունքի հիման վրա պաշտպանել իր շահերը, այսինքն՝ Անվտանգության խորհրդի ուշադրությունը պիտի հրավիրի այն հանգամանքի վրա, որ Թուրքիան չի կատարում Վիլսոնի իրավարար վճռով ստանձնած պարտավորությունները, որի հետևանքով առաջացել է միջազգային, այսինքն՝ հայ-թուրքական դիմակայություն և վեճ: Հայաստանի Հանրապետությունը որպես ՄԱԿ-ի անդամ երկիր, ՄԱԿ-ի կանոնակարգի 35-րդ հոդվածի 1-ին կետի հիման վրա, լիովին իրավասու է

*«Անվտանգության խորհրդի կամ Գլխավոր համաժողովի ուշադրությանը բերել ցանկացած վեճ կամ իրավիճակ, որն իր բնույթով համապատասխանում է [սույն կանոնակարգի] 34-րդ հոդվածում վկայակոչվածին»*: Իսկ ՄԱԿ-ի կանոնակարգի 34-րդ հոդվածն արձանագրում է. *«Անվտանգության խորհուրդը կարող է քննության առնել ցանկացած վեճ կամ իրավիճակ, որը կարող է հանգեցնել միջազգային դիմակայության կամ առաջ բերել վեճ՝ որոշելու համար, թե արդյոք տվյալ վեճի կամ իրավիճակի շարունակումը կարո՞ղ է վտանգել միջազգային խաղաղության և անվտանգության պահպանումը»*: Ակնհայտ է, որ ներկա իրավիճակը արդեն իսկ հանգեցրել է հայ-թուրքական դիմակայության և վիճահարույց վիճակի, և այս ամբողջը հետևանք է Թուրքիայի կողմից իր միջազգայնորեն ստանձնած պարտավորությունների չկատարման: Միևնույն ժամանակ, Հայաստանը միջնորդի, օրինակ՝ ԱՄՆ-ի, միջոցով կարող է դիմել Թուրքիային, որպեսզի միասնաբար դիմեն ՄԱԿ-ի Միջազգային դատարան (Միջազգային դատարանի Կանոնադրության 36-րդ հոդվածի 2 կետի (ա) և (բ) ենթակետերի հիման վրա)՝ հստակեցնելու համար Վուդրո Վիլսոնի իրավարար վճռի ներկա կարգավիճակը: Զուգահեռաբար Հայաստանը պիտի հայց ներկայացնի ՄԱԿ-ի Գլխավոր համաժողովին, որպեսզի վերջինս, Միջազգային դատարանի կանոնադրության 65-րդ հոդվածի համաձայն, Վիլսոնի իրավարար վճռի մասին պարզաբանական կարծիքի համար *(advisory opinion)* դիմի միջազգային դատարան:

Ուզում եմ ընդգծել, որ ՀՀ կողմից միջազգային կառույցների ներգրավմամբ հայ-թուրքական դիմակայությունը լուծելու ձգտումը չի կարող դիտարկվել հարաբերությունների սրման միտում, այլ, ընդհակառակը, կարող է գնահատվել, որպես հաստատակամ ու դրական քայլ առկա խնդիրները միջազգային իրավունքի հիման վրա լուծելու ուղղությամբ և արձագանք վերջին շրջանում հաճախացող հայ-թուրքական հաշտության կոչերի: Սա ՀՀ մասով:

Սփյուռքը, մասնավորապես ԱՄՆ-ի հայ համայնքը, ևս կարող է դիմել գործնական քայլերի:

Ըստ ԱՄՆ սահմանադրության 1-ին հոդվածի 8-րդ մասի 10-րդ կետի, ԱՄՆ Կոնգրեսը իրավասու է որոշել միջազգային իրավունքի խախտումները և պատժել խախտողներին *(The Congress shall have power to define and punish offenses against the law of nations)*: Առավել ևս սա վերաբերում է այն դեպքերին, երբ միջազգային իրա-

վունքի հիման վրա որոշումների կայացմանը մասնակցել է ԱՄՆ բարձրագույն պաշտոնյան, այս պարագայում՝ երկրի նախագահ Վուդրո Վիլսոնը: Ըստ այդմ, Կոնգրեսի որևէ անդամ կամ անդամների խումբ Կոնգրեսի պալատներից յուրաքանչյուրում կարող է հանդես գալ հետևյալ հարցապնդումով.

***Արդյո՞ք Թուրքիայի կողմից ԱՄՆ նախագահ Վիլսոնի հայ-թուրքական սահմանի վերաբերյալ իրավարար վճռի չկատարումը միջազգային իրավունքի խախտում է: Եթե այո, ապա ինչպիսի՞ քայլեր է ձեռնարկում ԱՄՆ գործադիր իշխանությունը պատժելու համար միջազգային իրավունքը խախտողին:***

Կոնգրեսը դյուրությամբ չի կարող հրաժարվել այս հարցի քննարկումից, քանի որ, ըստ էության, սա հարցի վերաքննում է, իսկ Կոնգրեսը իրավասու է ժամանակ առ ժամանակ անդրադառնալ իր արտահայտած դիրքորոշումների ու հանձնարարականների ճակատագրին:

Ուզում եմ հիշեցնել, որ դեռևս 1927թ.-ին Կոնգրեսը, ավելի ստույգ՝ նրա մի պալատը՝ Սենատը, արդեն մի անգամ հստակորեն արտահայտել է իր դիրքորոշումը Վիլսոնի իրավարար վճռի վերաբերյալ: Այսպես, 1927թ. հունվարի 18-ին ԱՄՆ Սենատը, որի իրավասությունների շրջանակում է միջազգային պայմանագրերի վավերացումը, մերժել է վավերացնել ամերիկա-թուրքական պայմանագիրը (Լոզան, 6 օգոստոսի, 1923թ.), հետևաբար ճանաչել ներկայիս Թուրքիայի հանրապետությունը:[22] Պայմանագիրը մերժելու համար եղել է 3 պատճառ, և դրանցից առաջինը եղել է Վիլսոնի իրավարար վճռով Հայաստանի նկատմամբ Թուրքիայի ստանձնած պարտավորությունների չկատարումը. *"failed to provide for the fulfillment of the Wilson award to Armenia"*:[23]

Հաշվի առնելով, որ ԱՄՆ-ի ներկայիս Կոնգրեսի 2 պալատներում էլ դեմոկրատները մեծամասնություն են կազմում, կարելի է օգտագործել նաև կուսակցական գործոնը: ԱՄՆ Դեմոկրատական կուսակցության 1924 և 1928թթ. ծրագրային հիմնադրույթների մեջ միանշանակ շեշտվել է Թուրքիայի ստանձնած պարտավորությունների կատարման անհրաժեշտությունը և Հայաստանի Հանրապետության իրավունքը վիլսոնյան Հայաստանի նկատմամբ. *Fulfillment of President Wilson's arbitral award respecting Armenia* (1924թ. ծրագիր): Դեմոկրատական կուսակցության 1928թ. ծրագիրը ոչ միայն վերահաստատել է հայերի իրավունքները, այլև իր զորակցությունն է հայտնել ԱՄՆ այն հետևողական ջանքերին, որոնք

նպատակամղված կլինեն Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ և դրանից հետո ԱՄՆ ու Դաշնակից ուժերի կողմից Հայաստանին և հայ ժողովրդին տված խոստումների ու պարտավորությունների կենսագործմանը. *“We favor the most earnest efforts on the part of the United States to secure the fulfillment of the promises and engagements made during and following the World War by the United States and the allied powers to Armenia and her people”*:

Այսօր մեր ազգային գոյությունը թևակոխել է նոր փուլ: Մենք վերանվաճել ենք մեր պետականությունը, նորից դարձել ենք պետություն ունեցող ազգերի ընտրյալ ընտանիքի լիիրավ անդամ: Մենք իրավացիորեն հպարտանում ենք մեր ազգային պետականությամբ, սակայն, ցավոք սրտի, դեռևս թերի ենք օգտագործում այդ պետականության ընձեռած հնարավորությունները: **Պետականություն նշանակում է միջազգային իրավունքի կրող**, այսինքն՝ սուբյեկտ, որը կարող է իր շահերը պաշտպանել և իր նպատակներին հասնել միջազգային իրավունքի հիման վրա: Հայ դատը, այսինքն՝ հայոց արդար իրավունքներին հասնելու հարցը, առաջին հերթին Հայաստան և Թուրքիա պետություններին վերաբերող հարց է, հետևաբար այն միջազգային, որ է միջպետական, իրավունքի հարց է: Միջազգային իրավունքն է, որ այսօր մեզ՝ հայերիս որպես ազգ և ՀՀ որպես պետություն, տալիս է անսակարկ իրավունք՝ տեր կանգնելու իր ժառանգությանը: Վերջին 50 տարում Հայ դատն առավելապես եղել է Հայոց ցեղասպանության միջազգային ճանաչմանը նպատակամղված աննկուն աշխատանք: Եւ դա եղել է միանգամայն հասկանալի, քանի որ պարտադրված է եղել մեր պետականազուրկ վիճակով: Միևնույն ժամանակ կարծում եմ, որ այն եղել է ավելի շատ միջոց, քան նպատակ: Ներկայումս հասունացել է պահն աստիճանաբար ցեղասպանության ճանաչումից շեշտադրումը տեղափոխելու բուն պահանջատիրության վրա: Ինչքան էլ անհավատալի հնչի, պահանջատիրության դաշտում մեր դիրքերն ավելի ուժեղ են և փաստարկներն՝ ավելի զորեղ, քան մինչևիսկ ցեղասպանության ճանաչման գործընթացում, քանի որ մեր տարածքային ու նյութական փոխհատուցման իրավունքները խարսխված են միջպետական երկկողմ և բազմակողմ փաստաթղթերի, Հայաստանի Հանրապետության հանդեպ պետությունների ստանձնած անսակարկ պարտավորությունների և, առաջին հերթին, ՀՀ ու աշխարհի ներկայիս ամենա-

զորեղ պետությունների առջև թուրքական պետության անբեկանելի պարտավորությամբ՝ ի կատար ածելու Իրավարար վճիռը:

Աշխարհում գործընթացներն առաջ են գնում հարաճուն արագությամբ և միշտ չէ, որ այդ գործընթացները մեր օգտին են: Մենք հապաղելու ժամանակ չունենք:

Եկել է լուրջ որոշումներ ընդունելու և առավել լուրջ քայլեր ձեռնարկելու ժամանակը:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Manual of Terminology of Public International Law (by Paenson I.), UN, NY, 1983, p. 38.
2. Wildhaber L. Treaty Making Power and Constitution. Basel-Stuttgart, 1971, p. 150.
3. Վրացեան Ս. Հայաստանի Հանրապետութիւն. Թեհրան, 1982, էջ 501-2:
4. Այն, որ պայմանագիրը ստորագրվել է դեկտեմբերի 3-ին վկայված է նաև Աթաթուրքի կողմից (Ataturk. A Speech delivered by Mustafa Kemal Ataturk 1927. Istanbul, 1963, p. 418).
5. Vienna Convention on the Law of Treaties, 1969. UNO, NY, Article 52.
6. Toynbee A.J. Survey of International Affairs 1924. London, 1926, p. 491.
7. Moore J.B. Digest of International Law. Washington, 1906, vol. I, p. 73.
8. Մինչև 1924թ. փետրվարի 1-ը տեղի ունեցած, այսպես կոչված, ճանաչումները չեն ստեղծում որևէ իրավական հետևանք, քանի որ դրանք չճանաչված երկների կամ իշխանությունների կողմից էին. Էստոնիա 02.02.1920; Լիտվա 30.06.1920; Լատվիա 11.08.1920; Լեհաստան 12.10.1920; Ֆինլանդիա 14.10.1920; Պարսկաստան 26.02.1921; Աֆղանստան 28.02. 1921; Թուրքիա 16.03.1921; Մոնղոլիա 05.11.1921 (Schuman F.L. American Policy toward Russia since 1917: A Study of Diplomatic History, International Law and Public Opinion. London, 1928, p. 351).
9. Papers Relating to the Foreign Relations of the United States, 1920. Washington, 1936, v. III, p. 462. (The Secretary of States (Colby) to the Ambassador in Great Britain (Davis), August 2, 1920, p. 461-3).
10. Hudson M.O. Annual Digest of Public International Law. Cambridge, 1931-1932, Case No. 28, p. 114; Chen T.-C. The International Law of Recognition. London, 1951, p. 137.
11. Chen T.-C. Ibid, p. 137; Hudson M. Annual Digest... 1919-22, Case No. 30.
12. Chen T.-C. Ibid, p. 138.
13. O'Connell D.P. State Succession in Municipal Law and International Law. Cambridge, 1967, v. I, p. 211.
14. Jankovic B.M. Public International Law. NY, 1984, p. 302.
15. The Treaties of Peace, 1919-1923. NY, 1924, vol. I, p. xxxii.
16. A Dictionary of Arbitratiion and its Terms (ed. K. Seide), NY, 1970, p. 32.
17. Wildhaber L. Ibid, p. 98.
18. Manual... Ibid, p. 693-4.
19. A Dictionary... Ibid, p. 27.
20. Wright Q. The Control of American Foreign Relations. NY, 1922, p. 38.
21. Collier J. The Settlement of Disputes in International Law. Oxford, 1999, p. 265.
22. Unperfected Treaties of the United States of America (1776-1976) (ed. & ann. Wiktor C.L.), 1919-1925, NY, 1984, v. 6, p. 421; Gordon L.J. Turkish-American Political Relations. Am Polit Sci Rev 1928;22(3):721.
23. Lausanne Treaty is Defeated. Davenport Democrat, 19 Jan 1927, p. 1.


*ք. Երևան*
*13 մարտի, 2007թ.*

## Դ. Մոսկվայի ռուս-թուրքական պայմանագրի (16 մարտի, 1921թ.) փորձաքննությունը՝ ըստ միջազգային իրավունքի

Այդ ժամանակ՝ 1921թ. մարտի 16-ին, բոլշևիկները պայմանագիր կնքեցին Քեմալի հետ, որով Թուրքիային հանձնեցին Հայաստանի Հանրապետության մի մասը, երկու այլ մասեր տվեցին Ադրբեջանին, և մնացորդի վրա փակցրեցին «Սովետական Հայաստան» պիտակն ու բռնակցեցին Ռուսաստանին:

*Ջեյմս Ջերարդ, ԱՄՆ դեսպան Գերմանիայում (1913-17թթ.)*[1]

Այսօր՝ մարտի 16-ին, լրանում է Մոսկվայի ռուս-թուրքական պայմանագրի (16 մարտի, 1921թ.) 86-րդ տարելիցը: Հիրավի տարելիցը, քանի որ նշյալ պայմանագրից է ածանցվում Կարսի պայմանագիրը (13 հոկտեմբերի, 1921թ.), որով, ըստ ոմանց, «որոշվում է» հայ-թուրքական սահմանը:

Տասնյակ գրքեր ու հարյուրավոր հոդվածներ են գրվել Մոսկվայի պայմանագրի մասին, սակայն, որքան էլ տարօրինակ է, միջազգային իրավունքի տեսանկյունից երբեք չի կատարվել պայմանագրի փորձաքննություն՝ որոշելու համար նրա վավերական կամ ոչ վավերական *(valid or not valid)* լինելը:

Ըստ ՄԱԿ-ի պաշտոնական ուղեցույց-ձեռնարկի, *«<u>միջազգային պայմանագրերը</u> համաձայնություններ են <u>միջազգային իրավունքի սուբյեկտների</u> միջև, որոնց միջոցով նրանք ստեղծում, փոփոխության են ենթարկում կամ դադարեցնում են փոխադարձ իրավունքներն ու պարտավորությունները»*.[2] Սա ամրագրված է Պայմանագրային իրավունքի վերաբերյալ 1969թ. Վիեննայի կոնվենցիայի մեջ: Կոնվենցիայի հոդված 2 {1} {ա}-ն պայմանագիրը բնորոշում է որպես *«պետությունների միջև գրավոր կերպով կնքված և միջազգային իրավունքի վրա խարսխված միջազգային համաձայնություն»*: Այսինքն, պայմանագրի օրինականության համար վճռորոշ է միջազգային իրավունքին համապատասխանելը: Ըստ այդմ, անհրաժեշտ է, որ պայմանագիրը կնքող կողմերից յուրաքանչյուրը լինի միջազգայնորեն ճանաչված պետության օրինական կառավարության լիազոր ներկայացուցիչը:

Ինչպես գրված է Մոսկվայի պայմանագրի նախաբանում, այն կնքվել է *«Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետության կառավարության և Թուրքիայի Ազգային մեծ*

*ժողովի կառավարության»* միջև: Քանի որ ցանկացած պայմանագրի կարգավիճակ ածանցվում է այն ստորագրողների իրավական կարգավիճակից, ուստի առաջին հերթին պետք է հստակեցնել նրանցից յուրաքանչյուրի կարգավիճակը 1921թ. մարտի 16-ի դրությամբ:

***I. Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետության (РСФСР, ՌՍՖՍՀ) կարգավիճակը 1921թ.-ին:***

Պայմանագիրը կնքելու պահին չկար *«ՌՍՖՍՀ»* ճանաչված պետություն, հետևաբար՝ միջազգային իրավունքի սուբյեկտ: Բնականաբար նրա կառավարությունը չուներ որևէ միջազգային պայմանագիր կնքելու իրավասություն: ՌՍՖՍՀ-ի, արդեն ԽՍՀՄ տարազով, միջազգային օրինական ճանաչումը սկսվել է միայն 1924թ.-ից՝ Մեծ Բրիտանիայի ճանաչումով (1 փետրվարի, 1924թ.):[3] Մինչև 1924թ. տեղի ունեցած «ճանաչումները» չեն առաջացրել որևէ իրավական հետևանք, քանի որ իրենց հերթին բխել են չճանաչված երկրներից կամ վարչախմբերից: Որպեսզի ճանաչումն օրինապես համարվի այդպիսին, այն պետք է կատարվի իր հերթին օրինականորեն ճանաչված միջազգային իրավունքի սուբյեկտի կողմից:[4] Օրինակ, 1920թ. սովետական կառավարությունը ճանաչել է Բալթյան երկրները, սակայն այդ ճանաչումը չի ընդունվել Դաշնակից ուժերի կողմից, այն հիմնավորմամբ, որ սովետական կառավարությունն իր հերթին օրինապես ճանաչված չէր:[5,6] Նման մոտեցումը երկրորդվել է դատական վճիռներով: Այսպես, ՌՍՖՍՀ ընդդեմ Սիբրարիոյի *(RSFSR vs. Cibrario)* դատական գործում (1923թ.) ԱՄՆ դատարանը մերժել է ընդունել սովետական կառավարության հայցն այն հիմնավորմամբ, որ վերջինս ճանաչված չէ:[7] Նմանատիպ վճիռ, նույն հիմնավորմամբ կայացրել է Շվեդիայի Գերագույն դատարանը Սովետական կառավարությունն ընդդեմ Էրիքսոնի *(Soviet Government vs. Ericsson)* գործում (1921թ.):[8]

Վերոհիշյալ և տասնյակ այլ դատական վճիռներ և կառավարական որոշումներ վերահաստատում են միջազգային իրավունքի այն սկզբունքը, որ առանց ճանաչման կառավարություններն իրավական տեսանկյունից գոյություն չունեն, հետևաբար որևէ իրավական գործունեություն (պայմանագրերի կնքում, քաղաքացիության շնորհում կամ զրկում, մասնակցություն դատական գործընթացին և այլն) չեն կարող ծավալել:[9]

***II. Թուրքիայի Ազգային մեծ ժողովի կարգավիճակը 1921թ.-ին:***

Ըստ էության, սովետական իշխանության և կառավարության վերաբերյալ վերոգրյալն ամբողջովին վերաբերում է նաև, այսպես կոչված, «Թուրքիայի Ազգային մեծ ժողովի» կառավարությանը, որի անունից թուրքական կողմը ստորագրել է Մոսկվայի պայմանագիրը: Հիշարժան է, որ անգամ քեմալականները որևէ հավակնություն չունեին օրինական իշխանությունների առկայության դեպքում իրենց համարելու Թուրքիայի լիազոր ներկայացուցիչներ: Նրանք պայմանագրերը կնքում էին ոչ թե Թուրքիայի կամ Թուրքիայի կառավարության անունից, այլ՝ *«Թուրքիայի Ազգային մեծ ժողով»* կառույցի *«կառավարության»*: Թուրքիայի Ազգային մեծ ժողովն իր կարգավիճակով հասարակական կազմակերպություն էր (NGO), և նրա մեջ միավորված էին նախկին պատգամավորներ, պաշտոնանկ զինվորականներ ու պաշտոնյաներ: Նմանօրինակ կազմակերպություններ եղել են ու կան աշխարհի զանազան երկրներում, այդ թվում նաև՝ Հայաստանում: Մուստաֆա Քեմալի վարչախումբը որևէ իրավական հիմք չուներ միջազգային հարաբերություններում ներկայացնելու թուրքական պետությունը: Աներկբայորեն, առնվազն մինչև 1922թ. նոյեմբերը, այսինքն՝ սուլթան Մուհամմեդ VI-ի մեկնումը Թուրքիայից, վերջինիս կառավարությանն էր վերապահված Թուրքիայի անունից միջազգային հարաբերությունների մեջ մտնելու իրավունքը, և միայն սուլթանն էր կարող, ըստ Օսմանյան կայսրության սահմանադրության 7-րդ հոդվածի, լիազորել որևէ անձի՝ հանդես գալու երկրի անունից:[10]

Ընդհանրապես քեմալականների շարժումը սկզբնավորվել ու ընթացել է օսմանյան սահմանադրության ոտնահարումով և միջազգային իրավունքի խախտումով, որոնք են երկրի օրինական իշխանության՝ սուլթան-խալիֆի, դեմ ապստամբությունը և Մուդրոսի զինադադարի (30 հոկտեմբերի, 1918թ.) ոտնահարումը: Մուստաֆա Քեմալը 1921թ.-ին պարզապես փախուստի մեջ գտնվող քրեական հանցագործ էր: Այդ իսկ պատճառով դեռևս 1920թ. ապրիլի 11-ին կայսրության բարձրագույն կրոնավորի՝ շեյխ-ուլ-իսլամի, ֆեթվայով (կոնդակով) Մուստաֆա Քեմալը մահվան էր դատապարտվել: Նրա նկատմամբ նույն տարվա մայիսի 11-ին մահապատժի վճիռ էր կայացրել նաև թուրքական ռազմական դատարանը: Այս դատավճիռը 1920թ. մայիս 24-ին հաստատվել էր սուլթանի կողմից: Ի դեպ, Քեմալի և քեմալականների նկատմամբ

քրեական հետապնդումը կարճվել է միայն 1923թ. հուլիսի 24-ին՝ ներման համապատասխան հայտարարագրով:[11]

Ի լրումն սրա, Մոսկվայի պայմանագրի Հայաստանին վերաբերող մասը միջազգային իրավունքի ևս մի խախտում է, քանի որ *«պայմանագրերը կարող են վերաբերել միայն պայմանագիրը ստորագրող կողմերին և որևէ պարտավորություն կամ իրավունք չեն ստեղծում պայմանագրին մաս չկազմող երրորդ կողմի համար առանց վերջինիս համաձայնության»*:[12] Այս հիմնադրույթն ամրագրված է Պայմանագրային իրավունքի մասին Վիեննայի կոնվենցիայի 34-րդ հոդվածում. *"A treaty does not create either obligations or rights for a third State without its consent"*:

Այսպիսով, ըստ վերոշարադրյալի, Մոսկվայի պայմանագիրը.

ա) ***անօրինական է ու անվավեր***;

բ) այն չէր կարող ***որևէ պարտավորություն պարունակել Հայաստանի Հանրապետության համար***, առավել ևս՝ որոշել հայ-թուրքական սահմանը (պայմանագրում՝ հոդված 1) կամ Նախիջևանը որպես պրոտեկտորատ հանձնել Ադրբեջանին (պայմանագրում՝ հոդված 3), քանի որ Մոսկվայի պայմանագիրը կնքվել է միջազգային իրավունքի դարեր ի վեր գործող պարտադիր և անբեկանելի մի քանի հիմնադրույթների (jus cogens) բացահայտ ոտնահարումով: Իսկ ինչպես ամրագրված է Պայմանագրերի իրավունքի մասին Վիեննայի կոնվենցիայի 53-րդ հոդվածում. *«Պայմանագիրն անվավեր է, եթե կնքվելու պահին հակասել է միջազգային հանրային իրավունքի անբեկանելի հիմնադրույթին»*:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Report [Pursuant to H.Res. 346 & H.Res. 438]. Communist Takeover & Occupation of Armenia, 83rd Congress 2nd Session, House of Representatives, Rept. 2684, Part 8, 31 Dec 1954, p. 14.
2. Sorensen M. Manual of Public International Law. New York, 1968, p. 38.
3. Toynbee A.J. Survey of International Affairs 1924. London, 1926, p. 491.
4. Moore J.B. Digest of International Law. Washington, 1906, v. I, p. 73.
5. Մինչև 1924թ. փետրվարի 1-ը տեղի ունեցած, այսպես կոչված, ճանաչումները չեն ստեղծում որևէ իրավական հետևանք, քանի որ դրանք չճանաչված երկների կամ իշխանությունների կողմից էին. Էստոնիա 02.02.1920; Լիտվա 30.06.1920; Լատվիա 11.08.1920; Լեհաստան 12.10.1920; Ֆինլանդիա 14.10.1920; Պարսկաստան 26.02.1921; Աֆղանստան 28.02. 1921; Թուրքիա 16.03.1921; Մոնղոլիա 05.11.1921 (Schuman F.L. American Policy toward Russia since 1917: A Study of Diplomatic History, International Law and Public Opinion. London, 1928, p. 351).
6. Papers Relating to the Foreign Relations of the United States, 1920. Washington, 1936, v. III, p. 462. (The Secretary of States (Colby) to the Ambassador in Great Britain (Davis), August 2, 1920, p. 461-3).

7. Hudson M.O. Annual Digest of Public International Law. Cambridge, 1931-1932, Case No 28.
8. Ibid, Case No 30.
9. Chen T.-C. The International Law of Recognition, London, 1951, p. 138.
10. O'Connell D.P. State Succession in Municipal Law and International Law, Cambridge, 1967, v. I, p. 211.
11. Amnesty Declaration and Protocol, signed 24 July 1923.
12. Jankovic B.M. Public International law. NY, 1984, p. 302.

*առաջին անգամ տպագրվել է ԱԶԳ օրաթերթում,*
*16 դեկտեմբերի, 2007թ., էջ 4*

## Ե. Թուրքիայի Հանրապետության կողմից Հայաստանի Հանրապետության շրջափակումը որպես միջազգային իրավունքի և ստանձնած պարտավորությունների կոպիտ խախտում

Թուրքիայի Հանրապետությունը 1993թ. հուլիսից Հայաստանի Հանրապետության նկատմամբ իրականացնում է դասական ***պատերազմական գործողություն*** *(War Measure)*,[1] քանի որ միջազգային իրավունքը ***շրջափակումը*** դիտարկում է որպես այդպիսին: Առ այսօր Հայաստանի ձգտումը՝ ապաշրջափակել իր արևմտյան և հարավային սահմանը, ոչ մի արդյունք չի տվել: Քանի դեռ մեր արդարացի պահանջը չի խարսխվել միջազգային իրավունքի վրա, այսինքն՝ չեն գործադրվել որոշակի լծակներ, մեր լալահառաչ կոչերը Թուրքիային՝ բացելու, այսպես կոչված, «հայ-թուրքական սահմանը», շարունակվելու են արհամարհվել կամ պայմանագրվելու են բացարձակապես անընդունելի նախապայմաններով: Իսկ միջազգային իրավունքի ընձեռած լծակներն առկա են: Այսպես.

**1.** Թուրքիայի Հանրապետությունն իր կնքած առաջին իսկ միջպետական փաստաթղթով՝ Լոզանի պայմանագրով (24 հուլիսի, 1923թ.), իր հավատարմությունն է հայտնել ազատ և ոչ խտրական տարանցիկ փոխադրումներն ապահովող Բարսելոնի կոնվենցիային (միջազգայնագրին), կանոնակարգին և առդիր արձանագրությանը (Բարսելոնի կոնֆերանս, ապրիլ, 1921թ.) *(Convention, Statute and supplementary Protocol, Conference of Barcelona, April 1921)*:

Լոզանի պայմանագրի 101-րդ հոդվածն արձանագրում է.

*«Թուրքիան պարտավորվում է հավատարիմ մնալ Տարանցիկ փոխադրումների ազատության վերաբերյալ կոնվենցիային և կանոնակարգին, որոնք ընդունվել են Բարսելոնում կայացած կոնֆերանսի կողմից 1921թ. ապրիլի 14-ին, ինչպես նաև միջազգային հետաքրքրություն ներկայացնող ջրուղիների աշխատակարգի վերաբերյալ նույն կոնֆերանսում 1921թ. ապրիլի 19-ին ընդունված կոնվենցիային, կանոնակարգին և առդիր արձանագրությանը:»*

Լոզանի պայմանագրի 101-րդ հոդվածում հիշատակվող Տարանցիկ փոխադրումների ազատության վերաբերյալ Բարսելոնի կանոնակարգի *(Statute on Freedom of Transit, Barcelona)* 2-րդ հոդվածը միանշանակորեն հայտարարում է, որ հանձնառու կողմը

պետք է *«նպաստի իր ինքնիշխանության (sovereignty) կամ իշխանության (authority) տակ գտնվող տարածքով՝ երկաթուղով, ջրային ճանապարհով կամ ցամաքային ուղով, միջազգային փոխադրումների իրականացմանը: Ոչ մի խտրականություն չպիտի դրվի անձանց քաղաքացիության, նավերի պատկանելության (flag), ապրանքի ծագման, մեկնակետի, մուտքի, ելքի կամ վերջնահասցեի, կամ որևէ այլ հանգամանքի պատճառով, որը վերաբերում է ապրանքների կամ նավերի սեփականությանը, բեռների պահեստավորմանը կամ բեռնափոխադրման եղանակին»*:

Լոզանի պայմանագրի մեկ այլ՝ 104-րդ հոդվածով, Թուրքիան պարտավորվում է *«հավատարիմ մնալ Բարսելոնի կոնֆերանսի կողմից միջազգային երկաթուղիների վերաբերյալ արված (20-ը ապրիլի, 1921թ.) հանձնարարականներին» (recommendations)*:

Թուրքիան վերահաստատել է Բարսելոնի Տարանցիկ փոխադրումների ազատության կոնվենցիային և կանոնակարգին հավատարիմ մնալու իր պարտավորությունը 1933թ. հուլիսի 27-ին՝ ուղղակիորեն միանալով վերոհիշյալ փաստաթղթերին:

**2.** ՄԱԿ-ի Գլխավոր համաժողովի #656 լիագումար նիստն (20 փետրվարի, 1957թ.) իր 1028(XI) բանաձևով առաջին անգամ անդրադարձել է Ծով ելք չունեցող երկրների խնդրին[2] և միջազգային առևտրի ընդլայնմանը *(Land-locked countries and the expansion of international trade)*: Բանաձևը, ճանաչելով միջազգային առևտրի զարգացման համար անծով երկրներին համապատասխան տարանցիկ հնարավորությունների տրամադրման անհրաժեշտությունը, *«կոչ է անում [ՄԱԿ-ի] անդամ երկրների կառավարություններին տարանցիկ առևտրի առումով լիակատար ընբռնում դրսևորել ծով ելք չունեցող անդամ երկրների կարիքներին, ուստի և տրամադրել համապատասխան տարանցիկ հնարավորություններ միջազգային իրավունքի և պրակտիկայի հիման վրա»:*

**3.** Թուրքիայի Հանրապետությունը 1969թ. մայիսի 25-ին միացել է Ծով ելք չունեցող երկրների տարանցիկ առևտրի կոնվենցիային (Նյու Յորք, 8 հուլիսի, 1965թ.) *(Convention on Transit Trade of Land-locked States)*: Սույն կոնվենցիայի 1-ին սկզբունքը ճանաչում է, որ *«ծով ելք չունեցող երկրներից յուրաքանչյուրի համար դեպի ծով ազատ ելքը վճռորոշ սկզբունք է միջազգային առևտրի ընդլայնման և տնտեսական զարգացման համար»*:

Նույն կոնվենցիայի 3-րդ սկզբունքը միանշանակորեն ճանաչում է անծով երկրների դեպի ծով ազատ ելքի իրավունքը. *«Որպեսզի ծովեզերք չունեցող երկրները ծովեզերք ունեցող երկրների հետ հավասարապես օգտվեն ծովերի ազատությունից, նրանք պետք է ունենան ազատ ելք դեպի ծով»:*

Ավելին, նշյալ կոնվենցիայի 4-րդ սկզբունքը հաստատակամորեն պնդում է, որ *«տարանցիկ ապրանքների համար չպիտի գանձվի որևէ մաքս»*: Իսկ *«տարանցիկ փոխադրումներ իրականացնող փոխադրամիջոցները չպիտի վճարեն հատուկ տուրքեր կամ ենթարկվեն գանձումների, որոնք ավելի բարձր են, քան վճարում են տարանցիկ երկրի տրանսպորտային միջոցները»*:

Ի դեպ, Վրաստանը ևս միացել է Ծով ելք չունեցող երկրների տարանցիկ առևտրի կոնվենցիային (2 հունիսի, 1999թ.): Հետևաբար վրացական իշխանությունները, վրացականի համեմատ հայկական բեռնափոխադրողներից կատարելով ավելի մեծ գանձումներ, աներկբայորեն ոտնահարում են իրենց իսկ միջազգայնորեն ստանձնած պարտավորությունները:

Վերոհիշյալ սկզբունքներն ամրագրված են նշյալ կոնվենցիայի 2-րդ և 3-րդ հոդվածներում: Հոդված 2-րդի 1-ին կետը նշում է. *«Համաձայն սույն կոնվենցիայի պայմանների, ազատ տարանցման իրավունք պետք է տրվի փոխադրումներին և տրանսպորտի միջոցներին: (…) Համաձայն սույն կոնվենցիայի պայմանների, ոչ մի խտրականություն չպիտի դրվի ապրանքների ծագման, մեկնակետի, մուտքի, ելքի կամ վերջնահասցեի, կամ որևէ այլ հանգամանքի պատճառով, որը վերաբերում է ապրանքների կամ նավերի սեփականությանը, ցամաքային փոխադրամիջոցներին կամ տրանսպորտի այլ օգտագործվող միջոցներին»*:

3-րդ հոդվածը վերաբերում է մաքսատուրքերին և տարանցման գանձումներին. *«Տարանցիկ փոխադրումները տարանցման երկրի իշխանությունների կողմից չպիտի ենթարկվեն մաքսատուրքերի, որևէ ներմուծման կամ արտահանման հարկերի վճարման, կամ տարանցմանն առնչվող որևէ այլ հատուկ գանձման»*:

Հայաստանի Հանրապետությունը առայժմ չի միացել Ծով ելք չունեցող երկրների տարանցիկ առևտրի կոնվենցիային: Որպեսզի մեր հանրապետությունը լիարժեքորեն ի վիճակի լինի իր շահերը պաշտպանել ազատ տարանցման հարցում, առաջին հերթին պետք է միանալ նշյալ և առդիր փաստաթղթերին:

Այսուհանդերձ, հաշվի առնելով այն, որ Թուրքիայի Հանրապետությունը, շրջափակելով Հայաստանի Հանրապետությանը, կոպտորեն ոտնահարում է.

- Լոզանի պայմանագրի (Treaty of Lausanne) (24 հուլիսի, 1923թ.) 101-րդ և 104-րդ հոդվածները;
- Բարսելոնի Տարանցման ազատության կանոնակարգի (Statute on Freedom of Transit) (20 ապրիլի, 1921թ.) 2-րդ հոդվածը;
- ՄԱԿ-ի Գլխավոր համաժողովի (Resolution of General Assembly of the UN) (20 փետրվարի, 1957թ.) №1028(XI) բանաձևը;
- Ծով ելք չունեցող երկրների տարանցիկ առևտրի կոնվենցիայի (Convention on Transit Trade of Land-locked States) (8 հուլիսի, 1965թ.) 1-ին, 3-րդ և 4-րդ սկզբունքները, ինչպես նաև 2-րդ և 3-րդ հոդվածները;

և նկատի ունենալով, որ

- ՄԱԿ-ի կանոնակարգը (հոդված 55, կետ <բ>) ՄԱԿ-ից պահանջում է խրախուսել այնպիսի պայմանների ստեղծումը, որոնք կնպաստեն *«միջազգային փնտեսական, ինչպես նաև սոցիալական, առողջապահական և հարակից խնդիրների լուծմանը և միջազգային մշակութային ու կրթական համագործակցությանը»*;
- Հելսինկիի եզրափակիչ փաստաթուղթը (մաս 10, §1) հանձնառու երկրներից պահանջում է միջազգայնորեն ստանձնած պարտավորությունների *«բարեխիղճ կատարումը, լինեն դրանք ածանցված միջազգային իրավունքի համընդհանուր ճանաչում գտած սկզբունքներից և կանոններից, թե լինեն ածանցված պայմանագրերից կամ այլ համաձայնագրերից, որոնց այդ երկրները մաս են կազմում համաձայն միջազգային օրենքի»*;

ուստի, Հայաստանի Հանրապետությունը կարող է և պարտավոր է միջազգային իրավունքի հիման վրա պաշտպանել իր շահերը. նպատակամղված ու հետևողական քայլեր իրականացնել Հայաստանն ապաշրջափակելու ուղղությամբ:

Հայաստանի Հանրապետությունը որպես ՄԱԿ-ի անդամ երկիր, ՄԱԿ-ի կանոնակարգի 35-րդ հոդվածի 1-ին կետի հիման վրա, լիովին իրավասու է *«Անվտանգության խորհրդի կամ Գլխավոր համաժողովի ուշադրությանը բերել ցանկացած վեճ կամ իրավիճակ,*

*որն իր բնույթով համապատասխանում է [սույն կանոնակարգի] 34-րդ հոդվածում վկայակոչվածին»*:

ՄԱԿ-ի կանոնակարգի 34-րդ հոդվածն արձանագրում է. *«Անվտանգության խորհուրդը կարող է քննության առնել ցանկացած վեճ կամ իրավիճակ, որը կարող է հանգեցնել միջազգային դիմակայության կամ առաջ բերել վեճ՝ որոշելու համար, թե արդյոք տվյալ վեճի կամ իրավիճակի շարունակումը կարող է վտանգել միջազգային խաղաղության և անվտանգության պահպանումը»*:

Հայաստանի Հանրապետության նախաձեռնությամբ ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի ուշադրության հրավիրումը Թուրքիայի կողմից միջազգային պարտավորությունների հետևողական չկատարման, հետևաբար միջազգային իրավունքի ակնհայտ, կոպիտ, բազմակի ու չարամիտ խախտումների վրա, լուրջ կռվան է Հայաստանի Հանրապետությունն ապաշրջափակելու քաղաքական գործընթացում:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Plano J.C., Oltan R. The International Relations Dictionary. Santa Barbara, 1988, p. 194.
2. Այն ժամանակ այդ երկրները 5-ն էին, ներկայումս դրանք 32-ն են:

*առաջին անգամ տպագրվել է ԱԶԳ օրաթերթում,*
*3 ապրիլի, 2007թ., էջ 4*

## Ջ. Հայ ժողովրդի նյութական կորուստները Հայոց ցեղասպանության ժամանակ

Հայ ժողովրդի դեմ իրականացված հանցագործությունը դեռևս Թուրքիայի կողմից պատասխանի է սպասում՝ ցեղասպանությունը պիտի ճանաչվի և վնասները պիտի հատուցվեն: Սրանք ուտոպիական նպատակներ չեն: Որպես Օսմանյան կայսրության իրավահաջորդ, թուրքական պետությունն ունի միջազգային իրավական պարտավորություններ: Համաձայն միջազգային իրավունքի, հանցագործությունների համար պատասխանատվությունն ընկնում է դրանք իրականացրած երկրի վրա, ինչպես նաև, ըստ շարունակականության և պատասխանատվության սկզբունքի՝ նրա իրավահաջորդի:

*Ֆեդերիկո Անդրեու-Գուզման, ավագ իրավախորհրդատու, Իրավաբանների միջազգային հանձնաժողով (Ժնև)*[1]

Մարդկային կյանքը գերագույն և բացառիկ արժեք է: Այն անգին է: Բնականաբար, խոսելով Հայոց ցեղասպանության մասին, մենք առաջին հերթին, և գրեթե բացառապես, շեշտել ենք հայ ժողովրդի մարդկային կորուստները: Սակայն ցեղասպանության տարիներին հայ ժողովուրդն ունեցել է նաև հսկայական նյութական կորուստներ: Անվիճելի է, որ ցեղասպանության աձանցյալ նպատակներից է եղել հայ ժողովրդի անհատական և հավաքական սեփականության յուրացումը: Միջազգային իրավունքը հռչակում է. *Ex injuria non oritur jus* (լատ.),[2] այսինքն՝ հանցագործը չպիտի վայելի իր հանցագործության պտուղները: Այլ խոսքով, *erga omnes* հանցագործության[3] հետևանքները չեն կարող ճանաչվել կամ օրինականացվել:[4]

Այս առումով, շատ կարևոր է հստակեցնել, թե գումարային դրսևորմամբ ինչքան են եղել հայ ժողովրդի նյութական կորուստները Հայոց ցեղասպանության տարիներին՝ 1915-1923թթ.: Քննության առնենք որոշ պաշտոնական փաստաթղթեր, որոնցում արձանագրվել են հայ ժողովրդի նյութական կորուստները, և ամրագրվել է նրա փոխհատուցում ստանալու իրավունքը:

1918թ. նոյեմբերի 11-ին Առաջին աշխարհամարտում ռազմական գործողությունները վերջնականապես դադարեցնող զինադադարը պաշտոնապես մտավ ուժի մեջ: Երկու ամիս անց՝ 1919թ. հունվարի 18-ին, Փարիզում իր աշխատանքներն սկսեց Փարիզի Խաղաղության վեհաժողովը *(The Paris Peace Conference)*, որի

նպատակն էր համապարփակ քննության ենթարկել պատերազմին առնչվող բոլոր հարցերը և նախապատրաստել խաղաղության պայմանագրերը: Կարևորագույն հարցերի թվին էր պատկանում պատերազմի հրահրման համար մեղավոր երկրների կողմից նյութական կորուստների փոխհատուցումը (reparations): Ըստ այդմ, Փարիզի վեհաժողովի կազմում կար հատուկ հանձնաժողով փոխհատուցումների հարցով (The Commission on Reparations of Damage /Valuation of Damage/): Գրեթե 2 ամիս տևած աշխատանքներից հետո պարզ դարձավ, որ նյութական կորուստներ են ունեցել ոչ միայն պատերազմին անմիջականորեն մասնակցած երկրները: Ուստի, մարտի 7-ին նշյալ հանձնաժողովը ձևավորեց առանձին մարմին՝ Հատուկ հանձնախումբ (Special Committee),[5] որի նպատակն էր ի մի բերել հանձնաժողովում չներկայացված երկրների և ժողովուրդների նյութական կորուստները և դրանց հատուցմանը տալ պաշտոնական ընթացք: Հատուկ հանձնախումբն ուներ հետևյալ կազմը՝ անդամներ. գեներալ ՄըքՔինսթրի (McKinstry) ԱՄՆ, գնդապետ Փիլ (Peel) Մեծ Բրիտանիա, պրն. Ժուասե (Jouasset) Ֆրանսիա; քարտուղարներ. Հ. Ջեյմս (H. James) ԱՄՆ, պրն. Փ. Լոր (P. Laure) Ֆրանսիա: Հանձնախմբի ձևավորման հաջորդ իսկ օրը՝ մարտի 8-ին, այն դիմեց Բոլիվիայի, Բրազիլիայի, Չինաստանի, Էկվադորի, Գվատեմալայի, Հայիթիի, Հեջազի (ներկայումս՝ Սաուդյան Արաբիա), Լիբերիայի, Պանամայի, Պերուի, Սիամի (ներկայումս՝ Թաիլանդ) և Հայաստանի Հանրապետության (Delegation of the Armenian Republic of the Conference of Peace) պատվիրակություններին՝ տեղեկություններ խնդրելով կրած նյութական կորուստների վերաբերյալ: Մեկ ամսվա ընթացքում Հատուկ հանձնախումբն ամփոփեց պատվիրակությունների ներկայացրած, ինչպես նաև այլ աղբյուրներից հայթայթած փաստաթղթերը և 1919թ. ապրիլի 14-ին ներկայացրեց իր նախնական զեկույցը: Թեև արևմտահայության և արևելահայության համար հաշվարկները կատարվել էին առանձին-առանձին, սակայն կորուստները ներկայացված էին միասնական վերջնական թվով: Ըստ այդմ, հայության ամբողջական նյութական կորուստը 1914-1919թթ.-ին 1919թ.-ի գներով կազմել է 19.130.982.000 ֆրանսիական ֆրանկ[6] կամ 3.693.239.768 ԱՄՆ դոլար:[7] Ըստ զեկուցագրի, հայության նյութական կորուստներն ունեին հետևյալ պատկերը.

*1. Արևմտահայաստան* (կամ ինչպես փաստաթղթում է գրված՝ Turkish Armenia).

| | | |
|---|---|---|
| ա) | գյուղաբնակների անհատական նյութական կորուստները | 4 601 610 000 |
| բ) | քաղաքաբնակների անհատական նյութական կորուստները | 3 235 550 000 |
| գ) | ոչ անհատական նյութական կորուստները | 6 761 350 000 |
| | Ընդամենը՝ | *14 598 510 000 ֆրանկ* |

*2. Հայաստանի Հանրապետության և Կովկասի այլ հայաբնակ տարածքներ.*

| | | |
|---|---|---|
| ա) | այն բնակավայրերի բնակչության կորուստները, որոնց բնակչությունն ամբողջովին տեղահանվել է | 1 831 872 000 |
| բ) | այն բնակավայրերի բնակչության կորուստները, որոնց բնակչությունը չի տեղահանվել | 1 293 600 000 |
| գ) | այլ նյութական կորուստներ | 1 407 000 000 |
| | Ընդամենը՝ | *4 532 472 000 ֆրանկ* |

**Համընդհանուր նյութական կորուստները՝ 19 130 982 000 ֆրանկ**

Անհրաժեշտ է ընդգծել, որ այս թվի մեջ ներառված չեն հայերի 1920, 1921 և 1922թթ. (համապատասխանաբար՝ Արևելյան Հայաստան, Կիլիկիա, Զմյուռնիա և այլն) նյութական կորուստները: Եթե հաշվառվեն նաև նշյալ ժամանակահատվածի կորուստները, ապա վերոնշյալ թիվն առնվազն պետք է 15-20%-ով մեծացվի:

Հարկ է նշել, որ Հայաստանի Հանրապետությունը երբեք չի հրաժարվել իրեն հասանելիք հատուցումից *(reparation)*: Անգամ հայոց պետականության կորստից հետո, երբ այն ռազմակալվեց օտարերկրյա զինված ուժերի կողմից (ռուսական 11-րդ բանակ + թուրքական 3-րդ բանակ), Հայաստանի Հանրապետության օրինական ներկայացուցիչները շարունակել են պնդել հայ ժողովրդի իրավունքների, մասնավորապես՝ նյութական փոխհատուցման վրա: Այսպես, Լոզանի պայմանագրի կնքումից (24 հուլիսի, 1923թ.) անմիջապես հետո Փարիզի վեհաժողովում Հայաստանի

Հանրապետության պատվիրակության ղեկավար Ավետիս Ահարոնյանը պաշտոնական գրությամբ (8 օգոստոսի, 1924թ.)[8] դիմել է Գլխավոր դաշնակից ուժերի արտաքին գործերի նախարարներին և վերահաստատել հայոց իրավունքներին հավատարիմ մնալը:

Հատուցումների հարցով անհրաժեշտ է առանձնացնել մի կարևոր հանգամանք. ժամանակային գործոնը բնավ հիմք չէ նյութական պարտավորություններից խուսափելու համար: Ֆինլանդիան ԱՄՆ նկատմամբ Առաջին համաշխարհային պատերազմից մնացած իր նյութական պարտավորությունների կատարումն ամբողջացրեց միայն 1969թ., Մեծ Բրիտանիան՝ միայն 1965թ.:[9] Ներկայիս Ռուսաստանը դեռևս խնդիրներ ունի ցարական Ռուսաստանի նյութական պարտավորությունների առումով: Թուրքիայի Հանրապետությունն ինքը, չնայած հսկայական զիջումներին, Օսմանյան կայսրության պարտքը կարողացավ փակել միայն 1944թ. հունիսին:[10] «Նյու Յորք Լայֆ» ապահովագրական ընկերությունն (NYLIC) իր 1875-1915թթ. շահառուների ժառանգներին փոխհատուցման հանձնառության մասին հայտարարեց միայն 2004թ. հունվարին, այն էլ երկարատև դատավարությունից հետո:

Սույն դատավարությունը,[11] թեև անմիջականորեն չի վերաբերում Հայոց ցեղասպանության ընթացքում մեր ընդհանրական նյութական կորուստների փոխհատուցմանը, այնուհանդերձ խիստ կարևոր է: Այն դատական վճռով նմանաբնույթ գործերի համար ամրագրվեց հաշվարկային փոխարժեքը, այն է՝ Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանի 1 ֆրանսիական ֆրանկը ներկայումս հավասար է 2.17 ԱՄՆ դոլարի:[12] Այսինքն, դատական նախադեպի կիրառմամբ, մենք կարող ենք հաշվարկել հայության նյութական կորուստների չափը Հայոց ցեղասպանության հետևանքով՝ 19.130.982.000 ֆրանսիական ֆրանկ × 2.17 = 41.514.230.940 ԱՄՆ դոլար:

Այսպիսով, Թուրքիայի Հանրապետության, որպես Օսմանյան կայսրության իրավահաջորդի, փոխհատուցման պարտավորությունը ներկայիս Հայաստանի Հանրապետության նկատմամբ, որպես Հայաստանի առաջին հանրապետության իրավահաջորդի, կազմում է *առնվազն **41 միլիարդ 514 միլիոն 230 հազար 940 ամերիկյան դոլար***:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Andreu-Guzman F. Senior Legal Advisor, International Commission of Jurists (Geneva), Preface, p. 9. In: Alfred de Zayas. The Genocide against the Armenians 1915-1923 and the Relevance of the 1948 Genocide Convention. Brussels-Geneva, 2005.
2. Brownlie I. Principles of Public International Law. Oxford, 5th ed., 2001, Glossary.
3. Միջազգային իրավունքի մեջ erga omnes (միջազգային ամբողջ հանրության դեմ) հանցագործություններ են համարվում jus cogens-ը (միջազգային իրավունքի անբեկանելի սկզբունքները) ոտնահարող հանցագործությունները: Միանշանակ է, որ ցեղասպանությունը jus cogens-ը ոտնահարող հանցագործություն է, հետևաբար Թուրքիայի պատասխանատվությունը, ոչ միայն հայության, այլև ողջ միջազգային հանրության առջև է:
4. Alfred de Zayas, Ibid, p. 11.
5. Հատուկ հանձնախմբի աշխատանքների մանրամասների համար տե՛ս՝ Burett P.M. Reparation at the Paris Peace Conference, From the Standpoint of the American Delegation. NY, v. II, 1965, p. 583-9.
6. Burett P.M. Ibid, p. 585.
7. 1919թ. ապրիլի 14-ի դրությամբ 5,18 ֆրանսիական ֆրանկը հավասար է եղել 1 ԱՄՆ դոլարի (19.130.982.000 FFR / 5,18 = $ 3.693.239.768 USD):
8. Պաշտոնական գրության անգլերեն թարգմանությունը տպագրվել է Նյու Յորք Թայմս օրաթերթում 1923թ. սեպտեմբերի 12-ին. Armenia Denounces Lausanne Treaty, Note to the Powers Formally Reserves All Grants under the Treaty of Sevres. The New York Times, 12 Sep 1923, p. 30.
9. Gilbert M. A History of the Twentieth Century, 1900-1933. Toronto, 1997, v. I, p. 551.
10. Оттоманский долг. Дипломатический Словарь. Москва, т. 2, 1950, с. 295.
11. Marootian et al. vs. New York Life Insurance Company. Case No. C99-12073 CAS (MCx), United States District Court, Central District of California (Los Angeles).
12. “The Settlement Agreement requires that each claim be paid in the amount of the death benefit under the policy, converted to current U.S. dollars at the rate of $2.17 U.S. Dollars per French Franc or $24.96 U.S. Dollars per British Pound.” (See: The Statement of Armenian Insurance Settlement Fund Board, 9 Sep 9, 2005, p. 3.)



*առաջին անգամ փպագրվել է ԱԶԳ օրաթերթում,*
*24 ապրիլի, 2007թ., էջ 4*

## Է. Լեռնային Ղարաբաղի հիմնահարցը ժողովուրդների ինքնորոշման և տարածքային ամբողջականության լույսի ներքո

Լեռնային Ղարաբաղի հակամարտության լուծումը, ըստ ոմանց, հնարավոր է ժողովուրդների ինքնորոշման և տարածքային ամբողջականության պահպանման իբր իրարամերժ դրույթների հաշտեցմամբ: Խոսելով տարածքային ամբողջականության մասին՝ հիմնականում վկայակոչում են 2 փաստաթուղթ՝ ՄԱԿ-ի կանոնակարգը (1945թ.) և Եվրոպայում անվտանգության և համագործակցության եզրափակիչ ակտը (1975թ.): Քննենք այդ փաստաթղթերը և տեսնենք, թե որքանով են հիմնավորված այդ հղումները:

**Ա.** Նախ քննենք ժողովուրդների ինքնորոշման և տարածքային ամբողջականության դրույթներն ըստ ՄԱԿ-ի կանոնակարգի (Charter of the United Nations)՝ վեր հանելու համար տվյալ փաստաթղթում դրանց վերապահված իրավական բովանդակությունը, հետևաբար՝ դրանց կարևորության աստիճանն ըստ միջազգային իրավունքի: Քննությունն ըստ ՄԱԿ-ի կանոնակարգի կարևորվում է նաև այն հանգամանքով, որ նշյալ կանոնակարգը գերակայություն ունի մնացած բոլոր միջազգային փաստաթղթերի նկատմամբ: Սույն հիմնադրույթն ամրագրված է կանոնակարգի 103-րդ հոդվածում և, բնականաբար, ընդունվում է ՄԱԿ-ի անդամ բոլոր երկրների կողմից:

ՄԱԿ-ի կանոնակարգի առաջին իսկ հոդվածում ամրագրված են այդ կազմակերպության նպատակներն ու սկզբունքները: 1-ին հոդվածի 2-րդ կետն արձանագրում է. *«Միավորված ազգերի նպապակներն են. 1. … 2. զարգացնել ազգերի միջև բարեկամական հարաբերությունները՝ իրավահավասարության սկզբունքի հարգանքի և ժողովուրդների ինքնորոշման հիման վրա, ինչպես նաև ձեռնարկել այլ համապատասխան քայլեր ամրապնդելու համար համընդհանուր խաղաղությունը»:*[1]

Վերոշարադրյալից հստակ է, որ ՄԱԿ-ը ժողովուրդների ինքնորոշումը (շեշտում եմ՝ ***<u>ինքնորոշումը</u>*** և ոչ թե պարզապես ինքնորոշման իրավունքը, այսինքն՝ այդ իրավունքի կենսագործումը) դիտարկում է ոչ միայն որպես իր հիմնարար սկզբունքներից մեկը, այլև հիմք ազգերի միջև բարեկամական հարաբերությունների զարգացման, ինչպես նաև համընդհանուր խաղաղության ամրապնդ-

ման համար: Հետևաբար ինքնորոշման մերժումը բարեկամությունը խաթարող և համընդհանուր խաղաղությունը սասանող քայլ է:

Ի լրումն, ՄԱԿ-ի կանոնակարգը (Հոդված 24, կետ 2) միանշանակորեն շեշտում է, որ *«Այս պարտականությունները [իմա՝ խաղաղության և անվտանգության պահպանումը] կատարելիս, ՄԱԿ-ի Անվտանգության խորհուրդը պիտի գործի Միավորված ազգերի նպատակներին և սկզբունքներին համապատասխան»*:

Այսինքն, Անվտանգության խորհուրդը պարտավորված է խաղաղության և անվտանգության պահպանումը զուգորդել և իրականացնել ժողովուրդների ինքնորոշման ճանապարհով, քանզի վերջինս հանդիսանում է ՄԱԿ-ի հռչակած նպատակներից մեկը:

Ինչ վերաբերում է տարածքային ամբողջականության պահպանմանը, ապա նման հասկացություն ներառված չէ ՄԱԿ-ի նպատակների կամ սկզբունքների մեջ: ՄԱԿ-ի կանոնակարգը (հոդված 2-րդ, կետ 4) խոսում է միայն միջազգային հարաբերություններում, արտաքին ուժի կողմից զավթումի ճանապարհով, տարածքային ամբողջականության խաթարման անընդունելիության մասին. *«Բոլոր անդամներն իրենց միջազգային հարաբերություններում պետք է ձեռնպահ մնան որևէ պետության տարածքային ամբողջականության կամ քաղաքական անկախության դեմ ուղղված ուժի սպառնալիքից կամ օգտագործումից…»*:

Այսինքն, խոսքը չի գնում պետության տարածքային ամբողջականության բացարձակ և անվերապահ պահպանման մասին, այլ միայն ՄԱԿ-ի անդամ մի պետության կողմից այլ պետության տարածքային ամբողջականության ուժային խախտման անընդունելիության մասին: Սա բնավ կապ չունի մի որևէ առանձնացող հանրության կողմից իր ինքնորոշման իրավունքի կենսագործման, այսինքն՝ սեփական տարածքով անջատման հետ, եթե, իհարկե, տվյալ հանրությունը կուզի ինքնորոշման իրավունքն իրականացնել անկախության ձևով: Անհրաժեշտ է ընդգծել, որ միմիայն տվյալ հանրության իրավունքն է որոշելու իր ինքնորոշման վերջնաձևը՝ կլինի դա անկախ երկիր, անդամակցում դաշնային պետությանը, ինքնավարություն, թե լրիվ տարրալուծում որևէ պետության կազմում:[2]

Միջազգային իրավունքի մասնագետների մեծ մասը ներկայումս ընդունում է, որ ինքնորոշումն իրավական սկզբունք է, ի տարբերություն, այսպես կոչված, տարածքային ամբողջականության: Ըստ այդմ, ակնհայտ է, որ հարցի քաղաքական կողմը չի կարող խաթարել դրա

իրավական էությունը:[3] Ավելին, ինքնորոշման սկզբունքը միջազգային իրավունքի հիմնարար սկզբունքի՝ *jus cogens*-ի, մաս է հանդիսանում,[4] հետևաբար այն անսակարկելի է ու անբեկանելի:

ՄԱԿ-ի Գլխավոր համաժողովը 637A(VII) բանաձևով (16 դեկտեմբերի, 1952թ.) հայտարարել է. *«ՄԱԿ-ի անդամ երկրները պետք է սատարեն բոլոր ժողովուրդների և ազգերի ինքնորոշման սկզբունքի [իրականացումը]»*:[5]

Խիստ կարևոր է, որ ՄԱԿ-ի կողմից ընդունած փաստաթղթերն ինքնորոշման իրավունքը [հարգումը] մեկնաբանում են որպես ՄԱԿ-ի կանոնակարգից բխող պարտավորությունների մաս:[6]

**Բ.** Մյուս կարևորագույն միջազգային փաստաթուղթը, որը հաճախ է վկայակոչվում տարածքային ամբողջականության մասին խոսելիս, Եվրոպայում անվտանգության և համագործակցության խորհրդաժողովի եզրափակիչ ակտն է (1 օգոստոսի, 1975թ.) *(Conference on Security and Co-operation in Europe, Final Act)*: Վերջինս առավելապես հայտնի է Հելսինկիի եզրափակիչ ակտ անունով *(Helsinki Final Act)*:

Ասվում է՝ իբր նշյալ փաստաթուղթն հռչակում է տարածքային ամբողջականության և սահմանների անձեռնմխելիության դրույթները: ***<u>Բնավ ո՛չ և ճիշտ հակառակը</u>***: Հելսինկիի եզրափակիչ ակտը (բաժին 1-ին, ենթաբաժին ա, մաս I, պարբերություն 2-րդ) միանշանակորեն հայտարարում է, որ պետությունների սահմանները կարող են փոփոխվել, և նշված են փոփոխման ուղիները. *«Նրանք [մասնակից պետությունները] համարում են, որ իրենց սահմանները կարող են փոփոխվել միջազգային իրավունքին համապատասխան, խաղաղ միջոցներով և համաձայնությամբ»*:

Եզրափակիչ ակտը հստակեցնում է (բաժին 1, ենթաբաժին ա, մաս II, պարբերություն 1), որ անընդունելի են արտաքին ուժի կողմից զավթման միջոցով տարածքային ամբողջականության կամ քաղաքական անկախության ոտնահարումը. *«[Եզրափակիչ ակտին] Մասնակից-երկրներն իրենց փոխհարաբերություններում, ինչպես նաև ընդհանրապես միջազգային հարաբերություններում, ձեռնպահ կմնան որևէ երկրի տարածքային ամբողջականության կամ քաղաքական անկախության դեմ ուղղված ուժի սպառնալիքից կամ կիրառումից…»*:

Այսու, ակնհայտ է, որ Հելսինկիի Եզրափակիչ ակտը, ինչպես վերը նշվեց ՄԱԿ-ի կանոնակարգի դեպքում, խոսում է ոչ թե տարածքային

ամբողջականության բացարձակ և անվերապահ պահպանման մասին, այլ միայն արտաքին զինված ներխուժման հետևանքով տարածքային ամբողջականության խաթարման անընդունելիության մասին: Այսինքն, խոսքը գնում է Հելսինկիի եզրափակիչ ակտը ստորագրած մի երկրի կողմից նույն ակտը ստորագրած մեկ այլ երկրի վրա ռազմական հարձակման կամ նման սպառնալիքի կիրառմամբ տարածքային ամբողջականությունը խախտելու կամ տվյալ երկրի քաղաքական կարգը փոխելու անընդունելիության մասին: Պետք է մշտապես հիշել, որ Հելսինկիի եզրափակիչ ակտի, ինչպես նաև դրանից առաջ ՄԱԿ-ի կանոնակարգի, բուն նպատակը եղել և մնում է միջպետական հարաբերություններում ուժի կամ ուժի սպառնալիքն արգելելու միջոցով խաղաղության և անվտանգության ապահովումը, և ոչ թե՝ սահմանների հավերժացումը կամ պետությունների տարածքներին սրբազան կովի կարգավիճակի շնորհումը: Ազգային ինքնորոշումը միջազգային իրավունքի այն հիմնարար սկզբունքներից է, որի միջոցով օրինապես փոփոխվել (ԽՍՀՄ, Չեխոսլովակիա, Գերմանիա, Հարավսլավիա և այլն) և փոփոխվելու են (Սերբիա) պետությունների սահմանները:

Ամփոփելով վերոշարադրյալը՝ կարելի է եզրակացնել, որ ո՛չ ՄԱԿ-ի կանոնակարգի մեջ և ո՛չ էլ Հելսինկիի եզրափակիչ ակտում չկան «***տարածքային ամբողջականության***» կամ «***սահմանների անձեռնմխելիության***» հիմնադրույթներ: Նշյալ փաստաթղթերում առկա է միայն փաստաթղթերը ստորագրած երկրների կողմից ուժի կամ ուժի սպառնալիքի միջոցով տարածքային ամբողջականությունը չխախտելու և սահմանները չփոփոխելու հանձնառություն:

Այսպիսով, եթե Ադրբեջանը Լեռնային Ղարաբաղի ժողովրդի կամքի ազատ և խաղաղ դրսևորմանը (ցույցեր, հանրահավաքներ, հանրաքվեներ, հայցադիմումներ, կոչեր և այլն) հակադրել է բռնի ուժը, խաղաղ բնակչության դեմ ներքին զորքերի օգտագործմամբ ձեռնարկել է ոչ համարժեք պատժիչ գործողություններ, պետականորեն կազմակերպել է Ադրբեջանի հայ քաղաքացիների ջարդեր (Սումգայիթ, Բաքու, Կիրովաբադ և այլն), իր իսկ քաղաքացիների նկատմամբ վարձկանների օգտագործմամբ (ուկրաինացիներ, աֆղաններ, ռուսներ և այլն) սանձազերծել է անողոք պատերազմ ու խայտառակ պարտություն է կրել, որի հետևանքով կորցրել է վերահսկողությունը իրենը համարվող տարածքի մի մասի նկատմամբ, ապա դա բնավ կապ չունի նշածս փաստաթղթերում

հիշատակվող տարածքային ամբողջականության պահպանման կամ սահմանների անձեռնմխելիության հասկացությունների հետ:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Նույն ձևակերպումը տեղ է գտել նաև ՄԱԿ-ի կանոնակարգի 55-րդ հոդվածում, որը վերաբերում է կայունության և բարեկեցության համար անհրաժեշտ պայմանների ստեղծմանը:
2. Brownlie I. Principles of Public International Law. Oxford, 5th ed., 2001, p. 599.
3. Նույն տեղում, էջ 600:
4. Նույն տեղում, էջ 475-6:
5. Նույն տեղում, էջ 600:
6. Նույն տեղում:

*առաջին անգամ տպագրվել է ԱԶԳ օրաթերթում,*
*22 մայիսի, 2007թ., էջ 4*

## Ը. Կրկին Հայաստանի Հանրապետության սահմանների և Լեռնային Ղարաբաղի ինքնորոշման մասին

Միջազգային իրավունքում ***սահման*** տերմինը բնորոշում է այն գիծը, որը որոշում է պետության կամ մեկ այլ միջազգային կարգավիճակ ունեցող միավորի իրավասության տարածքային ոլորտի վերջնագիծը:[1]

Ավելի պարզ ասած՝ սահմանում է այն գիծը, մինչև ուր գործում են տվյալ պետության օրենքները, իսկ դրանից անդին գործում են անպայմանորեն միջազգային իրավունքի սուբյեկտ հանդիսացող մեկ այլ պետական միավորի օրենքները: Այստեղից ակնհայտ է, որ սահմանն ածանցվում է պետականությունից, այսինքն՝ որպես միջազգային իրավունքի սուբյեկտ ճանաչված լինելուց: Անվիճելի է, որ այսօր գործող Մինսկի խմբի եռանախագահության երկրներից և ոչ մեկը՝ ներառյալ՝ ԱՄՆ և Ֆրանսիան, նախկին Սովետական Միության մեջ ընդգրկված և ոչ մի վարչական միավոր երբեք չեն ճանաչել որպես միջազգային իրավունքի սուբյեկտ:[2] Հետևաբար այդ միավորների վարչական բաժանարար գծերը միջազգային իրավունքի առումով երբեք չեն ունեցել *սահմանի* կարգավիճակ, որպեսզի այսօր հիմք լիներ խոսելու սահմանների անձեռնմխելիության մասին: Առավել ևս սա վերաբերում է բոլոր այն վարչական միավորների (ինքնավար հանրապետություններ, մարզեր և օկրուգներ) և սովետական սոցիալիստական հանրապետությունների բաժանարար գծերին, որոնց վարչական ենթակայության տակ էին գտնվում տվյալ միավորները: Միմիայն՝ վարչական ենթակայության: Անհրաժեշտ է ընդգծել, որ ԽՍՀՄ ինքնավար միավորները մաս էին կազմում միասնական և մեկ միջազգային ինքնություն *(international personality)* ունեցող ԽՍՀՄ-ին և բնավ ոչ այն հանրապետություններին, որոնց միջոցով նրանց ենթակայությունը միջնորդավորված էր պետությանը: Պետությունը մեկն էր՝ ԽՍՀՄ: Ինչպես, օրինակ, ՀՀ ցանկացած բնակավայր այսօր մաս է կազմում Հայաստանի Հանրապետությանը, թեև նրա ենթակայությունը միջնորդավորված է մարզային ենթակայությամբ:

Այսու, միջազգային իրավունքի տեսանկյունից անհեթեթ է Լեռնային Ղարաբաղի ժողովրդի ինքնորոշման իրավունքը սահմանափակել ԼՂԻՄ-ի, այսպես կոչված, սահմանով: Սա նշանակում է ստալինյան

սահմանադրությանը գերակայություն տալ միջազգային իրավունքի անբեկանելի սկզբունքների, տվյալ դեպքում *jus cogens*-ի կարգավիճակ ունեցող ազգային ինքնորոշման իրավունքի նկատմամբ:[3]

Ընդհանրապես, եռանախագահներից ոմանց հայտարարություններն առ այն, որ ճանաչում են Ադրբեջանի, այսպես կոչված, տարածքային ամբողջականությունը, կամ Ղարաբաղի ժողովրդի ինքնորոշման սկզբունքի ԼՂԻՄ տարածքով սահմանափակելու փորձը, միջազգային իրավունքի կոպիտ խախտում է: Դա նրանց չվերաբերող հարց է, և նրանք գործում են *ultra vires*, այսինքն՝ ակնհայտորեն գերազանցում են իրենց վերապահված լիազորությունները: Նրանց մանդատը միայն միջնորդությունն է, ոչ թե՝ սեփական երկրների քաղաքական տեսակետների արտահայտումը: Այսինքն, նրանք պետք է միջնորդեն, որպեսզի գտնվի փոխադարձաբար ընդունելի լուծում 2 հարցում.

ա) Լեռնային Ղարաբաղի ժողովուրդն իրականացնի իր ինքնորոշման իրավունքը;

բ) երկու նորանկախ պետությունների՝ Հայաստանի Հանրապետության և Ադրբեջանի Հանրապետության, միջև որոշվի փոխադարձաբար ընդունելի սահման:

Եթե Լեռնային Ղարաբաղի ժողովուրդն իր ինքնորոշման իրավունքն իրականացնի Հայաստանի Հանրապետությանը միանալու տարբերակով, ընդ որում ինքնորոշման դրսևորման ձևը բացառապես նրանց որոշելիքն է, ապա վերոնշյալ հարցերը կմիանան: Սահմանի փաստացի ուղեգծի հարցը 2 հարակից պետությունների որոշելիք խնդիր է՝ 2 պետությունների բացառիկ իրավասության ներքո գտնվող հարց: Այլ պետությունները չեն կարող անել այլ բան, քան ընդունել այդ երկու պետությունների որոշածը:[4]

Այստեղ անհրաժեշտ է հիշեցնել, որ միջազգային հանրության հայ-ադրբեջանական, ինչպես նաև հայ-վրացական, սահմանների վերաբերյալ քաղաքական կամքի վերջին օրինական դրսևորումը եղել է Փարիզի վեհաժողովում (1919-1920թթ.): Դրանից հետո ինչ տեղի է ունեցել տարածաշրջանում, ըստ միջազգային իրավունքի, անօրինական է *(unlawful)* և չի կարող ստեղծել իրավական հետևանքներ, քանզի Հարավային Կովկասի 3 անկախ երկրներն էլ նախ բռնազավթվել են *(occupied)*, ապաև բռնակցվել են *(annexed)*, Սովետական Միություն անունով հանդես եկող Ռուսաստանին:[5]

Այսպես, Փարիզի վեհաժողովն իր «Հայաստանի սահմանները որոշող հանձնաժողովի առաջարկների և զեկույցի» մեջ (24

փետրվարի, 1920թ.) *(Report and Proposals of the Commission for the Delimitation of the Boundaries of Armenia, 24 February 1920)*,[6] որը ստորագրել են Բրիտանական կայսրության, Ֆրանսիայի, Իտալիայի և Ճապոնիայի ներկայացուցիչները, հայտարարում է.

*«Ինչ վերաբերում է Հայաստանի պետության և Վրաստանի, ինչպես նաև Ադրբեջանի սահմանին, ապա Հանձնաժողովը գտնում է, որ ներկայումս նախընտրելի է սպասել վերոնշյալ սահմանների հստակեցման վերաբերյալ այնպիսի համաձայնության արդյունքներին, որոնց երեք հանրապետություններն իրենք կհանգեն պայմանագրերի մեջ:*

*Այն դեպքում, եթե սույն հանրապետություններն իրենց սահմանների վերաբերյալ չեն հանգի որևէ համաձայնության, ապա հարցը պետք է փոխանցվի Ազգերի լիգայի իրավարարությանը, որը կստեղծի միջդաշնակցային Հանձնաժողով՝ տեղում որոշելու վերոնշյալ սահմանները՝ հաշվի առնելով, որպես սկզբունք, ազգագրական փվյալները:»*

Հույժ կարևոր է, որ նշյալ փաստաթուղթն ընդգրկվել է ԱՄՆ նախագահ ***<u>Վուդրո Վիլսոնի Իրավարար վճռի</u>*** (22 նոյեմբերի, 1920թ.) (Arbitral Award, 22 November 1920) *Ամբողջական զեկույցի* մեջ, որպես 1-ին հավելվածի 2-րդ փաստաթուղթ *(Full Report, Annex I, No 2)*, որը վկայում է, որ Միացյալ Նահանգները ճանաչել են նշյալ փաստաթղթի իրավական էությունն ու օրինականությունը:[7]

Նշյալ դրույթները ներառվել են նաև Սևրի պայմանագրի (10 օգոստոսի, 1920թ.) մեջ, որը ստորագրել են 18 երկիր: Պայմանագրի 92-րդ հոդվածն ամրագրում է.

*«Հայաստանի և Ադրբեջանի, ինչպես նաև Վրաստանի, միջև սահմանները կորոշվեն շահագրգիռ երկրների ուղղակի համաձայնության միջոցով: Այն դեպքում, երբ շահագրգիռ երկրները մինչև 89-րդ հոդվածում հիշատակված որոշման օրը*[8] *չեն կարողանա համաձայնությամբ որոշել սահմանները, ապա խնդրո առարկա սահմանը կորոշվի Գլխավոր դաշնակից ուժերի կողմից, որոնք էլ տեղում կիրականացնեն նաև սահմանանշումը:»* [9]

Առնվազն տարօրինակ է, որ այսօր փորձ է արվում ներպետական և կուսակցական որոշումներին, որոնք առավելագույնը կարող են միակողմ օրենսդրական փաստաթղթի *(unilateral legal act)* կարգավիճակ ունենալ, գերակա կարգավիճակ տալ միջազգային փաստաթղթերի նկատմամբ, որոնք այսօր արտահայտում են ավելի

քան 20 երկրի, այդ թվում Մինսկի եռանախագահության 2 անդամ երկրների՝ Ֆրանսիայի և ԱՄՆ-ի, քաղաքական կամքը:

Վերոշարադրյալը կարելի է ամփոփել հետևյալ կերպ.

**1.** Հայաստանի ՍՍՀ և Ադրբեջանի ՍՍՀ վարչական բաժանարար գիծը երբեք սահման չի եղել, հետևաբար տեղին չէ խոսել *«սահմանների անձեռնմխելիության»* մասին:

**2.** Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի և Ադրբեջանի ՍՍՀ վարչական բաժանարար գիծը երբեք սահման չի եղել, հետևաբար տեղին չէ Լեռնային Ղարաբաղի ժողովրդի ինքնորոշման իրավունքը սահմանափակել ստալինակերտ մարզի վարչարարության պարագծով:

**3.** Մինսկի եռանախագահության անդամները լիազորված չեն դատողություններ անելու տարածքների պատկանելության կամ սահմանների վերաբերյալ. նրանք իրավարարներ չեն, նրանք միայն միջնորդներ են:

**4.** Հայ-ադրբեջանական, ինչպես նաև հայ-վրացական, սահմանների վերաբերյալ միջազգային հանրության քաղաքական կամքի վերջին օրինական դրսևորումը եղել է Փարիզի խաղաղության վեհաժողովի (1919-1920թթ.) *ad hoc* հանձնաժողովի 1920թ. փետրվարի 24-ի զեկույց-առաջարկը:

**5.** Վերոնշյալ փաստաթղթի դրույթներն ամրագրված են Սևրի պայմանագրում, հետևաբար հանդիսանում են այն ստորագրած երկրների քաղաքական կամքի դրսևորումը:

***<u>Եզրակացություն</u>***

Հայ-ադրբեջանական սահմանի վերաբերյալ միակ օրինական փաստաթուղթը Փարիզի վեհաժողովի հատուկ հանձնաժողովի 1920թ. փետրվարի 24-ի զեկույց-առաջարկն է, որով Ազգերի լիգային էր վերապահված հայ-ադրբեջանական սահմանազատումը: Ուստի, ՄԱԿ-ը՝ որպես Ազգերի լիգայի իրավահաջորդ, և մասնավորապես ՄԱԿ-ի Անվտանգության խորհուրդը՝ որպես Գլխավոր դաշնակից ուժերի տեղապահ, պարտավորություն ունեն կենսագործել այդ սահմազատումը՝ հիմք ընդունելով 1920թ. նոյեմբեր-դեկտեմբերի ազգային տեղաբաշխման տվյալները: Ներկայիս ազգային տեղաբաշխումը չի կարող հիմք հանդիսանալ սահմանազատման համար, քանզի այն առաջացել է Ադրբեջանի հանցավոր հայաթափման՝ էթնիկ զտման, քաղաքականության հետևանքով, իսկ հանցագործության հետևանքները չեն կարող առաջացնել իրավունքներ՝ ***Ex injuria non oritur jus***:[10]

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Bothe M. Boundaries. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of the Public International Law, Amsterdam, 1992, v. I, p. 443.
2. Միջազգային իրավունքը միանգամայն հստակ է պետականության հարցում: Մասնավորապես, Մոնտեվիդեոյի Պետությունների իրավունքների և պարտականությունների մասին 1933թ. կոնվենցիայի (Convention on Rights and Duties of States, Montevideo, 1933) 1-ին հոդվածն ամրագրում է պետականության 4 չափորոշիչները, որոնք պարտադիր են միջազգային իրավունքի սուբյեկտ լինելու համար: Դրանք են. ա) մշտական բնակչություն, բ) որոշակիացված տարածք, գ) կառավարություն, և դ) այլ պետությունների հետ հարաբերությունների մեջ մտնելու կարողություն: (Brownlie I. Principles of Public International Law. Oxford, 5th ed., 2001, p. 70.) Վերջին չափորոշիչը համարվում է ամենակարևորը: (Williams S., De Mestral A. An Introduction to International Law. Toronto-Vancouver, 1987, p. 45.) Ուզում եմ շեշտել, որ խոսքը գնում է ոչ թե պարզապես միջպետական հարաբերությունների իրավունքի դատարկախոս հայտարարության մասին, այլ դիվանագիտական հարաբերությունների մեջ մտնելու իրական կարողության մասին, այսինքն՝ օտար երկրներում, ինչպես նաև սեփական երկրում՝ օտար, դեսպանատների բացման և գործունեություն ծավալման մասին:
3. Այս մասին Ավելի հանգամանալից տե՛ս. Պապյան Ա. Լեռնային Ղարաբաղի հիմնահարցը ժողովուրդների ինքնորոշման և տարածքային ամբողջականության լույսի ներքո. Ազգ, 22 մայիսի 2007, էջ 4:
4. Bothe M. ... Ibid, p. 448.
5. Report [Pursuant to H.Res. 346 & H.Res. 438]. Communist Takeover & Occupation of Armenia, 83rd Congress 2nd Session, House of Representatives, Rept. 2684, Part 8, 31 Dec 1954, p. 14.
6. United States National Archives. Records of the Department of State Relating to Political Relations between Armenia and other States, 1910-1929, 760J.6715/60-760J.90C/7.
7. Հիշատակելի է, որ ԱՄՆ երբեք չի ճանաչել Վրաստանի և Ադրբեջանի առաջին հանրապետությունների անկախությունը, ի տարբերություն Հայաստանի առաջին Հանրապետության անկախության, որը ճանաչել է 1920թ. ապրիլի 23-ին: Սա պայմանավորված էր նաև այն հանգամանքով, որ նշյալ 2 պետությունները, նկրտումներ ունենալով հայաբնակ տարածքների նկատմամբ, ոտնահարում էին Վիլսոնի հռչակած ինքնորոշման սկզբունքը (Papers Relating to Foreign Relations of the United States, 1920, v. III, Washington, 1936. p. 778; Lauterpacht H. Recognition in International Law. Cambridge, 1947, p. 11):
8. Նկատի ունի ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի իրավարար վճիռը, որն ուժի մեջ է մտել 1920 թ. նոյեմբերի 22-ին:
9. Treaty of Peace with Turkey, Signed at Sevres, August 10, 1920. London, Printed and Published by His Majesty's Stationery Office, 1920, p. 26.
10. Brownlie I. Principles of Public International Law. Oxford, 5th ed., 2001, Glossary.



*առաջին անգամ տպագրվել է ԱԶԳ օրաթերթում,*
*28 հունիսի, 2007թ., էջ 4*

*տե՛ս նաև FRANCE-ARMENIE ամսագրում,*
*№ 300, 16-31 հուլիսի, 2007թ., էջ 21-22*

## Թ. Սևրի և Լոզանի պայմանագրերի իրավական փոխհարաբերությունները

1923թ. հուլիսի 24-ին կնքվել է Լոզանի պայմանագիրը: Այս պայմանագրով, ըստ էության, Քեմալ Աթաթուրքն արեց այն, ինչ տարիներ հետո պիտի աներ Ադոլֆ Հիտլերը՝ վերատեսության ենթարկեց Առաջին համաշխարհային պատերազմի որոշ արդյունքներ:[1] Այսուհանդերձ, Լոզանի պայմանագրի նշանակությունը գերագնահատվում է. այն փոփոխության չի ենթարկել, մինչևիսկ Թուրքիայի մասով, Առաջին աշխարհամարտի բոլոր արդյունքները, այլ միայն Լոզանի պայմանագիրը ստորագրած որոշ երկրների հետ վերատեսության է ենթարկել Սևրի պայմանագրի մի շարք դրույթներ:
Թեև Հայաստանի Հանրապետությունը մաս չի կազմել Լոզանի պայմանագրին, հետևաբար, վերջինս ուղղակիորեն չի վերաբերում մեր երկրին, այնուամենայնիվ այն սերտորեն առնչվում է հայ ժողովրդին: Ուստի քննենք Լոզանի պայմանագիրն ու նրա իրավական փոխհարաբերությունները Սևրի պայմանագրի հետ՝ ըստ միջազգային իրավունքի:

Իրավական տեսանկյունից Սևրի պայմանագիրը և Լոզանի պայմանագիրը երկու տարբեր փաստաթղթեր են՝ տարբեր ոչ միայն մասնակիցների շրջանակով ու հարցերի ընդգրկումով, այլև, ամենակարևորը՝ էությամբ ու նպատակներով: Սևրի պայմանագիրը վերաբերում է Առաջին համաշխարհային պատերազմին, իսկ Լոզանի պայմանագիրը՝ 1919-1922թթ. տեղի ունեցած պատերազմական գործողություններին:

Այսպես, եթե Սևրի պայմանագրի առաջնային նպատակը մի կողմից Գլխավոր դաշնակից ուժերի[2] *(Principal Allied Powers)* և Դաշնակից ուժերի[3] *(Allied Powers)*, իսկ մյուս կողմից Թուրքիայի միջև Առաջին համաշխարհային պատերազմին պաշտոնապես վերջ տալն էր և նրա փոխարինումը կայուն, արդար ու տևական խաղաղությամբ *(by a firm, just and durable peace)*, ապա Լոզանի պայմանագրի նպատակն ընդամենը Բարձր պայմանավորվող կողմերի[4] *(High Contracting Parties)* և Թուրքիայի Ազգային մեծ ժողովի կառավարության *(The Government of the Grand National Assembly of Turkey)*, և ոչ թե՝ Թուրքիայի կառավարության, միջև սոսկ պատերազմական իրավիճակի դադարեցումն էր: Վերոհիշյալից ակնհայտ է, որ Լոզանի պայմանագրում խոսքը չի գնում օրինապես հայտարարված պատերազմը, ինչպիսին էր, օրինակ, Առաջին համաշխարհայինը, խաղաղությամբ

փոխարինելու մասին, այլ սոսկ տարածաշրջանում 1914թ.-ից առկա պատերազմական իրավիճակին վերջ տալու մասին *(…to bring to a final close the state of war which has existed in the East since 1914…)*: Այսինքն, Լոզանի պայմանագիրը վերաբերում է Մուդրոսի զինադադարը (30 հոկտեմբերի, 1918թ.) ոտնահարող քեմալականների անօրինական ռազմական գործողությունները դադարեցնելուն: Սա փաստվում է նաև Լոզանի պայմանագրի 1-ին հոդվածով, որը խոսում է խաղաղության ոչ թե հաստատման, այլ վերահաստատման մասին *(…the state of peace will be definitely re-established …)*:

Այստեղ անհրաժեշտ է ընդգծել, որ միջազգային իրավունքը հստակորեն տարբերակում է ***պատերազմ*** *(war)* և ***պատերազմական իրավիճակ*** *(state of war)* հասկացությունները: Միայն ինքնիշխան երկրներն իրավունք ունեն մղելու պատերազմ. մնացած զինված բախումների *(armed conflicts)* դեպքում այն բնորոշվում է որպես պատերազմական իրավիճակ:[5] Լոզանի պայմանագրի մեջ Բարձր պայմանավորվող կողմերը հստակորեն արտահայտել են իրենց քաղաքական կամքն առ քեմալականները. վերջիններս չեն ճանաչվել որպես պետության օրինական ներկայացուցիչներ, այլ նրանց շնորհվել է միայն կռվող կողմ լինելու կարգավիճակը *(recognition of belligerency)*:

Ուրիշ բան, որ Լոզանի պայմանագիրը վերատեսության է ենթարկել 1919-1922թթ. ռազմական գործողություններին ուղղակի կամ անուղղակի մասնակից մի շարք երկրներին առնչվող դրույթներ, որոնց անդրադարձել էր նաև Սևրի պայմանագիրը: Միջազգային իրավունքը չի արգելում նոր պայմանագրի կնքումը նախկինում կնքված պայմանագրի դրույթների փոփոխմամբ կամ բազմակողմ պայմանագրի նորափոխումը *(modification)* պայմանագրին մաս կազմող 2 և ավելի կողմերի անունից: Սակայն միանշանակ է, որ նոր պայմանագիրը, ինչպես ամեն մի պայմանագիր, կարող է վերաբերել միմիայն տվյալ պայմանագրին մաս կազմող կողմերին,[6] իսկ պայմանագրի նորափոխումները կարող են վերաբերել միայն նորափոխումների մասնակիցներին և չեն կարող որևէ ազդեցություն ունենալ այլ երկրների իրավունքների և պարտավորությունների վրա:[7]

Դեռևս XIX դ. կեսերից միջազգային իրավունքը զարգացրել էր հստակ դիրքորոշում՝ պայմանագրի ոչ մի փոփոխություն կամ նորափոխում չի կարող լինել իրավականորեն վավերական առանց նախկին պայմանագրի բոլոր կողմերի մասնակցության: Լոնդոնի

կոնֆերանսի Առաջին արձանագրության առդիր Հռչակագիրը (13 մարտի, 1871թ.) *(The Declaration annexed to the First Protocol of the London Conference, 13 March 1871)*, որին մաս են կազմել 7 երկիր,[8] այդ թվում նաև Թուրքիան, միանշանակորեն հռչակում է. *«Ազգերի իրավունքի էական սկզբունքն է, որ ոչ մի երկիր իրեն չի կարող ձերբազատել պայմանագրի պարտավորություններից և ոչ էլ կարող է նորափոխել դրա պայմանները, քանի դեռ չունի բոլոր մասնակիցների բարեհաճ համաձայնությունը»*:[9]

Այսու, Հայաստանի Հանրապետությունը, բռնազավթված լինելու պատճառով, չի մասնակցել Լոզանի կոնֆերանսին և չի ստորագրել այդ պայմանագիրը: Ըստ այդմ, Լոզանի պայմանագիրը որևէ իրավական պարտավորություն չի ստեղծել և չի ստեղծում Հայաստանի Հանրապետության համար: Գործում է միջազգային իրավունքի *Res inter alios acta (մասն չես, պարտավոր չես)* սկզբունքը:

Մյուս հարցը, որին հարկ ենք համարում անդրադառնալ, այն մոլորությունն է՝ իբր Լոզանի պայմանագիրը չեղյալ է հայտարարել Սևրի պայմանագիրը: Քննություն չբռնող և միանգամայն հիմնազուրկ տեսակետ: Վիեննայի Պայմանագրերի մասին կոնվենցիան *(Vienna Convention on the Law of Treaties, 1969)*, որի մեջ ամրագրված է դարեր ի վեր միջազգային իրավունքում գործող ընթացակարգը, շատ հստակ է պայմանագրերի դադարեցման կամ կասեցման վերաբերյալ: Մասնավորապես, նշյալ կոնվենցիայի 59-րդ հոդվածի 2-րդ կետը միանշանակորեն ամրագրում է. *«Ավելի վաղ կնքված պայմանագրի գործունեությունը կհամարվի դադարեցված միայն այն դեպքում, եթե դա ակնհայտ է ավելի ուշ կնքված պայմանագրից կամ մեկ այլ ձևով հավաստվում է, որ այդպիսին է եղել կողմերի մտադրությունը»*:

Լոզանի պայմանագրից ոչ միայն ակնհայտ չէ, որ կողմերը մտադիր էին չեղյալ հայտարարել Սևրի պայմանագիրը, այլև Լոզանի պայմանագրում ընդհանրապես հիշատակում չկա Սևրի պայմանագրի մասին: Ավելի պարզ ասած՝ պայմանագիրը կարող է չեղյալ հայտարարվել ոչ այլ կերպ, եթե ոչ պայմանագիրը կնքած կողմերի, անհրաժեշտ է շեշտել՝ ***<u>բոլոր կողմերի</u>***,[10] դրա մասին միանշանակ հայտարարումով: Միջազգային իրավունքի էական սկզբունքներից է, որ *ոչ մի պետություն չի կարող ձերբազատվել պայմանագրի պարտավորություններից և ոչ էլ կարող է նորափոխել դրա պայմանները, քանի դեռ չունի մյուս պայմանավորվող բոլոր կողմերի հստակ համաձայնությունը* :[11]



*Լոզանի պայմանագրի ստորագրողները (24 հուլիսի, 1923 թ.): Հայաստանի Հանրապետությունը մասն չէր այդ պայմանագրին՝ բռնազավթված լինելու պատճառով...*

Բերենք մի պարզ, բայց խոսուն օրինակ: Մյունխենի (1938թ.) պայմանագրով Սուդեթը (Sudetenland) Չեխոսլովակիայից անցել էր Գերմանիային: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Սուդեթը վերադարձվել էր Չեխոսլովակիային: Սակայն, չնայած պարտված Գերմանիայի կնքած բազմաթիվ ու բազմաբնույթ պայմանագրերին, Մյունխենի պայմանագիրը չեղյալ չէր հայտարարվել և, հետևաբար, այն մնում էր ուժի մեջ: Եւ միայն 1973թ. դեկտեմբերին Արևմտյան Գերմանիան, որպես Երրորդ Ռայխի իրավահաջորդ, պայմանագիր կնքեց Չեխոսլովակիայի հետ, որով կողմերը չեղյալ հայտարարեցին իրենց 1938թ. կնքած պայմանագիրը:[12]

Թեև, Սևրի պայմանագրի առումով մենք չեն կարող ասել, որ այն ուժի մեջ է, քանի որ վավերացման գործընթացի թերի մնալու պատճառով այն ի սկզբանե չի մտել ուժի մեջ, այսուհանդերձ սխալ է նաև այն պնդումը, որ Լոզանը չեղյալ է հայտարարել Սևրը: Լոզանը չէր կարող դա անել, քանի որ նշյալ պայմանագիրը և՛ իր բնույթով, և՛ ստորագրողների շրջանակով էապես տարբերվում է Սևրի պայմանագրից: Այսինքն, ներկայումս Սևրի պայմանագիրը միջազգային իրավունքի վավերական փաստաթուղթ է, որը բանակցվել և ստորագրվել է օրինական ընթացակարգի համաձայն, սակայն ուժի մեջ չի մտել *(valid but not in force)*: Եթե պատկերացնենք անհնարինը, ասենք՝ Սևրի պայմանագիրը ստորագրած բոլոր երկրները վավերացնեն այն, ապա այն օրինապես կմտնի ուժի մեջ:

Այստեղ անհրաժեշտ է շեշտել, որ Սևրի պայմանագրի անկատար լինելը *(unperfected treaty)*, ինչպես միջազգային իրավունքում կոչվում են չվավերացված պայմանագրերը,[13] չի խաթարում ՀՀ իրավունքները, քանի որ Թուրքիայի պարտավորությունները ՀՀ նկատմամբ բխում են ոչ թե Սևրի պայմանագրից, այլ այդ պայմանագրից աճանցվող ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի իրավարար վճռից (22 նոյեմբերի, 1920թ.):[14]

Չնայած Լոզանի պայմանագրում չկա որևէ հիշատակում Հայաստանի և հայերի մասին, սակայն այն 2 առումով առնչվում է մեզ: Լոզանի պայմանագրի ողջ Երրորդ բաժինը (հոդվածներ 37-45) վերաբերում է Թուրքիայի ոչ-մուսուլման փոքրամասնություններին: Ընդ որում, փոքրամասնություններին վերաբերող հոդվածներին տրվել է *հիմնարար օրենքի (fundamental law)* ուժ, այսինքն՝ դրանք անբեկանելի և անփոփոխելի պետք է լինեն: Սա մի առանձին հոդվածի նյութ է, որին կանդրադառնանք առաջիկայում:

Հայաստանի երկրորդ աղերսը Լոզանի պայմանագրի հետ ի հայտ է գալիս Թուրքիայի ստեղծվելիք հանրապետության տարածքի իրավական ձևակերպման առնչությամբ: Լոզանի պայմանագրի 16-րդ հոդվածի առաջին պարբերությունը հռչակում է. *«Այսու Թուրքիան հրաժարվում է բոլոր այն փարածքների ու կղզիների փիփղոսից և դրանց նկափմամբ իր բոլոր իրավունքներից, որոնք գփնվում են սույն պայմանագրով գծած սահմաններից դուրս, ի բացառյալ նրանց, որոնց նկափմամբ սույն պայմանագրով ճանաչվել է նրա ինքնիշխանությունը: Այդ փարածքների և կղզիների ապագան լուծել են կամ կլուծեն շահագրգիռ կողմերը»*:

Քանի որ Լոզանի պայմանագիրը հստակեցնում է Թուրքիայի սահմանը Բուլղարիայի (հոդված 2.1), Հունաստանի (հոդված 2.2), Սիրիայի (հոդված 3.1) և Իրաքի (հոդված 3.2) հետ, ուստի թուրքական իրավունքներն ու տիտղոսը ճանաչվում են միմիայն այդ սահմանագծից ներս ընկած տարածքների վրա:

Լոզանի պայմանագիրը չի անդրադարձել հայ-թուրքական սահմանին: Սրա պատճառն այն է, որ այն արդեն իսկ և մեկընդմիշտ որոշված էր ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի անբեկանելի և կատարման համար պարտադիր ***իրավարար վճռով*** (22 նոյեմբերի, 1920թ.): Քանի որ իրավարար վճռով հայաստանապատկան դարձած տարածքները Լոզանի պայմանագրով ներառված չեն հետագայում (29 հոկտեմբերի, 1923թ.-ից) որպես Թուրքիայի Հանրապետություն ճանաչված երկրի սահմաններից ներս, ուստի Լոզանում Թուրքիայի անունից հանդես եկող պատվիրակությունը 16-րդ հոդվածով[15] հրաժարվել է դրա տիտղոսից և դրա նկատմամբ իրավունքներից: Լոզանի պայմանագրի 16-րդ հոդվածի 2-րդ պարբերությունը վերահաստատում է այդ իրողությունը. *«Սույն հոդվածի դրույթները չեն ներազդում բարիդրացիական հարաբերություններից բխող այն հատուկ պայմանավորվածությունների վրա,*

*որոնք կայացել են կամ կարող են կայանալ Թուրքիայի և սահմանակից երկրներից որևէ մեկի միջև»*:

Պետք է ուշադրություն դարձնել այն կարևոր հանգամանքի վրա, որ 16-րդ հոդվածի 2-րդ պարբերությունը խոսում է սահմանները հստակեցնող ոչ թե պայմանագրի կամ համաձայնագրի, այլ *«հատուկ պայմանավորվածությունների» (special arrangements)* մասին, որոնց թվին է պատկանում նաև իրավարար վճիռը:

Այսպիսով, Լոզանի պայմանագրի 16-րդ հոդվածը վերահաստատել է Սևրի պայմանագրի 90-րդ հոդվածի Թուրքիայի հրաժարումը բոլոր այն տարածքներից, որոնք Վուդրո Վիլսոնի իրավարար վճռով փոխանցվել էին Հայաստանի Հանրապետությանը:

Ամփոփելով վերոշարադրյալը՝ կարելի է անել հետևյալ եզրակացությունները.

- **Սևրի և Լոզանի պայմանագրերը իրավական երկու տարբեր փաստաթղթեր են:**
- **Լոզանի պայմանագիրն իրավասու չէր և չեղյալ չի հայտարարել Սևրի պայմանագիրը:**
- **Լոզանի պայմանագիրը, հիմնական օրենքի կարգավիճակով, ամրագրել է ոչ-մուսուլման փոքրամասնությունների իրավունքները:**
- **Լոզանի պայմանագիրը վերահաստատել է Թուրքիայի հրաժարումը իրավարար վճռով Հայաստանի Հանրապետությանը փոխանցված տարածքների տիտղոսից և իրավունքից:**

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Hudson G.F. Turkey, Greece and the Eastern Mediterranean. Oxford, 1939, p. 16.
2. Բրիտանական կայսրություն, Ֆրանսիա, Իտալիա և Ճապոնիա:
3. Հայաստան, Բելգիա, Հունաստան, Լեհաստան, Պորտուգալիա, Ռումինիա, Սերբ-Խորվաթ-Սլովենական պետություն, Չեխոսլովակիա և Հեջազ (ներկայումս՝ Սաուդյան Արաբիա) (վերջինս չի ստորագրել պայմանագիրը):
4. Բրիտանական կայսրություն, Ֆրանսիա, Իտալիա, Ճապոնիա, Հունաստան, Ռումինիա, Սերբ-Խորվաթ-Սլովենական պետություն (վերջինս չի ստորագրել պայմանագիրը):
5. Armed Conflict. In: Encyclopedia of Public International Law. Amsterdam, 1992, v. I, p. 250.
6. Vienna Convention (1969), Article 34. “A treaty does not create either obligations or rights for a third State without its consent”.
7. Vienna Convention (1969), Article 41. “Two or more of the parties to a multilateral treaty may conclude an agreement to modify the treaty as between themselves alone if: (b) the modification in question is not prohibited by the treaty and: (b) (i) does not affect the enjoyment by the other parties of their rights under the treaty or the performance of their obligations”.
8. Արձանագրությունը ստորագրած մյուս երկրներն էին՝ Ավստրո-Հունգարիա, Ֆրանսիա, Գերմանիա, Մեծ Բրիտանիա, Իտալիա և Ռուսաստան:

9. McNair (Lord). Law of Treaties. Oxford, 1961, p. 230.
10. Տե՛ս՝ Վիեննայի կոնվենցիայի (1969թ.) 59-րդ հոդվածի 1-ին կետը:
11. McNair (Lord), Ibid, p. 230.
12. Huth P.K. Standing Your Ground, Territorial Disputes and International Conflict. Detroit, 1996, p. 207-8.
13. Չվավերացված պայմանագրերի իրավական կարգավիճակի մասին Ավելի հանգամանալից տե՛ս. Reisman W.M. Unratified Treaties and Other Unperfected Acts in International Law: Constitutional Functions. Vanderbilt J Transnat Law 2002;35(3):729.
14. Վիլսոնի իրավարար վճռի մասին Ավելի հանգամանալից տե՛ս. Պապյան Ա. Վուդրո Վիլսոնի իրավարար վճիռը Հայաստանի և Թուրքիայի սահմանի վերաբերյալ. Ազգ, 28 դեկ 2006, էջ 3; Պապյան Ա. Ամերիկայի Միացյալ Նահանգների սահմանադրությունը, Հայկական հարցը և Վուդրո Վիլսոնի իրավարար վճիռը. Ազգ, 28 փետ 2007, էջ 5:
15. Ուշագրավ զուգադիպությամբ միջազգային պայմանագրերում Հայկական հարցին առնչվող և՛ առաջին (տե՛ս՝ Սան Ստեֆանոյի պայմանագիրը, 3.III.1878), և՛ վերջին հոդվածը (տե՛ս՝ Լոզանի պայմանագիրը, 24.VII.1923) կրում են միևնույն՝ 16 թիվը:

*առաջին անգամ փպագրվել է FRANCE-ARMENIE ամսագրում,*
*№ 300, 16-31 հուլիսի, 2007թ., էջ 19-21*

## Ժ. «Վուդրո Վիլսոնի 14 կետերը» և Հայաստանը

Վուդրո Վիլսոնն իր ձեռքում է պահել ԱՄՆ քաղաքական ղեկը մի խռովահույզ ժամանակաշրջանում (1913-1921թթ.), երբ առաջին աշխարհամարտի փոթորիկների մեջ և դրան հաջորդած քաղաքական վերաձևումների ընթացքում կործանվում էին կայսրություններ, պատմական ասպարեզ էին իջնում նորանոր երկրներ, ի հայտ էր գալիս աշխարհի, որպես մի փոխկապակցված ընդհանրության, նոր ըմբռնումը: Անուրանալի է ԱՄՆ նախագահի և իրավագիտության դոկտորի դերը ազգերի ինքնորոշման իրավունքի քաղաքական հասկացության առաջադրման, մշակման և աներկբա սատարման ուղղությամբ, ինչպես նաև Ազգերի լիգայի, հետևաբար դրա իրավահաջորդը հանդիսացող ՄԱԿ-ի, ստեղծման գործում:

Գրեթե ինը տասնամյակ առաջ՝ 1918թ. հունվարի 8-ին, ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնը Կոնգրեսի համատեղ նիստին դիմեց մի ուղերձով, որը քաղաքական պատմության մեջ առավելաբար հայտնի է ***«Վուդրո Վիլսոնի 14 կետերը»*** անունով *("14 Points of Woodrow Wilson")*, սակայն որի պաշտոնական անվանումն է *«Ուղերձ Կոնգրեսին, որը հայտարարում է Միացյալ Նահանգների պատերազմի նպատակներն ու խաղաղության պայմանները» ("Address to Congress, Stating the War Aims and Peace Terms of the United States")*: Այս ուղերձի մեջ, որը մինչ օրս ԱՄՆ արտաքին քաղաքականության հիմնարար փաստաթղթերից է,[1] շարադրված էին ԱՄՆ բարձրագույն իշխանավորի և արտաքին քաղաքականության համար անմիջական պատասխանատուի հայացքները հետպատերազմյան աշխարհակարգի վերաբերյալ:

Սույն փաստաթղթի 12-րդ կետն անմիջականորեն վերաբերում էր հայ ժողովրդի ապագային և ստեղծվելիք Հայաստանի Հանրապետությանը: Այն միանշանակորեն շեշտում էր Օսմանյան կայսրության ոչ թուրք ազգերի, մասնավորապես հայության, ազատորեն ապրելու և սեփական ճակատագիրը տնօրինելու իրավունքը: Ուղերձի 12-րդ կետը հայտարարում էր. *«Ներկայիս Օսմանյան կայսրության թուրքական մասի համար պետք է հավաստել անվտանգ ինքնիշխանություն, սակայն մյուս ազգերի համար, որոնք ներկայումս գտնվում են թուրքական իշխանության տակ, պետք է ապահովել կյանքի աներկբա անվտանգություն և ինքնավար զարգացման կատարելապես անխափան հնարավորություն, Դարդանելը, որպես ազատ ջրուղի, միջազ-*

*գային երաշխիքների ներքո, միշտապես պետք է բաց լինի բոլոր երկրների նավերի և առևտրի համար»:*[2]

Թեև Վիլսոնի ուղերձում առանձնանշված չէ որևէ երկիր, այսուհանդերձ, անտարակույս, ԱՄՆ նախագահի ուղերձը վերաբերում էր նաև Հայաստանին: Վիլսոնը սույն ուղերձի վրա, իր խորհրդական, գնդապետ Էդվարդ Հաուզի (Edward House) հետ միասին, աշխատել է 1918թ. հունվարի 4-ին, 5-ին և 7-ին: Այդ մասին վկայված է նախագահի խորհրդականի օրագրի մեջ: Ահա թե ինչ է արձանագրում Հաուզը 1918թ. հունվարի 7-ին. *«Երբ գրվել էր Թուրքիային վերաբերող պարբերությունը, նախագահը մտածեց, որ այն պետք է դարձնել ավելի հստակ, որ Հայաստանը, Միջագետքը, Սիրիան և այլ մասերը պետք է նշվեն անուններով: Ես չհամաձայնեցի սրա հետ, համոզված լինելով, որ այն ինչ ասված է բավարար է ցույց տալու համար դա, և ի վերջո ամեն ինչ մնաց այնպես, ինչպես ձևակերպված էր սկզբում»:*[3]

Ի լրումն և ի հաստատումն այս վկայության, վերոհիշյալ ուղերձի պաշտոնական մեկնաբանության մեջ *("Official American Commentary on the Fourteen Points")*, հղված Փարիզի խաղաղության վեհաժողովում ԱՄՆ պաշտոնական պատվիրակությանը (30 հոկտեմբերի, 1918թ.), նախագահ Վիլսոնը, անդրադառնալով իր ծրագրային ուղերձի 12-րդ կետին, տալիս է իր պատկերացումները Թուրքիայի ապագայի և նախնական դիրքորոշումը՝ Հայաստանի սահմանների վերաբերյալ. *«Հայաստանին պետք է տրվի նավահանգիստ Միջերկրականի ծովափում, և հաստատվի հովանավորող ուժ: Ֆրանսիան կարող է հավակնել դրան, սակայն հայերը կնախընտրեն Մեծ Բրիտանիան»:*[4] Իր հերթին, մեկնաբանելով ԱՄՆ նախագահի հանձնարարականը, գնդապետ Հաուզը, ով նաև Փարիզի Խաղաղության վեհաժողովում ԱՄՆ պաշտոնական պատվիրակության ղեկավարն էր, գրում է. «Մերձավոր արևելքում նախագահ Վիլսոնի նպատակն էր Կոնստանտինոպոլսի համար ապահովել միջազգային վերահսկողություն, Անատոլիան տալ թուրքերին և ստեղծել անկախ Հայաստան»:[5]

Հայերին թուրքական լծից ազատագրված տեսնելու իր այս ձգտումը նախագահ Վիլսոնը վերահաստատել է Հռոմի Բենեդիկտոս XV պապին 1918թ. դեկտեմբերի 26-ին գրած նամակում. *«Վստահեցնում եմ Ձեզ, որ խոսում եմ ոչ միայն իմ, այլև ողջ ամերիկյան ժողովրդի անունից, երբ ասում եմ, որ ոչ մի այլ ժողովրդի տառապանք այդքան խորապես չի խռովել ամերիկացիներին, որքան*

*հայերինը: Վստահաբար, իմ ամենանվիրական ձգտումներից է լինելու կարողությանս չափով մասնակցություն ունենալ, ապահովելու համար այդ անիրավված և տարաբախտ ժողովրդի օրինավոր և ամբողջական ազատագրումը անարդար լծից»:*[6]

ԱՄՆ նախագահ Վիլսոնն իր մեկ այլ ուղերձում (23 սեպտեմբերի, 1919թ.) հստակորեն նշում է. *«Հայաստանը մեկն է այն շրջաններից, որը պետք է լինի Ազգերի լիգայի խնամակալության ներքո: Հայաստանը պետք է ազատվի: Թուրքին պետք է արգելվի իշխանություն բանեցնել այնտեղ, և քրիստոնյա ժողովուրդներին ոչ միայն պետք է թույլ տրվի օգնել Հայաստանին, այլև նրանց պետք է թույլ տրվի պաշտպանել Հայաստանը»:*[7] Ավելին, նույն ուղերձի մեջ նախագահ Վիլսոնը, վկայակոչելով հայոց ջարդերը Թուրքիայում, միանշանակորեն մեղադրում է Թուրքիայի կառավարությանը. *«Թուրքական կառավարությունը պետք է ասի, որ ի վիճակի չի եղել կանխելու ահավոր ջարդերը, որոնք այդ երկիրը դարձրել են գերեզմանոց»:*[7]

Անհրաժեշտ է ընդգծել, որ Թուրքիան Վուդրո Վիլսոնի առաջադրած սկզբունքները միանշանակորեն ճանաչել է որպես խաղաղության բանակցությունների հիմք: Օսմանյան կառավարությունը զինադադարի իր պաշտոնական գրության մեջ (14.10.1918թ.) հստակորեն հայտարարել է. *«Ինքը (Օսմանյան կայսերական կառավարությունը) որպես բանակցությունների հիմք է ընդունում այն ծրագիրը, որն առաջադրվել է ԱՄՆ նախագահի կողմից Կոնգրեսին հղված 1918թ. հունվարի 8-ի ուղերձում»:*[8] Միմիայն այս պարտավորությունն ի նկատի ունենալով է, որ ամերիկացիները միջնորդել են դադարացնել ռազմական գործողությունները Թուրքիայի դեմ և կնքել Մուդրոսի զինադադարը (30.10.1918թ.):[9]

Հղումներ և ծանոթագրություն


1. Basic Documents in the United States Foreign Policy (by Brockway T.), NJ, 1968, p. 71-4.
2. President Woodrow Wilson. Address to Congress, Stating War Aims and Peace Terms (Delivered in Joint Session, 8 January 1918), p. 470. (In: The Messages and Papers of Woodrow Wilson, Vol. I, NY, 1924, p. 464-72).
3. The Diary of Colonel House, 7 Jan 1918, p. 332. (In: The Intimate Papers of Colonel House, (by Seymour C.), Boston-New York, 1928, Vol. III).
4. Official American Commentary on the Fourteen Points, p. 199-200. (In: The Intimate Papers of Colonel House, (by Seymour C.), Boston-New York, 1928, Vol. IV).
5. Commentary on Fourteen Points, Colonel House to the President [cablegram], p. 157. (In: The Intimate Papers of Colonel House, (by Seymour C.), Boston-New York, 1928, Vol. IV).
6. Quoted in: Somakian M.J. Empires in Conflict: Armenia and the Great Powers, 1895-1920. London, 1995, p. 256.

7. Addresses Delivered on Western Tour, at Tabernacle, Salt Lake City, Utah, 23 Sep 1919, p. 358-9. (In: War and Peace, Presidential Messages, Addresses, and Public Papers (1917-1924) by Woodrow Wilson. Vol. II (ed. Baker R.S., Dodd W.E.), NY, 1927, p. 346-65.
8. Scott J.B. Official Statements of War and Peace Proposals, December 1916 to November 1918. Washington, 1921, p. 419.
9. The Time, London, 2 Nov 1918, p. 7.

*24 հուլիսի, 2007թ.*

## ԺԱ. Կարսի պայմանագիրն ու Հայաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետության իրավական կարգավիճակն ըստ միջազգային իրավունքի

Կարսի պայմանագիրը (13 հոկտեմբերի, 1921թ.) հույժ կարևոր նշանակություն ունի մերօրյա հայոց պետականության համար: Ոմանց թյուրըմբռնումների և տասնամյակներ տևած նենգափոխումների պատճառով այսօր տիրում է այն սխալ տեսակետը, որ, իբր, Կարսի պայմանագիրն է որոշում, այսպես կոչված, հայ-թուրքական սահմանը: Միջազգային իրավունքի տեսանկյունից այդ փաստաթղթի քննումն ակնհայտ է դարձնում, որ այն երբեք չի ունեցել և չունի իրավական ուժ, հետևաբար չի ստեղծում պարտավորություններ կողմերի համար:

Հայաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետության (ՀՍՍՀ) իրավական կարգավիճակի և Կարսի պայմանագրի (13.10.1921թ.) օրինականության և իրավականության (legitimacy and legality) հարցերը սերտորեն շաղկապված են: Ըստ ՄԱԿ-ի պաշտոնական ուղեցույց-ձեռնարկի, *«**<u>միջազգային պայմանագրերը</u>** համաձայնություններ են **<u>միջազգային իրավունքի սուբյեկտների</u>** միջև, որոնց միջոցով նրանք ստեղծում, փոփոխության են ենթարկում կամ դադարեցնում են փոխադարձ իրավունքներն ու պարտավորությունները»*:[1] Այսինքն, պայմանագրի օրինականության և իրավականության համար անհրաժեշտ է, որ պայմանագիրը կնքող կողմերից յուրաքանչյուրը լինի միջազգային իրավունքի սուբյեկտ, այն է՝ լինի միջազգայնորեն ճանաչված պետության օրինական կառավարության լիազոր ներկայացուցիչ:[2] Այս տեսանկյունից էլ անդրադառնանք Կարսի պայմանագիրը կնքած կողմերից մեկի՝ ՀՍՍՀ-ի, ինչպես նաև Հայաստանի անունից պայմանագիրը ստորագրողների, կարգավիճակներին, դրանց իրավական հետևանքներին կամ հետևանքների բացակայությանը:

ՀՍՍՀ գոյությունը, հետևաբար դրա իրավական կարգավիճակը, բաժանվում է 2 ժամանակահատվածի.

ա) 1920թ. դեկտեմբերի 2-ից մինչև 1922թ. դեկտեմբերի 30-ը, «ՀՍՍՀ» կոչված տարածքի առանձին, բայց ոչ անկախ գոյության, ժամանակահատված և

բ) 1922թ. դեկտեմբերի 30-ից մինչև 1991թ. սեպտեմբերի 21-ը, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միություն պետության կազմում «ՀՍՍՀ» վարչատարածքային միավորի գոյության ժամանակահատված:

Հարցի անգամ հպանցիկ քննումն ակնհայտ է դարձնում այն, որ միջազգային իրավունքի տեսանկյունից, երբեք չի եղել «ՀՍՍՀ» պետություն, հետևաբար չի եղել միջազգային իրավունքի նման սուբյեկտ: Պետության ճանաչումը մեկ այլ պետության կողմից վճռորոշ նշանակություն ունի պետության կայացման գործում:[3] ՀՍՍՀ-ն իր գոյության և ոչ մի հատվածում երբեք ճանաչված չի եղել որևէ օրինական ճանաչում ունեցող պետության լիազոր իշխանությունների կողմից: ՀՍՍՀ-ի, այսպես կոչված, ճանաչումները չեն առաջացրել որևէ իրավական հետևանք, քանի որ իրենց հերթին բխել են չճանաչված երկրներից կամ վարչախմբերից:

Որպեսզի ճանաչումն օրինապես համարվի այդպիսին, այն պետք է կատարվի իր հերթին օրինականորեն ճանաչված միջազգային իրավունքի սուբյեկտի կողմից:[4] Օրինակ, 1920թ.-ին սովետական կառավարությունը ճանաչեց Բալթյան երկրները, սակայն այդ ճանաչումը չընդունվեց Դաշնակից ուժերի կողմից, այն հիմնավորմամբ, որ սովետական կառավարությունն իր հերթին օրինապես ճանաչված չէր:[5] Աբխազիայի կողմից Օսեթիայի ճանաչումը, կամ հակառակը, չի առաջացնի իրավական հետևանք, քանի որ ճանաչող կողմն իր հերթին դեռ չունի միջազգային իրավական ճանաչում: Առանց ճանաչման կառավարություններն իրավական տեսանկյունից գոյություն չունեն, հետևաբար որևէ իրավական գործունեություն (պայմանագրերի կնքում, քաղաքացիության շնորհում կամ զրկում, մասնակցություն դատական գործընթացին և այլն) չեն կարող ծավալել:[6]

Կանխելով այն շահարկումները, թե իբր ՀՍՍՀ-ն անկախ երկիր էր, քանի որ այդպես էր գրված մի շարք ներքին օգտագործման փաստաթղթերում (օրինակ՝ ՀՍՍՀ կամ ԽՍՀՄ սահմանադրություններում)՝ անհրաժեշտ է ընդգծել, որ միջազգային իրավունքում միակողմանի իրավական փաստաթղթերը *(unilateral legal acts)*, ինչ ձևով էլ դրանք արտահայտված լինեն (հռչակագրերի, հայտարարագրերի, սահմանադրությունների և այլն), չեն կարող շնորհել ավելի շատ իրավունքներ, քան դա հասնում է ըստ միջազգային իրավունքի:[7]

Ընդհանրապես, միջազգային իրավունքը շատ հստակ է պետականության հարցում: Մասնավորապես, Մոնտեվիդեոյի Պետությունների իրավունքների և պարտականությունների մասին 1933թ. կոնվենցիայի (Convention on Rights and Duties of States, Montevideo, 1933) 1-ին հոդվածն ամրագրում է ***պետականության 4 չափորոշիչները***, որոնք պարտադիր են միջազգային իրավունքի սուբյեկտ լինելու համար:

Դրանք են.[8]

ա) **<u>մշտական բնակչություն</u>**,

բ) **<u>որոշակիացված տարածք</u>**,

գ) **<u>կառավարություն</u>** և

դ) **<u>այլ պետությունների հետ հարաբերությունների մեջ մտնելու կարողություն</u>**:

Վերջին չափորոշիչը համարվում է ամենակարևորը:[9] Ուզում եմ շեշտել, որ խոսքը գնում է ոչ թե պարզապես միջպետական հարաբերությունների իրավունքի դատարկախոս հայտարարության մասին, այլ դիվանագիտական հարաբերությունների մեջ մտնելու իրական կարողության մասին, այսինքն՝ օտար երկրներում, ինչպես նաև սեփական երկրում՝ օտար, դեսպանատների բացման և գործունեության ծավալման մասին:

Այսու, Կարսի պայմանագիրը կնքելու պահին (13.10.1921թ.) չկար «ՀՍՍՀ» օրինականորեն ճանաչված պետություն, հետևաբար՝ միջազգային իրավունքի սուբյեկտ: Բնականաբար այդ տարածքային միավորը, ինչպես նաև նրանում իշխանություն հաստատած վարչախումբը, չուներ որևէ միջազգային պայմանագիր կնքելու իրավասություն:

Հիմա անդրադառնանք ՀՍՍՀ-ում 1920թ. դեկտեմբերի 2-ից իշխանություն հաստատած, ավելի ճիշտ իշխանության բերված, վարչախմբի իրավական կարգավիճակին: Սա կարևոր է, քանի որ այդ կարգավիճակից են ածանցվում Հայաստանի անունից Կարսի պայմանագիրը ստորագրած անձանց լիազորությունները: Հանրահայտ իրողություն է, որ ՀՀ օրինական իշխանությունները, ռուս-թուրքական համադրված ռազմական գործողությունների հետևանքով[10] հայտնվելով անելանելի վիճակում, ստիպված էին ընտրել չարյաց փոքրագույնը և իշխանության փոխանցման մասին համաձայնագիր կնքել «Ռ.Ս.Ֆ.Ս.Հ. լիազոր ներկայացուցիչ ընկ. Լեգրանի» հետ, որը հանդես էր գալիս «Ռ.Կ.Կ.Կ.Կ.-ի (Ռուսաստանի կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտե) լիազորությամբ, ի դեմս Ռուսաստանի Սովետական կառավարության»:[11] Միջազգային իրավունքի տեսանկյունից այստեղ կարևորն այն է, որ Հայաստանում իշխանության բերված մարդկանց խումբը, որը նախապես հանդես էր գալիս Հայհեղկոմ անունով,[12] ակնհայտորեն օտարերկրյա, այն էլ անօրինական վարչակարգի դրածո վարչախումբ էր: Կարսի պայմանագիրը ստորագրած վարչախմբի ներկայացուցիչների՝ Ասքանազ Մռավյանի և Պողոս Մա-

կինցյանի, լիազորությունը խարսխված էր ոչ թե օրինական իշխանության, այլ երկիրը բռնազավթած օտարերկրյա բանակի քաղաքական ղեկավարության կամքի վրա և իրականացվում էր պարտադրանքի տակ: Դա է փաստում նաև այն իրողությունը, որ նման քաղաքական պարտադրանքի պարտավորությունը մինչ այդ ամրագրվել էր Մոսկվայի բոլշևիկ-քեմալական 16.03.1921թ.-ի պայմանագրի 15-րդ հոդվածում:[13] Պատմական անվիճելի փաստ է, որ ՀՀ-ն բռնազավթվել էր 24.08.1920թ.-ին կնքված ռազմական դաշնագրով[14] նախատեսված բոլշևիկ-քեմալական գործողությունների հետևանքով,[15] և այդ միասնական ուժով Հայաստանում իշխանության էր բերվել անթաքույց խամաճիկային վարչախումբ: Այս առումով միջազգային իրավունքը միանշանակ է. *զավթիչ ուժի և նրա կողմից իշխանության բերված խամաճիկային կառավարության միջև (a puppet government) կնքած որևէ պայմանագիր կամ բռնազավթման ժամանակ երկրի փարածքի որևէ մասի զիջում հեփևանքազուրկ է (are not effective)*:[16] Ավելին, երկրի համար ընդհանրապես իրավական հետևանք չի կարող առաջացնել որևէ պայմանագիր կամ պարտավորություն, եթե տվյալ երկրի պաշտոնյաները բացահայտորեն գործել են օտար ուժի հրահանգով:[17]

Խիստ խնդրահարույց է նաև Կարսի պայմանագրի օրինապես վավերացված լինելու հարցը: Ըստ պայմանագրի 20-րդ հոդվածի՝ պայմանագիրը, կնքված Հայաստանի, Ադրբեջանի, Վրաստանի և Թուրքիայի կառավարությունների միջև, ենթակա էր վավերացման: Սակայն մեզ չի հաջողվել տպագիր աղբյուրներում գտնել հիշատակում ՀՍՍՀ որևէ կառույցի կողմից Կարսի պայմանագրին պաշտոնական անդրադարձած, առավել ևս՝ վավերացրած, լինելու մասին: Կարսի պայմանագրի վերաբերյալ սովետական աղբյուրները[18] նշում են միմիայն վավերագրերի փոխանակման մասին (Երևան, 11.09.1922թ.), սակայն չեն նշում Հայաստանի, Վրաստանի կամ Ադրբեջանի կողմից պայմանագրի վավերացման մասին: Օտար աղբյուրները նշում են, որ Կարսի պայմանագիրը վավերացվել է Թուրքիայի Ազգային մեծ ժողովի կողմից (16.03.1922թ., օրենք #207)[19] և, ի դեմս Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի՝ ՌՍՖՍՀ-ի կողմից:[20] Եթե սա իրողություն է, ապա, ըստ այդմ, Կարսի պայմանագիրն անօրինական է ու անվավեր նաև վավերացման գործընթացի կոպիտ խախտման պատճառով: Ըստ միջազգային իրավունքի հստակ է. *յուրաքանչյուր երկիր կարող է որևէ պայմանագիր վավերացնել միմիայն իր անունից և իր համար ու չի կարող դա անել ուրիշի փոխարեն*:

Ամփոփելով վերոշարադրյալը՝ կարելի է անել հետևյալ եզրակացությունները. **<u>Կարսի պայմանագիրն անօրինական է ու անվավեր կնքման պահից</u>**, քանի որ.

1. *Պայմանագիրը կնքող կողմերից և ոչ մեկը չի հանդիսացել միջազգային իրավունքի սուբյեկտ*:

ա) ՀՍՍՀ-ն երբեք չի եղել պետություն և, բնականաբար, երբեք ճանաչված չի եղել որպես այդպիսին: 1920-24թթ. Հայաստանն ունեցել է **<u>բռնազավթված տարածքի</u>**[21] *(occupied territory)* կարգավիճակ,[22] իսկ 1924թ.-ից, սկսած ԽՍՀՄ ճանաչումից մինչև վախճանը՝ 1991թ., **<u>բռնակցված տարածքի</u>** *(annexed territory)* կարգավիճակ:[23] Հետևաբար, միջազգային իրավունքի տեսանկյունից ՀՍՍՀ-ն ի սկզբանե չի ունեցել միջպետական հարաբերություն իրականացնելու որևէ կարողություն և իրավասություն, մասնավորապես՝ միջազգային պայմանագիր կնքելու լիազորություն:

բ) Կարսի պայմանագիրը ստորագրած Քյազիմ Կարաբեքիրը, 1921թ. չէր հանդիսանում իրավականորեն ճանաչված թուրքական պետության լիազոր ներկայացուցիչը, այլ թուրքական ռազմական դատարանի կողմից մահվան դատապարտված, պատերազմի հանցագործ Մուստաֆա Քեմալի մարտախմբի ներկայացուցիչն էր: Քեմալը 1921թ. պարզապես փախուստի մեջ գտնվող քրեական հանցագործ էր: Քեմալը, երկրի օրինական իշխանությունների դեմ խռովություն բարձրացնելու համար դեռևս 1919թ. օգոստոսի 9-ին զրկվել էր զինվորական և քաղաքացիական կոչումներից ու բոլոր պարգևներից: Իսկ 1920թ. ապրիլի 11-ին կայսրության բարձրագույն կրոնավորի՝ շեյխ-ուլ-իսլամի, ֆեթվայով (կոնդակով) մահվան էր դատապարտվել: Նրա նկատմամբ նույն տարվա մայիսի 11-ին մահապատժի վճիռ էր կայացրել նաև թուրքական ռազմական դատարանը:[24] Այս դատավճիռը 1920թ. մայիսի 24-ին հաստատվել էր սուլթանի կողմից: Ի դեպ, Քեմալի ու քեմալականների նկատմամբ քրեական հետապնդումը կարճվել է միայն 1923թ. հուլիսի 24-ին՝ ներման համապատասխան հայտարարագրով:[25]

2. *Կարսի պայմանագիրը ստորագրելու գործընթացը ոտնահարել է մի շարք jus cogens-ներ*: Ըստ այդմ, եթե սահմանի հստակեցման և հաստատման գործընթացը խախտել է միջազգային իրավունքի որևէ անբեկանելի սկզբունք՝ *jus cogens*, ապա տվյալ սահմանն անօրինական է և անվավեր *(illegal and void)*,[26] քանի որ անօրինական և անվավեր է այն ամրագրող պայմանագիրը: Այս

սկզբունքն ամրագրված է Վիեննայի Պայմանագրերի մասին օրենքի կոնվենցիայի 53-րդ հոդվածի մեջ:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Manual of Terminology of Public International Law (by Paenson I.), UN, NY, 1983, p. 38.
2. Այսպես կոչված «Թուրքիայի Ազգային մեծ ժողովի կառավարության» իրավական կարգավիճակին անդրադարձել ենք նախորդ հոդվածներից մեկում. տե՛ս՝ Պապյան Ա. Մոսկվայի ռուս-թուրքական պայմանագրի (16 մարտի, 1921թ.) փորձաքննությունն ըստ միջազգային իրավունքի. Ազգ, 16 մար 2007, էջ 4):
3. Williams S., De Mestral A. An Introduction to International Law. Toronto-Vancouver, 1987, p. 44.
4. Moore J.B. Digest of International Law. Washington, 1906, vol. I, p. 73.
5. The Secretary of States (Colby) to the Ambassador in Great Britain (Davis), 2 August 1920, p. 462. (Papers Relating to the Foreign Relations of the United States, 1920, v. III. p. 461-3).
6. Chen T.-C. The International Law of Recognition. London, 1951, p. 138.
7. Jankovic B.M. Public International Law. NY, 1984, p. 271.
8. Brownlie I. Principles of Public International Law. Oxford, 5th ed., 2001, p. 70.
9. Williams S., De Mestral A. Ibid, p. 45.
10. ԱՄՆ Սենատի թիվ 245 բանաձևը (3 հունիսի, 1924թ.) միանշանակորեն ամրագրել է, որ Թուրքիան և Ռուսաստանը միասնաբար են գործել Հայաստանի կործանման ուղղությամբ: (Turkey joined with Soviet Russia in the destruction of the Armenian State, brutally murdered hundreds of thousands of Armenians ... Senate Resolution, 245, June 3, 1924. The Armenian Review, vol. 30, No. 3-119, 1977, p. 286):
11. Վրացեան Ս. Հայաստանի Հանրապետութիւն. Թեհրան, 1982, էջ 501: Անգլերեն տեքստի համար տե՛ս՝ Vratzian S. How Armenia was Sovietized (part IV). The Armenian Review 1948;I(4):89-90.
12. 1921թ. մայիսի 21-ին Հայհեղկոմը վերանվանվել է ՀՍԽՀ Ժողկոմխորհի:
13. «Ռուսաստանը պարտավորվում է Անդրկովկասյան հանրապետությունների նկատմամբ դիմել քայլերի, որպեսզի այդ հանրապետությունների կողմից Թուրքիայի հետ կնքվելիք պայմանագրերում անպատճառ ճանաչվեն սույն Պայմանագրի այն հոդվածները, որոնք անմիջաբար վերաբերում են իրենց»: (Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում. Երևան, 1972, էջ 504):
14. Տե՛ս՝ Էնվեր փաշայի Մոսկվայից գրված նամակը (26 օգոստոսի, 1920թ.), գերմանացի գեներալ Ֆոն Սեկտին (Von Seckt): Նա մասնավորապես գրում է. «Երեկ չէ առաջին օրը մենք ստորագրեցինք թուրք-ռուսական բարեկամության դաշնագիր: Այդ դաշնագրի հիման վրա ռուսները մեզ օգնելու են փողով և բոլոր այլ միջոցներով»: (The other day we signed a Turco-Russian friendship pact. On the basis of that pact, the Russians will help us with money and all other means. From: Vemian V.,Two Little Known Letters of Enver Pasha, Written from Moscow. The Armenian Review 1948;I(3):57)
15. Բոլշևիկների և քեմալականների սերտ համագործակցության մասին տե՛ս՝ Hovannisian R.G. Armenia and the Caucasus in the Genesis of the Soviet-Turkish Entente. The Armenian Review 1974;27(1-105):33-52.
16. Fiedler W. Continuity. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of Public International Law. Amsterdam, 1992, v. I, p. 808.
17. Brownlie I. Ibid, p. 449.
18. Տե՛ս, օրինակ՝ Документы внешней политики СССР, т. 4, Москва, 1960, с. 429; Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում. Երևան, 1972, էջ 527:
19. Okcun G.A. A Guide to Turkish Treaties (1920-1964). Ankara, 1966, p. 4.

20. Soviet Treaty Series, v. I (1917-28) (compl. & ed. by Shapiro L.), Washington, 1950, p. 136.
21. Report [Pursuant to H.Res. 346 & H.Res. 438]. Communist Takeover & Occupation of Armenia, 83rd Congress 2nd Session, House of Representatives, Rept. 2684, Part 8, 31 Dec 1954, p. 14.
22. Ըստ միջազգային իրավունքի, բռնազավթող ուժը չի հանդիսանում տվյալ երկրի de jure իշխանությունը, այլ միայն իրականացնում է de facto կառավարում, հետևաբար այն լիազորված չէ հանդես գալու երկրի անունից: ("The authority exercised by an occupying power is, as far as international law is concerned, a de facto, not de jure authority. … The occupying power's ability to enforce respect for its legitimate interests is not an authority to create law." From: Bothe M. Occupation, Belligerent. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of Public International Law. Amsterdam, 1997, v. III, p. 764.)
23. "Annexation is the forcible acquisition of territory by one State at the expense of another". From: Bindschedler R.L. Annexation. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of the Public International Law. Amsterdam, 1992, v. I, p. 168.
24. Кемаль Паша, Дипломатический словарь, Москва, 1948, т. 1, с. 776.
25. Amnesty Declaration and Protocol, signed 24 July 1923, at Lausanne.
26. Bothe M. Boundaries. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of Public International Law. Amsterdam, 1992, v. I, p. 448.

*28 հուլիսի, 2007թ.*

## ԺԲ. Հայկական հուշարձանների կարգավիճակը Թուրքիայում՝ ըստ միջազգային իրավունքի

Աղթամարի սբ. Խաչ եկեղեցու շենքի նորոգումը առիթ հանդիսացավ, որ ինչեն իրարամերժ կարծիքներ: Մինչևիսկ ոմանց կողմից փորձ արվեց հարցը ներկայացնել որպես *«Թուրքիայի բարի կամքի դրսևորում»*: Քանի որ Թուրքիայի Հանրապետության տիրույթում, ինչպես նաև Թուրքիայի կողմից վերահսկվող տարածքներում, գտնվող հայկական հազարավոր հուշարձանների կարգավիճակը և դրանց նկատմամբ Թուրքիայի պարտավորությունները հստակեցված են միջազգային օրենքով և ամրագրված են միջպետական փաստաթղթերում, ուստի անհրաժեշտ է հարցի մեջ պարզություն մտցնել միջազգային իրավունքի տեսանկյունից:



Թուրքիայի Հանրապետության, որպես միջազգային իրավունքի սուբյեկտի ճանաչումը, բխում է Լոզանի (24 հուլիսի, 1923թ.) պայմանագրից՝ մաս 1-ին, հոդված 1-ին: Նույն պայմանագրի 1-ին մասի 3-րդ բաժինը (հոդվածներ 37-44) ամբողջովին նվիրված է Թուրքիայում ազգային փոքրամասնությունների պաշտպանությանը, նրանց ինքնության ու ժառանգության պահպանմանը: Այստեղ անհրաժեշտ է ընդգծել, որ ազգային փոքրամասնություններին վերաբերող վերոնշյալ 37-44 հոդվածներին Լոզանի պայմանագրի 37-րդ հոդվածով տրվել է հիմնարար օրենքի *(fundamental law)* կարգավիճակ և բացարձակ գերակայություն բոլոր այլ օրենքների, կանոնակարգերի և պաշտոնական գործողությունների նկատմամբ. *«Հոդված 37. Թուրքիան ընդունում է, որ 38-ից 44 հոդվածներում առկա պայմանավորվածությունները ճանաչվում են որպես հիմնարար օրենքներ, և որևէ օրենք, կանոնակարգ կամ պաշտոնական գործողություն չի կարող հակասել դրանց կամ խոչընդոտել այդ պայմանավորվածություններին, ինչպես նաև ոչ մի օրենք, կանոնակարգ կամ պաշտոնական գործողություն չի կարող գերակա լինել դրանց նկատմամբ»*:

Ինչպես ակնհայտ է նշյալ հոդվածից, վերոշարադրյալը խիստ կարևոր հանձնառություն է և հանդիսանում է Թուրքիայի համար միջազ-

գային անբեկանելի պարտավորություն: Անհրաժեշտ է ընդգծել, որ իրավունքի մեջ հիմնարար օրենքի խմբին են դասվում սահմանադրությունները կամ դրանց հավասարեցված իրավական փաստաթղթերը:

Քանի որ սույն հոդվածի նպատակներից դուրս է քննել Լոզանի պայմանագրով ամրագրված ազգային փոքրամասնությունների, մասնավորապես՝ հայերի, բոլոր իրավունքները, ուստի մենք կանդրադառնանք միայն խնդրո առարկային՝ ազգային փոքրամասնությունների կրոնական ազատություններին և նրանց կրոնական կառույցների նկատմամբ Թուրքիայի պարտավորություններին:

Լոզանի պայմանագրի 38-րդ հոդվածի երկրորդ մասով Թուրքիայի բոլոր բնակիչներին մասնավոր կամ հանրային կյանքում տրվում է հավատքի, կրոնի կամ դավանանքի ազատություն *(All inhabitants of Turkey shall be entitled to free exercise, whether in public or private, of any creed, religion or belief)*: Իսկ պայմանագրի 40-րդ հոդվածով նրանց տրվում է կրոնական հաստատություններ հիմնելու, գործածելու և վերահսկելու իրավունք:

Ավելին, Լոզանի պայմանագրի 42-րդ հոդվածի 3-րդ մասով *«Թուրքական կառավարությունը պարտավորվում է լիակատար պահպանության տակ առնել եկեղեցիները, սինագոգները, գերեզմաններն ու նշյալ փոքրամասնությունների այլ կրոնական հաստատությունները»*: Բնականաբար *«լիակատար պահպանությունն»* իր մեջ ներառում է ոչ միայն եկեղեցիները չքանդելն ու չավիրելը, այլև դրանց ամրացումն ու նորոգումը:

Հետևաբար, սբ. Խաչ եկեղեցու շենքի մասնակի նորոգումը ոչ թե *«բարի կամքի դրսևորում»* է, այլ Թուրքիայի կողմից հիմնարար օրենքի կարգավիճակով ստանձնած միջազգային պարտավորությունների խիստ թերի և ուշացած կատարում՝ որոշակի քաղաքական շահարկման նկատառումով:

Հիմա ամենահետաքրքրականը: Իսկ ովքե՞ր են եղել և մնում Թուրքիայի կողմից ստանձնած պարտավորությունների կատարման երաշխավորները: Լոզանի պայմանագրի 44 հոդվածի 1-ին մասը նշում է. *«Թուրքիան համաձայնվում է, որ Թուրքիայի ոչ մուսուլմաններին վերաբերող սույն բաժնի նախորդող հոդվածները հանդիսանում են միջազգային պարտավորություններ և դրանց կատարումը պետք է երաշխավորվի Ազգերի լիգայի կողմից»*: Հատուկ պարտականություններ են դրվում Ազգերի լիգայի

Խորհրդի *(Council of the League of Nations)* անդամների վրա՝ Մեծ Բրիտանիա, Ֆրանսիա, Իտալիա և Ճապոնիա:

Այսինքն, ներկայումս Միացյալ ազգերի կազմակերպությունը (ՄԱԿ) և Անվտանգության խորհուրդը, որոնք ժառանգել են Ազգերի լիգայի և Խորհրդի ոչ միայն իրավունքները, այլև պարտականությունները, հանդիսանում են Թուրքիայում հայկական փոքրամասնության և, մասնավորապես, հայկական հուշարձանների պահպանման հովանավորներն ու երաշխավորները:

Ի լրումն այս ամենի, նշյալ 44-րդ հոդվածի 4-րդ մասն ամրագրում է ցանկացած տարաձայնությունը դատական կարգով լուծելու հնարավորությունը. *«Թուրքիան նաև համաձայնվում է, որ օրենքին կամ սույն հոդվածներից բխող որևէ փաստին վերաբերող ցանկացած փարակարծություն, որը կառաջանա թուրքական կառավարության և պայմանագիրը ստորագրած որևէ երկրի կամ Ազգերի լիգայի Խորհրդի որևէ անդամի միջև, պետք է համարվի միջազգային բնույթի վեճ, ինչպիսին ամրագրված է Ազգերի լիգայի կանոնակարգի 14-րդ հոդվածով: Թուրքական կառավարությունը սույնով իր համաձայնությունն է հայտնում, որ նման վեճը, եթե մյուս կողմն այդպես պահանջի, պետք է փոխանցվի Արդարության միջազգային մշտական դատարանի տնօրինմանը: Արդարության միջազգային մշտական դատարանի վճիռը պետք է լինի վերջնական և պետք է ունենա այնպիսի լիազորություն և հետևանք, ինչպիսին [Ազգերի լիգայի] Կանոնակարգի 13-րդ հոդվածով կայացված վճիռները»*:

Այսինքն, Լոզանի պայմանագիրը ստորագրած ցանկացած երկիր (Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան, Իտալիան, Ճապոնիան, Ռումինիան և Հունաստանը) կամ Խորհրդի (ներկայումս՝ Անվտանգության խորհրդի) անդամ որևէ երկիր (5 մշտական և 10 ոչ մշտական անդամներից յուրաքանչյուրը) հայկական հուշարձանների ավիրման հարցով իրավասու է Թուրքիայի դեմ հայցով դիմել Արդարության միջազգային մշտական դատարան (ներկայումս՝ Արդարության միջազգային դատարան): Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան, Իտալիան և Ճապոնիան նաև պարտավորված են վերահսկել Թուրքիայի կողմից ազգային փոքրամասնությունների, այդ թվում նաև հայերի, հանդեպ Թուրքիայի ստանձնած պարտավորությունների բարեխիղճ կատարումը:

Խախտելով ազգային փոքրամասնությունների իրավունքները՝ Թուրքիան սասանում է իր գոյության իրավական հիմքերը, քանի

որ, ըստ միջազգային օրենքի, պայմանագրերը կատարվում են ամբողջության մեջ. պայմանագրի մասնակիցներից մեկի կողմից հանձնառությունների չկատարումն ազատում է մյուս կողմին հանձնառությունների կատարումից: Պայմանագիրը փոխադարձ պայմանավորվածության արդյունք է, հետևաբար, եթե Լոզանի պայմանագիրը ստորագրած կողմերից մեկը (Բրիտանական կայսրությունը, Ֆրանսիան, Իտալիան, Ճապոնիան, Ռումինիան և Հունաստանը) ճանաչել է Թուրքիայի Հանրապետությունը, նրա արևմտյան ու հարավային սահմանները, ապա մյուս կողմը (Թուր-քիան) դրա դիմաց ստանձնել է որոշակի պարտավորություններ՝ մասնավորապես 37-44 հոդվածների մեջ ամրագրված ազգային փոքրամասնության իրավունքների հարգումը: Հետևաբար, չկատարելով իր ստանձնած պարտավորությունները, Թուրքիան հարցականի տակ է դնում Լոզանի ողջ պայմանագրի վավերակա-նությունը: Պայմանագրերի օրենքի վերաբերյալ Վիեննայի կոնվեն-ցիան *(Vienna Convention on the Law of Treaties, 1969)* միանշանակ է այդ հարցում. *«Հոդված 60, 2. Բազմակողմ պայմանագրի մասնակիցներից մեկի կողմից պայմանագրի կոպիտ խախտումը իրավունք է տալիս. (ա) մյուս մասնակիցներին, միաձայն համաձայնությամբ, կասեցնել պայմանագրի գործունեությունը ամբողջությամբ կամ մասամբ, կամ լիովին դադարեցնել այն»*:

Այսու, թուրքական իշխանությունների կողմից հայկական հուշարձանների նպատակային ավիրումը սոսկ բարոյականության հարց չէ, այլ միջազգային հանձնառությունների կոպիտ խախտում: Մեկ եկեղեցու շենքի մասնակի նորոգումը չի կարող փարատել Թուրքիայի Հանրապետության կողմից Լոզանի պայմանագրի հետևողական, բազմակի և շարունակվող ոտնահարումների փաստը:

*01 օգոստոսի, 2007թ.*

## ԺԳ. Նախկին սովետական հանրապետությունների ճանաչման, ինքնորոշման և սահմանների մասին

Հայ քաղաքական մտքի դաշտում կան բազմաթիվ դեգերող մոլորություններ, այսինքն՝ շատերը կրկնում են մտքեր, որոնք բնավ չեն համապատասխանում իրականությանը և որևէ հիմք չունեն միջազգային իրավունքի մեջ: Դրանցից է այն թյուրըմբռնումը՝ իբր Եվրամիության պետությունները, 1991-1992թթ. ճանաչելով նախկին Սովետական Միության հանրապետությունների անկախությունը, միաժամանակ ճանաչել են այդ պետությունների սահմանների անձեռնմխելիությունը:

1991թ. դեկտեմբերի 16-ին Բրյուսելում Եվրոպական համայնքի (European Community)[1] երկրների արտաքին գործոց նախարարները Եվրոպական խորհրդի խնդրանքով[2] իրենց դիրքորոշումն ամփոփեցին անկախության ուղին բռնած երկրների ճանաչման գործընթացի նկատմամբ մեկ միասնական հռչակագրի մեջ: Փաստաթուղթը պաշտոնապես անվանված է. *Հռչակագիր «Արևելյան Եվրոպայում և Սովետական Միության [տարածքում] նոր պետությունների ճանաչման ուղենիշների» վերաբերյալ (Declaration on the “Guidelines on the Recognition of New States in Eastern Europe and in the Soviet Union”)*: Միջազգային իրավունքում հռչակագիրը *(declaration)*,[3] անկախ ստորագրողների քանակից, միակողմանի փաստաթուղթ է *(unilateral act)*: Այսինքն, այն քաղաքական դիրքորոշման արտահայտում է, սակայն կատարման համար պարտադիր իրավական փաստաթուղթ չէ, թեև կարող է լինել նաև այդպիսին:[4] Քանի որ Եվրոխորհուրդը, որի խնդրանքով մշակվել է միասնական դիրքորոշումը, ինչպես նաև արտգործնախարարների հավաքը, պաշտոնական կառույցներ չեն (որովհետև նրանց գոյությունն ու լիազորությունները ամրագրված չեն ԵՄ պայմանագրերի մեջ), ուստի նշյալ փաստաթուղթն առավելապես քաղաքական բնույթի է, քան իրավական:

Հռչակագրի նախաբանում արտահայտված է փաստաթղթի էությունը. *«Համայնքը և դրա անդամ երկրները վերահաստատում են իրենց հավատարմությունը Հելսինկիի եզրափակիչ փաստաթղթի և Փարիզի ուխտի սկզբունքների նկատմամբ, <u>հատկապես՝ ինքնորոշման</u>»:*

Այստեղ առկա է կարևոր մի քանի հանգամանք.

ա) վերոնշյալ փաստաթղթի հիմքը հավատարմությունն է ազգերի ինքնորոշման սկզբունքի նկատմամբ, քանի որ նախաբանում առանձնանշված է միայն այդ սկզբունքը;

բ) անկախացող երկրների ճանաչումը ինքնորոշման սկզբունքի իրականացում է;

գ) անկախության ճանաչումը պայմանավորված չէ տվյալ երկրի մեջ գոյություն ունեցող վարչական միավորի կարգավիճակով կամ ընդհանրապես որևէ վարչական միավորի առկայությամբ կամ սահմաններով;

դ) չկա որևէ հիշատակում, այսպես կոչված, տարածքային ամբողջականության մասին:

Մինչև փաստաթղթի կետերի վերլուծմանն անցնելը, անհրաժեշտ եմ համարում շեշտել միջազգային իրավունքի մի խիստ կարևոր սկզբունք. փաստաթղթերը գործում են ամբողջության մեջ, և դրանց կետերը փոխկապակցված են: Այսինքն, եթե կողմերից մեկը չի իրականացնում պարտավորություն պարունակող որևէ դրույթ, դրանով նա խաթարում է փաստաթղթի ողջ էությունը և չի կարող վկայակոչել տվյալ փաստաթղթի իր համար իրավունքները պարունակող կետերը: Կարճ ասած՝ ***ամեն ինչ կամ ոչինչ***:

Հռչակագրի առաջին կետն իր *«հարգանքն է հայտնում ՄԱԿ-ի կանոնակարգի հիմնադրույթների, Հելսինկիի եզրափակիչ փաստաթղթի և Փարիզի ուխտի պարտավորությունների նկատմամբ, հատկապես նրանց, որոնք վերաբերում են <u>օրենքի իշխանությանը, ժողովրդավարությանը և մարդկային իրավունքներին</u>»*:

Ակնհայտ է՝ այստեղ առանձնանշված են <u>**օրենքի իշխանությունը, ժողովրդավարությունը և մարդկային իրավունքները**</u>: Սկզբունքներ, որոնք ո՛չ անկախացումից առաջ, և ո՛չ էլ անկախացումից հետո երբեք չեն հարգվել Ադրբեջանի կողմից, հատկապես այդ երկրի հայազգի քաղաքացիների նկատմամբ:

Երկրորդ կետը խոսում է *«էթնիկ, ազգային խմբերի և փոքրամասնությունների իրավունքների երաշխավորման մասին»*: Իրավունքներ, որոնք դարձյալ երբեք չեն հարգվել Ադրբեջանի կողմից:

Միայն երրորդ կետում կա հիշատակում *«բոլոր սահմանների անձեռնմխելիության հարգանքի»* մասին, և միաժամանակ նշված է դրանց փոփոխելու հնարավորությունը՝ *«խաղաղ ճանապարհով և ընդհանուր համաձայնությամբ»*: Քանի որ, ինչպես նշեցինք վերը,

Հռչակագիրը խարսխված է Հելսինկիի եզրափակիչ փաստաթղթի, Փարիզի ուխտի, ինչպես նաև ՄԱԿ-ի կանոնակարգի սկզբունքների վրա, ուստի *«սահմանների անձեռնմխելիություն»* հասկացությունը պետք է մեկնաբանվի ըստ այդ փաստաթղթերի: Իսկ այդ փաստաթղթերում խոսքը բնավ էլ չի գնում սահմանների բացարձակ անձեռնմխելիության մասին, այլ *«ուժի կամ ուժի սպառնալիքի»* կիրառմամբ դրանց փոփոխելիության անընդունելիության մասին:[5] ԵՄ երկրները խնդրո առարկա Հռչակագրով, հաշվի առնելով, որ ԽՍՀՄ կազմալուծումով առաջանում էր իրավական վակուում, մինչև անկախացող երկրների կողմից վերոհիշյալ հիմնարար փաստաթղթերի ստորագրումը, այդ փաստաթղթերի երաշխիքները տարածում էին անկախացող երկրների վրա, որպեսզի վերջիններիս զերծ պահեին արտաքին զինված հարձակումներից: Օրինակ, Աֆղանստանը չհարձակվեր Թուրքմենստանի վրա, կամ Ֆինլանդիան՝ Ռուսաստանի: Այստեղ անհրաժեշտ է ընդգծել, որ *«սահման»* ասածն այն է, ինչ սովետական իրականության մեջ հիշատակվում էր և ամրագրված էր օրենքով որպես *«պետական սահման» (государственная граница)*: Այսինքն, կար սովետաթուրքական սահման և չկար հայ-թուրքական սահման, կար սովետալեհական սահման և չկար բելառուս-լեհական սահման: Հետևաբար չկար, միջազգային իրավունքի առումով և ոչ թե կենցաղային ընկալմամբ, հայ-ադրբեջանական սահման, կամ բելառուս-ռուսական սահման:

Ամփոփելով Եվրամիության կողմից նախկին սովետական և արևելաեվրոպական մի շարք երկրների ճանաչման ուղենիշների քննությունը՝ կարելի է անել հետևյալ եզրակացությունները.

**1.** Փաստաթղթի հիմքն ինքնորոշման սկզբունքն է, որը չի սահմանափակված միայն կամ որևէ միութենական հանրապետությունով կամ վարչական այլ միավորով:

**2.** Հաջորդականության սկզբունքի կիրառմամբ օրենքի իշխանությանը, ժողովրդավարությանը և մարդկային իրավունքներին մնացած բոլոր սկզբունքների նկատմամբ տրվել է առաջնային կարգավիճակ:

**3.** Որպես երկրորդ հիմնական սկզբունք Հռչակագիրը վկայակոչում է էթնիկ, ազգային խմբերի և փոքրամասնությունների իրավունքների երաշխիքը:

**4.** Ուղենիշների մեջ չկա ճանաչվող կազմավորումների սահմանների բացարձակ անձեռնմխելիության սկզբունք, այլ՝ հարգանք այդ

սկզբունքի նկատմամբ և սահմանների փոփոխման հնարավորություն խաղաղ ճանապարհով և ընդհանուր համաձայնությամբ:

**Հետևաբար.**

ա) *«սահման»* ասածը և *«սահմանների անձեռնմխելիություն»* ասածը պետք է հասկանալ միջազգային իրավունքի տեսանկյունից և չցուցաբերել կամայական մոտեցում;

բ) Ադրբեջանը, որը կոպտորեն, բազմիցս և հետևողականորեն ոտնահարել և ոտնահարում է Հռչակագրի մեջ ամրագրված սկզբունքները, չի կարող վկայակոչել նույն փաստաթղթի միայն մի կետը և փորձ անել իր իրավունքները պաշտպանել դրանով:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Եվրոպական Միության անվանումը մինչև 1993թ.-ի նոյեմբերի 1-ը:
2. Չշփոթել Եվրոխորհրդի (Council of Europe) կամ Եվրոմիության խորհրդի (Council of the European Union) հետ: Եվրոխորհուրդը, որը հաճախ վկայվում է որպես Եվրոպական գագաթաժողով (European Summit) գումարվում է տարին առնվազն 4 անգամ և ներառում է ԵՄ անդամ երկրների պետության կամ կառավարության ղեկավարներին և Եվրոհանձնաժողովի նախագահին (President of European Commission):
3. Fleischhauer C.-A. Declaration. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of Public International Law. Amsterdam, 1992, v. I, p. 971.
4. Fiedler W. Unilateral Acts in International Law. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of Public International Law. Amsterdam, 2000, v. IV, p. 1018.
5. Այդ մասին Ավելի հանգամանալից տե՛ս. Պապյան Ա. Լեռնային Ղարաբաղի հիմնահարցը ժողովրդների ինքնորոշման և տարածքային ամբողջականության լույսի ներքո. Ազգ, 22.05.2007, էջ 4; Պապյան Ա. Կրկին Հայաստանի Հանրապետության սահմանների և Լեռնային Ղարաբաղի ինքնորոշման մասին. Ազգ, 28.06.2007, էջ 4:

*03 օգոստոսի, 2007թ.*

## ԺԴ. Հայաստանի Հանրապետության և Վրաստանի սահմանը՝ ըստ միջազգային իրավունքի

Խնդրո առարկա հարցը լուսաբանելու համար պետք է պատասխանենք առնվազն 3 ենթահարցի.

ա) Ինչպե՞ս է Ջավախքը հայտնվել Վրաստանի վարչական ենթակայության տակ;

բ) Ինչքանո՞վ է Վրաստանի ենթակայության տակ Ջավախքի ընդգրկումը խարսխված միջազգային իրավունքի վրա; և

գ) Միջազգային հանրությունն իր լիազոր կառույցների միջոցով ի՞նչ դիրքորոշում է արտահայտել և ի՞նչ սկզբունքներ է մշակել հայ-վրացական սահմանազատման համար:

Նախ՝ ինչպե՞ս Ջավախքը հայտնվեց Վրաստանի վարչական ենթակայության տակ:

1921թ. հուլիսի 7-ին Թիֆլիսում տեղի ունեցավ Ռուսաստանի Սոցիալ-Դեմոկրատական (բանվորական) Կուսակցության Կովկասյան բյուրոյի պլենումի նիստ, մասնակցությամբ՝ Ստալինի, Օրջոնիկիձեի, Մախարաձեի, Կիրովի, Նարիմանովի, Մյասնիկյանի, Նազարեթյանի՝ ձայնի իրավունքով, և Օրախելաշվիլու, Սվանիձեի, Մռավյանի՝ առանց ձայնի իրավունքի: Օրակարգում դրված էր երկու հարց. I. Վրաստանին կամ Հայաստանին Լոռվա Չեզոք գոտու[1] միացման մասին: II. Հայաստանին (*sic!* Հայաստանին) Ախալքալաքի և Խրամի (Ծալկայի) շրջանների միացման մասին:

Առաջին հարցի շուրջ Կավբյուրոյի պլենումը 6 կողմ, 1 ձեռնպահ քվեներով որոշեց Լոռու Չեզոք գոտին միացնել Հայաստանի ՍովետականՍոցիալիստական Հանրապետությանը: Երկրորդ հարցը որոշվեց փոխանցել Վրաստանի Կոմկուսի կենտկոմ, վերջինից այդ մասին ստացվելիք եզրակացությունը դնել Կավբյուրոյի հաջորդ նիստի քննարկմանը:[2] 1921թ. հուլիսի 16-ին տեղի ունեցավ Վրաստանի կոմկուսի կենտկոմի բյուրոյի նիստ՝ Մախարաձեի, Մդիվանու և Օրախելաշվիլու մասնակցությամբ: Նիստում քննարկվեցին վերոհիշյալ 2 հարցերը: Առաջին հարցի կապակցությամբ, հաշվի առնելով Կավբյուրոյի արդեն կայացված հստակ դիրքորոշումը, որոշվեց համաձայնություն տալ Լոռու Չեզոք գոտու՝ Սովետական Հայաստանին միացմանը: Անհրաժեշտ է նշել, որ տվյալ որոշումը կայացնելու պահին Լոռվա Չեզոք գոտին արդեն 5

ամիս՝ 1921 թ. փետրվարի 16-ից, գտնվում էր 11-րդ բանակի հայկական զորամիրավորումների վերահսկողության ներքո: Երկրորդ հարցի՝ Ջավախքի, վերաբերյալ ընդունվեց հետևյալ որոշումը. *«Թիֆլիսի հետ Ախալքալաքի շրջանի ունեցած քաղաքական, ինչպես նաև փնտեսական կապերի նկապառումներից ելնելով՝ ընկերներ հայերի առաջարկությունը համարել անընդունելի»*:[3] Առանձնանշելի է, թե որքանով է սույն ձևակերպումը նման Լեռնային Ղարաբաղը Ադրբեջանին հանձնելու Կավբյուրոյի ընդամենը 11 օր առաջ՝ 1921թ. հուլիսի 5-ին, կայացված, որոշմանը:

Ահավասիք, այսպես կոչված իրավական հիմքը, որով Ջավախքը դրվել է Վրաստանի ՍՍՀ ենթակայության ներքո: Հարց է ծագում. Արդյո՞ք վրացի 3 կոմունիստների կարծիքը բավարար իրավական հիմք է՝ որոշելու հայության մի ստվար հատվածի՝ ջավախահայության, ճակատագիրը: Արդյո՞ք 3 կոմունիստների որոշումը բավարար հիմք է տարածքի տիտղոսը *(title to territory)* հստակեցնելու համար: Արդյո՞ք այս 3 կոմունիստների կարծիքը իրավասու էր չեղյալ հայտարարելու Փարիզի խաղաղության վեհաժողովի հատուկ հանձնաժողովի 1920թ. փետրվարի 24-ի հայ-վրացական և հայ-ադրբեջանական սահմանազատման *(delimitation)* առաջարկված սկզբունքները: Իհարկե՝ **ՈՉ**:

Անհրաժեշտ է ընդգծել, որ հետսովետական Վրաստանի բոլոր ղեկավարներն ու կառավարությունները միանշանակ բացասական գնահատականներ են տվել Վրաստանում կոմունիստական տիրապետության ժամանակաշրջանին (1921-1991թթ.), մերժել են այն, իրավացիորեն այդ ժամանակաշրջանը համարել օտարերկրյա ռազմական ուժի կողմից վրաց ժողովրդի պետականազրկման, երկրի ապօրինի բռնազավթման (1921թ. փետրվարից), ապաև բռնակցման (1922թ. դեկտեմբերից) տարիներ: Միջազգային իրավունքի տեսանկյունից միանգամայն օրինաչափ գնահատականներ, քանի որ նույն միջազգային իրավունքի հիմնադրույթներից է, որ զավթիչ վարչախմբի (օկուպացիոն ռեժիմի) գործողությունները չեն կարող և չեն ծնում իրավական հետևանքներ տվյալ երկրի համար, անկախ այն բանից՝ այդ հետևանքները դրական են, թե՝ բացասական:

Սա է վերը նշած մեր 2-րդ հարցի պատասխանը: Վրացկոմկուսի որոշման անօրինականության փաստը ամրապնդվում է նաև այն հանգամանքով, որ ներկայիս Վրաստանի ուղղակի իրավահաջորդությունը Վրաստանի առաջին հանրապետությանը ամրագրված է

*«Վրաստանի պետական անկախության վերականգնման ակտով»* (09.04.1991թ.), որն էլ վկայակոչման ճանապարհով ներառված է Վրաստանի գործող սահմանադրության 1-ին հոդվածի 1-ին մասում:

Հիմա անդրադառնանք երրորդ հարցին. Միջազգային հանրության լիազոր կառույցների առաջարկին Հարավային Կովկասի սահմանների վերաբերյալ:

Հարավային Կովկասի երկրների փոխադարձ սահմանների, ինչպես նաև ՀՀ և Թուրքիայի սահմանի, հարցերը քննության առարկա են դարձել Փարիզի խաղաղության վեհաժողովում (1919-1920թթ.): Հայաստանի և Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի սահմանների վերաբերյալ համապատասխան զեկույց է ընդունել Հայաստանի սահմանները որոշող հատուկ հանձնաժողովը: Սույն հանձնաժողովի զեկույցի տակ դրված են Ազգերի լիգայի Խորհրդի անդամ երկրների՝ Ֆրանսիայի, Բրիտանական կայսրության, Իտալիայի և Ճապոնիայի, լիազոր ներկայացուցիչների ստորագրությունները: Այս զեկույցը, որը թվագրված է 24 փետրվարի, 1920թ.-ով և վերնագրված է *«Զեկույց և առաջարկներ՝ Հայաստանի սահմանները որոշող հանձնաժողովի»*[4] հստակեցրել և ամրագրել է ՀՀ սահմանազատման սկզբունքները նրա հյուսիսային հարևանների հետ: Այն մասնավորապես արձանագրում է. *«Ինչ վերաբերում է Հայաստանի պետության և Վրաստանի, ինչպես նաև Ադրբեջանի սահմանին, ապա Հանձնաժողովը գտնում է, որ ներկայումս նախընտրելի է սպասել վերոնշյալ սահմանների հստակեցման վերաբերյալ այնպիսի համաձայնության արդյունքներին, որոնց երեք հանրապետություններն իրենք կհանգեն պայմանագրերի մեջ: Այն դեպքում, եթե սույն հանրապետություններն իրենց սահմանների վերաբերյալ չեն հանգի որևէ համաձայնության, ապա հարցը պետք է փոխանցվի Ազգերի լիգայի իրավարարությանը, որը կստեղծի միջդաշնակցային Հանձնաժողով՝ տեղում որոշելու վերոնշյալ սահմանները՝ <u>հաշվի առնելով, որպես սկզբունք, ազգագրական տվյալները</u>»*:

Հույժ կարևոր է, որ նշյալ փաստաթուղթն ընդգրկվել է ԱՄՆ նախագահ *Վիլսոնի իրավարար վճռի* (22 նոյեմբերի, 1920թ.) *(Arbitral Award, November 22, 1920) Ամբողջական զեկույցի* մեջ, որպես 1-ին հավելվածի 2-րդ փաստաթուղթ (*Full Report*, Annex I, No2), որը վկայում է, որ Միացյալ Նահանգները ճանաչել են նշյալ փաստաթղթի իրավական էությունն ու օրինականությունը:

Նշյալ դրույթները ներառվել են նաև Սևրի պայմանագրի (10 օգոստոսի, 1920թ.) մեջ,[5] որպես Պայմանագրի 92-րդ հոդված. *«Հայաստանի և Ադրբեջանի, ինչպես նաև Վրաստանի, միջև սահմանները կորոշվեն շահագրգիռ երկրների ուղղակի համաձայնության միջոցով: Այն դեպքում, երբ շահագրգիռ երկրները մինչև 89 հոդվածում հիշատակված որոշման օրը չեն կարողանա համաձայնությամբ որոշել սահմանները, ապա խնդրո առարկա սահմանը կորոշվի Գլխավոր դաշնակից ուժերի կողմից, որոնք էլ տեղում կիրականացնեն նաև սահմանանշումը»*:

Բնականաբար Գլխավոր դաշնակից ուժերը, որոնք նաև մաս էին կազմում Ազգերի լիգայի խորհրդին, առաջնորդվելու էին իրենց իսկ մշակած և որդեգրած սկզբունքներով:

Անհրաժեշտ է նշել, որ Փարիզի վեհաժողովում ԱՄՆ պատվիրակության հետախուզական բաժինը *(Intelligence Section of the American Delegation)* նախագահ Վիլսոնին հասցեագրված նախնական առաջարկների մեջ [թվագրված՝ 21 հունվարի, 1919թ.][6] միանշանակորեն արտահայտվել է Ախալքալաքի և Ախալցխայի ենթաշրջանները Հայաստանին միացնելու օգտին: ՀՀ սահմանները հստակեցնող առաջարկների մեջ մասնավորապես գրված է. *«Թեև տեղակայված համաշխարհային առևտրի հիմնական հոսանքներից հեռու, այնուհանդերձ Հայաստանի երկու ելքերը դեպի Սև ծով և Միջերկրական կապահովեն այն կենսունակ կապը, որն անհրաժեշտ է տնտեսական անվտանգության համար: Տեղագրության և առևտրի տեսանկյունից Ադանայի [նահանգի] Կիլիկիայի տարածաշրջանը պատկանում է Հայկական բարձրավանդակին և ոչ թե նրա երկու կողմերում գտնվող թուրքական Անատոլիային կամ Սիրիային: Նախկին Ռուսական [կայսրության] Կարսի և Երևանի նահանգների, Ախալքալաքի և Ախալցիխի ենթաշրջաններով հանդերձ, ներառումը պայմանավորված է այն հանգամանքով, որ նրանք են պարունակում հայ ժողովրդի ամենաստվար զանգվածը»*:

Նշյալ առաջարկված և ամրագրված սկզբունքները, ինչպես նաև Վիլսոնի Իրավարար վճիռը, ի կատար չեն ածվել, քանի որ Հարավային Կովկասի բոլոր 3 երկրներն էլ բռնազավթվել, ապա և բռնակցվել են բոլշևիկյան Ռուսաստանին, այսինքն՝ կորցնելով իրենց ինքնիշխանությունը, դադարել են միջազգային իրավունքի սուբյեկտներ լինելուց: Մեկ անգամ ևս պետք է կրկնել, որ բռնազավթման (1920/21-22) ապա և բռնկցման տարիներին (1922-91) տեղի ունեցած որևէ գոր-

ծողություն՝ սահմանազատում, վարչատարածքային բաժանում, վարչական միավորների ստեղծում, չէր կարող և չի ստեղծել իրավական հետևանք, քանի որ բոլոր այդ գործողություններն ի սկզբանե խարսխված են եղել միջազգային իրավունքի կոպիտ ոտնահարման հետևանքով առաջացած իրավիճակի վրա, այն է միջազգայնորեն ճանաչված անկախ երկրների՝ Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի հանրապետությունների (1918-20/21) անօրինական պետականազրկումը: Հանցագործությունը չի ծնում իրավունք՝ *Ex injuria non oritur jus*:

Այսպիսով, միանգամայն հստակ է, որ չկա որևէ միջազգային փաստաթուղթ *(international instrument)*, որը միջազգային իրավունքի հիման վրա և միջազգային իրավունքի ընթացակարգի կիրառմամբ որոշած լինի սահմանը ՀՀ և Վրաստանի միջև: Ավելին, չկա որևէ միջազգային փաստաթուղթ, որը հիմք կհանդիսանա Ջավախքի տարածաշրջանի (կամ ինչպես ամերիկացիներն էին գրում, *Ախալքալաքի և Ախալցիխի ենթաշրջանների*) վրա վրացական տիտղոսի ամրակցման համար: Ընդհակառակը, կան միջազգային փաստաթղթեր,[7] որոնց մեջ ընդգրկված սկզբունքները և առաջարկները ամրակցել են հայկական տիտղոսը խնդրո առարկա տարածքի վրա: Առնվազն տարօրինակ է, որ այսօր փորձ է արվում կուսակցական որոշումներին գերակա կարգավիճակ տալ միջազգային փաստաթղթերի նկատմամբ:

Հարավային Կովկասում սահմանների, ինչպես նաև հայ-թուրքական սահմանի, հարցը, կարող է և պետք է լուծվի միայն միջազգային իրավունքի հիման վրա արդեն իսկ կայացված վճռի (22.11.1920թ.) և հստակեցված սկզբունքների (24.02.1920թ.) կենսագործմամբ: Անհրաժեշտ է հիշեցնել, որ այսօրվա Եվրոպայի և Միջին արևելքի քաղաքական քարտեզը գրեթե ամբողջովին ձևավորվել է Փարիզի 1919-20թթ. վեհաժողովի որոշումների, սկզբունքների և առաջարկների հիման վրա: Եթե որևէ մեկն այսօր կփորձի կասկածի տակ դնել Փարիզի վեհաժողովի որոշումները Հայաստանի մասով, ուրեմն նա կասկածի տակ կդնի այսօրվա Եվրոպայի և Միջին արևելքի ողջ քաղաքական և իրավական համակարգը:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Լոռվա Չեզոք գոտի՝ Լոռու Բորչալուի գավառի Ալավերդու, Ուզունլարի և Վորոնցովկայի շրջաններից կազմված գոտի՝ 09.01.1919-16.02.1921թթ.:

2. ՀՀ ՀՔԿՓ ԿՊԱ, Հավաքածու 1, գ. 7, թ. 45:
3. ՀՀ ՀՔԿՓ ԿՊԱ, Հավաքածու 1, գ. 7, թ. 43:
4. United States National Archives, Records of the Department of State Relating to Political Relations between Armenia and other States, 1910-29, 760J.6715/60-760J.90C/7, Appendix I, No 2.
5. Պետք է շեշտել, որ Սևրի պայմանագիրը կատարման համար պարտադիր փաստաթուղթ է, քանի որ այն ստորագրվել է «բարձր պայմանավորվող կողմերի» միջև և ինչպես ամրագրված է Վիեննայի Պայմանագրերի մասին միջազգայնագրի (1969թ.) 2-րդ հոդվածի 6-րդ կետով և Պայմանագրերի նկատմամբ պետությունների իրավահաջորդության մասին Վիեննայի միջազգայնագրի (1978թ.) 2-րդ հոդվածի 11-րդ կետով, կողմերը պարտավորվում են պայմանագիրն ընդունել որպես կատարման համար պարտադիր փաստաթուղթ, անկախ պայմանագրի՝ ուժի մեջ մտած կամ չմտած լինելուց:
6. The Middle East and North Africa in World Politics, A Documentary Record, v. 2 British-French Supremacy, 1914-1945 [ed. Hurewitz J.C.], New Haven and London, Yale University Press, 1979, p. 132-7.
7. Օրինակ՝ 1. Tentative Recommendations for President Wilson by the Intelligence Section of the American Delegation to the Peace Conference, 21 Jan 1919; 2. League of Nations Council, Report and Proposals of the Commission for the Delimitation of the Boundaries of Armenia, 24 Feb 1924; 3. Woodrow Wilson, Arbitral Award, Full Report, 22 Nov 1920, Annex I, No 2.

*04 օգոստոսի, 2007թ.*

## ԺԵ. Հայ-թուրքական հարաբերություններ. հիմնախնդիրներ և հեռանկարներ

*/Ելույթ ՀՀ Ազգային ժողովի լսումների ժամանակ/*

Ներկայումս Հայաստանի Հանրապետությունը կանգնած է բախտորոշ ճամփաբաժանի առջև: Մեր հետագա քայլերից է կախված, թե մեզ համար ինչպիսին կլինեն առաջիկա տարիները՝ կորուստների, թե ձեռքբերումների: Մեր առջև ծառացել է առկա մարտահրավերները չեզոքացնելու և դրանք դրականորեն հեղաշրջելու հրամայականը:

Քանի որ ՀՀ-ի, ինչպես նաև հայ ժողովրդի հավաքական ներուժը քաղաքական, տնտեսական կամ ռազմական ոլորտներում զիջում է, և դեռ զիջելու է, Թուրքիայի ու Ադրբեջանի ընդհանուր ներուժին, ուստի անհրաժեշտ է պայքարի ու դիմակայության ողջ գործընթացը տեղափոխել այլ ոլորտ, ուր Հայաստանը ոչ միայն չի զիջում նրանց, այլև ունի շոշափելի առավելություն:

**Այսինքն, անհրաժեշտ է հայ-թուրքական հարաբերությունները տեղափոխել իրավական դաշտ և այդ հարաբերություններում առկա բոլոր խնդիրներին տալ իրավական լուծումներ և ձևակերպումներ:**

Ըստ այդմ, իմ ելույթը վերաբերելու է մեր լսումների հարցաշարում ընդգրկված երկու հիմնահարցի և դրանց քննությանն ըստ միջազգային իրավունքի.

1. Հայ-թուրքական իրավապայմանագրային հարաբերություններին;
2. Հայ-թուրքական իրավական *(de jure)* սահմանին:

Նախ ի՞նչ բան է **<u>միջազգային պայմանագիրը:</u>**

Պայմանագրերի իրավունքի մասին Վիեննայի կոնվենցիայի երկրորդ հոդվածը *«պայմանագիր»* հասկացությունը բնորոշում է հետևյալ կերպ. *«Պայմանագիր» նշանակում է պետությունների միջև գրավոր կերպով կնքված և միջազգային իրավունքով կառավարվող միջազգային համաձայնություն»*: Իսկ ըստ ՄԱԿ-ի Միջազգային հանրային իրավունքի ձեռնարկի, *«միջազգային պայմանագրերը համաձայնություններ են **<u>միջազգային իրավունքի սուբյեկտների միջև</u>**, որոնց միջոցով նրանք ստեղծում, փոփոխության են ենթարկում կամ դադարեցնում են փոխադարձ իրավունքներն ու պարտավորությունները»*:[1] Այսինքն, պայմանագրի օրինականության համար

անհրաժեշտ է, որ պայմանագիրը կնքող կողմերից յուրաքանչյուրը լինի **<u>միջազգային իրավունքի սուբյեկտ</u>**, այսինքն՝ մեր դեպքում լինի **<u>միջազգայնորեն ճանաչված պետության օրինական կառավարության լիազոր ներկայացուցիչ և նրա գործունեությունը առնվազն չհակասի միջազգային իրավունքին</u>**:

Այս տեսանկյունից էլ ժամանակագրական կարգով անդրադառնանք բոլոր այն 5 պայմանագրերին, որոնք վերաբերում են հայ-թուրքական սահմանին, հստակեցնենք իրավապայմանագրային վիճակը և որոշենք այդ պայմանագրերից յուրաքանչյուրի կարգավիճակն ըստ միջազգային իրավունքի:

Առաջին համաշխարհային պատերազմից հետո մինչև խաղաղության վերջնական հաստատումը Միջին արևելքում, այսինքն՝ 1918-1923թթ., հայ-թուրքական սահմանին վերաբերող կնքված պայմանագրերը հետևյալներն են. Սևրի պայմանագիրը (10.VIII.1920թ.), Ալեքսանդրապոլի պայմանագիրը (03.XII.1920թ.), Մոսկվայի պայմանագիրը (16.III.1921թ.), Կարսի պայմանագիրը (13.X.1921թ.) և Լոզանի պայմանագիրը (24.VII.1923թ.): Այս շարքից երկուսին՝ Մոսկվայի պայմանագրին և Լոզանի պայմանագրին, Հայաստանը մաս չի կազմել, հետևաբար Հայաստանի համար դրանք սկզբունքորեն չեն կարող ստեղծել իրավական հետևանքներ, սակայն հաշվի առնելով, որ այդ պայմանագրերը վերաբերում են նաև հայ-թուրքական սահմանին, կամ գոնե այդպես են մտածում շատերը, ապա կանդրադառնանք նաև դրանց:

### *1. Ժամանակագրական առումով առաջին պայմանագիրը <u>Սևրի պայմանագիրն</u> է՝ կնքված 1920թ. օգոստոսի 10-ին:*

Քանի որ սույն պայմանագրի մասին ավելի հանգամանալից խոսելու ենք մեր զեկույցի վերջում, ուստի առայժմ ընդամենը մի քանի խոսք: Սևրի պայմանագիրն ***<u>օրինական է</u>***, քանի որ կնքող բոլոր կողմերն իրենց երկրների օրինական և ճանաչված իշխանություններն էին: Պայմանագրի շուրջ, ըստ սահմանված կարգի, ընթացել են երկարատև բանակցություններ, և Օսմանյան կայսրության անունից պայմանագիրը ստորագրել է լիազոր պատվիրակությունը: Սևրի պայմանագիրը չի արժանացել լիակատար վավերացման (հետևաբար մնում է ոչ կատարյալ *(unperfected)*, սակայն այն նաև երբևէ չեղյալ չի հայտարարվել (հետևաբար մնում է օրինական փաստաթուղթ, որը ուժի մեջ չի մտել *(legal document not in force)*:

***2. Ժամանակագրական առումով հաջորդ պայմանագիրը <u>Ալեքսանդրապոլի պայմանագիրն</u> է՝ կնքված 1920թ. դեկտեմբերի 3-ին, շեշտում եմ՝ դեկտեմբերի 3-ին:***

Սա սովետահայ պատմագրության ամենասիրելի թեմաներից մեկն էր, քանի որ հնարավորություն էր տալիս դաշնակցությանը մեղադրել դավաճանության մեջ, իսկ բոլշևիկներին ներկայացնել որպես ազգի փրկիչներ: Մեր խնդիրը չէ պատմական քննարկումներ կատարել կամ տալ քաղաքական գնահատականներ: Մեր նպատակն է քննել Ալեքսանդրապոլի պայմանագիրը միջազգային իրավունքի տեսանկյունից: Այս տեսանկյունից Ալեքսանդրապոլի պայմանագիրն **<u>անօրինական է ու անվավեր</u>**, նախ այն պատճառով, որ կնքող կողմերից և ոչ մեկը չի ունեցել դրա իրավասությունը: Պայմանագիրը հայկական կողմից կնքողներն **<u>արդեն</u>** իշխանություն չէին, իսկ Թուրքիայի կողմից կնքողները **<u>դեռևս</u>** իշխանություն չէին: Երկու կողմերն էլ գործել են *ultra vires*,[2] այսինքն՝ ակնհայտորեն գերազանցել են իրենց իրավասությունները:

Ալեքսանդրապոլի պայմանագիրն անօրինական է նաև այն պատճառով, որ ստորագրվել է միջազգային իրավունքի սկզբունքները ոտնահարող **<u>ուժի կիրառման բացահայտ սպառնալիքով</u>**[3] և այն երբեք չի վավերացվել:

***3. Ժամանակագրական առումով հաջորդ պայմանագիրը <u>Մոսկվայի պայմանագիրն</u> է՝ կնքված 1921թ. մարտի 16-ին:***

Ինչպես գրված է Մոսկվայի պայմանագրի նախաբանում, այն կնքվել է *«Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետության կառավարության և Թուրքիայի Ազգային մեծ ժողովի կառավարության»* միջև: Քանի որ ցանկացած պայմանագրի կարգավիճակ ածանցվում է այն ստորագրողների իրավական կարգավիճակից, ուստի առաջին հերթին անհրաժեշտ է հստակեցնել դրանցից յուրաքանչյուրի կարգավիճակը 1921թ. մարտի 16-ի դրությամբ:

*ա) Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետության (ՌՍՖՍՀ) կարգավիճակը 1921թ.-ին.*

Պայմանագիրը կնքելու պահին **<u>չկար</u>** *«Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետություն»* ճանաչված պետություն, հետևաբար՝ միջազգային իրավունքի սուբյեկտ: Բնականաբար նրա կառավարությունը չուներ որևէ միջազգային պայմանա-

գիր կնքելու իրավասություն: ՌՍՖՍՀ-ի, արդեն ԽՍՀՄ տարազով, միջազգային օրինական ճանաչումը սկսել է միայն 1924թ. փետրվարի 1-ից՝ Մեծ Բրիտանիայի ճանաչումով:[4] Մինչև 1924թ. տեղի ունեցած, այսպես կոչված, ճանաչումները, չեն առաջացրել որևէ իրավական հետևանք, քանի որ իրենց հերթին բխել են չճանաչված երկրներից կամ վարչախմբերից: Որպեսզի ճանաչումն օրինապես համարվի այդպիսին, այն պետք է կատարվի իր հերթին օրինականորեն ճանաչված միջազգային իրավունքի սուբյեկտի կողմից:[5]

*բ) Թուրքիայի Ազգային մեծ ժողովի կարգավիճակը 1921թ.-ին.*

Ըստ էության, սովետական իշխանության և կառավարության վերաբերյալ վերն ասվածն ամբողջովին վերաբերում է, այսպես կոչված, Թուրքիայի Ազգային մեծ ժողովի կառավարությանը, որի անունից թուրքական կողմը ստորագրել է Մոսկվայի պայմանագիրը: Հիշարժան է, որ անգամ քեմալականներն իրենք որևէ հավակնություն չունեին օրինական իշխանությունների առկայության դեպքում իրենց համարելու Թուրքիայի լիազոր ներկայացուցիչներ: Նրանք պայմանագրերը կնքում էին ոչ թե Թուրքիայի կամ Թուրքիայի կառավարության անունից, այլ *«Թուրքիայի Ազգային մեծ ժողով»* կոչվող կառույցի նախագահության՝ այսպես կոչված «կառավարության» անունից: Թուրքիայի Ազգային մեծ ժողովը 1921թ. իր կարգավիճակով հասարակական կազմակերպություն էր (NGO) և նրա մեջ միավորված էին նախկին պատգամավորներ, պաշտոնանկ զինվորականներ ու պաշտոնյաներ: Նախկին պաշտոնյաներ միավորող կազմակերպություններ եղել են ու կան աշխարհի զանազան երկրներում, այդ թվում նաև Հայաստանում, սակայն նրանցից և ոչ մեկը չի հանդիսացել և չի հանդիսանում միջազգային իրավունքի սուբյեկտ, հետևաբար իրավունք չունի միջպետական պայմանագիր կնքել երկրի անունից: Քեմալի վարչախումբը որևէ իրավական հիմք չուներ միջազգային հարաբերություններում ներկայացնելու թուրքական պետությունը: Աներկբայորեն, առնվազն մինչև 1922թ.-ի նոյեմբերը, այսինքն սուլթան Մուհամմեդ VI-ի մեկնումը Թուրքիայից, համաձայն Օսմանյան կայսրության գործող սահմանադրության, վերջինիս կառավարությանն էին վերապահված միջազգային հարաբերությունների մեջ մտնելու լիազորությունները, միայն սուլթանը կարող էր լիազորել որևէ անձի՝ գործելու երկրի անունից:[6]

Ընդհանրապես քեմալականների շարժումը սկզբնավորվել ու ընթացել է օսմանյան սահմանադրության ոտնահարումով և միջազգային իրավունքի խախտումով, որ է երկրի օրինական իշ-

խանության՝ սուլթան-խալիֆի, դեմ ապստամբությունը և Մուդրոսի զինադադարի (30 հոկտեմբերի, 1918թ.) ոտնահարումը: Քեմալը 1921թ. պարզապես փախուստի մեջ գտնվող հանցագործ էր: Այդ իսկ պատճառով դեռևս 1920թ. ապրիլի 11-ին կայսրության բարձրագույն կրոնավորի՝ շեյխ-ուլ-իսլամի, ֆեթվայով (կոնդակով) Քեմալը մահվան էր դատապարտվել: Նրա նկատմամբ նույն տարվա մայիսի 11-ին մահապատժի վճիռ էր կայացրել նաև թուրքական ռազմական դատարանը: Այս դատավճիռը 1920թ. մայիս 24-ին հաստատվել էր սուլթանի կողմից և մտել էր ուժի մեջ:

Ի լրումն սրա, Մոսկվայի պայմանագրի Հայաստանին վերաբերող մասը միջազգային իրավունքի ևս մի խախտում է, քանի որ պայմանագրերը կարող են վերաբերել միայն պայմանագիրը ստորագրող կողմերին և որևէ պարտավորություն կամ իրավունք չեն ստեղծում պայմանագրին մաս չկազմող երրորդ կողմի համար:[7]

***4. Հայ-թուրքական սահմանին վերաբերող հաջորդ պայմանագիրը <u>Կարսի պայմանագիրն</u> է՝ կնքված 1921թ. հոկտեմբերի 13-ին:***

Միանշանակ է, որ Կարսի պայմանագիրն **<u>անօրինական է և անվավեր</u>**, քանի որ պայմանագիրը կնքած կողմերից և ոչ մեկը չի եղել միջազգային իրավունքի սուբյեկտ: Ալեքսանդրապոլի և Մոսկվայի պայմանագրերին վերաբերող հատվածում քեմալականների մասին արդեն խոսվեց:

Անդրադառնանք Հայաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետության կարգավիճակին, որն էլ հանդիսացել է քեմալականների հետ պայմանագիրը կնքած կողմերից մեկը: Անվիճելի է, որ Սովետական Հայաստանը երբեք չի եղել միջազգային իրավունքի սուբյեկտ: Այն երբեք ճանաչված չի եղել միջազգային իրավունքի որևէ այլ սուբյեկտի կողմից, երբեք չի ունեցել այլ երկրների հետ հարաբերությունների մեջ մտնելու կարողություն: Պարզ ասած՝ այն երբեք չի ունեցել դեսպանություններ և ՀՍՍՀ անունից երբևէ որևիցե դեսպան չի հավատարմագրվել: Իսկ *«այլ պետությունների հետ հարաբերությունների մեջ մտնելու կարողությունը» (capacity to enter into relations with the other states)* հանդիսանում է պետականության 4 չափորոշիչներից մեկը, որն ամրագրված է Մոնտեվիդեոյի պետությունների իրավունքների և պարտականությունների մասին 1933թ. *(Convention on Rights and Duties of States, Montevideo, 1933)* կոնվեն-

ցիայի 1-ին հոդվածի 4-րդ կետում: ԽՍՀՄ կազմում պարզապես եղել է *«Հայաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետություն»* վարչատարածքային միավորը: Իրավական տեսանկյունից 1921թ. Հայաստանի տարածքը *բռնազավթված տարածք* էր. այդպես է միջազգային իրավունքը բնութագրում այն տարածքները, երբ օտարերկրյա բանակը մտնում է միջազգայնորեն ճանաչված երկիր, տապալում է օրինական իշխանությունը և հաստատում է իր դրածո իշխանությունը, անկախ նորահաստատ իշխանության տարազից:

***5. Ժամանակագրական առումով վերջին պայմանագիրը, որին հարկ ենք համարում անդրադառնալ, <u>Լոզանի պայմանագիրն</u> է՝ կնքված 1923թ. հուլիսի 24-ին:***

Նախ մի շատ տարածված մոլորության մասին: **<u>Լոզանի պայմանագրի կնքումով Սևրի պայմանագիրը չեղյալ չի հայտարարվել</u>**: Որևէ պայմանագիր կամ միջազգային պարտավորություն նոր պայմանագիր կնքելու պարագայում ինքնըստինքյան չեղյալ չի լինում: Պայմանագիրը չեղյալ է դառնում ոչ այլ կերպ, քան չեղյալ հայտարարումով: Ընդ որում, պայմանագիրը կարող է չեղյալ հայտարարվել միմիայն նախորդ պայմանագրի մաս հանդիսացող **<u>բոլոր, կրկնում եմ բոլոր, կողմերի համաձայնությամբ</u>**՝ դրա մասին հստակ հայտարարումով և այդ իրողության ամրագրումով հաջորդ պայմանագրի մեջ: Լոզանի պայմանագրի մեջ ընդհանրապես որևէ հիշատակում չկա Սևրի պայմանագրի մասին:

Ավելին, Լոզանը ոչ միայն չեղյալ չի հայտարարել **<u>հայոց իրավունքները</u>**, այլև **<u>16-րդ հոդվածով վերահաստատել է</u>** դրանք: Այսպես, Լոզանի պայմանագիրն անդրադառնում է թուրք-բուլղարական, թուրք-հունական և թուրք-սիրիական սահմաններին, ըստ այդմ՝ հստակեցնում Թուրքիային պատկանող տարածքները միայն երկրի այդ հատվածներում: Իսկ քանի որ Լոզանի պայմանագրի 16-րդ հոդվածը հայտարարում է, որ *«Թուրքիան հրաժարվում է բոլոր այն տարածքների ու կղզիների տիտղոսից և դրանց նկատմամբ իր բոլոր իրավունքներից, <u>որոնք գտնվում են սույն պայմանագրով գծած սահմաններից դուրս</u>, ի բացառյալ նրանց, որոնց նկատմամբ սույն պայմանագրով ճանաչվել է նրա ինքնիշխանությունը, այս տարածքների և կղզիների ապագան լուծել են կամ կլուծեն շահագրգիռ կողմերը»*, հետևաբար Թուրքիան մեկ անգամ ևս հաստատել է Վիլսոնյան Հայաստանից իր հրաժարումը:

Հիմա ամփոփենք մեր քննության արդյունքները: Սակայն մինչ այդ մի հստակեցում: Ճիշտ է՝ Պայմանագրերի իրավունքի մասին Վիեննայի կոնվենցիան ընդունվել է 1969թ.-ին և հետադարձ ուժ չունի, ինչպես հայտարարված է կոնվենցիայի 4-րդ հոդվածում, այնուամենայնիվ հստակ է, որ բոլոր այն չափորոշիչային հիմնադրույթները, որոնցով քննության առանք վերոնշյալ պայմանագրերը, միջազգային իրավունքում առկա են եղել և գործել են դարեր ի վեր, այսինքն, լատիներեն ասած, եղել են ***<u>jus cogens</u>***, այն է՝ բոլորի ***<u>համար պարտադիր ու անբեկանելի</u>***: Դրանք պարզապես ամրագրվել են Վիեննայի կոնվենցիայի մեջ: Եւ ինչպես հաստատում է նույն կոնվենցիայի 53-րդ հոդվածը, պայմանագիրն անվավեր է, եթե կնքելու պահին հակասել է միջազգային ընդհանուր իրավունքի որևէ անբեկանելի հիմնադրույթի, այսինքն՝ որևէ *jus cogens*-ի:

Հետևաբար, վերը քննության առած 5 պայմանագրերից 3-ն անվավեր են, քանի որ դրանցից յուրաքանչյուրը կնքվել է միանգամից մի քանի *jus cogens*-ների ոտնահարմամբ:

**Ըստ այդմ, <u>անվավեր</u> պայմանագրերն են՝ Ալեքսանդրապոլի պայմանագիրը, Մոսկվայի պայմանագիրը և Կարսի պայմանագիրը:**

**Սևրի պայմանագիրը <u>օրինական է և վավեր</u>, սակայն այն <u>ուժի մեջ չի մտել</u>, քանի որ լիովին չի վավերացվել:**

**Իսկ <u>վավերական ու օրինական</u> Լոզանի պայմանագիրը, ինչպես ասվեց, Հայաստանին վերաբերում է անուղղակիորեն:**

Հիմա անդրադառնանք հայ-թուրքական սահմանին վերաբերող փաստաթղթերից ամենակարևորին՝ Սևրի պայմանագրիցածանցվող իրավարար վճռին, որը կայացվել է 1920թ. նոյեմբերի 22-ին ԱՄՆ նախագահ Վուդրո Թոմաս Վիլսոնի կողմից և պաշտոնապես վերնագրված է. *«Ամերիկայի Միացյալ Նահանգների նախագահի որոշումը Թուրքիայի և Հայաստանի միջև սահմանի, Հայաստանի դեպի ծով ելքի և հայկական սահմանին հարակից թուրքական տարածքի ապառազմականացման վերաբերյալ»*:

Նախ մի համառոտ ակնարկ Իրավարար վճռի նախընթացին: Հայոց անկախության հռչակումից մեկուկես տարի հետո՝ 1920թ. հունվարի 19-ին, Դաշնակից ուժերի Գերագույն խորհուրդն ի վերջո ճանաչեց Հայաստանի Հանրապետությունը՝ պայմանով, որ նորաստեղծ երկրի սահմանները կհստակեցվեն հետագայում: Միացյալ Նահանգները ճանաչեցին Հայաստանի անկախությունը 1920թ.

ապրիլի 23-ին: Արդեն 1920թ. ապրիլի 26-ին Դաշնակից ուժերի Գերագույն խորհուրդը Սան Ռեմոյի իր հավաքի ժամանակ որոշում կայացրեց դիմել ԱՄՆ նախագահին երկու խնդրանքով.[8]

1) ստանձնել Հայաստանի մանդատը,

2) իրավարար վճռով որոշել Հայաստանի և Թուրքիայի սահմանը:

Ինչպես գիտեք, Հայաստանի մանդատը մերժվեց ԱՄՆ Սենատի կողմից 1920թ. հունիսի 1-ին: Սակայն երկրորդ խնդրանքի վերաբերյալ ամերիկյան պատասխանը դրական էր և 1920թ. մայիսի 17-ին ԱՄՆ պետքարտուղարը Ֆրանսիայում ամերիկյան դեսպանի միջոցով դաշնակիցներին տեղեկացրեց, որ նախագահը համաձայնել է գործել որպես իրավարար: Խնդիրն իրականացնելու համար արդեն հուլիսի կեսերին պետքարտուղարությունը պրոֆ. Վիլյամ Վեստերմանի գլխավորությամբ ստեղծեց փորձագետների մի խումբ, որը կոչվում էր. *«Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանի իրավարարության հանձնախումբ»*: Այն բանից հետո, երբ 1920թ. օգոստոսի 10-ին Սևրում ստորագրվեց Խաղաղության պայմանագիրը, նշյալ հանձնախումբը պաշտոնապես սկսեց իր աշխատանքները: Սևրի պայմանագիրը կարևորվում է նրանով, որ այդ պայմանագրի մեջ որպես 89-րդ հոդված ներառված է *կոմպրոմին (compromis)*, այսինքն՝ իրավարարության հայտը: Հարկ է նշել, որ կոմպրոմիի կարգավիճակը բնավ կապ չունի բուն պայմանագրի կարգավիճակի հետ, այսինքն՝ վերջինիս վավերացված կամ չվավերացված լինելու հետ: Ուստի, երբ 1920թ. հոկտեմբերի 18-ին ԱՄՆ պետքարտուղարությունը ստացավ Սևրի պայմանագրի ստորագրված տարբերակը, ապա դա բավարար հիմք էր ԱՄՆ նախագահի համար պաշտոնապես կայացնելու իր իրավարար վճիռը: Նախագահ Վիլսոնը 1920թ. նոյեմբերի 22-ին ստորագրեց իրավարար վճիռը և դրա առդիր փաստաթղթերը: Փաստաթղթերի այդ փաթեթը, որը կազմում է մի ամբողջություն, բաղկացած է 241 էջից, որից բուն իրավարար վճիռն 89 էջ է, իսկ տասը հավելվածները՝ 152 էջ: Իրավարար վճիռը 1920թ. դեկտեմբերի 6-ին Փարիզում ԱՄՆ դեսպանատան կողմից պաշտոնապես փոխանցվեց Դաշնակից ուժերին: Տարօրինակ է, սակայն փաստ է, որ հայոց նորագույն պատմության կարևորագույն փաստաթուղթը, որով ամրագրված են ՀՀ իրավունքներն ու սահմանը Թուրքիայի հետ, բացառությամբ յոթերորդ գլխի, երբեք չի տպագրվել:

*Մի քանի խոսք իրավարար վճռի բովանդակության մասին:* Ըստ իրավարար վճռի, Հայաստանի Հանրապետության տիտղոսն

ու իրավունքները ճանաչվում էին նախկին Օսմանյան կայսրության **Վանի, Բիթլիսի, Էրզրումի և Տրապիզոնի նահանգների** վրա՝ ընդհանուր առմամբ 103 599 քկմ: Քանի որ վճիռն ուժի մեջ էր մտնում անմիջապես, ապա ԱՄՆ պաշտպանության նախարարությունը սահմանանշող հանձնաժողովի համար տպագրեց նաև մանրամասն աշխատանքային քարտեզները:

*Իրավարար վճռի ուժի մեջ մտնելու ժամանակի և նախապայմանների մասին:*

Միանշանակ է, որ Սան Ռեմոյի կոնֆերանսում Դաշնակից ուժերի եռյակը՝ Բրիտանական կայսրությունը, Ֆրանսիան և Իտալիան, 1920թ. ապրիլի 27-ի պաշտոնական նոտայով և Սևրի պայմանագիրը ստորագրած բոլոր երկրները, այդ ժամանակ 18 երկիր, 89-րդ հոդվածով իրավարարության հայցով դիմելով ԱՄՆ նախագահին, իրավարար վճռի ընդունումը չեն պայմանավորել որևէ հանգամանքով, այլ պարտավորվել են *«վճիռն ընդունել անմիջապես»*: Նույն Սևրի պայմանագրի 90-րդ հոդվածով Թուրքիան լրացուցիչ վերահաստատել է այս դիրքորոշումը՝ ամրագրելով. *«սկսած իրավարար որոշման օրից Թուրքիան հրաժարվում է [Հայաստանին] փոխանցվելիք տարածքի նկատմամբ իր բոլոր իրավունքներից և տիտղոսից»*:

Այսպիսով, 1920թ. նոյեմբերի 22-ին նախագահ Վիլսոնի իրավարար վճռով Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանային հարցը ստացավ իր վերջնական լուծումը և, ըստ այդմ էլ, հայ-թուրքական միջպետական սահմանն ամրագրվեց մեկընդմիշտ, քանի որ ինչպես հստակորեն ամրագրված է Հաագայի կոնվենցիայում (1899թ. խմբագրման 54-րդ հոդվածում և 1907թ. խմբագրման 81-րդ հոդվածում). *«Եթե իրավարար վճիռը կայացվել է ըստ կարգի և դրա մասին իրազեկ են պահվել կողմերի գործակալները, ապա խնդրո առարկա վեճն իր լուծումն է գտնում մեկընդմիշտ և ենթակա չէ բեկանման»*:

*Այժմ ամենակարևոր հարցի՝ Իրավարար վճռի ներկա կարգավիճակի մասին:*

Արդեն հիշատակված ՄԱԿ-ի պաշտոնական *«Միջազգային հանրային իրավունքի և միջազգային կազմակերպությունների տերմինաբանության ձեռնարկը»* իրավարար վճիռի վավերականության համար առանձնանշում է 4 չափորոշիչ: Դրանք են.[9]

1. Իրավարարները պետք է զերծ եղած լինեն արտաքին խոտոր ազդեցությունից, ինչպիսիք են հարկադրանքը, կաշառքը կամ նյութական շահագրգռությունը:

2. Ապացույցների հավաքումը պետք է զերծ եղած լինի կեղծիքից և չպարունակի որևէ էական սխալ:
3. Իրավարարության հայցը պետք է վավերական եղած լինի:
4. Իրավարարները չպետք է գերազանցած լինեն իրենց լիազորությունները:

Ցավոք սրտի ժամանակի սղության պատճառով ես հնարավորություն չունեմ չափորոշիչ առ չափորոշիչ քննելու Վիլսոնի իրավարար վճիռը՝ վեր հանելու համար այդ վճռի ներկա կարգավիճակը: Սակայն հետաքրքրվողները նշյալ վճռի, ինչպես նաև պայմանագրերի, իրավական հանգամանալից փորձաքննությանը կարող են ծանոթանալ իմ *«Հայոց պանջափիրության իրավական հիմունքները գրքում»*, որը տեղակայված է www.wilsonforarmenia.org կայքում կամ կարող են դիտել իմ հեռուստաելույթների համանուն DVD-ն:

Առայժմ բավարարվենք ամփոփիչ եզրակացությամբ: Քանի որ.

**1.** ԱՄՆ նախագահ Վիլսոնի Իրավարար վճիռը միանշանակորեն համապատասխանում է իրավարար վճիռների միջազգայնորեն ճանաչված 4 չափորոշիչներին;
**2.** Իրավարար վճիռները չունեն վավերականության ժամանակային սահմանափակում;[10]
**3.** Իրավարար վճռի վավերականությունը կախում չունի վճռի հետագա ճակատագրից;
**4.** Միջազգային իրավունքը, մասնավորապես Հաագայի կոնվենցիան, որով ամփոփվել և ամրագրվել է իրավարար վճիռների կարգավիճակը, ընդհանրապես չի նախատեսում վճռի չեղյալ հայտարարում;[11]
**5.** Կողմերից մեկի մերժումը ի կատար ածելու իրավարարությունը, չի ազդում վճռի վավերականության վրա;
**6.** Իրավարար վճիռները վերջնական, անբեկանելի և կատարման համար պարտադիր փաստաթղթեր են;
**7.** Կողմերը, համաձայնվելով վեճը հանձնել իրավարարությանը, դրանով իսկ կանխավ տալիս են իրենց համաձայնությունը կատարման համար պարտադիր ճանաչել իրավարարի ցանկացած վճիռ;[12]
**8.** Բրիտանական կայսրությունը, Ֆրանսիան և Իտալիան, հանդես գալով Դաշնակից ուժերի անունից, 1920թ. ապրիլի 27-ին իրավարար վճռի հայցադիմումով դիմել են ԱՄՆ նախագահին, դրանով իսկ պարտավորվել են այն ընդունել առանց այլևայլության;

**9.** Հայցադիմումին մաս կազմողները պարտավորվել են Իրավարար վճիռն ընդունել անմիջապես և առանց նախապայմանների;

**10.** Թուրքիան 1920թ. օգոստոսի 10-ին պարտավորվել է հրաժարվել փոխանցվելիք տարածքի տիտղոսից և իրավունքներից վճռի կայացման օրը և առանց նախապայմանների;

**11.** Թուրքիան 1923թ. հուլիսի 24-ին վերահաստատել է իրեն չփոխանցված տարածքների նկատմամբ բոլոր իրավունքներից և տիտղոսից հրաժարվելու դիրքորոշումը;

**ուստի Վուդրո Վիլսոնի Իրավարար վճիռն այսօր էլ վավերական և կատարման համար պարտադիր փաստաթուղթ է Իրավարար վճռին մաս կազմող բոլոր երկրների և դրանց իրավահաջորդների համար: Իրավարար վճիռը պարտադիր է նաև ԱՄՆ համար ոչ միայն այն պատճառով, որ այն կայացվել է ԱՄՆ նախագահի կողմից, այլև այն պատճառով, որ վճռի տակ դրված է Միացյալ Նահանգների Մեծ կնիքը:**

Այսպիսով, չնայած *«Վիլսոնյան Հայաստանի»* տարածքի Թուրքիայի կողմից տևական բռնազավթմանը, Թուրքիային չի պատկանում տվյալ տարածքի իրավական տիտղոսը: 1920թ. նոյեմբերի 22-ից առ այսօր այդ տարածքի վրա նրա *de facto* իշխանությունը ավելին չէ, քան զուտ վարչական վերահսկողություն, այսինքն այնպիսին, ինչպիսին Թուրքիան այժմ ունի Հյուսիսային Կիպրոսում:

Հետևաբար Թուրքիայի Հանրապետության ներկայությունը և նրա բոլոր գործողությունները *«Վիլսոնյան Հայաստանի»* տարածքում անօրինական են և անվավեր, որովհետև ռազմական բռնազավթումը չի կարող հանգեցնել տարածքի օրինական իրավատիրության:

Հիմա մեկ այլ կարևոր հարց.

– ***Որո՞նք պետք է լինեն մեր հեպագա քայլերը***:

Առաջին հերթին մենք ոչ միայն պիտի հայտարարենք, որ **պետություն ունեցող ազգ ենք, այլ պիտի գործենք որպես այդպիսին**: Այսինքն, պիտի օգտվենք միջազգային սուբյեկտի մեր կարգավիճակից:

Քանի որ միջազգային իրավունքը և միջպետական բազմաթիվ փաստաթղթեր, ինչպես օրինակ Եվրոպայում անվտանգության և համագործակցության Հելսինկիի 1975թ. եզրափակիչ փաստաթուղթը (մաս 10-րդ, պարբերություն 1-ին), որի տակ կա նաև Թուրքիայի ստորագրությունը, հանձնառու երկրներից պահանջում է միջազգայնորեն ստանձնած պարտավորությունների *«բարեխիղճ կապարումը, լինեն դրանք ածանցված միջազգային իրավունքի համընդհանուր ճանա-*

*չում գտած սկզբունքներից և կանոններից, թե ածանցված լինեն պայմանագրերից կամ այլ համաձայնագրերից, որոնց այդ երկրները մաս են կազմում համաձայն միջազգային օրենքի»*, ուստի ՀՀ-ն կարող է և պարտավոր է միջազգային իրավունքի հիման վրա պաշտպանել իր շահերը, այսինքն՝ Անվտանգության խորհրդի ուշադրությունը պիտի հրավիրի այն հանգամանքի վրա, որ Թուրքիան չի կատարում Վիլսոնի իրավարար վճռով ստանձնած պարտավորությունները, որի հետևանքով առաջացել է միջազգային, այսինքն հայ-թուրքական դիմակայություն և վեճ: Հայաստանի Հանրապետությունը որպես ՄԱԿ-ի անդամ երկիր, ՄԱԿ-ի կանոնադրության 35-րդ հոդվածի 1-ին կետի հիման վրա, լիովին իրավասու է *«Անվտանգության խորհրդի կամ Գլխավոր համաժողովի ուշադրությանը բերել ցանկացած վեճ կամ իրավիճակ, որն իր բնույթով համապատասխանում է [սույն կանոնակարգի] 34-րդ հոդվածում վկայակոչվածին»*: Իսկ ՄԱԿ-ի կանոնադրության 34-րդ հոդվածն արձանագրում է. *«Անվտանգության խորհուրդը կարող է քննության առնել ցանկացած վեճ կամ իրավիճակ, որը կարող է հանգեցնել միջազգային դիմակայության կամ առաջ բերել վեճ՝ որոշելու համար, թե արդյոք տվյալ վեճի կամ իրավիճակի շարունակումը կարո՞ղ է վտանգել միջազգային խաղաղության և անվտանգության պահպանումը»*: Ակնհայտ է, որ ներկա իրավիճակն արդեն իսկ հանգեցրել է հայ-թուրքական դիմակայության և խնդրահարույց վիճակի, և այս ամբողջը հետևանք է Թուրքիայի կողմից ՀՀ-ի նկատմամբ պատերազմական միջոցառման *(war measure)*՝ շրջափակման, իրականացման: Իսկ շրջափակումն հնարավոր է դարձել միմիայն Թուրքիայի կողմից իր միջազգայնորեն ստանձնած պարտավորությունների չկատարման հետևանքով:

Միևնույն ժամանակ, Հայաստանը միջնորդի, օրինակ վճիռը կայացրած երկրի՝ ԱՄՆ-ի, միջոցով կարող է դիմել Թուրքիային, որպեսզի միասնաբար դիմեն ՄԱԿ-ի միջազգային դատարան Միջազգային դատարանի կանոնակարգի 36-րդ հոդվածի 1-ին և 2-րդ կետերի հիման վրա հստակեցնելու համար Վիլսոնի իրավարար վճռի ներկա կարգավիճակը: Զուգահեռաբար ՀՀ-ն կարող է հայց ներկայացնել ՄԱԿ-ի Գլխավոր համաժողովին, որպեսզի վերջինս, Միջազգային դատարանի կանոնակարգի 65-րդ հոդվածի համաձայն, Իրավարար վճռի մասին խորհրդատվական (պարզաբանական) կարծիքի համար *(advisory opinion)* դիմի միջազգային դատարան:

Ուզում եմ ընդգծել, որ ՀՀ կողմից միջազգային կառույցների ներգրավմամբ հայ-թուրքական դիմակայությունը լուծելու ձգտումը չի կարող դիտարկվել հարաբերությունների սրման միտում, այլ, ընդհակառակը, կարող է գնահատվել, որպես հաստատակամ ու դրական քայլ առկա խնդիրները միջազգային իրավունքի հիման վրա լուծելու ուղղությամբ և արձագանք վերջին շրջանում հաճախացող հայ-թուրքական հաշտության կոչերի: Մասնավորապես, իրավարարությամբ միջպետական առկա հակասությունների լուծման նախընտրելիությունն ընդգրկված է ՄԱԿ-ի կանոնադրության մեջ և ամրագրված է 33-րդ հոդվածում:

Անվիճելի է, որ միջազգային իրավունքը բավարար չէ հայ-թուրքական դիմակայությունը լուծելու համար: Այսուհանդերձ, կասկած լինել չի կարող լինել, որ միայն միջազգային իրավունքն է այն ճանապարհը, որով կարելի է հասնել հիմնահարցի արդար և խաղաղ լուծմանը, և ի վերջո տարածաշրջանում հաստատել անսասան ու մշտական խաղաղություն:

Աշխարհում գործընթացներն առաջ են գնում հարաճուն արագությամբ և միշտ չէ, որ այդ գործընթացները մեր օգտին են: Եկել է լուրջ որոշումներ ընդունելու և առավել լուրջ քայլեր ձեռնարկելու ժամանակը: Մենք հապաղելու ժամանակ չունենք:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Manual of Terminology of Public International Law (by Paenson I.), UN, NY, 1983, p. 38.
2. Wildhaber L. Treaty Making Power and Constitution. Basel-Stuttgart, 1971, p. 150.
3. Vienna Convention on the Law of Treaties, 1969, UNO, NY, Article 52.
4. Toynbee A.J. Survey of International Affairs 1924. London, 1926, p. 491.
5. Moore J.B. Digest of International Law. Washington, 1906, v. I, p. 73.
6. O'Connell D. State Succession in Municipal Law and International Law. Cambridge, 1967, v. I, p. 211.
7. Jankovic B.M. Public International Law. NY, 1984, p. 302.
8. The Treaties of Peace, 1919-1923, vol. I, NY, 1924, p. xxxii.
9. Manual... Ibid, § 508, p. 588-90.
10. Wildhaber L. Ibid, p. 98.
11. Manual... Ibid, p. 693-94.
12. A Dictionary of Arbitration and its Terms (ed. Seide K.), NY, 1970. p. 27.


*19 դեկտեմբերի, 2007թ.*

## ԺԶ. Կոսովոյի անկախության ճանաչումը որպես իրավական նախադեպ

Անկախության հռչակումը և անկախութանը հաջորդող ճանաչումը առկա իրողության իրավական ճանաչումն է: Չնայած անկախության ճանաչումը մեծապես պայմանավորված է եղել, և կլինի, քաղաքական հաշվարկներով՝ այն ակնհայտորեն իրավական գործողություն է: Ըստ այդմ, նոր քաղաքական միավորի ճանաչումը, որպես իրավական գործողություն, անկախ քաղաքական հայտարարություններից՝ առաջացնում է իրավական նախադեպ:

Ավանդաբար միջազգային իրավունքը խարսխված է եղել պետությունների ինքնիշխան իրավահավասարության վրա,[1] որն ամրագրված է ՄԱԿ-ի կանոնակարգում (Հոդված 2, §1), ինչպես նաև *«Պետությունների միջև բարեկամական հարաբերությունների և համագործակցության վերաբերյալ, ըստ ՄԱԿ-ի կանոնակարգի, միջազգային իրավունքի սկզբունքների մասին հռչակագրի»* մեջ (ընդունված Գլխավոր ասամբլեայի կողմից, 1970թ. հոկտեմբերի 24-ին), որը միանշանակորեն և հանդիսավորապես հայտարարում է. *«Միջազգային վեճերը պետք է լուծվեն պետությունների ինքնիշխան իրավահավասարության հիման վրա»*:

Հետևաբար Կոսովոյի անկախության ճանաչումն, անկասկած, հանդիսանում է և հանդիսանալու է անվիճելի իրավական նախադեպ: Քաղաքական հայտարարությունները չեն կարող և չեն փոփոխելու միջազգային իրավունքի իրավական սկզբունքները: Իրավահավասարության սկզբունքը վերաբերում է միջազգային համայնքի բոլոր անդամներին, այսինքն՝ միջազգային իրավունքի բոլոր ենթականերին, առանց խտրականության, տրվում են միևնույն իրավունքներն ու պարտականությունները: Իրավական տեսանկյունից վերաբերմունքը Սերբիայի նկատմամբ չի կարող տարբեր լինել և այն չի կարող ենթարկվել խտրականության: Միջազգային իրավունքի հայտնի խորագետ, պրոֆ. Լասսա Օփենհեյմը գրել է. *«Ազգերի ընտանիքի բոլոր անդամ պետությունների՝ միջազգային իրավունքի նկատմամբ իրավահավասար լինելը անսակարկելի է, քանի որ դա բխում է այդ պետությունների միջազգային իրավունքի միավոր լինելու էությունից: Պետությունները, փարածքի, բնակչության, հզորության, քաղաքակրթվածության, հարսփության և այլ առումներով*

*անհավասար լինելով հանդերձ, իրավահավասար են որպես միջազգային իրավունքի կրողներ»:*[2]

Հետևաբար, Սերբիան, որպես միջազգային համայնքի անդամ, մնացած պետությունների համեմատ ունի նույն և հավասար իրավունքները: Այսպես կոչված "տարածքային ամբողջականությունը" չի կարող վերաբերել Ադրբեջանին, սակայն չվերաբերել Սերբիային: Հատկապես, երբ Ադրբեջանը մի երկարատև ժամանակաշրջան իրականացրել է ցեղասպանական քաղաքականություն իր հայազգի քաղաքացիների նկատմամբ (Նախիջևանի հայկական ինքնավարության հայաթափումը, հայերի ջարդերը Սումգայիթում, Բաքվում, Կիրովաբադում և այլուր), ինչպես նաև Լեռնային Ղարաբաղի հայկական ինքնավարության դեմ սանձազերծել է արյունոտ և խաղաղ բնակչությանը հսկայական զոհեր պատճառած պատերազմ:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. De Witt Dickinson E. The Equality of States in International Law. Harvard Studies in Jurisprudence, v. III, Cambridge, 1920 (1972 reprint, NY).
2. Oppenheim L. International Law, A Treatise. Vol. I. Peace. London, 1920 (2005 /3rd ed./ NJ), §115, p. 196.

*17 փետրվարի, 2008թ.*

## ԺԷ. Հիմնավորում
## Նոյեմբերի 22-ը «Հայրենատիրության օր» հռչակելու

Արդեն մի քանի տասնամյակ է, ինչ **Ապրիլի 24-ը** հանդիսանում է հայ ժողովրդի նվիրական օրերից մեկը՝ հայոց միասնական քաղաքական վարքի թերևս ամենավառ դրսևորման օրը: Հայ իրականության մեջ այդ օրը մտավ նախ որպես հոգեհանգստի ու հիշատակի խնկարկման օր, ապա աստիճանաբար վերաճեց և դարձավ ոգեկոչման ու Հայոց ցեղասպանությունը ճանաչելու պահանջի օր: Այսուհանդերձ, այդ օրը կորստի օր է, առավելագույնը՝ կորուստը ճանաչել տալու օր:

Սակայն, որպես ազգ և որպես արդարությանը հետամուտ հանրություն, մենք կարիք ունենք հաղթանակի ու հատուցման օրվա, արդարության կայացման ու իրավունքի հաստատման օրվա: Մեր իրականության մեջ կա՛ այդ օրը. հաղթանակի անթեղված կրակը պահող այդ օրը **նոյեմբերի 22-ն** է՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների նախագահ **Վուդրո Վիլսոնի** կողմից Հայաստանի և Թուրքիայի սահմանը որոշող **Իրավարար վճռի (Arbitral Award)** կայացման օրը: Այդ օրն իրավարար վճռով Հայաստանի Հանրապետությանը հատկացվեց մեր բնօրրան-հայրենիքի մի մասը՝ հյուսիս-արևելյան հատվածը: Այդ օրը միջազգային իրավունքի հիման վրա կայացվեց և **<u>մեկընդմիշտ</u>** ուժի մեջ մտավ մի վճիռ, որը.

1. կատարման համար պարտադիր է,
2. իրավական տեսանկյունից անբեկանելի է և
3. իրավունքների գոյության առումով անժամանցելի է:

Քանի որ Իրավարար վճիռը կայացվել է Թուրքիայի և Հայաստանի, ինչպես նաև Բրիտանական Կայսրության, Ֆրանսիայի, Իտալիայի, Ճապոնիայի, Կանադայի, Հնդկաստանի, Բելգիայի, Հունաստանի, Պորտուգալիայի, Լեհաստանի, Հարավային Աֆրիկայի, Ավստրալիայի, Նոր Զելանդիայի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի, Ռումինիայի անվերապահ հայցադիմումի *(compromis)* հիման վրա և ուժի մեջ է մտել ստորագրման պահից, ուստի այն պարտադիր, անբեկանելի ու անժամանցելի է բոլոր վերոհիշյալ երկրների կամ նրանց իրավահաջորդների համար: Այն պարտադիր, անբեկանելի ու անժամանցելի է նաև Ամերիկայի Միացյալ Նահանգների համար, քանի որ Իրավարար վճիռը կրում

է ԱՄՆ Մեծ կնիքը, ստորագրված է ԱՄՆ նախագահի և ենթաստորագրված է ԱՄՆ պետքարտուղարի կողմից:

Ըստ միջազգային իրավունքի հիմնարար սկզբունքի, որն ամրագրված է միջազգային բազմաթիվ փաստաթղթերում, Իրավարար վճռի ի կատար ածումն այդ փաստաթղթին կողմ հանդիսացող, այսինքն՝ հայցադիմումը ստորագրած, բոլոր երկրների անսակարկ պարտավորությունն է, նրանց անօտարելի հանձնառությունը: Ըստ այդմ, մեր համազգային խնդիրը պետք է լինի յուրաքանչյուր տարի նոյեմբերի 22-ին այդ երկրներից պահանջել, որպեսզի նրանք տեր կանգնեն միջազգային իրավունքից բխող իրենց պարտավորությանը և դա անեն ոչ թե որպես բարեհաճություն, այլ որպես մոռացված և մասամբ ուրացված, սակայն անխաթար ու անբեկանելի միջազգային պարտավորություն:

**ՆՈՅԵՄԲԵՐԻ 22**-ը պետք է դառնա ոտնահարված արդարության վերականգնման, ազգային պահանջատիրության և մեզանից խլված իրավունքների վերահաստատման օրը: Մեծ հայորդի Գարեգին Նժդեհի մեկ բառով՝ **ՀԱՅՐԵՆԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՕՐԸ**:

**Այսու, միանգամայն նպատակահարմար է, որ Հայաստանի Հանրապետության Ազգային ժողովը, համաձայն Հայաստանի Հանրապետության Սահմանադրության 62-րդ հոդվածի 2-րդ պարբերության, ընդունի հայտարարություն, որով ՆՈՅԵՄԲԵՐԻ 22-ը հայտարարվի ՀԱՅՐԵՆԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՕՐ:**

*16 նոյեմբերի, 2008թ.*

<u>*նախագիծ*</u>

# ԺԸ. ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ
## Միջազգային իրավունքով Հայաստանի Հանրապետությանը վերապահված տարածքի մի մասի վրա Հայաստանի Հանրապետության ինքնիշխանության վերականգնման վերաբերյալ

**1.** Ղեկավարվելով Հայաստանի Հանրապետության, Ադրբեջանի Հանրապետության և Ռուսաստանի Դաշնության նախագահների կողմից ստորագրված Մոսկվայի հռչակագրի (02.11.2008թ.) այն հիմնադրույթով, որ Լեռնային Ղարաբաղի հակամարտության քաղաքական լուծումը դիտարկվում է *«միջազգային իրավունքի նորմերի ու սկզբունքների և այդ շրջանակներում ընդունված որոշումների ու փաստաթղթերի հիման վրա»*,
**2.** համոզված լինելով, որ միջազգային իրավունքով Հայաստանի Հանրապետությանը հատկացված կամ վերապահված տարածքի վրա ՀՀ ոտնահարված ինքնիշխանության վերականգնումն է միայն հայոց պետականության հարատևման և հայ ժողովրդի գոյատևման երաշխիքը,
**3.** վստահ լինելով, որ քաղաքացիների անվտանգության ապահովումը, երկրի տնտեսական զարգացման ու բարեկեցության համար նպաստավոր պայմանների ստեղծումը հնարավոր է միայն որոշակի կենսապայմանների առկայության դեպքում,
**4.** նպատակ ունենալով ողջ տարածաշրջանում հաստատել հարատև ու կայուն խաղաղություն, որը կարող է խարսխված լինել միայն արդարության և Հայաստանի Հանրապետության հանդեպ միջազգային կազմակերպությունների ու առանձին պետությունների կողմից ստանձնած պարտավորությունների լիակատար իրականացման վրա,
**5.** ի մտի ունենալով, որ որևէ սահման անվավեր և անօրինական է, եթե այն կայացել կամ ամրագրվել է անվավեր և անօրինական պայմանագրի կամ նման այլ փաստաթղթի հիման վրա և, ըստ այդմ, նրա վրա չեն կարող տարածվել միջազգային իրավունքի սկզբունքները, այդ թվում նաև, այսպես կոչված, սահմանների անձեռնմխելիության սկզբունքը,
**6.** հավաստելով, որ *«ազգերի միջև իրավահավասարության և ժողովուրդների ինքնորոշման վրա հիմնված բարեկամական*

*հարաբերությունների զարգացումը»* որպես նպատակ ներառված է ՄԱԿ-ի կանոնադրության մեջ (հոդված 1, § 2),

**7.** վկայակոչելով, որ ըստ *ՄԱԿ-ի կանոնադրությունից բխող միջազգային իրավունքի սկզբունքների, պետությունների միջև բարեկամական հարաբերությունների և համագործակցության մասին հռչակագրի* (17.10.1970թ.) *«Յուրաքանչյուր պետություն պարտավորված է միասնական և անհատական գործունեությամբ աջակցել իրավահավասարության և ժողովուրդների ինքնորոշման սկզբունքի իրականացմանը»*,

**8.** առանձնանշելով, որ Ադրբեջանական Հանրապետությունը հայոց պետության դեմ իրականացնելով լիակատար շրջափակում, և ի հետևանք Հայկական ՍՍՀ և հետագայում Հայաստանի Հանրապետության դեմ իրականացրած չհրահրված և չարանենգ նախահարձակումների, ինչպես նաև Հայաստանի Հանրապետության տարածքի մի մասի զավթման պատճառով (Արծվաշեն բնակավայրը), այսինքն *«պետության տարածքային ամբողջականության և քաղաքական անկախության դեմ ուժի սպառնալիքից կամ ուժի կիրառումից»* ձեռնպահ մնալու սկզբունքի ոտնահարումը ի չիք է դարձրել վերոհիշյալ սկզբունքի իրավունքը Ադրբեջանական Հանրապետության համար,

**9.** նշելով, որ Արցախը (Դաշտային և Լեռնային Ղարաբաղ) և Նախիջևանը Ադրբեջանական ՍՍՀ ենթակայության ներքո են հայտնվել միջազգային իրավունքի և ներպետական օրենսդրության կոպիտ խախտումներով, համապատասխանաբար Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկյան) կուսակցության կենտրոնական կոմիտեի Կովկասյան բյուրոյի 05.07.1921թ. որոշմամբ և Մոսկվայի (16.03.1921թ.) ու դրանից ածանցվող Կարսի (13.10.1921թ.) անվավեր ու անօրինական պայմանագրերի 3-րդ և 5-րդ հոդվածների հիման վրա,

**10.** վկայաբերելով Պայմանագրերի իրավունքի մասին Վիեննայի 1969թ. կոնվենցիայի 53-րդ հոդվածը, որով պայմանագիրն անվավեր է համարվում, եթե կնքման պահին հակասել է միջազգային իրավունքի անբեկանելի սկզբունքի՝ *jus cogens*-ի,

**11.** ճանաչելով վերոհիշյալ Մոսկվայի (16.03.1921թ.) և Կարսի (13.10.1921թ.) պայմանագրերի անվավերությունը ստորագրման պահից, քանի որ երկուսն էլ կնքվել են միջազգային իրավունքի անբեկանելի սկզբունքների՝ *jus cogens*-ների, բացահայտ, բազմակի և կոպիտ խախտումներով,

**12.** առաջնորդվելով ՄԱԿ-ի իրավանախորդի՝ Ազգերի լիգայի, Հայաստանի սահմանները որոշող Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և Ճապոնիայի անդամությամբ հանձնաժողովի զեկույցի առաջարկներով (24.02.1920թ.), որը նախատեսում էր Հարավային Կովկասում սահմանազատումն իրականացնել ազգային տեղաբաշխման սկզբունքով,

**13.** ընդունելով, որ Հարավային Կովկասում սահմանազատումն ու սահմանանշումը, ըստ Սևրի պայմանագրի (10.08.1920թ.) 92-րդ հոդվածի, վերապահված է Գլխավոր դաշնակից ուժերին (Մեծ Բրիտանիա, Ֆրանսիա, ԱՄՆ և Իտալիա), որոնք էլ, իրենց հերթին, պետք է ղեկավարվեն Հայաստանի սահմանները որոշող վերոնշյալ հանձնաժողովի առաջադրած ազգային տեղաբաշխման սկզբունքով՝ հիմք ընդունելով հայ-թուրքական սահմանը որոշելու պահին (22.11.1920թ.) եղած ժողովրդագրական իրավիճակը,

**14.** կարևորելով, որ Միացյալ Նահանգները ճանաչել են նշյալ սկզբունքը, ներառելով այն ընդգրկող փաստաթուղթն ԱՄՆ նախագահ *Վիլսոնի իրավարար վճռի Ամբողջական զեկույցի մեջ* (22.11.1920թ.), որպես 1-ին հավելվածի 2-րդ փաստաթուղթ,

**15.** գիտակցելով, որ Սևրի պայմանագիրը (10.08.1920թ.) ստորագրվել է *«բարձր պայմանավորվող կողմերի»* միջև, հետևաբար, ըստ *Վիեննայի Պայմանագրերի մասին միջազգայնագրի* (1969թ.) 2-րդ հոդվածի 6-րդ կետի, և *Պայմանագրերի նկատմամբ պետությունների իրավահաջորդության մասին Վիեննայի միջազգայնագրի* (1978թ.) 2-րդ հոդվածի 11-րդ կետի, կողմերը պարտավորվում են պայմանագիրն ընդունել որպես կատարման համար պարտադիր փաստաթուղթ, անկախ պայմանագրի ուժի մեջ մտած կամ չմտած լինելուց,

**16.** նկատի ունենալով, որ Ադրբեջանական Հանրապետությունը *Պետական անկախության վերականգնման սահմանադրական ակտով* (18.10.1991թ.) իրեն հայտարարել է Ադրբեջանի առաջին հանրապետության (1918-1920թթ.) ուղղակի իրավահաջորդը, ըստ այդմ չեղյալ է հայտարարել միչևիսկ Լեռնային Ղարաբաղի իր հետ ունեցած վարչական կապը, որը գոյություն է ունեցել Ադրբեջանական ՍՍՀ գոյության մի ժամանակահատվածում (1921-1991թթ.),

**17.** հաշվի առնելով, որ 16.12.1991թ. Բրյուսելում Եվրոպական համայնքի (ներկայումս՝ Եվրոպական Միություն) երկրների արտգործնախարարները *«Արևելյան Եվրոպայում և Սովետական Միության [տարածքում] նոր պետությունների ճանաչման ուղենիշների»* վերաբերյալ

հռչակագրով ընդունել են սահմանների փոփոխելիության հնարավորությունը *«խաղաղ միջոցներով և ընդհանուր համաձայնությամբ»*,
**18.** շեշտելով, որ նույն հռչակագրով *«բոլոր սահմանների անձեռնմխելիության»* նկատմամբ հարգանքը պայմանավորված է եղել *«օրենքի իշխանության, ժողովրդավարության և մարդկային իրավունքների»* հարգանքով, ինչպես նաև *«էթնիկ, ազգային խմբերի և փոքրամասնությունների իրավունքների երաշխավորմամբ»*, որոնցից և ոչ մեկը չի իրականացվել ադրբեջանական պետության կողմից,
**19.** հիշելով, որ 1918-20թթ. և 1991-94թթ. Ադրբեջանական Հանրապետությունն իր հայազգի քաղաքացիների և բնակիչների նկատմամբ իրականացրել է ռազմական միջոցներով էթնիկ զտման, իսկ 1920-91թթ.՝ ազգային խտրականության բիրտ քաղաքականություն,
**20.** չմոռանալով նաև, որ Լեռնային Ղարաբաղի ժողովրդի կամքի ազատ և խաղաղ դրսևորմանը (ցույցեր, հանրահավաքներ, հանրաքվեներ, հայցադիմումներ, կոչեր և այլն) Ադրբեջանը հակադրել է բռնի ուժ, խաղաղ բնակչության դեմ ներքին զորքերի օգտագործմամբ ձեռնարկել է ոչ համարժեք պատժիչ գործողություններ, պետականորեն կազմակերպել է Ադրբեջանի հայ բնակիչների ջարդեր (Սումգայիթ, Բաքու, Կիրովաբադ և այլն), վարձկանների օգտագործմամբ (ուկրաինացիներ, աֆղաններ, ռուսներ և այլն) խաղաղ բնակչության դեմ սանձազերծել է անողոք պատերազմ և ի վերջո խայտառակ ռազմական պարտություն է կրել,
**21.** ընդգծելով այն հանգամանքը, որ Ադրբեջանական ՍՍՀ-ն ԽՍՀՄ-ից անկախացել է ԽՍՀՄ այդ ժամանակ գործող օրենսդրության ոտնահարումով, մասնավորապես *ԽՍՀՄ-ից սովետական հանրապետությունների անջատման մասին օրենքի* (03.04.1990թ.) 3-րդ հոդվածի խախտումով, որով ինքնավար միավորներին տրվում էր առանձին հանրաքվեով իրենց ճակատագիրը տնօրինելու իրավունք,

**Հայաստանի Հանրապետության Ազգային Ժողովը, գործելով իր իրավասությունների շրջանակում (ՀՀ Սահմանադրություն, հոդված 62), սույն հայտարարությամբ դիմում է Հայաստանի Հանրապետության նախագահին, որպես Հայաստանի Հանրապետության տարածքային ամբողջականության երաշխավորի (ՀՀ Սահմանադրություն, հոդված 49), քայլ անել Հայաստանի Հանրապետության տարածքային ամբողջականության վերականգնման ուղղությամբ՝ վերականգնել Հայաստանի Հանրապե-**

**տության ինքնիշխանությունը Լեռնային Ղարաբաղի Հարապետության կողմից վերահսկվող ողջ տարածքի վրա և Լեռնային Ղարաբաղի Հանրապետությունը հռչակել որպես Հայաստանի Հանրապետության Արցախի մարզ:**

Միևնույն ժամանակ Հայաստանի Հանրապետության Ազգային Ժողովը դիմում է ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդին, առանձին երկրների օրենսդիր և գործադիր իշխանություններին, մասնավորապես այն երկրներին, որոնք Հայաստանի Հանրապետության նկատմամբ ունեն միջազգային իրավունքով ամրագրված պարտավորություններ, անել ամեն ինչ՝ վերականգնելու ՀՀ ոտնահարված ինքնիշխանությունը միջազգային իրավունքի, միջազգային առաջարկների և պարտավորությունների կիրառման պարագայում աներկբայորեն ՀՀ մասը հանդիսացող այն տարածքների նկատմամբ, որոնք ստալինա-սովետական վարչատարածքային բաժանման և ռուս-թուրքական քաղաքական գործարքի հետևանքով հայտնվել են Ադրբեջանական ՍՍՀ վարչական ենթակայության ներքո և ներկայումս էլ շարունակվում են ռազմակալված մնալ Ադրբեջանական Հանրապետության կողմից:

*կատարված է անկախ փորձագետ*
*Արա Պապյանի կողմից,*
*19 նոյեմբերի, 2008թ.*
*ք. Երևան, Հայաստան*

## ԺԹ. Հայաստանի նախագահը պետք է Լեռնային Ղարաբաղը ՀՀ մարզ հայտարարի

*/հարցազրույց PanArmenian.net-ին/*

Երբ 1988թ. Լեռնային Ղարաբաղում սկսվեց համազգային շարժումը, այն ընթանում էր Արցախի և Հայաստանի վերամիավորման կարգախոսի ներքո: Հարցը կայանում էր Հայաստանի Հանրապետության ինքնուրույնության խախտման մեջ նրա որոշ տարածքների առնչությամբ և, հետևաբար, ԽՍՀՄ փլուզումից հետո ՀՀ իրավունքները պետք է վերականգնվեին: Ցավոք, որոշ ժամանակ անց բանակցային գործընթացում, որպես դիվանագիտական զորավարժություն, ներկայացվեց Լեռնային Ղարաբաղի ժողովրդի ինքնորոշման իրավունքի հարցը, ինչն իրական և զգալի արդյունքների չհանգեցրեց: Այդ մասին այսօր կայացած մամլո ասուլիսի ժամանակ հայտնել է պատմաբան, դիվանագետ, Modus Vivendi կենտրոնի ղեկավար Արա Պապյանը:

*«Ես համոզված եմ, որ հայկական կողմի համար գերադասելի և միջազգային իրավունքի տեսակետից ավելի հիմնավորված կլինի վերադառնալ ղարաբաղյան շարժման նախկին կարգախոսին՝ վերականգնել ՀՀ խախտված տարածքային իրավունքները»,* – նշել է պատմաբանը՝ ավելացնելով, որ անհրաժեշտ է հաշվի առնել այն փաստը, որ Լեռնային Ղարաբաղը և Նախիջևանը երբեք Սովետական Ադրբեջանի՝ որպես առանձին հանրապետության մասը չեն եղել և չեն մտել նրա կազմի մեջ, իսկ միջազգային նորմերի լուրջ խախտումների արդյունքում փոխանցվել են Ադրբեջանի իրավասությանը:

*«Լեռնային Ղարաբաղը գտնվում էր Ադրբեջանի իրավասության ներքո, բայց մտնում էր ԽՍՀՄ կազմի մեջ, քանի որ այն ժամանակ Ադրբեջանի անկախ պետություն չկար: Բացի այդ, Հարավային Կովկասի պետական սահմանների մասին վերջին փաստաթուղթը Ազգերի Լիգայի զեկույցի առաջարկն է, որը 1920թ. փետրվարի 24-ին ստորագրվել է Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի, Ճապոնիայի և Իտալիայի ներկայացուցիչների կողմից: Դրանում ներկայացված են Հարավային Կովկասի պետական սահմանների հաստատման սկզբունքները, որոնց համաձայն պետական սահմանների հաստատումը պետք է իրականացվի*

*ազգային հայփանիշով բնակչության բնակեցման սկզբունքի հիման վրա: Այսինքն, այն տարածքը, որտեղ ապրում են հայերը, հանդիսանում է Հայաստանի տարածքը»*, – ընդգծել է Արա Պապյանը և հաղորդել, որ այդ փաստաթուղթը հանդիսանում է մինչ այժմ ընդունված միակ միջազգային սկզբունքը տարածաշրջանում սահմանների հաստատման համար:

Ելնելով վերոհիշյալից՝ Արա Պապյանը հանդես եկավ մի առաջարկով, որի համաձայն ՀՀ Ազգային Ժողովը պետք է դիմի երկրի նախագահին, որն իր հերթին, հանդիսանալով տարածքային ամբողջականության երաշխավոր, պետք է հստակ քայլեր ձեռնարկի ՀՀ ինքնուրույնության վերականգնման համար՝ Լեռնային Ղարաբաղը հայտարարելով Հայաստանի մարզ:

*25 նոյեմբերի, 2008թ.*

## Ի. Անկարան զբաղվում է քաղաքական գովազդով, իսկ Երևանը նրան այդ գործում ակտիվորեն օգնում է

*/հարցազրույց PanArmenian.net-ին/*

*«Հայաստանին անհրաժեշտ են Թուրքիայի հետ դիվանագիտական հարաբերությունները, բայց Թուրքիային դրանք կրկնակի են պետք, ուստի ես չեմ հասկանում Հայաստանում Թուրքիայի դեսպանի նշանակման շուրջ ծավալված այս աղմուկը»,* – PanARMENIAN.Net-ի թղթակցի հետ զրույցում հայտնել է պատմաբան և դիվանագետ Արա Պապյանը: Նրա խոսքերով, Անկարան զբաղվում է քաղաքական գովազդով, իսկ Երևանը նրան այդ գործում ակտիվորեն օգնում է: *«Դիվանագիտական կանոնադրությունը ենթադրում է պետության ղեկավարին տվյալ երկրի դեսպանի հավատարմագրերի պարտադիր հանձնում: Եթե դա չկա, ապա դեսպանը՝ տվյալ դեպքում Թուրքիայի, պարզապես հատուկ հանձնարարությունների գծով դեսպան կլինի, ինչը բոլորովին չի կարող նշանակել երկու երկրների միջև նորմալ դիվանագիտական հարաբերությունների հաստատում: Մենք Ստամբուլում Հայաստանի ներկայացուցիչ ունենք Սևծովյան տնտեսական համագործակցության կազմակերպության (ՍՏՀԿ) մեջ, այնպես որ նրան նույնպես կարող ենք համարել հատուկ հանձնարարությունների գծով դեսպան»,* – նշել է Պապյանը:

Նա նաև նկատել է, որ պետությունների համար դիվանագիտական հարաբերությունների հաստատումը հաղորդակցման միջոց է, և ոչ թե՝ նպատակ: *«Ընդ որում, հայկական կողմը, չգիտես ինչու, դա առաջնային է համարում՝ “կանաչ լույս” տալով թուրքական նկրտումներին տարածաշրջանում և Եվրոպայում»,* – ընդգծել է պատմաբանը:

Արա Պապյանի խոսքերով, Օսմանյան կայսրությունում իրագործված Հայոց ցեղասպանությունը հետախուզելու համար պատմաբանների հանձնաժողով ստեղծելու Թուրքիայի պահանջը նախապայման է հանդիսանում, որին Հայաստանը չի կարող համաձայնել: *«Նման հանձնաժողովին համաձայնելը հավասարազոր է նրան, որ Երևանը կասկածի տակ դնի Հայոց ցեղասպանությունը, ինչն անթույլատրելի է ցանկացած հանգամանքներում: Այո, լավ կլինի, եթե հայ-թուրքական սահմանը բացվի, բայց բոլորը, չգիտես ինչու, մոռանում են, որ սահմանը հենց Անկարան է փակել, և նա էլ պիտի բացի, Երևանն այստեղ կապ չունի»,* – ասել է Պապյանը:

Նախօրեին Թուրքիայի ԱԳՆ ղեկավար Ալի Բաբաջանը Հայաստանի ԱԳՆ ղեկավար Էդվարդ Նալբանդյանի հետ հանդիպմանը Ստամբուլում առաջարկեց առանց դիվանագիտական հարաբերությունների հաստատման Հայաստանում Թուրքիայի դեսպան ուղարկել Երևան: Ի պատասխան Հայաստանը պետք է համաձայնի 1915թ. իրադարձությունների ուսումնասիրման համար պատմաբանների համատեղ հանձնաժողովի ստեղծմանը:

*25 նոյեմբերի, 2008թ.*

## ԻԱ. Կրկին Թուրքիայի կողմից Հայաստանի ապաշրջափակման և Կարսի պայմանագրի հետևանքների հնարավոր ճանաչման մասին

Վերջին շրջանում թուրքական լրատվամիջոցները հետևողականորեն լուրեր են տարածում Հայաստանի Հանրապետության իշխանությունների կողմից Կարսի պայմանագրի ճանաչման կամ նախկին սովետա-թուրքական սահմանի հայաստանյան հատվածը որպես հայ-թուրքական սահման ճանաչելու վերաբերյալ: Ներկայումս Ախուրյան և Արաքս գետերով անցնող բաժանարար գիծը չունի հայ-թուրքական պետական սահմանի կարգավիճակ, քանի որ չկա դրա վերաբերյալ որևէ ***<u>օրինականորեն</u>*** ուժի մեջ մտած և ***<u>գործող</u>*** միջազգային պայմանագիր:

Ենթադրենք, շեշտում եմ ենթադրենք, Հայաստանի Հանրապետության իշխանությունները այս կամ այն ձևակերպմամբ ներկայումս *de facto* բաժանարար գծին տալիս են *de jure* միջպետական սահմանի կարգավիճակ: Ինչքանո՞վ այն կլինի օրինական՝ միջազգային իրավունքի և սահմանադրական իրավունքի տեսանկյուններից:

Հայ-թուրքական սահմանը, բնականաբար նկատի ունեմ Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև գոյություն ունեցող միակ *de jure* սահմանը, այսինքն՝ վիլսոնյան սահմանը, չի հաստատվել երկկողմ պայմանագրով, որպեսզի հնարավոր լիներ այն բեկանել կամ փոփոխության ենթարկել միայն 2 կողմերի համաձայնությամբ: Հայ-թուրքական սահմանը կայացել է օրինապես ուժի մեջ մտած իրավարար վճռով *(arbitral award)*, որը պարտադիր իրավական որոշում է ավելի քան մի քանի տասնյակ երկրների համար, այդ թվում նաև Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության համար: Այսինքն, վիլսոնյան իրավարար վճիռը, որն ***<u>անշրջելիորեն</u>*** ուժի մեջ է մտել 1920թ. նոյեմբերի 22-ին, ոչ միայն ճանաչում է ՀՀ իրավունքներն ու տիտղոսը որոշակի տարածքի վրա, այլև ՀՀ համար ստեղծում է ստանձնած միջազգային հանձնառություններին հավատարիմ մնալու անսակարկ պարտավորություն: Տվյալ իրավարար վճռի անբեկանելիության ամենավառ վկայությունը ԱՄՆ Սենատի կողմից 1927թ. հունվարի 18-ին ԱՄՆ-ի և Թուքիայի *de facto* իշխանության միջև 1923թ. օգոստոսի 6-ին կնքված պայմա-

նագրի մերժումն էր, քանի որ հավանությունը կհակասեր ԱՄՆ-ի արդեն իսկ ստանձնած պարտավորություններին, որոնք բխում էին իրավարար վճռից:

Հետևաբար Հայաստանի Հանրապետության իշխանությունները որևէ ձևակերպմամբ չեն կարող օրինապես ճանաչել Կարսի պայմանագրի հետևանքով առաջացած իրավիճակը, քանի որ նման քայլը կհակասի ՀՀ միջազգային պարտավորություններին:

Կարսի պայմանագրի հետևանքների ճանաչումը, չեմ ասում Կարսի պայմանագրի, քանի որ այն ստորագրման իսկ օրից անօրինական էր, կլինի նաև Հայաստանի Հանրապետության գործող սահմանադրության ոտնահարում: Ըստ ՀՀ սահմանադրության 49-դ հոդվածի *«Հանրապետության նախագահը Հայաստանի Հանրապետության անկախության,* ***տարածքային ամբողջականության*** *և անվտանգության երաշխավորն է»*: Այսինքն, քեմալբոլշևիկյան անօրինական գործարքի ճանաչումը և օրինականացման փորձը կհանգեցնի Հայաստանի Հանրապետության տարածքային ամբողջականության խախտման, քանի որ անկախ այն բանից, որ Թուրքիան 1920թ.-ից ի վեր բռնազավթել է *de jure* Հայաստանի Հանրապետությանը պատկանող տարածքի մի զգալի մասը, այնուհանդերձ բռնազավթումը չի կարող հիմք լինել որևէ տարածքի օրինական իրավատիրության համար, առավել ևս հանգեցնել տվյալ տարածքի տիտղոսի փոխանցմանը:

*04 մայիսի, 2009թ.*

## ԻԲ. **Հայրենատիրության միայնակ խաչակիրը**

2009թ. հունիսի 11-ին լրանում է հայոց նորագույն պատմության քաղաքական մեծագույն դեմքերից մեկի՝ ***Վահան Քարփաշյանի*** մահվան 75-ամյա տարելիցը: Մարդ, որի անունն այսօր քչերին է հայտնի, սակայն որի նվիրումը հայրենատիրության գաղափարին և որի վաստակը հայոց պահանջատիրության գործում անգերազանցելի է առ այսօր:

**Վահան Քարտաշյանն** այն մարդն է, որին մենք մեծապես պարտական ենք Միացյալ Նահանգների Սենատում հայության՝ առ այսօր տարած մեծագույն, թերևս միակ, հաղթանակի համար: **Վահան Քարտաշյանն** այն մարդն է, որին հաջողվել է համախմբել ամերիկյան հանրային կարծիքն ու քաղաքական կամքն ընդդեմ ամերիկա-թուրքական՝ 1923թ. օգոստոսի 6-ին Լոզանում կնքված պայմանագրի և դրանով անխաթար պահել, ավելին՝ վերահաստատել հայոց պահանջատիրության հիմքը հանդիսացող՝ ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի իրավարար վճիռը:

**Վահան Քարտաշյանը** ծնվել է Կեսարիայում 1883թ. դեկտեմբերի 1-ին: Հայրը հաջի Նազար աղա Քարտաշյանն էր, մայրը՝ Մարիամ Գալայճյանը: Քարտաշյան ընտանիքն ուներ երկու որդի՝ Կարապետ և Վահան, և մեկ դուստր՝ Հրանուշ: Հայկական դպրոցում նախնական կրթությունը ստանալուց հետո Վահանը մեկ տասնամյակ ուսանում է սբ Բարսեղ Կեսարացու անունը կրող ֆրանսիական ճեմարանում (L'Université de St. Basil), ապա երկու տարի՝ տեղի ամերիկյան վարժարանում (Talas American College):

**Վահան Քարտաշյանը** 1902թ. տեղափոխվում է ԱՄՆ, ուր 1904-1908 թթ. իրավագիտություն է ուսանում Յեյլի (Yale) համալսարանում: Այդ ընթացքում նա խորամուխ է լինում ամերիկյան հասարակական կյանքի մեջ, գրում է հարյուրավոր հոդվածներ, հրապարակում 2 գիրք՝ «XX դարի Օսմանյան կայսրությունը» (The Ottoman Empire of the Twentieth Century) և «Թրքական հարեմի իրական կյանքը» (Actual life in Turkish Harem):

1907թ. մայիսի 15-ին ամուսնանում է կանանց իրավունքների առաջամարտիկ Քորնելյա Ալեքսանդր-Հոլաբի (Cornelia Alexander Holub) հետ: Ուսումն ավարտելուց հետո 1909թ. նա ընդգրկվում է Նյու Յորքի իրավաբանների ընկերակցության մեջ և սկսում մասնավոր իրավաբանական գործունեություն: Դրանք հենց այն

տարիներն էին, երբ Օսմանյան կայսրության մեջ տեղի էին ունեցել հեղաբեկիչ իրադարձություններ:

Ազատության, հավասարության և եղբայրության բարձրագոչ և խիստ գայթակղիչ կարգախոսով իշխանության էին եկել «Երիտասարդ թուրքերը»: Սա այն ժամանակահատվածն էր, երբ հայերը հերթական անգամ հավատում էին, որ թուրքերը փոխվել են, և նրանք այլևս «այն թուրքերը» չեն, ուստի **Քարտաշյանը** 1911թ. ընդունում է թուրքական դեսպանորդի առաջարկը՝ ստանձնել դեսպանության խորհրդականի և Նյու Յորքի թուրքական հյուպատոսության իրավախորհրդատուի պաշտոնը:

Սակայն երբ 1915թ. կեսերին Ամերիկա են հասնում հայոց ջարդերի և աքսորների մասին առաջին լուրերը, նա թուրքական պետության ներկայացուցչի երեսին է շպրտում Օսմանյան կայսրության կողմից իր ստացած բոլոր շքանշաններն ու ամբողջությամբ զինվորագրվում տարաբախտ հայրենիքին օգնելու սուրբ գործին: Այդ պահից ի վեր **Քարտաշյանն** այլևս նոր մարդ էր՝ հայրենատիրության մարտիկ և ազգի նվիրյալ:

1915թ. հայերը Միհրան Սվազլիի (Սվազլյան) գլխավորությամբ ստեղծում են *Հայոց ազգային միությունը (Armenian National Union)*: Միությունը Նյու Յորքում հաստատում է *Մամուլի հայկական գրասենյակ (Armenian Press Bureau)*, որի գործադիր տնօրենն ու թողարկվող հիմնական նյութերի հեղինակն է դառնում **Վահան Քարտաշյանը**: Նա նաև ամեն շաբաթ մեկնում էր Վաշինգտոն, ուր բազմաթիվ հանդիպումներ էր ունենում ազդեցիկ անձանց հետ: Երբ 1918թ. մայիսի 28-ին հայոց ընդարձակ հայրենիքի մի փոքր հատվածի վրա հռչակվում է հայոց նորանկախ պետականությունը, **Քարտաշյանն** իր ողջ ջանքերը նպատակաուղղում է ԱՄՆ կողմից հայոց պետության ճանաչմանը և իր բազմաչարչար երկրին ամերիկյան օգնության հատկացմանը:

1918թ. դեկտեմբերին նա հիմնում է *Հայաստանի անկախության ամերիկյան հանձնախումբը (American Committee for the Independence of Armenia – ACIA)*, որն ուներ 72 հոգիանոց ընդհանուր խորհուրդ և առաջնորդվում էր 9 հոգիանոց գործադիր մարմնի կողմից, որի ղեկավարն էր Գերմանիայում ԱՄՆ նախկին դեսպան Ջեյմս Ջերարդը (James Gerard): Ընդհանուր խորհրդի պատվո նախագահն էր ԱՄՆ Գերագույն դատարանի նախկին անդամ և ապագա պետքարտուղար Չարլզ Էվանս Հյուզը (Charles Evans Hughes): Սա

մի աննախադեպ հզոր կազմակերպություն էր, որի բոլոր անդամները, բացի **Քարտաշյանից**, ամերիկացիներ էին: Կազմակերպությունն իր շարքերում ուներ նախկին և գործող օրենսդիրներ, նախարարներ, դեսպաններ, ռեկտորներ և 21 նահանգապետ: Կազմակերպությունը 13 նահանգում ուներ 23 մասնաճյուղ:

Այդ ժամանակահատվածում **Վահան Քարտաշյանի** և նրա գործընկերների գործունեության ամենամեծ արդյունքը, անտարակույս, 1920թ. ապրիլի 23-ին ԱՄՆ կողմից Հայաստանի Հանրապետության անկախության ճանաչումն էր (համեմատենք 2009թ. ապրիլի 23-ի հայտնի «իրադարձության» հետ): Սա առանձնապես հիշատակելի է, քանի որ ԱՄՆ-ը այդպես էլ երբեք չճանաչեց Վրաստանի և Ադրբեջանի առաջին հանրապետությունների անկախությունը:

Շոշափելի արդյունք պետք է համարել նաև ամերիկյան տարբեր գործակալությունների միջոցով Հայաստանի Հանրապետությանը 17 միլիոն 202 հազար դոլարի մարդասիրական օգնության հատկացմանն ու ավելի քան 11 միլիոն դոլար արտոնյալ վարկի տրամադրմանը էապես նպաստելը:

1920-23թթ. հայոց նորագույն պատմության ամենամեծ ձեռքբերումների և ամենամեծ կորուստների տարիներն են:

Սրանք այն տարիներն էին, երբ մի կողմից՝ միջազգային հանրությունը Վիլսոնի իրավարար վճռով ճանաչեց ու ամրագրեց հայերի՝ իրենց բնօրրան-հայրենիքի հյուսիսարևելյան հատվածում պետություն ունենալու իրավունքը, մյուս կողմից՝ երկու անօրեն և միջազգային ճանաչում չունեցող վարչախմբերի (թուրքական և խորհրդային) գրկախառնումը խեղդեց հայոց անկախ պետականությունը:

Մի կողմից հնչում էին հայերին տված խոստումներին և իրավական պարտավորություններին հավատարիմ մնալու հավաստիացումները, մյուս կողմից տեղի էր ունենում դրանց սքողված և անսքող ուրացումը: Այդ ծանր քաղաքական զարգացումները վհատության շեմին էին հասցրել շատերին, շատերն էին հրաժարվել իրենց գաղափարներից, շատերն էին անցել հակառակ ճամբարը:

Եվ ահա, այս դժվարագույն պայմաններում **Վահան Քարտաշյանի** երկարամյա հայրենանվեր գործունեությունն արձանագրում է մեծագույն արդյունքը: Նրան հաջողվում է կանխել Լոզանում Միացյալ Նահանգների և Թուրքիայի միջև 1923թ. օգոստոսի 6-ին կնքած երկկողմ պայմանագրի ընդունումն ԱՄՆ Սենատում:

Քայլ, որը վերահաստատելով ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի հայ-թուրքական սահմանին վերաբերող վճռի վավերականությունը, հետագա սերունդներին՝ այսինքն՝ մեզ, հնարավորություն է ընձեռել հայրենիքի համար մեր իրավունքների պայքարի զինանոցում ունենալ միջազգային իրավունքի վրա խարսխված անբեկանելի մի կռվան:

Ըստ ամերիկյան Սահմանադրության՝ ցանկացած պայմանագիր ուժի մեջ մտնելու համար պետք է արժանանա Սենատի հավանությանը: Երբ 1924թ. մայիսի 3-ին վերոհիշյալ թուրք-ամերիկյան պայմանագիրը մուտք է գործում Սենատ, **Քարտաշյանը** ձևավորում է *«Ընդդեմ Լոզանի պայմանագրի ամերիկյան հանձնախումբը»* (American Committee Opposed to the Lausanne Treaty – ACOLT), որի նպատակն էր Սենատում պայմանագրի ընդունումը կանխելով՝ գոնե իրավական դաշտում կենդանի պահել Հայաստանի Հանրապետության իրավունքները: Քանի որ Միացյալ Նահանգներում դեռ թարմ էին թուրքերի կողմից հայերի ջարդերի պատմությունների հիշողությունները, պայմանագրի քննարկումն ու քվեարկումը հետաձգվում է գրեթե երեք տարի:

Այդ ժամանակահատվածում **Քարտաշյանը** գրեթե միայնակ, սեփական միջոցներով անում է անկարելին՝ հարյուրավոր նամակներով, գրություններով, ելույթներով, հրապարակումներով ամերիկյան քաղաքական շրջանակներում վառ է պահում հայոց իրավունքները:

1926թ. հրատարակում է *«Լոզանի պայմանագիրը, Թուրքիան և Հայաստանը»* (The Lausanne Treaty, Turkey and Armenia) ժողովածուն: Այդ գրքում փայլուն կերպով ի մի են բերված բոլոր իրավական հիմնավորումները, քաղաքական պարտավորություններն ու բարոյական հանձնառություններն ընդդեմ Լոզանի թուրք-ամերիկյան պայմանագրի: Արդյունքը կատարյալ էր: 1927թ. հունվարի 18-ին Սենատը մերժում է հավանությունը տալ հիշյալ պայմանագրին: Ավելին, որպես մերժման հիմնական պատճառ նշվում է Թուրքիայի կողմից Վիլսոնի իրավարար վճռի չկատարումը:

Պայմանագիրը Սենատում ևս մի քանի տարի առկախ մնալուց հետո՝ 1934 թ. հունվարի 16-ին, ետ է ուղարկվում նախագահական: **Վահան Քարտաշյանն** իրականացրել էր իր կյանքի մեծագույն առաքելությունը՝ իր հայրենիքի համար ապահովել էր հայրենատիրության պայքարի իրավական խարիսխը: Նա այլևս կարող էր ավարտել երկրային ուղին:

Մի քանի ամիս հետո՝ 1934թ. հունիսի 11-ին, 51 տարեկանում դադարում է բաբախել մեծ հայրենասեր, գործընկերների բնութագրմամբ՝ **«միայնակ խաչակիր»** *(lone crusader)* **Վահան Քարտաշյանի** սիրտը: Մահանում է հայրենատիրության գաղափարի առաջամարտիկը, որի գործունեության արդյունքն անժամանցելի ու անգերազանցելի է, իսկ նվիրումը հայրենիքին՝ անմնացորդ:

Իր քաղաքական գործունեության սկզբում լինելով ժամանակի ամենահարուստ հայերից մեկը՝ գրեթե երկու տասնամյակ տևած պայքարից հետո նա անգամ թաղման փող չուներ: Նյու Յորքի հայերի հանգանակած գումարով նրան համեստորեն հողին են հանձնում Լոնգ Այլընդի «Սիդը գրոուվ» գերեզմանատանը (Cedar Grove Cemetery, Long Island): Այսպես է ավարտվում մեր ժողովրդի նորագույն պատմության մեծագույն գործիչներից մեկի կյանքը:

**Հ.Գ.** Անցյալ տարվա (2008թ.) մայիսին լինելով Նյու-Յորքում ուզում էի այցելել մեծ հայրենասեր **Վահան Քարտաշյանի** գերեզմանին, սակայն ապարդյուն: Պարզվեց, որ նրա գերեզմանն անգամ չի պահպանվել, քանի որ տասնամյակներ շարունակ այցելու չի ունեցել: Այսօրվա մեր համընդգրկուն և խորացող ճգնաժամն ունի բազմաթիվ մեծ ու փոքր պատճառներ: Վստահաբար, պատճառներից մեկը հայրենիքի նվիրյալների ուրացումն է ու կեղծ հերոսների կռապաշտությունը: Երևանի երկու մեծագույն փողոցներն անվանակոչել ենք ուրիշի բանակի մարշալի ու ծովակալի անուններով, կանգնեցրել ենք նրանց ամպագոռգոռ արձանները և դեռ սպասում ենք, որ մատաղ սերունդը հավատարմորեն ծառայի մայր հայրենիքին ու չընտրի օտարին ծառայելու միջոցով սեփական հայրենիքում փառքի արժանանալու ճամփան:

*11 հունիսի, 2009թ.*

## ԻԳ. Սպասելով Փոքր Մհերի վերադարձին

Հին աշխարհում մի սովորություն կար. վատ լուր բերողի գլուխը կտրում էին: Երբ երեխա էի, չէի հասկանում՝ ինչո՞ւ են մարդիկ ստանձնում գուժկանի մահաբեր առաքելությունը: Հետո հասկացա: Ազգային, հասարակական շահի տեսանկյունից ոչինչ չկա ավելի բարձր, քան ճշմարտությունը: Պարզ, երբեմն դաժան ճշմարտությունը կենսական նշանակություն ունի, որովհետև առանց բաց աչքերով իրականությանը նայելու հնարավոր չէ գտնել փրկության ուղին: Միթե՞ կարող է կույրը կույրին առաջնորդել: Հիմա մեր հերթն է բաց աչքերով նայելու իրականությանը:

Հայ ժողովրդի լինելիությունը նրա ավելի քան հինգհազարամյա գոյության ընթացքում երբեք այսքան վտանգված չի եղել, որքան այժմ: Սա պայմանավորված է Հայաստանում ձևավորված ժողովրդագրական սպառնալից իրավիճակով՝ անշեղորեն կրճատվող ծնունդով, հասարակության ծերացմամբ, մահացության աճով, ինչպես նաև չընդհատվող արտագաղթով: Պատճառները բազմաթիվ են, սակայն հիմա դրանք չենք քննարկի: Ըստ ՄԱԿ-ի տվյալների, Հայաստանի բնակչությունը մինչև 2025թ. կնվազի 25%-ով: Միևնույն ժամանակ Ադրբեջանի բնակչությունը կաճի 31%-ով, իսկ Թուրքիայինը՝ 43%-ով:[1] 50 տարի հետո Հայաստանում կմնա ներկա բնակչության կեսը: Ցանկացած հասարակության պարզ վերարտադրությունն ապահովելու համար անհրաժեշտ է, որ ծնելիության ցուցանիշը լինի առնվազն 2.11: Ծնելիության 1.3 ցուցանիշ ունեցող հասարակությունները դատապարտված են վերացման: 2007թ. Հայաստանում ծնելիության ցուցանիշը եղել է 1.348:[2]

Անգամ ցեղասպանության տարիներին դրությունն այսքան ողբերգական չէր: Պարզ էր, որ ինչ-որ քանակությամբ հայեր փրկվելու էին, որոնք էլ իրենց հայրենիքի մի հատվածի վրա վերաշինելու էին իրենց տունը և շենացնելու էին հայրենիքը զավակներով: Հարցը ժամանակի մեջ էր՝ շատ կփրկվեին, քիչ ժամանակ պետք կլիներ ազգը վերականգնելու համար, քիչ կփրկվեին՝ շատ ժամանակ պետք կլիներ: Հավերժության զավակը՝ ժամանակը, մեր դաշ-

---

[1] Գայանե Աբրահամյան, ArmeniaNow.com, 29.06.2007:

[2] Կարինե Կույումջյան, Ազգային վիճակագրական ծառայության մարդահամարի և ժողովրդագրության բաժնի պետ, 22.04.2008, Panorama.am:

նակիցն էր: Հիմա ժամանակը մեր թշնամին է. 5-10 տարի հետո Հայաստանի մեջ, առաջին անգամ խաղաղության տարիների ընթացքում, լույս աշխարհ եկած երեխաների թիվը զիջելու է այս աշխարհից գնացածների թվին: Այսինքն, մենք սկսելու ենք վերջանալ, ինչպես ջուրը առվի մեջ՝ աղբյուրը ցամաքելուց հետո, ինչպես լույսը երկնքում՝ արևը մայր մտնելուց հետո: Քսանմեկերորդ լուսավոր դարը կարող է մեր վերջինը լինել: Վերջի սկիզբն արդեն դրված է:

Իհարկե ազգի վերացում չի նշանակում ազգի անհատների վերացում: Թերևս 100-200 տարի ինչ-որ համայնքներ կլինեն, ինչ-որ անհատներ ազգի փրկության ծրագրեր կմշակեն, ինչ-որ կուսակցություններ ազգի փրկության համար դրամ կհավաքեն: Գուցե մինչևիսկ ինչ-որ վարչատարածքային միավոր էլ լինի՝ Армянский форпост կամ Ermenistan vilayeti: Անգամ գուցե նրա ղեկավարը *նախագահ* կկոչվի և *ախռանա* էլ կունենա: Սակայն դա Հայաստան չի լինի, այլ կլինի ուրիշի փարախում կապված մատաղացու գառ, որին ցանկացած պահին մատաղ կանեն փարախի տիրոջ զավակի ողջության համար: Հիշու՞մ եք, մեզ մի անգամ արդեն մատաղ արել են համաշխարհային հեղափոխության հաղթանակի ճանապարհին:

Հիմա անդրադառնանք մի բնական հարցի. *իսկ ի՞նչ անել*: Պատասխանը շատ պարզ է՝ պետք է խրախուսել բազմազավակությունը, այսինքն՝ Հայաստանում ծնված առաջին երեխայի համար մինչև չափահասության տարիքը յուրաքանչյուր ամիս ընտանիքին պետք է տալ գոնե 100 դոլար, կուզեք՝ համարժեքը դրամով, երկրորդի համար՝ 200, երրորդի համար՝ 300, և այդպես շարունակ: Դրա համար տարեկան պետք կլինի լրացուցիչ 2-3 մլրդ դոլար: Այդքան էլ պետք կլինի ենթակառույցների վերականգնման, առողջապահական և կրթական համակարգերի նորացման, կարճ ասած, երկիրը երկիր դարձնելու համար: Իհարկե, Հայաստանում յուրաքանչյուր տարի լրացուցիչ ծախսված 5-6 մլրդ դոլարը էապես կխթանի նաև երկրի տնտեսությունը, կստեղծի նոր աշխատատեղեր և, բնականաբար, հարկերի, մաքսերի, տուրքերի և այլ գանձումների տեսքով կապահովի դրամական նոր մուտքեր: Առաջին հայացքից տարեկան 7-8 մլրդ դոլար ծախսային մասը ՀՀ ներկա բյուջեի համեմատ (2.7 մլրդ դոլար) հսկայական է թվում, սակայն իրականության մեջ այն ընդամենը, օրինակ, Եվրոպայի ոչ հարուստ երկրներից մեկի և չափորոշիչներով մեզ մոտ՝ Լիտվայի 2008թ. բյուջեի ծախսային մասի հազիվ կեսն է:

Այժմ անդրադառնանք ամենակարևոր հարցին. *իսկ որտեղի՞ց այդքան փող*: Ակնհայտ է, որ հարկերի հավաքման տեսանկյունից Հայաստանը երբեք Շվեյցարիա, իսկ մարդու իրավունքների տեսանկյունից՝ երբեք Շվեդիա չի դառնա: Ենթադրենք դարձավ, հետո՞: Հետո այն, որ Հայաստանի բյուջեն լավագույն դեպքում կարող է կրկնապատկվել, և մենք կհավասարվենք Ալբանիային: Արդյո՞ք մեր երազանքը հայկական Ալբանիա կառուցելն է: Իհարկե՝ ոչ: Անգամ կրկնապատիկ բյուջեի դեպքում մենք չենք կարող մեզ թույլ տալ տարեկան 2-3 մլրդ դոլար ծախսել ազգապահպան, իսկ ավելի պարզ լեզվով, վերարտադրողական ծրագրերի վրա:

Ակնհայտ է, որ այսօրվա մեր վիճակը խուլ արձագանքն է Հայոց ցեղասպանության և հայրենազրկման: Չլիներ ցեղասպանությունը, մենք կլինեինք ավելի շատ, ավելի մեծ ու բարգավաճ հայրենիքի սահմաններում: Գրեթե հարյուր տարի առաջ ցեղասպանի բարձրացրած կացինը մեր օրերում հասցրեց իր վերջին հարվածը: Մեր ազգի կենաց ծառն այլևս անկարող է ինքնուրույնաբար ապաքինելու իր վերքերը: Հետևաբար, մեր ազգային գոյության 2 մեծագույն ողբերգությունները՝ ցեղասպանությունն ու հայրենազրկումը, պիտի դառնան մեր ազգային գոյությանը նոր ավիշ հաղորդող երկու հիմնական աղբյուրները: Մենք այլընտրանք չունենք:

Սիրելի ընթերցող, հարցի ավելի հանգամանալից և մասնագիտական քննարկումը տե՛ս սույն ժողովածուի մեջ ընդգրկված **«Հայկական հարցի լուծման հայեցակարգ»**-ի մեջ: Մի բան բոլորիս համար պիտի պարզ լինի. հայկական հարցի լուծումը մասնագիտական մտավարժանք կամ տեսական գլուխկոտրուկ չէ: Դա հայ ժողովրդի գոյատևման **միակ ուղին** է: Կսկսենք առաջիկա 10 տարվա մեջ Թուրքիայից տարին 3-5 մլրդ դոլար նյութական կորուստների հատուցում և Թուրքիայի կողմից հայկական գույքի ու տարածքների օգտագործման վարձավճար ստանալ, ապա, միգուցե, դուրս կգանք ժողովրդագրական անդունդից, ապահով գոյության ու տնտեսական զարգացման հիմքեր կստեղծենք, չենք կարողանա՝ կգնանք միանալու մեր նախկին հարևաններին՝ բաբելացիներին, շումերներին և այլոց:

Առաջարկվող հայեցակարգն իրատեսական է, որովհետև ունի զորավոր իրավական հիմքեր և շահագրգիռ քաղաքական ուժեր: Սակայն մենք ոչնչի չենք հասնի, քանի դեռ մեր իրավունքների վերահաստատումն ու մեր կորուստների դիմաց հատուցման

ծրագիրը համազգային նպատակ ու պետական քաղաքականություն չի դարձել: Մանր հաջողություններն ու դրանց մասին մեծ-մեծ խոսելը երկիրը չեն փրկի: Քաղաքական շամանությամբ երկիր պահել հնարավոր չէ:

**Եկել է գործնական ծրագրերի ժամանակը**:

Մեր ազգային էպոսի վերջին ճյուղի հերոսը՝ Փոքր Մհերը, պարտության մատնեց հարազատ հորը՝ անպարտ Սասունցի Դավթին, ապա անզավակ գնաց անէանալու Ագռավաքարի որջի մեջ: Միթե՞ հայ ժողովուրդը, պարտություն կրելով ինքն իրենից, պիտի անզավակ փակվի պատմության Ագռավաքարի մեջ:

*02 հուլիսի, 2009թ.*

# Մաս II

# ՀՆՉԵՑՐԵ՛Ք ԶԱՆԳԵՐԸ, ՍԱ ՄԵՐ ՎԵՐՋԻՆ ՍԱՐԴԱՐԱՊԱՏՆ Է



## ԻԴ. Բախտորոշ ճամփաբաժանի առջև

Ներկայումս Հայաստանի Հանրապետությունը հայտնվել է բախտորոշ ճամափաբաժանի առջև: Առաջիկա ամիսները, գուցեև շաբաթները, մեզ համար կարող են լինել ձեռքբերումների ժամանակաշրջան, սակայն կարող են լինել նաև մեծագույն կորուստների շրջափուլ: Հայ-թուրքական համատեղ մշուշոտ հայտարարությունը մեր պետականության նորագույն շրջանի (1991–2009թթ.) արտաքին քաղաքականության՝ առ այսօր եղած ամենավիճահարույց փաստաթուղթն է:

Խիստ խնդրահարույց է հայտարարության ստորագրման ամսաթիվը, միանգամայն անընդունելի է այն հասարակությանը ներկայացնելու ձևը, և մեծապես կասկածելի են ակնկալվող օգուտները: Ավելին, գործընթացի ոչ ճիշտ զարգացման դեպքում, որը ցավոք սրտի շատ հավանական է թվում, մենք ազգովի կարող ենք հայտնվել պղծված անցյալի, պարապ ներկայի և անապագա հայրենիքի ուրվապատկերի առջև: Առանց չափազանցության՝ մենք պարզապես կարող ենք վերջնականապես դառնալ աշխարհագրական ելուստ և քաղաքական կցորդ: Այդ ճակատագրից խուսափելու միակ ուղին, ինչպես նշել եմ բազմիցս, Հայկական հարցի լիակատար, ամբողջական և արդարացի լուծումն է, այլ ոչ թե ինքնախաբեությամբ համեմված պատրանքը: Եթե թուրքերի կողմից պարբերաբար և հետևողականորեն տարածվող տեղեկություն-նախապայմաններից թեկուզև մեկը ճիշտ լինի, ապա դա կլինի Հայաստանի Հանրապետության՝ որպես ինքնուրույն քաղաքական միավորի, եթե ոչ վերջը, ապա վերջի սկիզբը:

Մի կարևոր դիտողություն ևս: Այս աղմկահարույց գործընթացում խոսքը ոչ թե ***«հայ-թուրքական սահմանի բացման մասին»*** է, այլ Ախուրյան–Դողուկապի երկաթուղային և Մարգարա–Իգդիր ցամաքային սահմանային անցակետերի հնարավոր բացման մասին: Ուստի իրերը պետք է կոչել իրենց անուններով, և փաստաթուղթը հստակ պիտի խոսի միմիայն դրանց մասին և երբեք չգործածի ***«հայ-թուրքական սահման»*** հասկացությունը: Դա ճիշտ չէ միջազգային իրավունքի տեսանկյունից, դա ճիշտ չէ ՀՀ հեռագնա շահերի տեսանկյունից: Քանի որ, չնայած բարձրագոչ հավակնությանը, բանակցային գործընթացի նպատակն ակնհայտորեն ոչ թե հայ-թուրքական հարաբերությունների կարգավորումն է, այն է՝ Թուրքիայի և

մի շարք երկրների կողմից ՀՀ նկատմամբ ստանձնած պարտավորությունների կատարումը, այլ ընդամենը 2 մասնավոր հարցի, այն է սահմանային 2 անցակետերի հնարավոր բացումն ու դիվանագիտական հարաբերությունների հաստատումը, ուստի նման փաստաթուղթը պիտի ստորագրվի ոչ թե միջպետական կամ միջկառավարական, այլ միջգերատեսչական մակարդակով: Հայկական կողմից անցակետերը գործարկելու վերաբերյալ ստորագրողները կարող են լինել, օրինակ, Տրանսպորտի և կապի փոխնախարարը, ՊԵԿ-ի նախագահի մաքսային հարցերի պատասխանատու տեղակալը և ԱԱԾ սահմանապահ զորքերի հրամանատարը: Ոմանք կարող են ասել, որ այդ մակարդակով հնարավոր չէ: Հնարավոր է. ԱՄՆ – Թուրքիա միջպետական հարաբերությունները հաստատվել են ոչ թե միջազգային պայմանագրով, քանի որ Սենատը դեմ էր Թուրքիայի հետ հարաբերությունների հաստատմանն առանց Վիլսոնի իրավարար վճռի իրականացման, այլ ԱՄՆ պետքարտուղարություն – Թուրքիայի ԱԳՆ միջգերատեսչական փաստաթղթով՝ 17 փետրվարի, 1927 թվակիր մոդուս վիվենդիով: Նույն ամերիկացիների օրինակով հայ-թուրքական դիվանագիտական հարաբերությունները կարելի է հաստատել երկիմաստություններից զուրկ, միանշանակ և զուսպ ձևակերպումներ պարունակող, միմիայն դիվանագիտական հարաբերություններ հաստատող միջգերատեսչական նոտայով: Եթե Թուրքիան հրաժարվի այդ մակարդակով և այդ ձևով առաջ ընթանալուց, ապա դա ցույց կտա, որ թուրքերի նպատակը ոչ թե հայ-թուրքական հարաբերությունների թեկուզև մասնակի կարգավորումն է, այլ, մեզ դիվանագիտական ծուղակի մեջ գցելով, առավելագույն օգուտներ քաղելն ու մեզանից խորամանկորեն իրենց ցանկալի նախապայմանների իրականացումը կորզելն է:

Այս երկու մանր հարցերում էլ Միացյալ Նահանգները պարտավոր է թիկունք կանգնել Հայաստանին, քանի որ ՀՀ նախագահը գոնե այս տարի ԱՄՆ նախագահին պատրվակ տվեց չկատարելու իր ընտրողներին տված անսակարկ խոստումը:

*26 ապրիլի, 2009թ.*

## ԻԵ. **Ողբո՛ւմ եմ քեզ, Հայո՛ց աշխարհ** *կամ* **Երեք-զրո՝ հօգուտ Թուրքիայի**

Մինչև հիմա մենք ասում էինք և մեզ ասում էին, որ Թուրքիայի հետ հարաբերությունները հաստատվելու են առանց նախապայմանների: Շատերը հավատում էին դրան: Հավատում էին գուցե նաև այն պատճառով, որ հակառակը պատկերացնելը հնարավոր չէր: Հակառակը պարզապես կիմաստազրկեր հայոց պետականությունը, հակառակը պարզապես արյունը ջուր կդարձներ, իսկ երկիրը՝ տնամերձ:

Այսօր կարող ենք արձանագրել, որ իրողությունն ավելի սարսափելի է, քան վատագույն կանխատեսումները: Առկա արձանագրություններով ՀՀ իշխանություններին առաջարկվում է ընդունել Թուրքիայի բոլոր 3 նախապայմանները:

<u>Թուրքիայի առաջին նախապայմանը</u> մեր կողմից մեր իրավունքների ուրացումն է և Թուրքիայի նկատմամբ տարածքային պահանջներից հրաժարումը, այսինքն՝ առկա սահմանների ճանաչումը: *«Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին»* արձանագրության 4-րդ կետը բավարարում է Թուրքիայի հենց այս պահանջը:

<u>Թուրքիայի երկրորդ նախապայմանը</u> Լեռնային Ղարաբաղը Ադրբեջանի կազմում թողնելն է, այսինքն՝ Լեռնային Ղարաբաղի հարցի լուծումը միմիայն տարածքային ամբողջականության սկզբունքի հիման վրա: Նույն արձանագրությունը բավարարում է նաև այս պայմանը, քանի որ 2-րդ կետը, վերահաստատելով այն սկզբունքները, որոնց հիման վրա կառուցված են պետությունների հարաբերությունները, լռության է մատնում ժողովուրդների ինքնորոշման իրավունքը:

<u>Թուրքիայի երրորդ նախապայմանը</u> Ցեղասպանության միջազգային ճանաչման գործընթացից հրաժարումն է: Այս նախապայմանը ևս բավարարվել է: *«Երկկողմ հարաբերությունների զարգացման մասին»* արձանագրության մեջ ստեղծվելիք ենթահանձնաժողովների թվում նշված է նաև *«պատմական հարթությամբ զբաղվող ենթահանձնաժողովը»*, որը պետք է զբաղվի նաև *«երկու ժողովուրդների միջև … գոյություն ունեցող խնդիրների հստակեցմամբ»*: Իսկ ո՞ր հարցն է ամենից խնդրահարույցը, որը կարիք ունի հստակեցման: Իհարկե, դա Հայոց ցեղասպանության հարցն է:

Ակնհայտ է, որ եթե Հայաստանն ընդունի առաջարկվող արձանագրությունները, ապա Թուրքիան ամբողջովին կստանա այն, ինչին ձգտում էր: Իսկ ի՞նչ ենք ստանալու մենք: Միթե՞ այնքան կարճատես կլինենք, որ կօրինականացնենք Հայաստանի Հանրապետության տարածքների բռնազավթումն ու մեր ազգային գույքի բռնատիրումը Թուրքիայի Հանրապետության կողմից և կզոհաբերենք մեր ժողովրդի ապագան:

Եթե վերոհիշյալ արձանագրությունները ստորագրվեն, ապա նոր Խորենացու պետք կունենանք, որպեսզի գրի. *«Ողբո՛ւմ եմ քեզ, Հայո՛ց աշխարհ, … որովհետև վերացան թագավորդ ու քահանադ, … հիմնավորվեց պղծությամբ չարափառությունը»*:

*31 օգոստոսի, 2009թ.*

## ԻՁ. ԲԱՑ ՆԱՄԱԿ
## «Առավոտ» օրաթերթի գլխավոր խմբագիր Արամ Աբրահամյանին

Հարգելի՛ պարոն խմբագիր,

Ձեր թերթում ս.թ. սեպտեմբերի 3-ի հրապարակած առաջնորդողը Դուք ավարտում եք մի շատ կարևոր հարցադրումով. «*Պետք է վերջապես հստակեցնել՝ արդյո՞ք Ցեղասպանության միջազգային ճանաչումը և պահանջատիրությունն այսօր մեր պետության ամենաառաջնակարգ և ամենահրատապ խնդիրներն են*»: Հաշվի առնելով վեցշաբաթյա քննաշրջանը, որի մեջ ներկայումս գտնվում է հայ ժողովուրդը՝ միանգամայն ժամանակին արված հարցադրում է:

Փորձեմ ինքս պատասխանել այդ հարցադրմանը և միևնույն ժամանակ հույս հայտնել, որ իրենց քաղաքական գործիչ համարող անձինք, իսկ դրանք գրեթե անհաշիվ են Հայաստանում, նույնպես կարձագանքեն Ձեր հարցադրմանը:

Անձամբ ինձ համար Ցեղասպանության ճանաչումն առաջնային ու էական չէ և չի եղել, թեև անձնապես մեծ և բարեավարտ ջանքեր եմ գործադրել ճանաչման ուղղությամբ *[օրինակ, Կանադայի կողմից Հայոց ցեղասպանության ճանաչումը և դատապարտումը]*: Ցեղասպանության ճանաչման գործընթացը պետականազուրկ հայ ժողովրդի սփյուռքի հատվածի միակ հնարավոր գործողությունն էր՝ նպատակամղված մասնակի՝ բարոյական, հատուցում ստանալուն: Իհարկե կար և կա Ցեղասպանության ճանաչումը նյութական և տարածքային հատուցումով «պտղավորելու» աղոտ ձգտումը, որի իրականացման գործնական ուղին մինչև հիմա ինձ համար անըմբռնելի է մնում:

Բոլորովին այլ է պահանջատիրության հարցը: Ընդհանրապես, ***պահանջատիրություն*** բառն ընկալվում է որոշակի բացասական ստվերով, ուստի ներկա հայ քաղաքական կյանքում, հատկապես պետականամերձ շրջանակներում, դրանից հեռու մնալու ձգտում կա: Պահանջատիրությունը ***«claims under international law»*** *(պահանջներ՝ ըստ միջազգային իրավունքի)* երկարաշունչ եզրույթի բավականին հաջող թարգմանությունն է: Պահանջները և պահանջներին հետամուտ լինելը միջազգային հարաբերությունների մեջ մշտապես գոյություն ունեցող երևույթներ են, և դրա մեջ ինքնին որևէ բացասական բան չկա: Պահանջատիրության բնույթը որոշվում է ոչ թե

պահանջի ընդգրկմամբ, այլ նրա օրինական կամ անօրինական լինելով, այսինքն՝ տվյալ երկրի հավակնությունները որքանով են խարսխված միջազգային իրավունքի վրա: Այս առումով, ՀՀ տարածքային իրավունքները միանգամայն անթերի են, քանի որ խարսխված են անժամանցելի և անբեկանելի միջազգային փաստաթղթի՝ այն է ***Իրավարար վճռի*** *(Arbitral Award)* վրա: Ավելին, հայոց պահանջատիրության հարցը, որն ըստ էության հայրենատիրության ջատագովություն է, նաև մարդու իրավունքների հարց է, քանի որ այն կոչված է վերականգնելու սեփական հայրենիքից ու ազգային ժառանգությունից զրկված անհատ մարդու և միևնույն հանրությանը պատկանող անհատների հավաքական իրավունքը:

Այսուհանդերձ, ես կողմ եմ պահանջատիրության քաղաքականությանը ոչ թե այն պատճառով, որ դրա օրինական իրավունքն ունենք կամ միայն ուզում եմ օգնել իմ հայրենակիցներին վերականգնել մեր ոտնահարված իրավունքները, այլև այն պատճառով, որ դա՛ է հայոց պետականության հզորացման միակ հնարավորությունը, ըստ այդմ՝ հայ ժողովրդի հարատևման եզակի ուղին:

Ուղին, որով այսօր փորձում են ընթանալ ՀՀ իշխանությունները, ամենադյուրին, սակայն անհեռանկարային ճանապարհ է: Դրանով չի լուծվում ՀՀ առջև ծառացած և ոչ մի կենսական խնդիր, այն է՝

ա) պետության ինքնիշխանության և այդ պետության քաղաքացիների անվտանգության ապահովումը,

բ) երկրի տնտեսական զարգացման և այդ երկրի քաղաքացիների բարեկեցության համար նպաստավոր պայմանների ստեղծումը,

գ) նախորդ երկուսի հենքի վրա, այսինքն՝ ապահով և բարեկեցիկ երկրի մեջ, ազգային ինքնության և մշակույթի զարգացումը:

Մենք անասելի բարձր գնով Վրաստանից մեր կախվածության փոխարեն ստանում ենք կախվածություն Թուրքիայից, այսինքն՝ դառնում ենք Թուրքիայի բարեհաճության և ներքին կայունության պատանդը:

Վերջերս հայաստանյան թերթերից մեկը, նկատի ունենալով Հայ-թուրքական չարաբաստիկ արձանագրությունների վերաբերյալ իմ արտահայտած մտքերը, գրել էր, որ ես ամենահոռետեսական կանխատեսումներն եմ արել: Ուզում եմ հիշեցնել, որ հոռետեսները ուղղակի լավ տեղեկացված իրատեսներ են: Ես պարզապես շատ լավ եմ պատկերացնում, թե ինչ է մեզ սպասում, եթե ստորագրենք վերոհիշյալ արձանագրությունները...

Այսօր մենք միջազգային հարաբերություններում անհամամասնորեն մեծ տեղ ենք գրավում, քանի որ համաշխարհային ուժերը Հայաստանի նկատմամբ իրավական և բարոյական պարտավորություններ ունեն: Բնական է նրանց ձգտումը՝ ձերբազատվելու դրանցից: Ի վերջո, այսօր Հայաստանն այս ծանր վիճակի մեջ է նաև նրանց մեղքով և Հայաստանի հանդեպ իրենց դաշնակցային պարտավորություններն ուրանալու պատճառով:

Ուրեմն այսպես, հայ-թուրքական հարաբերությունների՝ այսպես կոչված կարգավորումից հետո, մենք պարզապես կդադարենք աշխարհի քաղաքական հոլովույթի մեջ գոյություն ունենալուց և կդառնանք ոչինչ՝ ռուսական ռազմական միջուկով Թուրքիայի տնտեսական կցորդը: Պահանջատիրությունը այն զրոն է, որը տասնապատկում է մեր դերն ու նշանակությունը:

Ուզում եմ հավատալ, որ դա հասկանում է նաև երկրի քաղաքական ղեկավարությունը, քանի որ նույն այն ուժերը, որ այսօր ՀՀ իշխանություններին դրդում են ուրանալու պետության և ազգի օրինական իրավունքները, վաղն առաջին հերթին օգնելու են իշխանափոխություն իրականացնել Հայաստանում: Անհեռատեսություն է քաղաքականության մեջ հույսը դնել երախտագիտության վրա: Եթե մեկն այսօր նոր էջ է բացում պատմության մեջ, պիտի ընդունի նաև, որ նոր էջը լրացնելու են նոր մարդիկ: Առավել ևս, երբ դրանով թուլացնելու է իր դիրքերը: Այսօր, ըստ ամենայնի, մենք կորցրել ենք ազգային ինքնապահպանման բնազդը: Սակայն արդյո՞ք մենք ինքնապահպանման բնազդը կորցրել ենք նաև անհատական մակարդակի վրա... դա ցույց կտան առաջիկա շաբաթները:

**Այսպիսով, Հայոց պահանջատիրությունն է Հայաստանի Հանրապետության կենսապահովման միակ հնարավորությունը, հայ ժողովրդի արժանապատիվ գոյության միակ հենքը:**

*03 սեպտեմբերի, 2009թ.*

## ԻԷ. Հայաստանի և Թուրքիայի միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու և «ընդհանուր սահմանը որոշող համապատասխան պայմանագրերի» մասին

Հայաստանի և Թուրքիայի միջև հնարավոր դիվանագիտական հարաբերությունների հաստատման վերաբերյալ քննարկումների շրջանակում մամուլում մի քանի անգամ հնչել է այն միտքը, թե դիվանագիտական հարաբերությունների հաստատումը ենթադրում է սահմանների ճանաչում կամ մինչևիսկ դրանց ամրագրում: Միանգամայն սխալ և միջազգային իրավունքի մեջ հիմքեր չունեցող պնդում:

Միջազգային հարաբերությունների արդի փուլում դիվանագիտական հարաբերությունների հաստատումը կարգավորող և դրանց ընթացքը կանոնակարգող փաստաթուղթը Դիվանագիտական հարաբերությունների վերաբերյալ Վիեննայի կոնվենցիան է (1961թ.): Սույն կոնվենցիայի 3-րդ հոդվածը թվարկում է այն 5 գործառույթները, որոնք վերապահված են դիվանագիտական առաքելությանը: Դրանց մեջ ճանաչման, առավել ևս սահմանների ճանաչման գործառույթ չկա: Նշյալ կոնվենցիայի մեջ ***սահման*** բառն ընդհանրապես ***չկա*** :

Քանի որ հայաստանյան հասարակական մտքի մեջ լուրջ խառնաշփոթ կա պետությունների կամ կառավարությունների ճանաչման և, այսպես կոչված, սահմանների ճանաչման հարցի շուրջ, նպատակահարմար եմ համարում համառոտակի անդրադառնալ դրան: Իրենց խորքում, դիվանագիտական հարաբերությունների հաստատումն ու սահմանների հստակեցումը կամ ամրագրումը երկու տարբեր իրավական գործողություններ են: Նույն Թուրքիայի Հանրապետությունը դիվանագիտական հարաբերություններ հաստատելու պահին սահմանային վեճեր է ունեցել, իսկ որոշ երկրների հետ մինչև հիմա էլ ունի. Հունաստան, Սիրիա, Իրաք և Իրան: Նման իրավիճակը չի խանգարել և չի խանգարում Թուրքիային բնականոն հարաբերություններ ունենալ այդ երկրների հետ:

Եթե դիվանագիտական հարաբերությունների հաստատումը ենթադրեր սահմանների ճանաչում, ապա այսօր աշխարհում սահմանային/տարածքային վեճ գրեթե պիտի չլիներ: Սահմանների վերաբերյալ ամենահեղինակավոր հրատարակության[1] տվյալներով 1990-ական թվականների կեսերին աշխարհում առկա էր տարած-

քային/սահմանային 314 վեճ, որոնք վերաբերում էին 112 երկրների: Եւ սա այն պարագայում, երբ այս երկրների ճնշող մեծամասնության միջև առկա են դիվանագիտական հարաբերություններ:

Ի դեպ, նշեմ նաև, որ պետությունների ու կառավարությունների փոխադարձ ճանաչումն անգամ իր մեջ չունի սահմանները ճանաչելու իրավական հետևանք: Ըստ միջազգային հանրային իրավունքի՝ ճանաչում նշանակում է միմիայն պետության կամ կառավարության ճանաչում (statehood or government): Սահմանների որոշման հարցը, ինչպես նշել էի, առանձին հարց է և ընկած է սահմանակից երկրների բացառիկ իրավասության ոլորտում[2] և ունի այլ գործընթաց: Ըստ այդմ, սահմանները ճանաչվում են սահմանակից երկրների միջև կնքված միջպետական (երկկողմ կամ բազմակողմ) համապատասխան պայմանագրով, որն անպայմանորեն պիտի պարունակի սահմանագծի նկարագրությունը կամ պիտի հղում կատարի այդ նկարագրությունը պարունակող մեկ այլ օրինական փաստաթղթին:

Այսօր մեր պարագայում, մենք *գրեթե ունենք* երկրորդ տարբերակը, երբ *Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության* 5-րդ կետով փորձ է արվում սովետա-թուրքական սահմանի հայաստանյան հատվածն ամրագրել որպես Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության սահման: Գրում եմ *<u>գրեթե</u> ունենք, որովհետև, թեև նշյալ կետով վկայակոչվում են միջազգային իրավունքի համապատասխան պայմանագրերը, որոնք որոշել են (define), այդ սահմանը,* սակայն այդպիսիք բնավ չկան: Ուզում եմ շեշտել, որ Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև սահմանը որոշվել է ոչ թե պայմանագրով, այլ ***իրավարար վճռով, 22 նոյեմբերի, 1920թ.*** (arbitral award):

Հայաստանի և Թուրքիայի ընդհանուր սահմանն իբր որոշող, այսինքն՝ սահմանի նկարագրական մասը պարունակող և «պայմանագիր» անունն ունեցող 3 փաստաթուղթ կա՝ Ալեքսանդրապոլի պայմանագիրը (03.12.1920թ.), Մոսկվայի պայմանագիրը (16.03.1921թ.) և Կարսի պայմանագիրը (13.10.1921թ.): Թեև այս 3 փաստաթղթերն էլ ունեն *«պայմանագիր»* անվանումը, այսուհանդերձ նրանցից և ոչ մեկը միջազգային իրավունքի տեսանկյունից պայմանագիր չէ: Նշյալ բոլոր պայմանագրերը կնքած կողմերից և ոչ մեկը կնքելու պահին չի ունեցել նման լիազորություն, այսինքն՝ չի եղել միջազգայնորեն ճանաչված

պետության օրինական կառավարության լիազոր ներկայացուցիչ: Նշյալ պայմանագրերից և ոչ մեկը չի կնքվել Թուրքիայի կողմից, այլ կնքվել է *Թուրքիայի ազգային մեծ ժողովի կառավարության* կողմից, որը 1920-21թթ. ընդամենը ապստամբական շարժման գործադիր մարմին է եղել: Միջազգային իրավունքի և գործող սահմանադրության տեսանկյունից այդ ժամանակ երկրի սուվերենն ու օրինական իշխանությունը սուլթան-խալիֆն էր: Նա երկիրը լքել է միայն 1922թ. նոյեմբերին, ի դեպ՝ առանց գահից հրաժարվելու, իսկ Թուրքիայի Հանրապետությունը հռչակվել է 1923թ. հոկտեմբերի 29-ին: Հետևաբար, քեմալականների օրինական իշխանության մասին կարելի է խոսել միայն ամենաշուտը 1922-1923թթ. հետո:

Ուզում եմ անդրադառնալ նաև Կարսի պայմանագրին: Չգիտեմ, թե արձանագրության մեջ հիշատակվող *սահմանը որոշող* ***համապատասխան պայմանագրեր*** (ուշադրություն դարձրեք հոգնակի թվին) ասելով հայկական կողմն ի՞նչ նկատի ունի, սակայն ոչ հայկական կողմերը, շեշտում եմ ***կողմերը***, առաջին հերթին նկատի ունեն Կարսի պայմանագիրը: Դրա մասին ես տեղեկություն ունեմ նաև ոչ հայկական դիվանագիտական աղբյուրներից:

Կարսի պայմանագիրը երկկողմ պայմանագիր է, որը մի կողմից ստորագրվել է *Թուրքիայի ազգային մեծ ժողովի կառավարության*, մյուս կողմից՝ *Հայկական ՍՍՀ, Վրացական ՍՍՀ և Ադրբեջանական ՍՍՀ միջև, ՌՍՖՍՀ մասնակցությամբ* (Այս վերջին ձևակերպումը մինչև հիմա ինձ համար անհասկանալի է): Թուրքական կողմի կարգավիճակի, ավելի ճիշտ՝ կարգավիճակի բացակայության մասին, արդեն խոսեցինք:

Անդրադառնանք սովետական հանրապետությունների՝ մասնավորապես Հայկական ՍՍՀ կարգավիճակին: Ըստ միջազգային իրավունքի մասնագետների[3] (չշփոթել սովետական քարոզիչների հետ)՝ սովետական հանրապետությունները երբևէ չեն ունեցել միջազգային ինքնություն (international personality), չեն հանդիսացել միջազգային իրավունքի սուբյեկտ, հետևաբար իրավասու չեն եղել կնքելու միջպետական պայմանագրեր: Մասնավորապես ԱՄՆ Սենատը 1924թ. հունիսի 3-ին ընդունել է №245 բանաձևը, որում հստակորեն նշել է, որ Հայկական պետությունը կործանվել է Սովետական Ռուսաստանի և Թուրքիայի համատեղ գործունեության արդյունքում (Turkey joined with Soviet Russia in the destruction of the Armenian State):[4] ԱՄՆ բազմիցս պաշտոնապես

վերահաստատել է իր այս դիրքորոշումը: Եթե 1921թ. չի եղել հայոց պետություն, ինչպե՞ս էր այն կարող պայմանագիր կնքել:

Այսպիսով, ակնհայտ է, որ 1921թ. հոկտեմբերին ստորագրված Կարսի պայմանագիրը, ինչպես նաև դրան նախորդած Ալեքսանդրապոլի և Մոսկվայի պայմանագրերը, կնքվել են միջազգային իրավունքի անբեկանելի հիմնարար մի շարք սկզբունքների՝ *jus cogens*-ների կոպիտ խախտումով: Հետևաբար կնքման պահից դրանք անվավեր են, քանի որ Պայմանագրերի իրավունքի մասին Վիեննայի՝ 1969թ. կոնվենցիայի 53-րդ հոդվածը (Vienna Convention on Law of Treaties, Vienna, 1969), միանշանակորեն ամրագրում է, որ *«պայմանագիրն անվավեր է, եթե կնքելու պահին այն հակասել է միջազգային ընդհանուր իրավունքի որևէ անբեկանելի հիմնադրույթի»* (այսինքն՝ *jus cogens*-ի):[5]

**Անօրինական փաստաթղթերը չեն կարող օրինական սահմանի հիմք հանդիսանալ:**

*Հղումներ և ծանոթագրություն*

1. *The Encyclopedia of International Boundaries (ed. Biger G. in collab. with The International Boundaries Research Unit), University of Durham, England, 1995.*
2. *Bothe M. Boundaries. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of the Public International Law, Amsterdam, 1992, v. I, p. 448.*
3. *Hazard J.N. Soviet Republics in International Law. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of Public International Law. Amsterdam, 2000, v. IV, p. 525-9.*
4. *The Armenian Review, vol. 30, No. 3-119, 1977, p. 286.*
5. *Aust A. Modern Treaty Law and Practice. Cambridge, 2000, p. 382.*

*03 սեպտեմբերի, 2009թ.*

## ԻԸ. **Հայաստանի բոլոր զիջումներն անշրջելի են, իսկ Թուրքիայի պարտավորությունները՝ պայմանական**
*/հարցազրույց Armenia Today-ին – www.armtoday.info /*

*Ա.Տ. Ինչպե՞ս եք գնահատում Հայաստանի և Թուրքիայի ԱԳՆ-ների կողմից երկկողմ հարաբերությունների կարգավորման վերաբերյալ արձանագրությունների նախաստորագրումը:*

**Ա.Պ.** Չեմ կարծում, որ արձանագրությունները կարգավորում են հայ-թուրքական հարաբերությունները: Դրանք պարզապես բավարարում են թուրքական կողմի նկրտումները, դիմացը Հայաստանին տալով ապաշրջափակման խոստում, միմիայն՝ խոստում: Իհարկե արձանագրության մեջ ապաշրջափակումը նրբորեն կոչված է *«համատեղ սահմանի բացում»*: Ցավն այն է, որ Հայաստանի բոլոր զիջումներն անշրջելի են, իսկ Թուրքիայի պարտավորությունները՝ պայմանական: Թուրքիան ցանկացած պահի, ցանկացած պատրվակով կրկին կարող է փակել սահմանը: Դա չեն անի միանգամից, այլ կսպասեն հարմար պահի, որ ավելի ցավագին լինի: Նման հնարավորություն արձանագրությունները տալիս են:
Միջազգային իրավունքի մեջ փաստաթղթերը գործում են ամբողջության մեջ: Այսինքն՝ փաստաթղթի կետերից մեկի դրժումը կողմերից մեկի կողմից, մյուսին ազատում է տվյալ փաստաթղթով ստանձնած պարտավորություններից: Թուրքերը կսպասեն, որ հայ-վրացական հարաբերություններում առաջանա լարվածություն, ինչպես նաև թուլանան կայացած տնտեսական կապերը Վրաստանի ենթակառույցների հետ, ապա կպահանջեն հայկական զորքերի դուրս բերումն Արցախից: Հայաստանը, բնականաբար, դա կմերժի: Թուրքիան, հիմք ընդունելով *Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև հարաբերությունների զարգացման արձանագրության* նախաբանի 6-րդ կետը, որը նախատեսում է *«տարածաշրջանային և միջազգային վեճերի խաղաղ լուծում»*, Հայաստանին կմեղադրի այդ կետի ոտնահարման մեջ, հետևաբար՝ իրեն ազատված տվյալ փաստաթղթով սահմանը բացելու պարտավորությունից և նորից կփակի սահմանը: Կարծում եմ, որ դա տեղի կունենա սահմանը բացելուց 12-18 ամսվա ընթացքում:

*Ա.Т. Ըստ Ձեզ, այս արձանագրություններն ինչպե՞ս կանդրադառնան թուրք-ադրբեջանական հարաբերությունների վրա:*

**Ա.Պ.** Կարծում եմ՝ սկզբում Ադրբեջանում մի փոքր թատերական աղմուկ կբարձրացնեն այս հարցի շուրջ, սակայն շատ արագ ամեն ինչ իր տեղը կընկնի: Վստահ եմ՝ մինչև հանրությանը ներկայացնելը, արձանագրությունները քննարկվել են Ադրբեջանի ղեկավարության հետ և հաշվի են առնվել նրանց դիտողությունները: Հայաստանի տնտեսական կախվածության մեծացումը Թուրքիայից լծակ է, որ աշխատելու է Ադրբեջանի օգտին, և դա հասկանում են նաև Ադրբեջանում:

*Ա.Т. Որքա՞ն է իրատեսական 6-շաբաթյա ընթացքում այս արձանագրությունների իրականացումն այն ժամանակ, երբ Թուրքիան բազմիցս հայտարարել է, որ ինքը պատրաստ կլինի Հայաստանի հետ հարաբերությունների կարգավորմանը միայն այն դեպքում, երբ ղարաբաղյան խնդրի մեջ լինի առաջընթաց:*

**Ա.Պ.** Կարծում եմ, որ ոչ էական փոփոխություններով արձանագրությունները կստորագրվեն: Դա ահավոր կերպով կլարի ներքին իրավիճակը Հայաստանում, սեպ կխրի Հայաստանի և սփյուռքի միջև, կսկսվի արտագաղթի նոր ալիք, քաղաքական պայքարում առաջ կգան ծայրահեղական խմբեր: Քանի որ արձանագրությունները ուժի մեջ են մտնելու միայն *«վավերացման գործիքների փոխանակումից հետո»*, հետևաբար խորհրդարանների հավանության անհրաժեշտություն կառաջանա, այսինքն՝ թուրքերը հնարավորություն կստանան առավելապես ձգձգելու գործընթացը: Նման հնարավորություն առկա է փաստաթղթերի մեջ, քանի որ սահմանված չէ վավերացման գործիքների փոխանակման որևէ ժամկետ: Այդ ժամանակահատվածում Թուրքիան միջև վերջին կաթիլը օգուտ կքամի ստորագրված արձանագրություններից:
Ճիշտ է, առանց վավերացման արձանագրությունները չեն դառնա իրավական փաստաթղթեր, սակայն դրանք կլինեն Հայաստանի քաղաքական ղեկավարության դիրքորոշման արտահայտություն, ուստի Թուրքիան լրիվ հնարավորություն կստանա փակել Հայոց ցեղասպանության մասին ցանկացած խոսողի բերանը, էլ չեմ ասում՝ սպանել ճանաչման գործընթացը: Ուզում եմ հիշեցնել, որ Հայաստանը համաձայնում է ստեղծել ենթահանձնաժողով, որը երկխոսության մեջ պիտի մտնի պատմության հարցերով (dimension)

և *«գիտական անաչառ ուսումնասիրության ենթարկի»* առկա խնդիրները: Բոլորը գիտեն, թե որոնք են այդ առկա խնդիրները:

*A.T. Որքանո՞վ են հիմնավորված ընդդիմության հայտարարությունները, որ միջազգային հանրությունը շտապում է կարգավորել հայ-թուրքական հարաբերությունները և բացել հայ-թուրքական սահմանը, որպեսզի արագ տեմպերով լուծի Արցախի հակամարտությունը:*

**Ա.Պ.** Միանգամայն: Մեր տարածաշրջանն ինքնին կարևոր չէ: Մեր տարածաշրջանը կարևորվում է, եթե այն հանդես է գալիս որպես օղակ՝ Արևմուտք-Կենտրոնական Ասիա շղթայի մեջ: Ուստի հայ-թուրքական հարաբերությունների, այսպես կոչված, կարգավորումը անիմաստ է առանց Ղարաբաղի հարցի լուծման: Լուծում անպայմանորեն չի նշանակում արդարության հաստատում կամ կողմերի լիակատար բավարարվածություն: Պարզապես պետք է ստեղծել համեմատաբար կայուն, կանխատեսելի և լիակատար վերահսկելի մի իրավիճակ: Ոստիկանապետի պաշտոնը վերապահված է Թուրքիային, Հայաստանի և Ադրբեջանի իշխանություններին կտան դրուժինիկի թևկապը և ներպետական գործողություններում որոշակի ազատություն:

*A.T. Ինչպե՞ս եք դիտարկում Կալիֆոռնիայի Վերաքննիչ դատարանի վերջերս կայացրած որոշումը, որ հայոց ցեղասպանության զոհերի ժառանգները չեն կարող հատուցման համար դիմել Նյու Յորքի ապահովագրական ընկերություններին: Ինչպե՞ս դա կանդրադառնա հայոց ցեղասպանության ճանաչման հետագա ընթացքի վրա:*

**Ա.Պ.** Այս հարցը Հայոց ցեղասպանության ճանաչման հետ կապ չունի: Այն մի խումբ մարդկանց քաղաքացիական հայցն է ընդդեմ մասնավոր՝ ոչ ամերիկյան, ընկերության: Հարցի մանրամասներին ծանոթ չեմ, չի հետաքրքրում, ուստի չեմ կարող պատասխանել: Ցեղասպանությունը հանցագործություն է՝ ըստ միջազգային իրավունքի, ուստի նրա մասին վճիռներ կարող են կայացնել միայն համապատասխան ատյանները, տվյալ դեպքում՝ Արդարության միջազգային դատարանը:

*05 սեպտեմբերի, 2009թ.*

## ԻԹ. Կրկին տխրահռչակ զույգ արձանագրությունների մասին

Որոշ կուսակցապետեր (*Parteikanzlei* գերմ.) փորձ են անում իրենց և ուրիշների խաբեբատիր վերլուծություններով հավասարության նշան դնել տխրահռչակ զույգ արձանագրությունները ստորագրելուն ընդդիմանալու և հայ-թուրքական դիվանագիտական հարաբերություններ հաստատելուն և, այսպես կոչված, սահմանը բացելուն ընդդիմանալու միջև: Անձամբ ես 100% կողմ եմ դիվանագիտական, ինչպես նաև հյուպատոսական հարաբերություններ հաստատելուն և 50% կողմ եմ, այսպես կոչված, սահմանի բացմանը: Միաժամանակ ես 100% դեմ եմ վերոհիշյալ արձանագրությունների ստորագրմանը, առավել ևս՝ վավերացմանը, քանի որ բացի հարաբերություններ հաստատելու և Հայաստանը ապաշրջափակելու դրույթներից, դրանք ունեն ավելի քան մեկ տասնյակ շատ լուրջ, անգամ ճակատագրական պարտավորություններ, որոնք իրենց բնույթով մինչևիսկ նախապայմաններ չեն, այլ արդեն հանձնառու պայմաններ:

Դիվանագիտական հարաբերությունների հաստատումն ինքնանպատակ չէ: Այն բանակցային ճանապարհով երկրների միջև առկա և հնարավոր խնդիրները, վեճերն ու տարաձայնությունները լուծելու միջոց է: Եթե մենք այսօր սկզբունքային բոլոր հարցերում վերջնական զիջումների ենք գնում, վաղը ի՞նչ ենք քննարկելու թուրքերի հետ: Հուշարձանների պահպանության հարցե՞րը, թե Տոյոտայի պահեստամասերի ներկրման արտոնությունները:

Համառոտակի այն մասին, թե իբր արձանագրությունների մեջ խոսք չկա Կարսի պայմանագրի մասին: Նախ թող որևէ մեկն ինձ բացատրի *«գոյություն ունեցող սահմանը որոշող համապատասխան պայմանագր**եր**»* ասելով՝ կողմերն ի՞նչ նկատի ունեն: Գուցե նաև Ալեքսանդրապոլի՞ պայմանագիրը. չէ որ *պայմանագր**եր*** բառն այստեղ հոգնակի է գործածված:

Նախ ի՞նչ բան է Կարսի պայմանագիրը քաղաքական առումով: Դա բոլշևիզմի կաշառքն էր Մուդրոսի զինադադարը (30 հոկտեմբերի, 1918թ.) ոտնահարած, օրինական իշխանությունների կողմից դատապարտված, դաշնակիցների կողմից հանցագործներ հռչակված օսմանյան բանակի այն գեներալներին, ովքեր պատրաստ էին ոչնչացնել հայկական ու հունական *«իմպերիալիզմը»*:

Իր զավթողական բնույթով ու անօրինական կարգավիճակով հանդերձ, Կարսի պայմանագիրն ունի որոշ նպաստավոր դրույթներ: Մասնավորապես, պայմանագրի 11, 17, և 18 հոդվածները համապատասխանաբար անդրադառնում են օտարերկրյա քաղաքացիների իրավունքներին, անխափան հաղորդակցությանը, առևտրական հարաբերություններին և որոշակիորեն կանոնակարգում են դրանք:

Մի կողմ թողնելով Կարսի, ինչպես նաև Ալեքսանդրապոլի ու Մոսկվայի պայմանագրերի օրինականության, ավել ճիշտ անօրինականության հարցը՝ համառոտակի անդրադառնամ *Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու արձանագրության* հինգերորդ կետի մեջ առկա պարտավորությանը, այն է՝ *«համապատասխան միջազգային իրավունքի պայմանագրերով որոշված երկու երկրների միջև գոյություն ունեցող սահմանի փոխադարձ ճանաչում»*:

Կարելի է հաստատապես ասել, որ նման ձևակերպման պարագայում ավելի լավ է լիներ Կարսի պայմանագրի ուղղակի հիշատակումը, քան նման անուղղակի, սակայն միանշանակ հղումը: Երկրորդ պարագայում մենք իրավականորեն ձևակերպում ու ամրագրում ենք օրինապես ճանաչված պետության՝ Հայաստանի Հանրապետության դեմ թուրքական ապստամբական զորամիավորումների տարածքային բռնազավթումները՝ առանց մինչևիսկ ամրագրելու Կարսի պայմանագրի մանր ձեռքբերումները:

Ուզում եմ հավատալ, որ տխրահռչակ արձանագրությունների մեջ սպրդած ավելի քան մեկ տասնյակ հայակործան սխալները, ծառայողական անփութության հետևանք են, թե չէ շոգ եղանակին ինչ միտք ասես, որ չի ծագում մարդու գլխում:

*06 սեպտեմբերի, 2009թ.*

## Լ. Տարածքի օրինական իրավատիրության և Սալմաստի ու Խոյի մասին

Եռամեծար փիլիսոփա Դավիթ Անհաղթն ասում էր. *«Ինչպե՞ս կարող է գիտությունը սահման ունենալ, երբ տգիտությունն անսահման է»*: Նման մի անսահման տգիտության ականատես և ականջալուր եղանք վերջերս, երբ մի երիտասարդ անսխալականության երանգը ձայնի մեջ հարց էր տալիս. *«Խոյն ու Սալմաստն էլ հայկական պատմական հողեր են: Ինչո՞ւ դրանց մասին լռում եք, իսկ Թուրքիայից հողեր եք պահանջում»*:

Երիտասարդն ակնհայտորեն տեղյակ չէր, որ հողային պահանջները (claims to territory) հիմնված են լինում ոչ թե պատմության, այլ միջազգային իրավունքի համապատասխան փաստաթղթերի վրա: Միջազգային հարաբերություններում մեջ որևէ տարածքի օրինական իրավատիրությունը (legal possession) որոշվում է ոչ թե պատմական անցյալով կամ փաստացի տնօրինմամբ, այլ այդ տարածքի նկատմամբ ճանաչված տիտղոսով (title to territory): Երբ պատերազմի ժամանակ մի երկիրը մյուսից տարածք է գրավում տվյալ տարածքը շարունակում է մնալ տուժած երկրի տարածքն այնքան ժամանակ, քանի դեռ համապատասխան փաստաթղթով չի ամրագրվել տարածքի տիտղոսի փոխանցումը: Դա շատ նման է առօրյա կյանքին: Քանի դեռ համապատասխան փաստաթղթով չեք ձևակերպել ձեր իրավունքը որոշակի հողակտորի վրա, այն ձերը չէ, անկախ այն բանից՝ քանի տարի եք ապրում այդտեղ կամ քանի կառույց ունեք դրա վրա:

Հիմա Խոյի և Սալմաստի մասին: Խոյի և Սալմաստի վրա Իրանի (պարսկական) տիտղոսը ճանաչվել է 1639 մայիսի 17-ի թուրք-պարսկական պայմանագրով, ապա այն վերահաստատվել է 1746թ. սեպտեմբերի 4-ի, 1823թ. հուլիսի 28-ի և 1847թ. մայիսի 31-ի պայմանագրերով: Չկա մի որևէ գործող իրավական փաստաթուղթ, որով Խոյն ու Սալմաստը ունենան Հայաստանի Հանրապետության տիտղոսը: Ավելին, Փարիզի խաղաղության վեհաժողովը (1919-1920թթ.) հաստատել է նախկին Ռուսական կայսրության՝ Պարսկաստանի հետ ունեցած սահմանը՝ որպես նորաստեղծ Հայաստանի Հանրապետության և Պարսկաստանի սահման:

Ինչ վերաբերում է Թուրքիայի նկատմամբ հողային պահանջներ ունենալուն, ապա եթե խնդրին տանք ճշգրիտ իրավական ձևակեր-

պում (legal definition), ապա մենք ոչ թե Թուրքիայից հողեր ենք պահանջում, այլ պահանջում ենք, որ Թուրքիան վերջ դնի Հայաստանի Հանրապետության տարածքի մի մասի անօրինական բռնազավթմանը: Այդ տարածքը որոշվում է ոչ թե պատմությամբ, այլ տարածքի նկատմամբ առկա օրինական՝ հայկական տիտղոսով: Այսպես, նախկին Օսմանյան կայսրության Վանի, Բիթլիսի, Էրզրումի և Տրապիզոնի նահանգների՝ համապատասխանաբար 63%, 66%, 100% և 75% տարածքը *de jure* պատկանում է Հայաստանի Հանրապետությանը ոչ թե այն պատճառով, որ դրանք եղել են *«պատմական հայկական հողեր»* կամ ցեղասպանություն է եղել, այլ որովհետև դրանք, չնայած Թուրքիայի կողմից դրանց 1920թ. բռնազավթմանը, առ այսօր կրում են Հայաստանի Հանրապետության իրավական տիտղոսը: Տիտղոս, որը նախ 1920թ. ապրիլի 26-ին ավելի քան 50 երկրների անունից ճանաչել են Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան և Իտալիան, ապա ԱՄՆ մեծ կնիքով (The Great Seal of the United States) ու նախագահ Վիլսոնի ստորագրությամբ վերահաստատվել և ուժի մեջ է մտել 1920թ. նոյեմբերի 22-ին, իսկ հետո վերահաստատվել է Լոզանի՝ 1923թ. հուլիսի 24-ի պայմանագրի 16-րդ հոդվածով:

Հիմա չեմ ուզում այլ հարցերի անդրադառնալ, սակայն պատասխանեմ մի հարցի ևս, որ հաճախ է հնչում: Ի՞նչպես պիտի վարվենք այդ տարածքի հետ: Դա մեր բոլորիս՝ Հայաստանում, թե Սփյուռքում ապրողների, օտարախոս, թե հայախոս, առաքելական, թե մուսուլման, հարուստ թե աղքատ, մեր բոլորիս՝ հայ ժողովրդի, որոշելիքն է: Կուզենք կծախենք, կուզենք վարձու կտանք, կուզենք կնվիրենք Իսլանդիային, դա մեր որոշելիքն է: Ինչպիսին էլ լինի որոշումը, դրան պիտի մասնակցենք մենք բոլորս: Հայրենիքը բոլորինս է, այն չի բաշխվում ըստ պաշտոնի:

*07 սեպտեմբերի, 2009թ.*

## ԼԱ. Կրկին ՄԱԿ-ին անդամակցելու և սահմանների ճանաչման մասին

Չարաբաստիկ զույգ արձանագրությունների հրապարակումը առիթ հանդիսացավ, որ իրենց քաղաքագետ համարող լրագրողներից ոմանք սկսեն մտքեր արտահայտել մինչևիսկ միջազգային իրավունքի մասին: Մտքեր, որոնք բնավ չեն հիմնավորվում որևէ փաստաթղթի վկայակոչմամբ, սակայն ունեն անվերապահ դատողության երանգ:

Հաշվի առնելով հարցի հրատապությունը՝ ստիպված եմ անդրադառնալ օրերս հնչած մի դատողության, որն իհարկե նոր չէ հայկական, այսպես կոչված, քաղաքական մտքի դաշտի համար: Վերջերս առիթ ունեցա կարդալու հետևյալը. *«Իրականության մեջ, երբ Հայաստանը դարձավ անկախ և դարձավ ՄԱԿ-ի անդամ, նա պարզապես ճանաչեց այսօրվա սահմանները»: (Но на самом деле, когда Армения стала независимой и стала членом ООН, то она просто признала сегодняшние границы.)*

Նախ ասեմ, որ միջպետական հարաբերություններում պարզապես (*просто*) ոչինչ տեղի չի ունենում: Որոշակի իրավական հետևանքներ կարող են առաջացնել միայն համապատասխան իրավական ձևակերպում պարունակող օրինական փաստաթղթերը: Առավել ևս, երբ հարցը վերաբերում է սահմաններին: Անկախության հռչակումը, անկախության ճանաչումը, դիվանագիտական հարաբերությունների հաստատումը, անդամակցությունը ՄԱԿ-ին բնավ կապ չունեն սահմանների հետ: Սահմանները հաստատվում, ճշգրտվում և փոփոխության են ենթարկվում միմիայն որոշակի իրավական գործընթացով և միջազգային իրավունքի համապատասխան գործիքով (instrument of international law): Զուտ իրավական տեսանկյունից սահմանը գոյություն չունի, քանի դեռ չկա դրա մասին համապատասխան միջպետական պայմանագիր, այսինքն՝ սահմանի նկարագրական մասը պարունակող և առդիր քարտեզներ ունեցող <u>*օրինական*</u> փաստաթուղթ: Տրոհված պետության (իմա՝ ԽՍՀՄ) ներպետական վարչատարածքային նախկին բաժանարար գծերը չեն կարող միջպետական սահմանների համար օրինական հիմք հանդիսանալ:

*«Իրականության մեջ»* ՀՀ անկախացումը միայն մեկ իրավական հետևանք է ունեցել՝ այսօրվա Հայաստանի Հանրապետությունը դարձել է իր ներկա տարածքում գոյություն ունեցած նախորդ պետական միավորի, այն է 1918-1920թթ. Հայաստանի առաջին հանրապետության, իրավահաջորդը: Բնականաբար, եթե կան *օրինական* պայմանագրեր, որոնք իրավականորեն ամրագրած են եղել նախորդ պետականության սահմանները, ուրեմն իրավահաջորդը ժառանգել է նաև այդ սահմանները: Եթե ոչ, ուրեմն միջազգային իրավունքի նորմերի և սկզբունքների հիման վրա ցանկալի է, որ ամրագրի այդ սահմանները:

Հիմա մի քանի խոսք ՄԱԿ-ին անդամակցելու ճանապարհով սահմանները *«просто»* (պարզապես) ճանաչելու մասին:

Նման պնդում անելու համար առնվազն անհրաժեշտ է վկայակոչել ՄԱԿ-ի կանոնադրության այն հոդվածը, որով նախատեսված է նման դրույթ: Դա չի արվում, որովհետև նման բան բնավ չկա ՄԱԿ-ի կանոնադրության մեջ: Երբ անհատը կամ պետությունն անդամակցում են որևէ կազմակերպության, նրանք ստանձնում են միայն տվյալ կազմակերպության հիմնադիր փաստաթղթ/եր/ում ամրագրված պարտավորություններն ու իրավունքները: Ոչինչ դրանից ավել, ոչինչ դրանից պակաս:

Հարցի համառոտ քննությունը ցույց է տալիս, որ անդամակցությունը ՄԱԿ-ին չունի ընդհանրապես ճանաչման, ուր մնաց՝ սահմանների ճանաչման որևէ գործառույթ և իրավական հետևանք: Անդամակցումը ՄԱԿ-ին, կամ իրավական տեսանկյունից ավելի գրագետ՝ ՄԱԿ-ում ներկայացված լինելը, և պետության կամ կառավարության ճանաչումը, էլ չեմ խոսում սահմանների ճանաչումը տարբեր գործողություններ են՝ իրարից էապես տարբեր իրավական հիմքերով և հետևանքներով:

Խոսքերս հաստատելու համար վկայակոչեմ ՄԱԿ-ի Գլխավոր քարտուղարի և Անվտանգության խորհրդի համապատասխան պաշտոնական փաստաթղթերը: Դեռևս 1950թ. մարտի 8-ին ՄԱԿ-ի այդ ժամանակվա Գլխավոր քարտուղարը՝ Թրիգվի Լիին (Trygve Lie) պաշտոնական նամակով և առդիր 5-էջանոց հուշագրով անդրադարձել է տվյալ հարցին, տվել սպառիչ պարզաբանում. **ՄԱԿ-ին անդամակցելը չունի որևէ ճանաչման իրավական հետևանք**:

ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարն իր պաշտոնական նամակի հենց սկզբում միանշանակ արձանագրում է, որ ճանաչման հարցը ՄԱԿ-ի

անդամակցության հարցի հետ կապելը *«չարաբաստիկ է գործնական և սխալ է իրավական տեսության առումներով»*:

Նշյալ պարզաբանումը՝ որպես ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի թիվ S/1466 գրություն՝ *«Հուշագիր ՄԱԿ-ում ներկայացված լինելու խնդրի իրավական հարցերի վերաբերյալ» (United Nations Security Council, Memorandum on the Legal Aspects of the Problem of Representation in the United Nations, General, S/1466, 9 March 1950)* վերնագրով հրապարակվել է հաջորդ օրը՝ 1950թ. մարտի 9-ին, այսինքն՝ դրան տրվել է ՄԱԿ-ի շրջանակում հնարավոր ամենաբարձր իրավական կարգավիճակը:

Հուշագիրը նաև վերահաստատել է միջազգային հանրային իրավունքի մեջ հնուց ի վեր գոյություն ունեցող այն հիմնադրույթը, որ *«Նոր պետության կամ գոյություն ունեցող պետության նոր կառավարության ճանաչումը միակողմանի գործողություն է, որը ճանաչող կառավարությունը կարող է շնորհել կամ մերժել»:* Այսինքն՝ պետության ճանաչումը ՄԱԿ-ին անդամակցելու նախապայման է և ոչ թե հետևանք: Դրա վկայությունն է նաև այն, որ այսօր էլ ՄԱԿ-ում ներկայացված են երկրներ, որոնք չունեն փոխադարձ ճանաչում:

Ակնհայտ է, որ եթե անդամակցումը ՄԱԿ-ին ընդհանրապես չունի ճանաչման գործառույթ և չի առաջացնում ճանաչման որևէ իրավական հետևանք, ապա ինչպե՞ս կարող է նույն գործողությունը ճանաչել կամ չճանաչել պետությունների սահմանները:

*09 սեպտեմբերի, 2009թ.*

## ԼԲ. Արձանագրությունների, լիազորությունների և հրաժարականների մասին

Վերջին շրջանում մի հարց է հաճախ հնչում, որին այդպես էլ չտրվեց հստակ պատասխան. *Ինչո՞ւ է ՀՅԴ պահանջում արտգործնախարարի հրաժարականը, սակայն չի պահանջում նախագահի հրաժարականը*: Չլինելով ՀՅԴ անդամ՝ փորձեմ պատասխանել հնչող հարցին, քանի որ սկզբունքորեն լավ չէ, երբ հասարակության հարցերը մնում են անպատասխան:

Ըստ գործող Սահմանադրության (հոդված 5, կետ 7)՝ ՀՀ նախագահն *«իրականացնում է արտաքին քաղաքականության ընդհանուր ղեկավարումը»*: Այսինքն՝ որպես ընդհանուր ղեկավար՝ նրան է վերապահված արտաքին քաղաքականության ուղենշումը, բայց ոչ իրագործումը: Որպես գործադիր իշխանության մասի՝ երկրի արտաքին հարաբերությունների գերատեսչությանն է վերապահված արտաքին քաղաքականության կենսագործումը: Ընդ որում, ԱԳՆ պարտավոր է հավատարմորեն առաջնորդվել *«ընդհանուր ղեկավարման»* ուղենիշներով և համապատասխան քայլերը կատարել միմիայն տրված հանձնարարականների շրջանակում: ԱԳՆ պաշտոնյան իրավունք չունի նախագահի հանձնարարականից շեղվել և բանակցել նաև այլ հարցերի շուրջ, առավել ևս՝ երկրի անունից ստանձնել լրացուցիչ պարտավորություններ:

Ի՞նչ ունենք ներկայումս մենք: Երկրի նախագահը բազմիցս հրապարակայնորեն՝ որպես արտաքին քաղաքական գերակա ուղենիշ, առանձնանշել է *Թուրքիայի հետ* <u>*առանց նախապայմանների*</u> *հարաբերությունների կարգավորումը*: Արտգործնախարարը նույնպես հրապարակայնորեն քանիցս կրկնել է նախագահի հանձնարարությունը՝ շեշտելով հանձնարարականի <u>*«առանց նախապայմանների»*</u> հիմնական բնութագրիչը: Ավելին, և՛ նախագահը, և՛ արտգործնախարարը քանիցս հստակեցրել են, որ ներկա փուլում կարգավորումը, ըստ էության, պիտի ունենա 2 դրսևորում. ա) Թուրքիայի հետ դիվանագիտական հարաբերությունների հաստատում; բ) Հայաստան-Թուրքիա, ըստ իս այսպես կոչված, սահմանի բացում:

Առաջին կետի շուրջ հարցեր չկան: Բնական է, մենք Թուրքիայից ստանալիք ունենք, հետևաբար, պիտի դիվանագիտական հա-

րաբերություններ հաստատենք, որ բանակցենք մեր ստանալիքի կամ համարժեք հատուցման շուրջ: Երկրորդ կետի շուրջ որոշ հարցեր կան, սակայն, խորքի մեջ, էական առարկություններ չկան. կբացենք սահմանը, կտեսնենք, որ մեր սպասելիքները չեն արդարանում և կհիասթափվենք: Խնդիր չեմ տեսնում, մենք վարժվել ենք հիասթափվելուն:

Հիմա հպանցիկ անդրադառնանք ներկայացված զույգ արձանագրություններին և տեսնենք, թե որքանո՞վ են դրանք համապատասխանում նախագահի՝ <u>*առանց նախապայմանների*</u> դրույթը պարունակող հանձնարարականին: Ես դեռ առաջիկայում առիթ կունենամ անդրադառնալու նշյալ փաստաթղթերին և պարբերություն առ պարբերություն բացահայտելու դրանց մեջ առկա ավելի քան մեկ տասնյակ <u>**անկապ**</u> պարտավորությունները: Անկապ, քանզի դրանք բնավ կապ չունեն դիվանագիտական հարաբերություններ հաստատելու և, այսպես կոչված, սահմանի բացման հետ:

Առայժմ անդրադառնամ ընդամենը մի կետի, որի առկայությունն արդեն վկայություն է հանձնարարականը անտեսելու և բավարար է ողջ փաստաթուղթը խոտանելու: Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու վերաբերյալ արձանագրության 5-րդ կետը բառացիորեն ասում է հետևյալը. *«Հաստատելով միջազգային իրավունքի համապատասխան պայմանագրերով որոշված երկու երկրների միջև գոյություն ունեցող սահմանի փոխադարձ ճանաչումը»:*[3]

Մի կողմ թողնելով ընդհանրապես նման օրինական պայմանագրերի առկայության հարցը՝ առայժմ բավարարվեմ շեշտելով, որ վերոհիշյալ պարբերությունը նախապայմանից էլ այն կողմ է: Սա

---

[3] Ի դեպ ՀՀ ԱԳՆ կողմից ներկայացված արձանագրությունների հայերեն թարգմանությունները սխալաշատ են և խիստ թերի: Վերոհիշյալ պարբերության ԱԳՆ թարգմանությունը հնչում է այսպես. *«Վերահաստատելով երկու երկրների միջև գոյություն ունեցող ընդհանուր սահմանի փոխադարձ ճանաչումը՝ սահմանված միջազգային իրավունքի համապատասխան պայմանագրերով»*: Անգլերեն բնագրի տվյալ պարբերությունում չկա վերահաստատելով (reconfirming) բառը: Այդ պարբերությունը սկսում է confirming (հաստատելով) բառով: Անվիճելի է, որ հաստատելը և վերահաստատելը իրավական տարբեր նշանակություններ ունեն: Անգլերենի նույն պարբերության մեջ բացակայում է ընդհանուր սահման (common border) հասկացությունը: Այն խոսում է պարզապես գոյություն ունեցող սահմանի (existing border) մասին: Երբ սահմանը բնութագրում ենք որպես ընդհանուր սահման, ապա դրանով իսկ տվյալ սահմանին տալիս ենք որոշակի օրինականության և կայացվածության երանգ:

Հայաստանի Հանրապետության անսակարկ ու անվերապահ պարտավորություն է: Այսինքն՝ կողմերը դիվանագիտական հարաբերությունների հաստատումը պայմանավորել են *«գոյություն ունեցող սահմանի փոխադարձ ճանաչմամբ»*:

Ակնհայտ է, որ բանակցողները գործել են *ultra vires*, այսինքն՝ ակնհայտորեն գերազանցել են իրենց լիազորությունները և ոտնահարել են նախագահի հանձնարարականը: Բանակցողները մտել են մի դաշտ, որն իրենց լիազորությունների շրջանակից դուրս է:

Ո՞րն է ելքը: Հայաստանը պիտի չստորագրի ներկայացված նախաստորագրված արձանագրությունները այն հիմնավորմամբ, որ դրանք չեն արտացոլում բանակցությունների՝ ի սկզբանե հայտարարված նպատակն ու բուն էությունը: Հայաստանի Հանրապետությունը պիտի վերահաստատի առանց նախապայմանների՝ Թուրքիայի Հանրապետության հետ դիվանագիտական հարաբերություններ հաստատելու և ընդհանուր սահմանային անցակետերի բացման պատրաստակամությունը և ստորագրման ներկայացնի միմիայն այդ դրույթներն արտացոլող սեղմ փաստաթղթեր:

*10 սեպտեմբերի, 2009թ.*

## ԼԳ. Հայոց պետականության գաղափարական հիմքը

Գիշերաշրջիկ զույգ արձանագրությունների քննարկմանը հատկացված քառասունքից արդեն անցել է տասը օրը: Ակնհայտ է, որ «ներքին քննարկումները» չեն ստացվում: Բնական է, որ նման պայմաններում չպիտի ստացվեին: Նման պայմաններում ոչինչ չի ստացվում և ոչինչ էլ չի ստացվի:

Հանգամանքների բերումով ես Վլադիմիր Իլյիչի նման այս քննարկումներին մասնակցում եմ *«Նամակներ հեռվից»* ձևաչափով: Որոշ թերություններով հանդերձ, սա իր առավելությունն ունի. ես զերծ եմ մնում որևէ կողմի ազդեցությունից և կարող եմ առաջնորդվել միայն իմ՝ տարիների որոնումների արդյունքում ձևավորված համոզմունքներով:

Երկարատև ուսումնասիրությունները և դիվանագիտական փորձն ինձ հանգեցրին հետևյալ եզրակացության. **Հայկական հարցի լուծումն է հայոց պետականության հզորացման եզակի հնարավորությունը և հայ ժողովրդի հարատևման միակ ուղին**: Բնական հարց կարող է առաջանալ. Իսկ ի՞նչ ասել է հայկական հարց և ի՞նչ է նշանակում դրա լուծումը ներկա փուլում:

Սկզբնավորվելով որպես Օսմանյան կայսրության հպատակ հայերի անհատական և հավաքական անվտանգության և արժանապատվության հարց՝ այն աստիճանաբար վերաճել է հայոց պետականության և այդ պետականության ոտնահարված իրավունքների վերահաստատման հարցի: **Ներկա փուլում Հայկական հարցը միջազգային իրավունքով արդի Հայաստանի Հանրապետությանը հատկացված կամ վերապահված տարածքային, նյութական և բարոյական իրավունքների վերականգնումն է**:

Պետք է քաջություն ունենալ նայելու դաժան ճշմարտության աչքերին և հստակ գիտակցել. մենք կանգնած ենք այլընտրանքի բացակայության առջև: ՀՀ որպես քաղաքական ինքնուրույն և արժանապատիվ միավոր՝ կամ կարող է գոյություն ունենալ միայն իր անօտարելի և անժամանցելի իրավունքների հաստատումով կամ ընդհանրապես չի կարող գոյություն ունենալ որպես այդպիսին:

Հենց ա՛յս տեսանկյունից է պետք վերլուծել ներկա գործընթացները և դրանց ընկեցիկ երկվորյակները հանդիսացող զույգ արձանագրությունները: Արդյո՞ք նշյալ արձանագրությունների ստորագրումը նպաստում է հայոց պետականության կենսապահովման գործոնների

ուժեղացմանը և ազգային/պետական հզորության աճին, թե կարող է կործանարար արդյունք ունենալ՝ հակառակ ակնկալիքին:

Միանգամից ասեմ, որ, իմ համոզմամբ, արդյունքը բացասական է լինելու: Առկա արձանագրություններն ունեն դրույթներ, որոնց ամրագրումն անգամ ապագայում անհնարին է դարձնում Հայկական հարցի որևէ լուծում: Պետք չէ մոռանալ, որ և՛ պայքարը հանուն Արցախի, և՛ պայքարը հանուն Հայոց ցեղասպանության միջազգային ճանաչման երբեք մեկուսի չեն եղել և հայ հասարակության մեծագույն մասի կողմից դիտարկվել և դիտարկվում են, գիտակցաբար կամ անգիտակցաբար, որպես Հայկական հարցի լուծման բաղադրիչներ: Հայկական հարցը լուծելու ձգտումը եղել է հայոց գոյության վերջին՝ ավելի քան մեկ հարյուրամյակի մեծագույն նպատակը: Չնայած այսօր երբեմն հնչող իրարամերժ տեսակետների՝ այն շարունակում է մնալ հայոց համազգային միակ նպատակը:

Թուրքիայի նկատմամբ հայոց իրավունքներից հրաժարումը, որը նախանշված է զույգ փաստաթղթերում, նշանակում է հրաժարում մեզ հայերիս համախմբող միակ նպատակից, որը նշանակում է ՀՀ էական թուլացում և, ի վերջո, կործանում: Հայոց երկնակամարի տակ այսօր առատորեն հունձք անող քաղաքական շամաններին չնմանվելու համար, փորձեմ միտքս ներկայացնել գիտական լեզվով:

Քաղաքագիտությունը վաղուց է մշակել պետության հզորության հաշվարկի բանաձևը: Ամերիկյան քաղաքագիտության մեջ այն հայտնի է Յաբլոնսկու *(Jablonsky)* բանաձև անվանումով.

$$\mathbf{P_p = (C + E + M) \times (S + W)}$$ [4]

Այս բանաձևի մեջ. $P_p$ (Perceived power) հաշվարկվող հզորությունն է, C (Critical mass: population + territory)՝ որոշիչ զանգվածը. բնակչությունը + տարածքը, E (Economic capability)՝ տնտեսական կարողությունը, M (Military capability)՝ ռազմական կարողությունը, S (Strategic purpose)՝ հեռագնա (ստրատեգիական) նպատակը, W (Will to pursue national strategy)՝ ազգային հեռագնա (ստրատեգիական) նպատակը հետապնդելու կամքը:

Բանաձևից երևում է, որ պետության հզորությունը նույնքան է պայմանավորված նրա հեռագնա նպատակի առկայությամբ և դրան հասնելու պետական նպատակամղվածությամբ, որքան որ բնակչությամբ, տարածքով, տնտեսական և ռազմական

---

[4] David Jablonsky, National Power, Parameters, vol. 27, 1, Spring, 1997, pp. 34-54.

հզորությամբ: Պետության հզորությունը որոշակի ցուցանիշների սոսկական գումար չէ, այլ շոշափելի, նյութական ցուցանիշների բազմապատկումն է նպատակի և նպատակամղվածության գումարային ցուցանիշով: Անկախ տարածքի, բնակչության, տնտեսական և ռազմական հզորությունից, եթե պետությունը չունի նպատակ, հետևաբար և դրան հասնելու կամք, պետության հզորությունը ոչինչ է, քանի որ հայտնի է. ցանկացած թիվ զրոյով բազմապատկելիս արդյունքում զրո է ստացվում:

Այսօր Արցախի հարցը, մի շարք առարկայական և ոչ առարկայական պատճառներով, համազգային նպատակ չի հանդիսանում: Հայոց ցեղասպանությունը ճանաչել տալու քաղաքական գործընթացն, ըստ էության, լինելով համազգային նպատակ, պետական նպատակ լինել չի կարող, քանի որ բացակայում է այդ նպատակի միջոցով որևէ էական արդյունքի հասնելու հստակ ճանապարհը:

Հետևաբար, ոչ միայն Հայկական հարցի լուծումն է հայոց պետականության հզորացման եզակի հնարավորությունը և հայ ժողովրդի հարատևման միակ ուղին, այլև Հայկական հարցը լուծելուն նպատակամղված ինքնին գործընթացը, այսինքն նման նպատակի առկայությունն ու դրան հասնելու քաղաքական կամքը, հայոց պետականության հզորության ամրապնդման անփոխարինելի գործոն է:

Մենք պիտի չանենք այնպիսի քայլեր, որոնք կարող են թուլացնել հայոց պետականությունը և այն զրկել գոյության նպատակից, քանզի **Հայրենիքը, որ նպատակ չունի, սոսկ բնակավայր է**:

*11 սեպտեմբերի, 2009թ.*

## ԼԴ. Արձանագրություններն Ազգային ժողովի լիազորությունների շրջանակից դուրս են

Հայաստանի Հանրապետության Ազգային ժողովը լիազորված չէ քննարկելու, քվեարկելու, առավել ևս վավերացնելու Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին և Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև հարաբերությունների զարգացման մասին արձանագրությունները:

Նշյալ արձանագրություններն Ազգային ժողովի լիազորությունների շրջանակից դուրս են: ՀՀ գործող սահմանադրությունն այդ հարցում միանշանակորեն հստակ է: Ըստ սահմանադրության 81-րդ հոդվածի երկրորդ կետի՝ Ազգային ժողովի վավերացմանը ենթակա են *«միջազգային պայմանագրերը»* *(International Treaties, международные договоры)*, միայն *«պայմանագրերը»*: Այն չի նախատեսում միջազգային որևէ այլ փաստաթղթի, այդ թվում նաև արձանագրության *(protocol, протокол)*, վավերացում: Արձանագրությունը պայմանավորվածություն է, սակայն այն պայմանագիր չէ:

**Ազգային ժողովում վերոնշյալ արձանագրությունների հետ կապված ցանկացած գործողություն կամ գործընթաց կլինեն հակասահմանադրական:**

*12 սեպտեմբերի, 2009թ.*

## ԼԵ. Ամեն կլոր բան դեռ ընկույզ չէ *կամ* Նորից հայ-թուրքական դիվանագիտական հարաբերությունների մասին

Ես արդեն առիթ ունեցել եմ գրելու, որ հայ-թուրքական արձանագրությունները սխալաշատ և թերի փաստաթղթեր են: Ամեն անգամ ընթերցելիս մի նոր թերություն է ի հայտ գալիս:

*Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության* տասներորդ կետը նախատեսում է *«դիվանագիտական առաքելությունների փոխանակում» (to exchange Diplomatic Missions)*: Առերես «անշառ» ձևակերպում է: Սակայն մասնագիտական քննությունը ցույց է տալիս, որ այն հղի է հետագա լրջագույն բարդություններով: Սույն ձևակերպումը չի հստակեցնում, թե այդ առաքելությունները ի՞նչ մակարդակի պետք է լինեն: Այս անորոշությունը, ցանկության դեպքում, հնարավորություն կտա Թուրքիային, *de jure* հաստատելով դիվանագիտական հարաբերություններ, *de facto* դրա արդյունավետությունը մոտեցնել զրոյի: Մենք հո՞ Թուրքիայի հետ դիվանագիտական հարաբերություններ չենք հաստատում, որ Երևանի կենտրոնում ծածանվի թուրքական դրոշը: Մենք դա անում ենք, որպեսզի երկու երկրներն ունենան հնարավորություն առկա խնդիրները միմյանց պաշտոնապես ներկայացնելու և դրանց գործնական լուծումներ տալու համար: Արձանագրության մեջ չհստակեցնելով դիվանագիտական ներկայացուցչությունների մակարդակը՝ մենք այդ գործընթացն էապես սահմանափակելու հնարավորություն ենք տալիս: Օրինակ, Թուրքիան կարող է *«դիվանագիտական առաքելություն»* բացել Երևանում և հավատարմատար նշանակել մի երրորդ քարտուղարի: Այս պարագայում մենք Երևանում կունենանք դիվանագիտական փոստի թուրքական ընդունման կետ միայն: Միևնույն ժամանակ Թուրքիան, հավատարմագրելով հայ դիվանագետ-/ներ/ի Անկարայում, կարող է մերժել Հայաստանի Հանրապետության դեսպանի հավատարմագրումը, պատճառաբանելով, որ նման բան չի նախատեսված արձանագրությամբ:

Տեսնենք՝ ի՞նչ նախադեպեր ունենք այս հարցում:

Օրինակ, Ուկրաինայի հետ Թուրքիայի դիվանագիտական հարաբերություններ հաստատող արձանագրությունը [3 փետրվարի,

1992թ.] ամրագրում է *«փոխանակել դիվանագիտական առաքելու-թյուններ* *<u>դեսպանությունների մակարդակով</u>»* (*to exchange diplomatic missions at the <u>level of embassies</u>*):[5] Այսինքն՝ ստեղծվում է իրավական հիմք և պարտավորություն արտակարգ և լիազոր դեսպանների հավատարմագրման համար, քանի որ երկկողմ հարաբերություններում *«դեսպանի կողմից գլխավորվող դիվանագիտական առաքելությունն է կոչվում դեսպանություն»*:

Ամերիկայի հետ հարաբերություններում թուրքերն ավելի առաջ են գնացել: Երբ 1927թ. փետրվարի 17-ին նոտաների փոխանակման ճանապարհով ԱՄՆ և Թուրքիան հաստատեցին դիվանագիտական հարաբերություններ, ապա նաև պարտավորվեցին *«հնարավորինս արագ ձեռնամուխ լինել <u>դեսպանների նշանակմանը</u>»* (*to proceed to the <u>appointment of Ambassadors</u> as soon as possible*):[6] Սա բխում էր Թուրքիայի շահերից, քանի որ Սենատում թուրք-ամերիկյան դիվանագիտական հարաբերությունների հաստատմանն ընդդիմացող մեծաթիվ խումբ կար: Այսինքն՝ Թուրքիան հեռու էր նայում և նման ձևակերպմամբ իրեն ապահովագրեց, որ ապագայում Սենատը չկարողանա մերժել Թուրքիայում ԱՄՆ դեսպանի թեկնածությունը, ինչպես նաև առարկել Թուրքիայի դեսպանի ժամանմանը Վաշինգտոն:

Եթե դիվանագիտական հարաբերություններ հաստատելու արձանագրությունը կնքվելու լիներ մեկ այլ երկրի հետ, գուցեև այդքան անհանգստանալու կարիք չէր լինի: Սակայն Թուրքիայի հետ պատմական փորձը մեզ մղում է հնարավորինս հաշվենկատ և հեռատես լինելու:

Այո՛, դեսպանությունը դիվանագիտական առաքելություն է, սակայն ամեն դիվանագիտական առաքելություն դեռ դեսպանություն չէ: Տեղին է հիշել պարսիկի խոսքը. *«Գերդու գերդ աստ, ամմա հար գերդի գերդու նիստ» (Ընկույզը կլոր է, սակայն ամեն կլոր բան ընկույզ չէ):*

*12 սեպտեմբերի, 2009թ.*

[5] United States, Treaty Series, vol. 1711, I-29601, New York, 1993, p. 209.
[6] Papers Relating to the Foreign Relations of the United States, 1927, v. III, Washington, 1942, p. 794.

## ԼՋ. Հայ-թուրքական արձանագրությունները հակասահմանադրական են

Հայաստանի անկախության մասին հռչակագիրը Հայաստանի Հանրապետության հիմնադիր փաստաթուղթն է և Հայաստանի Հանրապետության սահմանադրության հետ միասին նրա հիմնարար երկու փաստաթղթերից մեկը: Այն սահմանադրության հետ կազմում է մեկ միասնական ամբողջություն, քանի որ ՀՀ սահմանադրությունը խարսխված է Անկախության մասին հռչակագրում ամրագրված սկզբունքների և նպատակների վրա:

Հայաստանի Հանրապետության սահմանադրությունը սկսվում է հետևյալ պարբերությամբ. *«Հայ ժողովուրդը, հիմք ընդունելով Հայաստանի անկախության մասին հռչակագրում ամրագրված հայոց պետականության հիմնարար սկզբունքներն ու համազգային նպատակները, ......... ընդունում է Հայաստանի Հանրապետության Սահմանադրությունը»*:

Հիմա տեսնենք, թե ի՞նչ *«հիմնարար սկզբունքներ և համազգային նպատակներ»* են ամրագրված Հայաստանի անկախության մասին հռչակագրի մեջ: Հռչակագրի 11-րդ կետով ՀՀ անվերապահորեն պարտավորվում է հետևյալը. *«Հայաստանի Հանրապետությունը սատար է կանգնում 1915 թվականին Օսմանյան Թուրքիայում և Արևմտյան Հայաստանում հայոց ցեղասպանության միջազգային ճանաչման գործին»*:

Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության յոթերորդ կետը հռչակում է.

*«Շեշտելով [7] իրենց հանձնառությունը՝ ձեռնպահ մնալ բարիդրացիական հարաբերությունների ոգուն անհարիր [8] քաղաքականություն վարելուց»*:

Հանձնառության այս ոչ հստակ ձևակերպումը չափազանց ընդգրկուն է: Այն շատ բան կարող է նշանակել, մեկնաբանության

---

[7] ԱԳՆ թարգմանության մեջ ***"reiterate"*** բառը թարգմանված է ***"հաստատել"***: "Reiterate" նշանակում է մի բանը շեշտելու, ընդգծելու նպատակով կրկնել (repeat, say again, go over, restate, do again, recap, retell): Այն չունի հաստատել (confirm) իմաստը: Շեշտելն ավելի թույլ հանձնառություն է, քան հաստատելը:

[8] ԱԳՆ թարգմանության մեջ ***"incompatible"*** բառը թարգմանված է ***"չհամապատասխանող"***, որն առնվազն ոճական սխալ է: Ճիշտը "անհամատեղելի, անհարիր" բառերն են:

հարց է: Սակայն միանշանակ է, որ սրանով Թուրքիան իրավունք է ստանում վերահսկելու Հայաստանի արտաքին քաղաքականությունը: Արձանագրության նման հանձնառությամբ ՀՀ-ն չի կարող *«սատար կանգնել»* ցեղասպանության ճանաչման գործընթացին, քանի որ նման քաղաքականությունը *«անհարիր կլինի բարիդրացիական հարաբերությունների ոգուն»*:

Նման հանձնառությունը հակասության մեջ է մտնում Հայաստանի անկախության հռչակագրի մեջ ամրագրված և Հայաստանի Հանրապետության սահմանադրության մեջ վկայակոչված հիմնարար սկզբունքներից և համազգային նպատակներից առնվազն մեկին, հետևաբար հակասահմանադրական է:

*14 սեպտեմբերի, 2009թ.*

## ԼԷ. Աբդուլ Համիդի, Թեոդոր Հերցելի և էլի ինչ-որ բաների մասին

Աբդուլ Համիդը ճղճիմ ու դաժան մարդ էր, թերևս որովհետև պատահական գահակալ էր: Կարգին կրթություն էլ չէր ստացել, քանի որ երկրորդական մարդ էր, այսինքն՝ հոր երկրորդ զավակն էր: Նա գուցեև ողջ կյանքում կզբաղվեր իր սիրած զբաղմունքով՝ կահույք պատրաստելով, եթե մի օր ուրիշները գահընկեց չանեին եղբորը և իր ձեռքը չտային Օսմանի սուրը: Ահա այս պատահական գահակալի հետ կապված մի հետաքրքիր և ուսանելի պատմություն կա:

XIX դարի վերջը ծանր ժամանակաշրջան էր թուրքական պետության համար: «Եվրոպայի հիվանդ մարդը»՝ Օսմանյան կասրությունը, անհույս խրվել էր արտաքին պարտքերի մեջ և հոգեվարքի մեջ տնքում էր: Հենց այդ օրերին քաղաքական սիոնիզմի հիմնադիր Թեոդոր Հերցելին հաջողվում է ընդունելության արժանանալ Օսմանյան կայսրության ինքնակալի կողմից: Նա, պահը պատեհ համարելով, ալլահի տեղապահին առաջարկում է մի գործարք. հրեա մեծահարուստները կվճարեն Օսմանյան կայսրության արտաքին պարտքը, պայմանով, որ սուլթանը Պաղեստինում հրեաների ներգաղթի համար տարածք հատկացնի: Ասում են՝ խոսքը Օսմանյան հսկայածավալ կայսրության չափանիշներով, մի փոքր հողակտորի՝ 4.000 քառակուսի մղոնի, այսինքն՝ 10.000 քկմ մասին էր:

Օսմանյան կայսրության բռնապետը պատասխանում է. *«Ես այս երկրի սուլթանն եմ, սակայն այս երկրի հողը պատկանում է այս երկրի ժողովրդին»*:

Հերցելը տեղի չի տալիս. «Բայց վաղը կարող է պատերազմ լինել, հնարավոր է, որ դուք պարտվեք և այդ հողերը կկորցնեք առանց մի դուրուշ իսկ ստանալու»:

**«Անհասկացող» սուլթանը համառում է. *«Այո՛, վաղը կարող է պատերազմ լինել, հնարավոր է, որ մենք պարտվենք: Երբ որ պարտվենք, այն ժամանակ էլ այդ հողերը ձերը կլինեն»*:**

Ականջդ կանչի՛, Աբդո՜ւլ Համիդ:

*15 սեպտեմբերի, 2009թ.*

## ԼԸ. **Պետք է հետևել ամերիկացիների օրինակին**

*/կրկին հայ-թուրքական հարաբերությունների մասին/*

1927թ. սկզբին ԱՄՆ իշխանությունները կանգնած էին նույն երկընտրանքի առջև, ինչ՝ ՀՀ իշխանությունները ներկայումս: Իշխանությունները, տեղի տալով տնտեսվարող շրջանակների շահերին, նպատակ ունեին Թուրքիայի հետ հաստատել դիվանագիտական հարաբերություններ, իսկ հասարակական կարծիքի և Սենատի զգալի մասը դեմ էր դրան: Դեմ էր դրան ոչ թե ընդհանրապես, այլ վճարվելիք գինը համարժեք չէր համարում: Գտնում էր, որ դավաճանության գնով չի կարելի սեփական շահն ապահովել:

Հարցը հետևյալն էր: Թեև ԱՄՆ և Օսմանյան կայսրության միջև պատերազմ չէր հայտարարվել I աշխարհամարտի ընթացքում, սակայն թուրքերը 1917թ. ապրիլի 20-ին խզել էին իրենց դիվանագիտական հարաբերությունները ԱՄՆ-ի հետ: Պատերազմի ավարտից 10 տարի անց բնական էր, որ կողմերը պիտի ձգտեին վերահաստատել դիվանագիտական հարաբերությունները: Հատկապես, որ ամերիկյան ընկերությունները հարաճուն տնտեսական շահեր ունեին Թուրքիայում: Հարաբերությունների բնականոնացման վերաբերյալ դեռևս 1923թ. օգոստոսի 6-ին (Լոզան) երկկողմ պայմանագիր էր ստորագրվել: Ըստ ԱՄՆ սահմանադրության՝ այն ուժի մեջ կարող էր մտնել միայն Սենատի հավանությանն արժանանալուց հետո:

Այսու, 1926թ. դեկտեմբերին նախագահականը վերոհիշյալ պայմանագիրն ուղարկեց Սենատ: Թուրքիայում ԱՄՆ-ի տնտեսական հսկայական շահերի գիտակցումով հանդերձ, Սենատը 1927թ. հունվարի 18-ին մերժեց հավանության արժանացնել վերոհիշյալ պայմանագիրը: Բանն այն է, որ 1923թ. պայմանագիրն ուներ այնպիսի ճապաղ ձևակերպումներ, որոնք ցանկության դեպքում կարող էին մեկնաբանել որպես հրաժարում Վիլսոնի իրավարար վճռից (22.11.1920թ.): Հերթական անգամ նշեմ, որ սա է այն փաստաթուղթը, որով առ այսօր որոշված է Հայաստանի և Թուրքիայի ընդհանուր սահմանը: Ամերիկյան Սենատը հանուն տնտեսական շահի չստնահարեց սեփական երկրի միջազգային պարտավորությունները և չուրացավ Հայաստանի Հանրապետության տարածքային իրավունքները:

Հիշենք, սա 1927թ. էր, չկար այլևս Հայաստանի Հանրապետությունը, և որևէ մեկը չգիտեր, արդյո՞ք երբևէ նորից կհառնի հայոց

պետականությունը: Սակայն ամերիկյան օրենսդիրները որոշեցին վերջնականապես չփակել հայ ժողովրդի փրկության միակ դուռը:

Այդ քվեարկության շնորհիվ է, որ առ այսօր ունենք մի ազդեցիկ քաղաքական-իրավական լծակ, որը հմտորեն գործածելու դեպքում ոչ միայն կարող ենք ապաշրջափակել Հայաստանը, այլև երկրի համար ապահովել անվտանգության լուրջ երաշխիքներ և իսկայական դրամական մուտքեր:

Սենատի կողմից պայմանագրի մերժումից հետո ամերիկացիները, որպես գործնական մարդիկ, արագ կողմնորոշվեցին և 1 ամիս անց՝ 1927թ. փետրվարի 17-ին, նոտաների փոխանակման ճանապարհով վերահաստատեցին դիվանագիտական հարաբերությունները ԱՄՆ-ի և Թուրքիայի միջև: Բնականաբար, ՀՀ տարածքային իրավունքները մնացին անխաթար: Այս նոտաները ծառայում էին միայն իրենց բուն նպատակին, ուստի զերծ էին «խուճուճ» ու երկիմաստ ձևակերպումներից: Ահա դրանց բովանդակային մասը.

*Ամերիկայի Միացյալ Նահանգները և Թուրքիան համաձայնեցին միջազգային իրավունքի սկզբունքների հիման վրա փոխադարձաբար հաստատել դիվանագիտական և հյուպատոսական հարաբերություններ և հնարավորինս արագ ձեռնամուխ լինել դեսպանների նշանակմանը:*

*(The United States of America and Turkey are agreed to establish between themselves diplomatic and consular relations, based upon the principles of international law, and to proceed to the appointment of Ambassadors as soon as possible.)*[9]

Եվ ոչ մի ավելորդ բառ: Առաջարկում եմ և՛ օրենսդիրների վարքի, և՛ դիվանագիտական հարաբերություններ հաստատող փաստաթղթի բովանդակության հարցում ընդօրինակել ամերիկացիներին: Եթե թուրքերն անկեղծ են և իսկապես ուզում են կարգավորել մեզ հետ իրենց հարաբերությունները, նրանք անվարան կհաստատեն դիվանագիտական հարաբերություններ և կապաշրջափակեն Հայաստանը: Եթե իրենց բուն նպատակը մեզնից մեր իրավունքների ուրացման կորզումն է, ապա կխուսանավեն և արդեն խնդիրներ կունենան ուրիշների հետ:

**Եկե՛ք դիվանագիտական հարաբերությունների հաստատումը և, այսպես կոչված, սահմանի, այսպես կոչված, բացումը ինքնանպատակ չդարձնենք:**

*15 սեպտեմբերի, 2009թ.*

[9] Papers Relating to the Foreign Relations of the United States, 1927, v. III, Washington, 1942, p. 794.

## ԼԹ. Անիարկի պարտավորություններ Լեռնային Ղարաբաղի հիմնախնդրում

Իշխանությունն ու իշխանամերձ շրջանակներն անընդհատ պնդում են, որ չարաբաստիկ զույգ արձանագրությունների մեջ ոչինչ չկա Լեռնային Ղարաբաղի հակամարտության մասին: Իրականության մեջ ոչ միայն Լեռնային Ղարաբաղի շահերն են այնտեղ շոշափվում, այլև Հայաստանի Հանրապետությունը ԼՂՀ առնչությամբ ստանձնում է ուղղակի պարտավորություն:

Եկեք մասնագիտական հայացքով վերլուծության ենթարկենք Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության ընդամենը մեկ պարբերություն և բացահայտենք ճշմարտությունը: Նշյալ արձանագրության երրորդ կետը, ըստ ՀՀ ԱԳՆ թարգմանության՝ ամրագրում է հետևյալը.

*Վերահաստատելով <u>հավասարության</u>, ինքնիշխանության, այլ պետությունների ներքին գործերին չմիջամտելու, տարածքային ամբողջականության և սահմանների անխախտելիության սկզբունքները հարգելու <u>իրենց երկկողմ և բազմակողմ</u> պարտավորությու<u>նները</u>:*

Անգլերեն բնագիրը հետևյալն է. *Reconfirming their <u>commitment</u>, <u>in their bilateral and international relations</u>, to respect and <u>ensure respect</u> for the principles equality, sovereignty, non intervention in internal affairs of other states, territorial integrity and inviolability of frontiers.*

ՀՀ արտգործնախարարության ներկայացրած թարգմանության և անգլերեն բնագրի մեջ կա 4 էական տարբերություն, որոնք ոչ միայն աղճատել են բուն միտքը, այլև էականորեն թյուր կերպով են ներկայացրել ՀՀ ստանձնելիք պարտավորությունը: Նախ ճիշտ թարգմանությունը, ապա մեկնաբանությունը.

*Վերահաստատելով <u>իրենց երկկողմ և միջազգային հարաբերություններում</u> <u>իրավահավասարության</u>, ինքնիշխանության, այլ պետությունների ներքին գործերին չմիջամտելու, տարածքային ամբողջականության և սահմանների անխախտելիության սկզբունքները հարգելու և <u>հարգանքն ապահովելու</u> պարտավորությու<u>նը</u>:*

Նախ՝ ոչ էական սխալի մասին: Բնագրում եղած *equality* բառը, քանի որ խոսքը միջազգային իրավունքի սկզբունքների մասին է, պետք է թարգմանել *իրավահավասարություն*, ոչ թե՝ *հավասարություն*:

Բնագրում թվարկված սկզբունքները *«հարգելու» (to respect)* պարտավորությունից բացի կա նաև *«հարգանքն ապահովելու» (to ensure respect)* պարտավորություն, որը չկա հայերեն թարգմանության մեջ: Սա հավելյալ պարտավորություն է: Այն դյուրությամբ կարող է մեկնաբանվել որպես ԼՂՀ-ին՝ Ադրբեջանի *«տարածքային ամբողջականությունն և սահմանների անխախտելիությունն»* հարգել տալու Հայաստանի Հանրապետության պարտավորություն:

Բնագրում խոսքը ոչ թե *«իրենց երկկողմ և բազմակողմ պարտավորությունների»* մասին է, ինչպես ներկայացված է թարգմանության մեջ, այլ *«երկկողմ և միջազգային հարաբերություններում իրենց ունեցած»* պարտավորության: Այսինքն՝ խոսքը ոչ միայն հայ-թուրքական երկկողմ հարաբերություններում ստանձնվող պարտավորության, այլև ցանկացած այլ երկկողմ հարաբերություններում *«տարածքային ամբողջականության և սահմանների անխախտելիության սկզբունքները հարգելու»* և, առանձնահատուկ ուզում եմ շեշտել, *«հարգանքն ապահովելու»* ՀՀ պարտավորության մասին է: Սա խոսում է նախորդ կետում արտահայտած ցավալի եզրակացության օգտին:

Բնագրում *«հարգելու և հարգանքն ապահովելու պարտավորությունը»* ընկալվում է որպես մեկ միասնական պարտավորություն, ուստի *պարտավորություն (commitment)* բառը եզակի թվով է, այլ ոչ թե *պարտավորություններ*, ինչպես ներկայացված հայերեն թարգմանության մեջ է:

Այսինքն՝ վերոհիշյալ արձանագրության երրորդ կետով Հայաստանի Հանրապետությունը անվերապահորեն պարտավորվում է.

ա) Հարգել Թուրքիայի տարածքային ամբողջականության և սահմանների անխախտելիության սկզբունքները;

բ) Երկկողմ, օրինակ Ադրբեջանի հետ ունեցած հարաբերություններում, հարգել տարածքային ամբողջականության և սահմանների անխախտելիության սկզբունքները;

գ) Երկկողմ, օրինակ ԼՂՀ հետ ունեցած հարաբերություններում «ապահովել հարգանքը» տարածքային ամբողջականության և սահմանների անխախտելիության սկզբունքների նկատմամբ:

Ակնհայտ է, որ Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության երրորդ կետը ուղղակիորեն

վերաբերում է ԼՂՀ հակամարտությանը (տե՛ս եզրակացության (բ) և (գ) կետերը) և այդ հիմնախնդրում ՀՀ քաղաքականության համար ուղենշում է ոչ նպաստավոր վարքագիծ:

*15 սեպտեմբերի, 2009թ.*

## Խ. Արդյոք կա՞ կարգավորման գործընթաց

Ցանկացած երևույթ կամ գործընթաց ճիշտ հասկանալու համար անհրաժեշտ է գործածել ճիշտ բառեր: Ճիշտ եզրաբանությունը ցանկացած գիտության, եթե ոչ հիմքը, գոնե նվազագույն նախապայմանն է: Քաղաքագիտությունն էլ գիտություն է: Հայաստանի և Թուրքիայի միջև առ այսօր հարաբերություններ չեն եղել այն պարզ պատճառով, որ եղած շփումները կամ եղել են ոչ պաշտոնական կամ եղել են բազմակողմ հանդիպումների ածանցյալներ: Իրավական տեսանկյունից մենք անգամ առևտուր չունենք իրար հետ, քանի որ այն ամբողջությամբ ձևակերպվում է երրորդ երկրների միջնորդ ընկերություններով:

Հետևաբար այսօր, երբ խոսքն ընդամենը Հայաստան-Թուրքիա դիվանագիտական հարաբերությունների հնարավոր հաստատման և որոշակի, հույժ սահմանափակ հարաբերությունների սկզբնավորման մասին է, իրավաչափ չէ խոսել *«հայ-թուրքական հարաբերությունների կարգավորման»* մասին: Պետք է արձանագրել զուտ երևույթը՝ առանց անհիմն ընդհանրացումների, և խոսել միայն *«Հայաստան-Թուրքիա հարաբերությունների սկզբնավորման մասին»*:

Հայ-թուրքական կարգավորումն առնվազն պիտի ընդգրկի գոյություն ունեցող խնդիրների եթե ոչ ամբողջական լուծումը, գոնե ձգտումը՝ դրանք լուծելու: Այդպես է միջազգային հարաբերություններում, այդպես է առօրյա կյանքում: Հայերի և թուրքերի, ինչպես նաև Հայաստանի և Թուրքիայի միջև առկա խնդիրներն ունեն երեք բաղադրիչ՝ տարածքային, նյութական և բարոյական: Առանց դրանք լուծելու խոսել «հարաբերությունների կարգավորման» մասին անտրամաբանական է ու վաղաժամ:

Չի կարող լինել կարգավորում՝ առանց արդարության հաստատման: Չի կարող լինել անկեղծ երկխոսություն՝ առանց գոնե անդրադարձի բուն խնդիրներին: Բժշկի կողմից հիվանդության պատճառների և բուն հիվանդության անտեսումը չի վկայում հիվանդության բացակայության մասին: Մարդկության դեմ կատարված հանցագործության հետևանքների ամրագրումը կարգավորում չէ, կարգավորումը դա չէ: Ոմանց ձեռքերն ոլորելու, ոմանց շահագրգռելու, ոմանց ուղղակի «առնելու» ճանապարհով ձեռք բերած արդյունքը կարգավորում չէ: Այն պարզապես գործարք է:

*17 սեպտեմբերի, 2009թ.*

## ԽԱ. ԲԱՑ ՆԱՄԱԿ
## **«Հայոց աշխարհ» թերթի խմբագիր Գագիկ Մկրտչյանին**

Հարգելի՛ պարոն խմբագիր,

Միջպետական հարաբերություններում առկա խնդիրները կարելի է լուծել չորս ճանապարհով՝ քաղաքական, տնտեսական, ռազմական և իրավական կամ դրանց համադրմամբ: Իրատեսական մոտեցման դեպքում ակնհայտ է, որ նշածս առաջին երեք ոլորտներում մենք ավելի թույլ ենք և մշտապես ավելի թույլ ենք լինելու, քան Թուրքիան: Միակ ոլորտը, որտեղ մենք ոչ միայն չենք զիջում, այլև Թուրքիայի նկատմամբ էական առավելություն ունենք, միջազգային իրավունքն է:

«Հայոց աշխարհ» օրաթերթի սեպտեմբերի 19-ի համարի առաջին էջի լուսանկարի տակ կա հետևյալ պնդումը. *«Արձանագրությունների վավերացումը չէ, որ պետք է խանգարի փեր կանգնելու մեր հողերին»*: Սա Վազգեն Մանուկյանի պնդումն է և, քանի որ այն ակնառու զետեղված է առաջին էջում, նաև՝ Ձերը:

Թո՛ւյլ տվեք չհամաձայնել ձեզ հետ: Արձանագրությունների ստորագրումը, առավել ևս վավերացումը հետագայում էապես խանգարելու են մեզ *«փեր կանգնելու մեր հողերին»*: *Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին* արձանագրության 5-րդ կետն ամրագրում է *«գոյություն ունեցող սահմանի»* ճանաչման փոխադարձ պարտավորություն: Սա նշանակում է ոչ միայն հրաժարում հայոց հողային պահանջներից, այլև երբևէ պահանջելու իրավունքից:

Միջազգային իրավունքի մեջ գոյություն ունի էստոպելի *(estoppel)* սկզբունքը: Այսինքն, երբ կողմերից մեկն իր անգործությամբ (ինչպես եղել է նախորդ տարիներին) կամ գործողությամբ (ինչպես ուզում են անել ս.թ. հոկտեմբերի 13-ին) հստակ հասկացնում է, որ հաշտվել է ստեղծված իրավիճակին կամ համարում է հարցը լուծված, ապա նա զրկվում է հետագայում նույն հարցը վերաբացելու հիմքերից և իրավունքից: Արձանագրությունների ստորագրումը մեզ կզրկի ապագայում մեր իրավունքները վկայակոչելուց:

Քաղաքական զարգացումներն անկանխատեսելի են: Թող որևէ մեկն այսօր չհավակնի քաղաքական պայծառատես գուրու լինել: Երբ 1989թ. գարնանը ՆԱՏՕ-ի ամենաբարձր ուսումնական հաս-

տատության (NATO Defence College) 72 ուսանողների (ցածրագույն զինվորական աստիճանը՝ գնդապետ, ցածրագույն դիվանագիտական աստիճանը՝ խորհրդական) հարցրել էին. *«Արդյո՞ք ձեր կյանքի օրոք հնարավոր է երկու Գերմանիաների միավորումը»*, – 72-ից 72-ը ասել էր՝ **ՈՉ**: Վեց ամիս հետո (1989թ. նոյեմբերի 9-ին) Գերմանիաներն արդեն միացած էին, իսկ մեկուկես տարի հետո (1990թ. հոկտեմբերի 3-ին)՝ պաշտոնապես միավորված:

Այո՛, այսօր մեր երկիրը ծանր վիճակի մեջ է, ավելի ծանր, քան շատերն են պատկերացնում կամ ներկայացնում: Այսուհանդերձ, դրա մեղավորը մեր զավակները չեն: Մեղավորը մենք ենք: Հետևաբար, մենք իրավունք չունենք մեր զավակների հաշվին լուծել մեր խնդիրները: Մենք իրավունք չունենք նրանց համար փակել ապագա հնարավորությունների դուռը:

**Արձանագրությունները ելք չեն իրավիճակից: Հնդկացիների նման չտանք մեր հայրենիքը փայլփլուն ուլունքների դիմաց:**

*19 սեպտեմբերի, 2009թ.*

## ԽԲ. Հայաստանի տարանցիկ հնարավորությունները՝ ըստ միջազգային իրավունքի

Հայաստանի Հանրապետության իշխանությունները տխրահռչակ զույգ արձանագրությունները ստորագրելու, ապաև վավերացնելու համար որպես հիմնական կռվան են վկայակոչում Հայաստանն ապաշրջափակելու անհրաժեշտությունը: Չկիսելով, այսպես կոչված, հայ-թուրքական սահմանի բացման կապակցությամբ ծփացող հրճվանքը, միանգամայն օրինաչափ եմ համարում ՀՀ իշխանությունների այս ձգտումը: Այսուհանդերձ, ընտրած ուղին ճիշտ չէ, քանի որ եթե Թուրքիան սահմանը բացի ոչ որպես միջազգային պարտավորություն, այլ որպես բարեհաճություն, ապա այն կարող է փակել ցանկացած պահի, ցանկացած մտացածին պատրվակով: Ընդսմին, Թուրքիան պատրաստակամություն է հայտնել *«բացել ընդհանուր սահմանը»* Հայաստանի՝ իր տարածքային իրավունքից հրաժարվելու, ցեղասպանությունը հարցականի տակ դնելու և մի շարք այլ անընդունելի զիջումների դիմաց: Դա չարդարացված բարձր գին է և ավելի շատ նման է պատանդների համար վճարվող փրկագնի, քան իրավահավասար երկրների բանակցված համաձայնության:

Արդ, անհրաժեշտ է պատասխանել մի կարևոր հարցի.

– Արդյո՞ք Հայաստանի իշխանությունները սպառել էին նշյալ սահմանը բացել տալու, ավելի ճիշտ, Հայաստանն ապաշրջափակելու բոլոր հնարավորությունները, որ այսօր դրա համար պատրաստ են վճարել մեր անցյալով և ապագայով:

Նախ նշեմ, որ Թուրքիան 1993թ. հուլիսից առ այսօր ՀՀ նկատմամբ իրականացնում է **<u>պատերազմական միջոցառում</u>** (War Measure),[10] քանի որ միջազգային իրավունքը **<u>շրջափակումը</u>** դիտարկում է որպես այդպիսին: Թուրքիայի կողմից ՀՀ շրջափակումը միանշանակորեն միջազգային իրավունքի և ստանձնած պարտավորությունների կոպիտ խախտում է: Ըստ այդմ, միջազգային իրավունքը, մասնավորապես նրա մի շարք կարևորագույն փաստաթղթեր, Հայաստանն ապաշրջափակելու համար տալիս է բազմաթիվ լծակներ: Միջազգային իրավունքի այդպիսի փաստաթղթերից այստեղ անդրադառնանք միայն մեկ փաստաթղթի:

---

[10] Jack C. Plano, Roy Oltan, The International Relations Dictionary, Santa Barbara, 1988, p. 194.

Թուրքիան 1969թ. մայիսի 25-ին միացել է *Դեպի ծով ելք չունեցող պետությունների փարանցիկ առևտրի կոնվենցիային* (Նյու Յորք, 08.07.1965թ.) *(Convention on Transit Trade of Land-locked States)*:

Սույն կոնվենցիայի 1-ին սկզբունքը ճանաչում է, որ *«դեպի ծով ելք չունեցող երկրներից յուրաքանչյուրի համար դեպի ծով ազատ ելքը վճռորոշ սկզբունք է միջազգային առևտրի ընդլայնման և տնտեսական զարգացման համար»*:

Նույն կոնվենցիայի 3-րդ սկզբունքը միանշանակորեն ճանաչում է անծով երկրների՝ դեպի ծով ազատ ելքի իրավունքը. *«Որպեսզի ծովեզերք չունեցող երկրները ծովեզերք ունեցող երկրների հետ հավասարապես օգտվեն ծովերի ազատությունից, նրանք պետք է ունենան ազատ ելք դեպի ծով»*:

Ավելին, նշյալ կոնվենցիայի 4-րդ սկզբունքը հաստատակամորեն պնդում է, որ *«տարանցիկ ապրանքների համար չպիտի գանձվի որևէ մաքս»*: Իսկ *«տարանցիկ փոխադրումներն իրականացնող փոխադրամիջոցները չպիտի վճարեն հատուկ տուրքեր կամ ենթարկվեն այնպիսի գանձումների, որոնք ավելի բարձր են, քան վճարում են տարանցիկ երկրի փոխադրամիջոցները»*:

Վերոհիշյալ սկզբունքներն ամրագրված են նշյալ կոնվենցիայի 2-րդ և 3-րդ հոդվածներում: Հոդված 2-րդի 1-ին կետը նշում է. *«Համաձայն սույն կոնվենցիայի պայմանների՝ ազատ տարանցման իրավունք պետք է տրվի փոխադրումներին և տրանսպորտի միջոցներին: (...) Համաձայն սույն կոնվենցիայի պայմանների՝ ոչ մի խտրականություն չպիտի դրվի ապրանքների ծագման, մեկնակետի, մուտքի, ելքի կամ վերջնահասցեի կամ որևէ այլ հանգամանքի պատճառով, որը վերաբերում է ապրանքների կամ նավերի սեփականությանը, ցամաքային փոխադրամիջոցներին կամ օգտագործվող այլ փոխադրամիջոցներին»*:

Սույն կոնվենցիայի 3-րդ հոդվածը վերաբերում է մաքսատուրքերին և տարանցման գանձումներին. *«Տարանցիկ փոխադրումները տարանցման երկրի իշխանությունների կողմից չպիտի ենթարկվեն մաքսատուրքերի, որևէ ներմուծման կամ արտահանման հարկերի վճարման, կամ տարանցմանն առնչվող որևէ այլ հատուկ գանձման»*:

Հայաստանի Հանրապետությունը, ինչքան էլ տարօրինակ է, առ այսօր չի միացել վերոնշյալ կոնվենցիային: Կարծում եմ՝ տխրահռչակ զույգ արձանագրությունները ստորագրելու փոխարեն առաջին հերթին անհրաժեշտ է միանալ *Դեպի ծով ելք*

*չունեցող պետությունների փարանցիկ առևտրի կոնվենցիային* և առդիր փաստաթղթերին:

Հայաստանի Հանրապետության նախաձեռնությամբ պետք է ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի և Ընդհանուր համաժողովի ուշադրությունը բևեռել Թուրքիայի կողմից վերոհիշյալ կոնվենցիայից բխող միջազգային պարտավորությունները հետևողականորեն չկատարելու, հետևաբար միջազգային իրավունքի ակնհայտ, կոպիտ, բազմակի ու չարամիտ խախտումների վրա, որոնք լուրջ կռվան են ՀՀ ապաշրջափակելու քաղաքական գործընթացում:

Կարծում եմ, որ Հայաստանի Հանրապետությունը քանի դեռ չի սպառել Հայաստանն ապաշրջափակելու միջազգային իրավունքով իրեն վերապահված բոլոր հնարավորությունները, իրավունք չունի ստորագրելու տխրահռչակ զույգ արձանագրությունները:

**Սպիտակ դրոշ մենք միշտ էլ կհասցնենք պարզել:**

*19 սեպտեմբերի, 2009թ.*

## ԽԳ. Հայաստանն ու Թուրքիան իրավասու չեն «հաստատելու» սահմանը

*Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության* 5-րդ կետով կողմերը ստանձնում են *գոյություն ունեցող սահմանն* հաստատելու պարտավորություն:

Ըստ այդմ՝ անհրաժեշտ է անդրադառնալ մի հույժ կարևոր, թեև առաջին հայացքից տարօրինակ, հարցի.

**– Արդյո՞ք Հայաստանի Հանրապետությունն ու Թուրքիայի Հանրապետությունը, միջազգային իրավունքի տեսանկյունից, իրավասու են «հաստատել գոյություն ունեցող սահմանը»:**

Հստակեցնեմ հարցադրման էությունը: Միջազգային իրավունքի տեսանկյունից ցանկացած միջազգային բազմակողմ պայմանավորվածություն, անկախ նրա դրսևորման ձևից՝ պայմանագիր, համաձայնագիր, արձանագրություն և այլն, կարող է փոփոխության ենթարկվել, դադարեցվել կամ չեղյալ հայտարարվել միմիայն տվյալ փաստաթղթին մաս կազմող *բոլոր կողմերի* մասնակցությամբ և համաձայնությամբ: Այս սկզբունքը՝ պայմանագրերի մասով, ամրագրված է Պայմանագրերի մասին Վիեննայի կոնվենցիայի (1969թ.) 39-41 հոդվածներում:

Նախկին ԽՍՀՄ սահմանի հայաստանյան հատվածի *«հաստատումը»*՝ որպես Հայաստանի և Թուրքիայի սահման, իրավական տեսանկյունից նշանակում է սահմանի փոփոխություն,[1] քանի որ Հայաստան-Թուրքիա *de jure* սահմանը էապես տարբերվում է սովետաթուրքական սահմանից: Նշյալ իրավական *(de jure)*, այսու՝ միակ օրինական սահմանը *«հաստատվել է»* բազմակողմ փաստաթղթով, հետևաբար, *«գոյություն ունեցող սահմանի հաստատումը»* ըստ էության սահմանի փոփոխություն է նշանակում և տվյալ դեպքում դուրս է երկկողմ հարաբերությունների շրջանակից վերոնշյալ պատճառով:

1918թ. հոկտեմբերի 30-ին Օսմանյան կայսրությունը, առաջին աշխարհամարտում ջախջախիչ պարտություն կրելուց հետո, ստորագրում է Մուդրոսի զինադադարը: Իրավական տեսանկյունից այս զինադադարը *անվերապահ կապիտուլյացիա* էր, հետևաբար Թուրքիայի ողջ ինքնիշխանությունը *(sovereignty)*, մինչև խաղաղության պայմանագրի կնքումը, փոխանցվում է հաղթանակած ուժերին: Այ-

սինքն՝ այդուհետ հաղթանակած Դաշնակից ուժերին[2] էր վերապահված որոշելու, թե Օսմանյան կայսրության որ մասում և ինչ աստիճանի է վերականգնվելու թուրքական պետության ինքնիշխանությունը:

1919-1920թթ. խաղաղության պայմանագրերի պայմանները քննարկելու համար Փարիզում գումարվում է խաղաղության վեհաժողովը: 1920թ. ապրիլին Փարիզի խաղաղության վեհաժողովի Սան Ռեմոյի նիստն անդրադառնում է Օսմանյան կայսրության ճակատագրին: Բնականաբար, կարևորագույն հարցերից մեկը Հայաստանի ապագայի հարցն էր: Ուստի, Դաշնակից ուժերի Գերագույն խորհուրդը *(Supreme Council of the Allied Powers)* ապրիլի 26-ին պաշտոնապես դիմում է ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնին՝ *<u>իրավարար վճռով</u>* որոշելու Հայաստանի Հանրապետության սահմանը *(to arbitrate the frontiers of Armenia)*:[3]

Վերջին պարբերության մեջ առկա է 2 հանգամանք, որոնք արժանի են լրացուցիչ պարզաբանման:

ա) Փարիզի վեհաժողովի Գերագույն խորհուրդը լիազորված էր և գործում էր *Դաշնակից բոլոր ուժերի* անունից: Այսինքն՝ իրավարարությամբ Հայաստանի սահմանը որոշելու հայցադիմումը *(compromis)*, հետևաբար և դրա հիման վրա կայացվելիք վճռի անվերապահ ընդունման պարտավորությունն արված էր բոլոր Դաշնակից ուժերի անունից: Առաջին աշխարհամարտի տարիներին Դաշնակից ուժերի *(Allied Powers)* մեջ ուղղակիորեն ընդգրկված էին ավելի քան երեք տասնյակ երկրներ, իսկ Բրիտանական կայսրության, Ֆրանսիայի երրորդ հանրապետության, Ճապոնիայի և Իտալիայի թագավորությունների կախյալ տարածքներով *(dependent territories)* հանդերձ՝ գրեթե հարյուր (100) երկիր:

բ) ՀՀ սահմանը, ի տարբերություն Թուրքիայի մյուս սահմանների, որոշվելու էր ոչ թե խաղաղության պայմանագրով, այլ իրավարարությամբ (arbitration): Իրավական տեսանկյունից սա խիստ կարևոր առանձնահատկություն է, քանի որ պայմանագրերը միշտ էլ կարող են *<u>կողմերի համաձայնությամբ</u>* փոփոխվել, կասեցվել, չեղյալ հայտարարվել, իսկ իրավարար վճիռները *«վերջնական և անբեկանելի»* են *(final and without appeal)*, ինչպես նաև կայացման պահից կատարման համար *«պարտադիր»* են *(binding)*:[4] Այսինքն՝ իրավարարությունը, ի տարբերություն պայմանագրի, ենթակա չէ վերանայման: Բացի այդ, իրավարարությունը և պայմանագիրն ունեն հակառակ ընթացակարգեր: Եթե պայմանագրի դեպքում նախ

համաձայնությունն է ձեռք բերվում, հետո միայն այն ստանում է համապատասխան իրավական ձևակերպում, ապա իրավարարության դեպքում նախ ստորագրվում է ապագա համաձայնությունն անվերապահ ընդունելու հայցադիմումը *(compromis)*, հետո նոր միայն կայացվում է վճիռը *(award)*:

Այսու, ի հետևանք վերոհիշյալ ապրիլի 26-ի հայցադիմումի, 1920թ. մայիսի 17-ին Միացյալ Նահանգների նախագահ Վուդրո Վիլսոնը պաշտոնական գրությամբ ստանձնում է հայ-թուրքական սահմանի իրավարարությունը և ձեռնամուխ է լինում համապատասխան աշխատանքներին: Այստեղ անհրաժեշտ է ընդգծել, որ սա Սևրի պայմանագրի ստորագրումից (10.08.1920թ.) գրեթե 3 ամիս առաջ էր, ըստ այդմ, իրավարարության գործընթացը սկսվել է խաղաղության պայմանագրի ստորագրումից և նրա մեջ որպես 89-րդ հոդված ներառված հայցադիմումից, անկախաբար:

Ամփոփելով՝ կարելի է անել հետևյալ հստակ եզրակացությունները.

1. Թուրքիայի հետ ՀՀ սահմանը որոշվել է երկու՝ իրարից անկախ հայցադիմումների (Սան Ռեմո՝ 26.04.1920թ. և Սևր՝ 10.08.1920թ.) հիման վրա կայացված իրավարար վճռով:
2. Վճիռն օրինապես կայացվել է 1920թ. նոյեմբերի 22-ին և ուժի մեջ է մտել նույն օրը: Երկու օր հետո՝ նոյեմբերի 24-ին, վճիռը պաշտոնական հեռագրով փոխանցվել է Փարիզ:
3. Վճիռը երբեք չի բողոքարկվել, այն ուժի մեջ է առ այսօր:
4. Վճիռն իրավական է և օրինական (*legal and lawful*):
5. Այն գործում է Սևրի պայմանագրից անկախաբար:
6. Սևրի պայմանագրի մեջ ներառված հայցադիմումը՝ հոդված 89 եղել և մնում է հավելյալ, բայց ոչ հիմնական հայցադիմումը:

Այսու, Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանը հաստատվել է միջազգային իրավունքի բազմակողմ փաստաթղթով (multilateral instrument of international law)՝ Իրավարար վճռով (Arbitral Award), որին այսօր կողմ է հանդես գալիս գրեթե հարյուր երկիր:

Այժմ վերադառնանք բուն հարցին.

**– Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության իշխանությունները միջազգային իրավունքի ո՞ր հիմնավորմամբ են ուզում անտեսել իրենց իսկ միջազգային պարտավորությունները և երկկողմ արձանագրությամբ բեկանել բազմակողմ միջազգային անբեկանելի որոշումը՝ Իրավարար վճիռը:**

Ընդսմին, պետք է նկատի ունենալ, որ միջազգային իրավունքում սկզբունքորեն բացակայում է օրինապես ուժի մեջ մտած իրավարար վճռի փոփոխման, կասեցման կամ բեկանման ընթացակարգ կամ նախադեպ:

**Հ.Գ.** Մենք ականջակախ այնքան չխոսեցինք Թուրքիայի Հանրապետության կողմից Հայաստանի Հանրապետության, շեշտում եմ՝ Հանրապետության, տարածքների մեծ մասի բռնազավթման մասին, որ այսօր Դավուդօղլուն իրեն իրավունք է վերապահում ասելու. *«Հայաստանը շարունակում է օկուպացնել Ադրբեջանի տարածքները, դա հակասում է միջազգային բոլոր նորմերին»*:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Ի դեպ, թուրքական կողմի պնդումը, որպեսզի արձանագրությունները ենթարկվեն խորհրդարանական վավերացման, պայմանավորված չէ միայն գործընթացը ձգձգելու ցանկությամբ: Դրա համար շատ ավելի պարզ հնարներ կան: Վավերացման անհրաժեշտությունն առաջացել է, քանի որ սահմանների փոփոխությունները, ըստ զույգ երկրների սահմանադրությունների, ենթակա են խորհրդարանական վավերացման:
2. Հայալեզու պատմագիտության և քաղաքագիտության մեջ Դաշնակից ուժերն առավել հայտնի են Անտանտի երկրներ անվանումով:


3. Full Report of the Committee upon the Arbitration of the Boundary between Turkey and Armenia, App I, No 10. (The National Archives, Washington, 760J.6715-760J.90C/7).
4. Schlochauer H.-S. Arbitration, In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of the Public International Law, Amsterdam, 1992, v. I, p. 226.


*20 սեպտեմբերի, 2009թ.*

## ԽԴ. Ինչո՞ւ են լռում կաթողիկոսները

Հայաստանյայց առաքելական սուրբ եկեղեցին հույժ կարևոր դեր է ունեցել և ունի հայ ժողովրդի կյանքում: Մեր եկեղեցին մեզ համար ոչ միայն Աստծո տունն է, այլև մեր ազգային կազմակերպման հիմնական ձևերից մեկը: Հայաստանյայց առաքելական սուրբ եկեղեցու *«բացառիկ առաքելությունը»* մինչևիսկ ամրագրված է ՀՀ սահմանադրության մեջ (հոդված 8.1):

Անկախության այս խռովահույզ տարիներին Հայաստանյայց եկեղեցին երբեք չի եղել կողքից նայողի դերում: Հատկապես վերջին տարիներին Եկեղեցու բարձրաստիճան սպասավորներից շատերը գործուն մասնակցություն և դերակատարություն են ունեցել հայ ժողովրդի հասարակական, մինչևիսկ քաղաքական կյանքում: Որպես ՀՀ քաղաքացիներ՝ նրանցից շատերը անվարան մասնակցությունն են ունեցել զանազան ընտրապայքարների մեջ, ուղղորդել են հանրային կարծիքն ու քվեն:

Այսօր սեղանին է դրված երկու հույժ կարևոր փաստաթուղթ՝ *Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրությունը* և *Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև հարաբերությունների զարգացման մասին արձանագրությունը*: Դրանց հետ սեղանին են դրված հայ ժողովրդի անցյալը, ներկան ու ապագան: Կարելի է տարբեր կարծիքներ ունենալ նշյալ արձանագրությունների մասին, սակայն անհնար է չտեսնել դրանց բախտորոշ նշանակությունը: Չտեսնելն անհնար է, չխոսելն՝ անընդունելի:

**Մենք՝ Հայաստանյայց առաքելական եկեղեցու զավակներս, որ ենք ի Հայաստան և ի սփյուռս աշխարհի, այս ճակատագրական պահին մեր երկու Վեհափառ հայրապետներից նշյալ արձանագրությունների վերաբերյալ հստակ ու բարձրահունչ տեսակետներ լսելու կարիքն ու իրավունքն ունենք: Հնարավոր չէ անտեսել պահի կարևորությունը:**

**Չտեսնելն անհնար է, չխոսելն՝ անընդունելի:**

*21 սեպտեմբերի, 2009թ.*

## ԽԵ. **Պետականության խորհուրդն ու Հայկական հարցը**

Պետականությունը հասարակության կազմակերպման բարձրագույն ձևն է: Ազգային պետականությունը՝ ազգի կազմակերպման բարձրագույն ձևը, ազգի առջև ծառացած խնդիրների լուծման հնարավորությունն է, նրա դեմ ուղղված անվտանգության մարտահրավերների չեզոքացման ամենաարդյունավետ միջոցը: Ազգային պետությունն է տվյալ ազգի լինելիության գրավականը, ազգային ինքնության պահպանման ու տնտեսական զարգացման անսասան հիմքը:

Ըստ այդմ, երբ ազգային գոյության, ինքնության պահպանման և տնտեսական զարգացման տեսանկյունից ենք քննում արդի հայոց պետականությունը, ապա ակնհայտ է դառնում, որ առանց Հայկական հարցի լուծման հայոց արդի պետականությունը ներկա սահմաններով և ներկա ձևով ոչ միայն ի զորու չէ և ի զորու չի լինելու երաշխավորել վերոհիշյալ գործառույթների իրագործումը, այլև խիստ խնդրահարույց է մնալու նրա՝ որպես պետական ինքնիշխան և ինքնուրույն միավորի, հարատևելու հնարավորությունը: Ընդսմին, Հայկական հարցի մասնակի լուծումը (օրինակ, միայն արևելյան սահմանների մասով, այսինքն՝ Լեռնային Ղարաբաղի առումով) չի լուծելու հայոց պետականության առաջ կանգնած հիմնախնդիրները և չի չեզոքացնելու մեր գոյությունը վտանգող մարտահրավերները:

Ներկայումս Հայաստանի Հանրապետությունը կանգնած է լուրջ մարտահրավերների առջև: Հայկական հարցի լուծումը, այն է՝ ՀՀ և հայ ժողովրդի իրավունքների վերահաստատումը, ինքնանպատակ չէ: ՀՀ՝ որպես քաղաքական ինքնուրույն և արժանապատիվ միավոր, կամ կարող է գոյություն ունենալ միայն իր անօտարելի և անժամանցելի իրավունքների հաստատումով կամ ընդհանրապես չի կարող գոյություն ունենալ որպես այդպիսին:

**Հայկական հարցի լուծման բուն նպատակը հայոց կենսունակ պետականության ստեղծումն է, անվտանգության և զարգացման համար անհրաժեշտ նվազագույն պայմանների ապահովման ճանապարհով հայերի՝ որպես մարդկության անբաժանելի և ինքնատիպ հատվածի հարատևման ապահովումը:**

Առանց հայկական հարցի լուծման՝ հայոց պետականությունը կմնա քաղաքականապես անհաստատ, ռազմականապես խոցելի, տնտեսապես կախյալ և հոգեբանորեն վեհերոտ: Հարցականի տակ կդրվի հայոց պետականության ինքնին իմաստը, քանի որ այն կունենա զուտ

ձական բնույթ և չի լուծի պետականության հիմնական խնդիրները, այդ թվում.

– պետության ինքնիշխանության և այդ պետության քաղաքացիների անվտանգության ապահովում,
– երկրի տնտեսական զարգացման և քաղաքացիների բարեկեցության համար նպաստավոր պայմանների ստեղծում,
– նախորդ երկուսի հենքի վրա՝ այսինքն ապահով և բարեկեցիկ երկրում, ազգային ինքնության և մշակույթի զարգացում:

Ընդսմին, Հայկական հարցի լուծումը կենսական կարևորություն ունի ոչ միայն հայոց պետականության համար, այլև սեփական հայրենիքում որպես հավաքական հանրություն ապրելու հայ ժողովրդի ընդհանրական իրավունքի կենսագործման համար:

Հայկական հարցի լուծումն ունի միայն մեկ ուղի. դա խաղաղ միջոցներով, փոխզիջումների ճանապարհով, հետևողական և տևական աշխատանքի շնորհիվ արդյունքի հասնելու ուղին է: Միևնույն ժամանակ հաշվի առնելով, որ ՀՀ, ինչպես նաև հայ ժողովրդի հավաքական ներուժը քաղաքական, տնտեսական կամ ռազմական ոլորտներում զիջում է և դեռ զիջելու է Թուրքիայի ու Ադրբեջանի, ինչպես նաև նրանց քաղաքական հոլովույթի մեջ աքցանված Վրաստանի ընդհանուր ներուժին, ուստի անհրաժեշտ է պայքարի ու դիմակայության ողջ գործընթացը տեղափոխել այլ ոլորտ, ուր Հայաստանը ոչ միայն չի զիջում նրանց, այլև ունի շոշափելի առավելություն:

**Այսինքն՝ անհրաժեշտ է Հայաստանի Հանրապետության և նրա իրավունքները ոտնահարած երկրների միջև եղած հարաբերությունները տեղափոխել միջազգային իրավունքի դաշտ և այդ հարաբերություններում առկա բոլոր խնդիրներին տալ իրավական ձևակերպումներ և լուծումներ:**

Որպես միջազգային հարց և քաղաքական խնդիր՝ Հայկական հարցն ունեցել է մի քանի փուլ: Սկզբնավորվելով որպես Օսմանյան կայսրության հպատակ հայերի անհատական և հավաքական անվտանգության և արժանապատվության հարց, այն աստիճանաբար վերաճել է հայոց պետականության և այդ պետականության ոտնահարված իրավունքների վերահաստատման հարցի:

**Ներկա փուլում Հայկական հարցը միջազգային իրավունքով արդի ՀՀ-ին հատկացված կամ վերապահված տարածքային, նյութական և բարոյական իրավունքների վերականգնումն է:**

Հայկական հարցը ներկա փուլում ունի 3 հիմնական բաղադրիչ՝ տարածքային, նյութական և բարոյական: Հետևաբար, Հայկական հարցը կարելի լուծված է համարել միայն նշյալ 3 բաղադրիչներից բխող խնդիրների լիակատար լուծման՝ այն է՝ ամբողջական կամ մասնակի հատուցման դեպքում:

Հայկական հարցի լուծումը հնարավոր է և այն կարող է ունենալ դրսևորման բազմազան ձևեր: Այսուհանդերձ, Հայկական հարցի լուծումը հնարավոր կլինի, եթե այն խարսխված լինի իրատեսության վրա, այսինքն՝ հաշվի առնի ներկայիս ժողովրդագրական, ռազմական, քաղաքական և տնտեսական իրողությունները: Միևնույն ժամանակ, իրագործելի լինելու համար լուծումը պիտի գործնականում նպաստի ողջ տարածաշրջանում կայուն խաղաղության հաստատմանը, տնտեսության բազմակողմանի զարգացմանը, գործակցական մթնոլորտի ձևավորմանը, ինչպես նաև ծառայի համաշխարհային ուժային կենտրոնների որոշակի շահերի կենսագործմանն ու դրանց տարածաշրջանային հարցերում ավելի լայն ներգրավմանը:

Տարակույս չկա, որ 1920թ. նոյեմբերի 22-ից Վիլսոնի Իրավարար վճռով Հայաստանի Հանրապետության իրավատիրությանն անցած տարածքները (նախկին Օսմանյան կայսրության Վանի, Բիթլիսի, Էրզրումի և Տրապիզոնի վիլայեթների զգալի մասը) առ այսօր իրավականորեն ՀՀ մաս են կազմում: Սակայն կարծել, որ Թուրքիայի Հանրապետությունը դրանք կամավորությամբ կամ միայն միջազգային օրենքների ճնշման տակ կամ առանց ռազմական ճնշման կվերադարձնի իրավատիրոջը, իրատեսական չէ: Ուստի անհրաժեշտ է գտնել Հայաստանի և Թուրքիայի Հանրապետությունների համար երկուստեք ընդունելի, Իրավարար վճռի մաս կազմած երկրների հավանությանն արժանացած, համաշխարհային ուժային կենտրոնների շահերը հաշվի առնող և միջազգային իրավունքով ամրագրելի ձև: Ընդսմին, այդ ձևը պիտի լինի այնպիսին, որ փարատի հայկական կողմի անվտանգության մտահոգությունները, ՀՀ տնտեսությանը հնարավորություն ընձեռի հարաճուն և շարունակաբար զարգանալու, ինչպես նաև երաշխավորի հայկական մշակութային արժեքների պահպանումը: Միևնույն ժամանակ, հարցի լուծումը չպիտի էականորեն ոտնահարի Թուրքիայի շահերը և թուրքական կողմին պետք է հնարավորություն տա զգալու, որ հարցի առաջարկվող լուծումը արժանապատիվ ելք է ստեղծված իրավիճակից:

**Ըստ այդմ, Հայկական հարցի հնարավոր լուծում է խնդրո առարկա տարածքին որոշակի նոր կարգավիճակ շնորհելը տարածքային վարձակալության (*territorial lease*) ճանապարհով. Հայաստանի Հանրապետության *de jure* իրավատիրությունը կհամադրվի Թուրքիայի Հանրապետության *de facto* տնօրինման հետ:**

Այսինքն՝.

**Ա.** Թուրքիայի Հանրապետությունը ՀՀ-ից միջազգային երաշխիքներ պարունակող երկկողմ պայմանագրի հիման վրա և ողջամիտ վարձավճարով[11] վարձակալում է *«Վիլսոնյան Հայաստանը»*: Նշյալ պայմանագիրը և կից համաձայնագրերը ամրագրում են կողմերի իրավունքներն ու պարտականությունները, ինչպես նաև միջազգային կառույցների և շահագրգիռ երկրների մասնակցության ձևն ու ընդգրկվածության ծավալը խնդրո առարկա տարածքում: Վարձավճարի չափը, վճարման ձևն ու պարբերականությունը որոշվում է համապատասխան համաձայնագրով:

**Բ.** Թուրքիայի և Հայաստանի քաղաքացիները, անկախ բնակության վայրից, պահպանում են իրենց քաղաքացիությունը, օգտվում են այդ քաղաքացիության ընձեռած բոլոր իրավունքներից, կատարում են իրենց քաղաքացիական պարտականությունները: Երկու երկրի բոլոր քաղաքացիները ստանում են տարածքում ազատ տեղաշարժի, բեռնափոխադրման, բնակության և տնտեսական գործունեություն ծավալելու ազատ ու անկաշկանդ իրավունք: Տարածքում գործունեություն ծավալած ընկերությունները և անձինք, բացի տեղական հարկերից և վճարներից, համապատասխան օրենսդրությամբ նախատեսված չափով հարկեր են վճարում՝ ըստ գրանցման վայրի և քաղաքացիության:

**Գ.** Երրորդ երկրների տարանցիկ փոխադրումներից (ներառյալ նավթամուղներից և գազամուղներից) ստացած եկամուտները գնում են տեղական ենթակառուցվածքների (ճանապարհներ, երկաթուղիներ, ընդհանուր օգտագործման հանրային տարածքներ) բարեկարգմանը և զարգացմանը:

---

[11] Ողջամիտ կարելի է համարել Թուրքիայի Հանրապետության ՀՆԱ-ի 1%-ին համարժեք վճարը՝ տարեկան 8.6 մլրդ ԱՄՆ դոլար, քանի որ այդ տարածքը կազմում է Թուրքիայի կողմից վերահսկվող տարածքի գրեթե 13%-ը (ավելի քան 100 հազ. քկմ) և այնտեղ ապրում է Թուրքիայի բնակչության ավելի քան 8%-ը (մոտավորապես 5.6 մլն մարդ): Վերոհիշյալի մեջ չեն հաշվարկված նախկին Ռուսական Կայսրության և Հայաստանի Հանրապետության (1878-1918/20թթ.) Կարսի մարզի, Բաթումի մարզի հարավային հատվածի և Սուրմալուի գավառի տարածքները, քանի որ դրա համար առաջարկվում է այլ լուծում:

**Դ.** Տարածքն ապառազմականացվում է, այսինքն՝ տարածքից դուրս են բերվում *Եվրոպայում սովորական սպառազինությունների մասին պայմանագրով (Treaty on Conventional Armed Forces in Europe, CFE, 1990)* առանձնանշած հարձակողական բնույթի 5 զինատեսակները (տանկեր, զրահամեքենաներ, հրանոթներ, մարտական ինքնաթիռներ և հարձակողական ուղղաթիռներ): Տարածքի վերահսկողությունը, անհրաժեշտության դեպքում՝ պաշտպանությունն իրականացնում են համապատասխան լիազորություններով օժտված և ՄԱԿ-ի անվտանգության հովանու ներքո գործող միջազգային խաղաղապահ ուժերը: Համայնքներում կարգուկանոնն ու անվտանգությունն ապահովում են համայնքային ոստիկանությունը, անհրաժեշտության դեպքում՝ ներքին զորքերը: Տարածքում տեղակայվում են միջազգային ռազմական և քաղաքացիական դիտորդական և խորհրդատվական առաքելություններ:

Առանձին քննարկման հարց պիտի դառնա և լուծման դրսևորում պիտի ունենա նախկին Ռուսական Կայսրության և Հայաստանի Հանրապետության (1878-1918/20թթ.) Կարսի մարզի, Բաթումի մարզի հարավային հատվածի և Սուրմալուի գավառի տարածքների կարգավիճակի հարցը: Ներկայումս այդ տարածքները կազմում են Թուրքիայի Հանրապետության Կարսի (9.587 քկմ, 130 հազ. բնակիչ), Արդահանի (5.661 քկմ, 120 հազ. բնակիչ), Արդվինի (7.436 քկմ, 192 հազ. բնակիչ) և Իգդիրի (3.587 քկմ, 180 հազ. բնակիչ) նահանգները: Ընդամենը՝ 26.241 քկմ (Թուրքիայի Հանրապետության տարածքի 3,4%) և 779 հազ. բնակիչ (բնակչության 1,1%) Այս տարածքների վրա, ի տարբերություն Վիլսոնյան Հայաստանի, անմիջականորեն պիտի հաստատվի հայաստանյան ուղղակի ինքնիշխանություն:

**<u>Եզրակացություն</u>.**

- **Հայկական հարցի լուծումն իրատեսական է և իրագործելի:**
- **Հայկական հարցի լուծումն այլընտրանք չունի:**
- **Հայկական հարցը չլուծելու դեպքում Հայաստանի Հանրապետությունը մշտապես կախված է լինելու հարևան երկրների իրավիճակից կամ բարեհաճությունից:**
- **Հայկական հարցի լուծումը հայոց պետականության հզորացման եզակի հնարավորությունն է և հայ ժողովրդի հարատևման միակ ուղին:**

*22 սեպտեմբերի, 2009թ.*

## ԽՁ. **Վուդրո Վիլսոնի Իրավարար վճռի և հարակից հարցերի շուրջ**

Օրերս զարմանքով կարդացի հետևյալ լրատվությունը. *«Խոսելով Վուդրո Վիլսոնի որոշման մասին՝ Անդրանիկ Միհրանյանը նկատել է, որ այդ որոշումն իրավական ուժ չունի, և ԱՄՆ Կոնգրեսը չի ճանաչել Վիլսոնի կողմից նշագրված Հայաստանի սահմանները»*:[1] Եթե լրատվական գործակալությունները ճիշտ են փոխանցել հարգարժան պրոֆեսորի խոսքերը, ուրեմն նա մոլորության մեջ է: Պրն. Միհրանյանն ակնհայտորեն շփոթել է ժամանակագրական առումով իրար շատ մոտ, սակայն երկու տարբեր՝ Հայաստանի մանդատի և Հայաստանի սահմանների հարցերը, հետևաբար, հանգել է սխալ եզրակացության: Հաշվի առնելով հարցի այժմեականությունը՝ նպատակահարմար եմ գտնում համառոտակի անդրադառնալ վերոհիշյալ հարցերին:

**Հայաստանի մանդատի և Հայաստանի սահմանների հարցը**

Փարիզի խաղաղության վեհաժողովն ի վերջո անդրադարձավ Օսմանյան կայսրության հիմնահարցերին Սան Ռեմոյի նիստի ժամանակ՝ 24-27 ապրիլի, 1920թ.: Այս հարցի շրջանակում վեհաժողովը ձեռնամուխ եղավ Հայաստանի հետագա ճակատագրի հստակեցմանը: Ըստ այդմ՝ Դաշնակից ուժերի Գերագույն խորհուրդը *(Supreme Council of the Allied Powers)* 1920թ. ապրիլի 26-ին պաշտոնապես դիմում հղեց ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնին երկու իրարից անկախ խնդրանքով, որ.

ա) Միացյալ Նահանգները ստանձնեն Հայաստանի մանդատը *(the United States to assume a mandate for Armenia)*,

բ) ԱՄՆ նախագահը իրավարարությամբ վճռի Հայաստանի սահմանները *(to arbitrate the frontiers of Armenia)*:[2]

Նշյալ հարցերն էապես տարբեր հարցեր էին, հետևաբար ունեին տարբեր հասցեատերեր և տարբեր իրավասությունների շրջանակներում էին:

Առաջին. մանդատի հարցով Փարիզի վեհաժողովը դիմում էր ԱՄՆ-ին՝ որպես պետության: Նման խնդրանքի իրավական հիմքը Ազգերի լիգայի Կանոնադրության (Covenant) 22-րդ հոդվածն էր, համաձայն որի Ազգերի լիգայի անդամ-պետությունները կարող էին Ազգերի լիգայի անունից իրականացնել խնամակալություն (tutelage): Քանի որ այս հարցը վերաբերում էր միջազգային պայմանագրով

ստանձնելիք պարտավորությանը, ուստի Միացյալ Նահանգների նախագահը, ըստ ԱՄՆ սահմանադրության, պիտի ստանար ԱՄՆ սենատի *«խորհուրդն ու համաձայնությունը»*: Այսու, ԱՄՆ Սենատը, ոչ թե Կոնգրեսը, 1920թ. մայիսի 24-ից հունիսի 1-ը քննության առնելով Հայաստանի մանդատը ստանձնելու հարցը, քվեարկությամբ մերժեց այն: Բուն պատճառն այն էր, որ ԱՄՆ Ազգերի լիգայի անդամ չէր, հետևաբար բացակայում էր այդ կազմակերպության անունից որևէ գործողություն կատարելու իրավական հիմքը:

Երկրորդ. Թուրքիայի հետ Հայաստանի սահմանն իրավարարությամբ որոշելու հարցը, Սենատի լիազորությունների շրջանակում չէր, ուստի ԱՄՆ օրենսդիր մարմինը չէր կարող և երբևէ չի անդրադարձել այդ հարցին: Միջպետական իրավարարությունը (international arbitration) միջազգային իրավունքի հարց է և կառավարվում է բացառապես միջազգային հանրային իրավունքով: Հետևաբար, դեռևս Սենատի կողմից Հայաստանի մանդատի հարցի քննարկումներն սկսելուց 1 շաբաթ առաջ՝ 1920թ. մայիսի 17-ին, հայցադիմումի 2-րդ կետին Վիլսոնը տվել է դրական պատասխան և ստանձնել Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանը որոշող իրավարարի պարտականություններն ու լիազորությունը:

Հարցի հետագա ընթացքն համեմատաբար ավելի հայտնի է: Սան Ռեմոյի (26.04.1920թ.), ինչպես նաև Սևրի (10.08.1920թ.) հայցադիմումների (*compromis*) հիման վրա ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնը 1920թ. նոյեմբերի 22-ին կայացնում է Հայաստանի և Թուրքիայի սահմանների վերաբերյալ իր իրավարար վճիռը (Arbitral Award), որն, ըստ պայմանավորվածության, ուժի մեջ է մտնում <u>*անմիջապես*</u> և <u>*առանց նախապայմանների*</u>: Երկու օր անց՝ նոյեմբերի 24-ին, վճիռը պաշտոնական հեռագրով փոխանցվում է Փարիզ՝ Խաղաղության վեհաժողովի և Ազգերի լիգայի տնօրինմանը: Վճիռն ընդունվում է ի գիտություն, սակայն մնում է առկախ, քանի որ վճռի շահառուն՝ ՀՀ-ն, 1920թ. դեկտեմբերի 2-ին դադարում է գոյություն ունենալուց:

## <u>**Վիլսոնի իրավարար վճռի կարգավիճակի հարցը**</u>

Նախ անհրաժեշտ է նշել, որ ցանկացած իրավարար վճիռ, եթե իրականացվել է առանց ընթացակարգային խախտումների, ոչ միայն վերացականորեն *«իրավական ուժ»* ունի, այլև անվերապահորեն *պարտադիր է կատարման համար (binding document)*: Ավելին, իրավարար վճիռները *«վերջնական են և անբեկանելի» (final and without appeal):*[3] *«Իրավարար վճիռն իրավարարի վերջնական և*

*կարգավորման համար պարտադիր որոշում է» (The arbitral award is the final and binding decision by an arbitrator)*:[4]

Իրավարար վճիռների վերջնական և անբեկանելի լինելը ամրագրված է միջազգային իրավունքի մեջ: Ի մասնավորի՝ *Միջազգային վեճերի խաղաղ կարգավորման Հաագայի կոնվենցիայի (The Hague Convention for the Pacific Settlement of International Disputes)*՝ 1899թ. խմբագրման #54 և 1907թ. խմբագրման #81 հոդվածներում:

Վերոշարադրյալից ակնհայտ է, որ Իրավարար վճիռը՝

ա) ինքնին պարտադիր և անբեկանելի վճիռ է,

բ) կարիք չունի ներպետական որևէ վավերացման կամ հավանության:

Ըստ այդմ, ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնը իր Իրավարար վճռով մեկընդմիշտ որոշել է Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանը, այն ուժի մեջ է առ այսօր և ենթակա չէ բեկանման:

Անդրադառնանք մի կարևոր հարցի ևս. *Իսկ ԱՄՆ իշխանական և հանրային կառույցները երբևէ որևէ դիրքորոշում արտահայտե՞լ են նախագահ Վիլսոնի՝ Հայաստանի և Թուրքիայի սահմանը որոշող իրավարար վճռի նկատմամբ:*

**Գործադիր իշխանության դիրքորոշումը**

ԱՄՆ բարձրագույն գործադիր իշխանությունը ոչ միայն ճանաչել է Վիլսոնի իրավարար վճիռը, այլև վավերացրել է այն և, ըստ այդմ, այն դարձրել ԱՄՆ ներքին օրենսդրության մաս (the law of the land): Նախագահ Վուդրո Վիլսոնը և պետքարտուղար Բեյնբրիջ Քոլբին (Bainbridge Colby) իրենց ստորագրություններով և *Ամերիկայի Միացյալ Նահանգներ պետության Մեծ կնիքով (The Great Seal of the United States)* վավերացրել են իրավարար (Arbitrator) Վիլսոնի վճիռը: Ըստ միջազգային իրավունքի՝ իրավարարի անձնական ստորագրությունը և կնիքը, եթե կա այդպիսին, միանգամայն բավարար են Իրավարար վճռի վավերականության համար: Վուդրո Վիլսոնը կարող էր բավարարվել միայն իր ստորագրությամբ կամ նաև իր՝ նախագահական կնիքով: Այդ դեպքում վճիռը կլիներ անհատական, թեկուզ և նախագահական պարտավորություն: Սակայն Իրավարար վճիռը վավերացված է *պետության մեծ կնիքով* և ամրագրված է այդ կնիքի պահապան (keeper) պետքարտուղարի կողմից: Ըստ այդմ, **Վուդրո Վիլսոնի իրավարար վճիռը Ամերիկայի Միացյալ Նահանգներ պետության անվերապահ պարտավորությունն է**:

**Օրենսդիր իշխանության դիրքորոշումը**

Ինչպես նշել էի վերը, Իրավարար վճիռները ենթակա չեն որևէ օրենսդրական հավանության կամ վավերացման: Հետևաբար, ԱՄՆ Սենատը, որին, ըստ ԱՄՆ սահմանադրության, վերապահված է արտաքին քաղաքականության հարցերին անդրադառնալու իրավունքը, երբևէ ուղղակիորեն քննության չի առել հայ-թուրքական սահմանը որոշող իրավարար վճիռը: Այսուհանդերձ, այլ հարցերի քննարկման ժամանակ ԱՄՆ Սենատը միանշանակորեն, առնվազն մեկ անգամ արտահայտել է իր վերաբերմունքը նշյալ վճռի նկատմամբ:

Երբ 1927թ. հունվարի 18-ին ԱՄՆ Սենատը մերժեց 1923թ. օգոստոսի 6-ի թուրք-ամերիկյան պայմանագրին հավանություն տալ, դա արեց 3 պատճառով: Պատճառներից մեկն այն էր, որ *«Թուրքիան ձախողել է Վիլսոնի վճռի իրականացումը Հայաստանի հանդեպ»*:[5] Այդ առիթով սենատոր Քինգը պաշտոնական հայտարարության մեջ շատ ավելի հստակ է արտահայտվել. *«Ակնհայտորեն Միացյալ Նահանգների կողմից ոչ ճիշտ և անհիմն կլիներ հավատ և հարգանք ընծայել Քեմալի պնդումներին ու հավաստիացումներին, քանի դեռ նա շարունակում է իր վերահսկողության ու ինքնիշխանության տակ պահել Վիլսոնյան Հայաստանը»*:[6] 1927թ. Սենատի քվեարկությունը միանշանակորեն վկայում է, որ Վիլսոնի իրավարար վճիռը 1927թ.-ին վավերական և իրավական ուժ ունեցող վճիռ է եղել: Դրանից հետո իրավական տեսանկյունից ոչինչ չի փոխվել, հետևաբար այն շարունակում է ուժի մեջ մնալ առ այսօր: Առանձնակի շեշտեմ, որ վերոհիշյալ քննարկումն ու քվեարկությունը տխրահռչակ զույգ արձանագրությունների մեջ վկայակոչված *«սահմանը որոշող համապատասխան պայմանագրերից»* տարիներ հետո էին:

Ի դեպ նշեմ, որ առ այսօր թուրք-ամերիկյան հարաբերությունների վերահաստատումը չունի պայմանագրային հիմք և այդտեղ առկա են բազմաթիվ բաց մնացած և խնդրահարույց իրավական հարցեր:

**Հանրային կառույցների դիրքորոշումը**

ԱՄՆ ամենակարևոր հանրային կառույցները կուսակցություններն են: Կուսակցության ծրագրային հիմնադրույթները ամփոփվում են Կուսակցության հիմնածրագրի (Party Platform) մեջ, որը հաստատվում է կուսակցության համագումարի կողմից:

Դեմոկրատական կուսակցությունը (ներկա նախագահ Օբամայի կուսակցությունը) 2 անգամ՝ 1924թ. և 1928թ., պաշտոնական դիրքո-

րոշում է արտահայտել Վիլսոնի իրավարար վճռի նկատմամբ:

Դեմոկրատները 1924թ. իրենց ծրագրի մեջ առանձին տողով՝ որպես հիմնադրույթ-նպատակ, ամրագրել են *«Հայաստանի նկատմամբ նախագահ Վիլսոնի իրավարար վճռի իրականացումը» (Fulfillment of President Wilson's arbitral award respecting Armenia)*:[7] Դեմկուսի 1928թ. ծրագիրը գնում է մի քայլ առաջ և խոսում է ԱՄՆ՝ որպես պետության և Դաշնակից պետությունների *«խոստումների և պարտավորությունների»* մասին. *«Մենք զորակցություն ենք հայտնում Միացյալ Նահանգների անկեղծ ջանքերին, որոնք նպատակամղված են Առաջին համաշխարհային պատերազմի և նրան հաջորդող տարիներին Միացյալ Նահանգների և դաշնակից ուժերի կողմից Հայաստանին և հայ ժողովրդին տված խոստումների և պարտավորությունների իրականացումն ապահովելուն» (We favor the most earnest efforts on the part of the United States to secure the fulfillment of the promises and engagements made during and following the World War by the United States and the allied powers to Armenia & her people)*:[8] Հայաստանի Հանրապետությանը տված Միացյալ Նահանգների միակ անկատար «խոստումն ու պարտավորությունը» եղել և մնում է նախագահ Վիլսոնի իրավարար վճիռը Հայաստանի և Թուրքիայի սահմանի վերաբերյալ:

Անդրանիկ Միհրանյան երևույթը թողնենք մի կողմ: Նա պարզապես առիթ էր՝ այս ամենը պարզաբանելու համար: Անդրադառնանք ամենակարևոր հարցին, որն ինձ համար անպատասխան է մնում.

**Արդյո՞ք աշխարհի վրա կա մի այլ ժողովուրդ, հայերից բացի, որ վերոհիշյալ և դրանից տասնապատիկ ավելի իրավական հիմքեր ունենալուց հետո, հոժարակամ, մինչևիսկ խանդավառությամբ ու ծնծղաներով գնա ուրանալու սեփական Հայրենիքը և դրսից էլ շախ տվողներ բերի:**

*Հղումներ և ծանոթագրություն*

1. www.panarmenian.net/news/eng/?nid=36602&date=2009-09-18 – 18 սեպ 2009:
2. Full Report of the Committee upon the Arbitration of the Boundary between Turkey and Armenia, App I, No 10. (The National Archives, Washington, 760J.6715-760J.90C/7).
3. Schlochauer H.-S. Arbitration, In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of the Public International Law, Amsterdam, 1992, v. I, p. 226.
4. A Dictionary of Arbitration and its Terms (ed. Seide K.), NY, 1970, p. 32.
5. Lausanne Treaty is Defeated. Davenport Democrat, 19 Jan 1927, p. 1.
6. The New York Times, 19 Jan 1927, p. 1.
7. National Party Platforms (1840-1968) (compl. by Porter K., Johnson D.), Urbana-Chicago-London, 1972, p. 277.
8. Նույն տեղում:

*22 սեպտեմբերի, 2009թ.*

## ԽԷ. **Որոգայթ բառաց**

Պարզապես ապշել կարելի է, թե ինչ նրբությամբ են հյուսած որոգայթները հայ-թուրքական չարաբաստիկ զույգ արձանագրությունների մեջ: Անդրադառնանք դրանցից հերթականին:

Շատերն անշուշտ ուշադրություն են դարձրել, որ նշյալ արձանագրությունների մեջ խորհրդարանական վավերացումների ժամկետների անհստակությունը կողմերին հնարավորություն է տալիս ձգձգելու արձանագրություններն ի գործ դնելը: Միանգամայն հիմնավորված մտահոգություններ: Առավել ևս, երբ Թուրքիայի իշխանական շրջանները բազմիցս հայտարարել են, որ արձանագրությունները կյանքի չեն կոչվի *«առանց Լեռնային Ղարաբաղի հակամարտության մեջ էական առաջընթացի»*:

Առաջընթացը, բնականաբար, *á la Turquie*:

Սակայն արձանագրությունների գործադրումը ձգձգելու համար բուն արձանագրություններում առկա է ևս 2 հնարավորություն: Արձանագրությունների նախավերջին պարբերությունները հստակ ամրագրում են, որ դրանք ուժի մեջ կմտնեն *«վավերաթղթերի փոխանակումից հետո» (following the exchange of instruments of ratification)*: Ընդհանրապես, միջազգային, որ է միջպետական փաստաթղթերի վավերացումն ունի հետևյալ գործընթացը: Խորհրդարանական հավանությունից *(parliamentary approval)* հետո (մեզ մոտ, չգիտես ինչու, սահմանադրության մեջ այն կոչվում է վավերացում) ըստ կարգի, արձանագրությունները պետք է վավերացվեն պետությունների ղեկավարների կողմից, ապա փոխանակվեն վավերաթղթերը: Միջազգային իրավունքը չի նախատեսում ժամկետային որևէ սահմանափակում խորհրդարանական հավանությանն (վավերացմանն) արժանացած փաստաթղթերի՝ պետության ղեկավարների կողմից վավերացման և վավերաթղթերի փոխանակման հարցում: Եւ քանի որ այդ գործընթացը, թեկուզև ընդհանուր բառերով, հստակեցված չէ նաև արձանագրությունների մեջ, ապա ստացվում է այնպես, որ արձանագրությունների մեջ առկա է նշյալ փաստաթղթերի գործադրումը ձգձգելու եռաստիճան հնարավորություն՝ խորհրդարանական հավանություն (վավերացում), նախագահների վավերացում, վավերաթղթերի փոխանակում:

Օրինակ, տխրահռչակ Մոսկվայի պայմանագիրը (16.03.1921թ.) նախատեսում է վավերաթղթերի փոխանակում *«հնարավորինս*

*արագ»*:[1] Երիցս տխրահռչակ Կարսի պայմանագիրը՝ *«հնարավորինս կարճ ժամանակահատվածում»*:[2]

Իհարկե, հնարավոր է, որ թուրքերը չձգձգեն արձանագրությունների խորհրդարանական վավերացումն ու վավերաթղթերի փոխանակումը: Ի վերջո, նրանք միանշանակորեն հասնում են իրենց հիմնական նպատակին՝ Հայաստանի Հանրապետության կողմից *«երկու երկրների միջև գոյություն ունեցող սահմանի հաստատմանը»*: Մնացյալը՝ ցեղասպանության հարցը, Ղարաբաղի հարցը և այլն, զուտ *«բոնուս»* է նրանց համար: Կստանան՝ լավ, հիմա չեն ստանա՝ նորից լավ: Միևնույն է, սրանից հետո հայոց պետության սանձերն իրենց ձեռքում կպահեն:

Եթե ոմանք այսօր պատրաստ են այդքան բարձր, չարդարացված բարձր գին վճարել Թուրքիայի կողմից Հայաստանի ապաշրջափակման համար, ապա պետք է գոնե այնպես անեն, որ վճարված ապրանքի առաքումը լինի ժամանակին և առաջ չգան թաքնված ծախսեր:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Soviet Treaty Series, v. I (1917-28) (compl. & ed. by Shapiro L.), Washington, 1950, p. 100.
2. Նույն տեղում, էջ 137:


*24 սեպտեմբերի, 2009թ.*

## ԽԸ. **Արձանագրությունների մեջ առկա հերթական վտանգները**

Հասարակության դատին ներկայացված չարաբաստիկ զույգ արձանագրությունների քննարկման շրջանակում հաճախ կարելի է լսել բուն արձանագրությունների հետ բնավ կապ չունեցող հուզախառն դատողություններ՝ 21-րդ դարին վայել բաց սահմանների, հարևանների հետ հավերժ թշնամի չմնալու, ՀՀ տնտեսության իբր զարգացման հնարավորությունների և նման բառախեղդ արված մտազեղումների շուրջ: Սրանք հանգիստ խղճով կարելի է որակել որպես քննարկումները ձախողելու փորձ և հարցը նենգափոխելու ձգտում:

Իրականում քննարկումները վերաբերում են <u>բացառապես</u> սեղանին դրված <u>երկու փաստաթղթի</u>՝ *Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին* և *Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև հարաբերությունների զարգացման մասին* արձանագրություններին: Միմիա՛յն: Հետևաբար, դրանք պետք է բառ առ բառ քննության առարկա դառնան և այժմվանից մատնանշվեն դրանց մեջ առկա վտանգները: Առավել ևս, որ միջազգային պայմանագրերի իրավակիրառական դաշտը շատ ավելի լայն է, քան կարող է թվալ առաջին հայացքից:

Միջազգային պայմանագրերը (եթե արձանագրություններն ընդունում ենք որպես այդպիսին) առաջին հերթին միջպետական իրավական փաստաթղթեր են: Ըստ այդմ, պայմանագիրն ուժի մեջ մտնելուց հետո, համաձայն ՀՀ միջազգային պայմանագրերի մասին օրենքի 5-րդ հոդվածի 1-ին կետի, դառնում է ՀՀ *«իրավական համակարգի բաղկացուցիչ մասը»* և *«պայմանագրի նորմերը Հայաստանի Հանրապետության տարածքում գործում են անմիջականորեն»*:

Հետևաբար, որոշ վայ քաղաքական գործիչների փորձերը՝ քողարկելու արձանագրությունների մեջ առկա բազմաթիվ խիստ մտահոգիչ կետեր՝ այն է՝ *«դրանք ընդհանուր բառեր են»* կամ *«բոլոր պայմանագրերում էլ նման բաներ կան»* բառակույտով, մեղմ ասած, խելամիտ չեն: Արձանագրություններն իրավունքներ ու պարտավորություններ են ստեղծում ոչ միայն վերացական կողմերի համար, այլև, որպես տվյալ երկրների *«իրավական համակարգի բաղկացուցիչ մաս»*, նաև այդ երկրների անհատ քաղաքացիների համար:

Խոսենք փաստերով: Անդրադառնամ ընդամենը երկու կետի:

Դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության երրորդ կետը վերահաստատում է *«իրենց երկկողմ և <u>միջազգային հարաբերություններում</u>»* (ուշադրություն դարձրեք ոչ միայն երկկողմ, այլև միջազգային) *«այլ պետությունների ներքին գործերին չմիջամտելու, տարածքային ամբողջականության և սահմանների անխախտելիության սկզբունքները հարգելու և հարգանքն ապահովելու»* կողմերի պարտավորությունը: Եւ այս պարտավորությունը դառնում է ՀՀ *«իրավական համակարգի բաղկացուցիչ մասը»*: Այսինքն՝ արձանագրությունն ուժի մեջ մտնելուց հետո ՀՀ որևէ քաղաքացի, առանց ՀՀ *«իրավական համակարգի բաղկացուցիչ մասը»* խախտելու, չի կարող խոսել Լեռնային Ղարաբաղի լիակատար անկախության, Վիլսոնյան Հայաստանի նկատմամբ մեր տիտղոսի և իրավունքի, Թուրքիայի վերահսկողության տակ գտնվող տարածքում հայկական հուշարձանների և նման բաների մասին: Ես չեմ պնդում, որ մեզ բոլորիս անպայմանորեն բռնելու են դրանց մասին խոսելու համար, բայցևայնպես, պարտավորությունը պարտավորություն է, հետո ի՞նչ գիտենք՝ ինչ կլինի: Վանեցիները, որ թուրքերին ավելի լավ են ճանաչում, քան ղարաբաղցիները, մի լավ խոսք ունեն. *«զգուշութիւն լավ պան ի»*:

Քննության առարկա արձանագրության յոթերորդ կետը շեշտում է կողմերի պարտավորությունը ձեռնպահ մնալ *«բարիդրացիական հարաբերություններին անհարիր քաղաքականություն վարելուց»*: Հիմա հարցեր են առաջանում. արդյո՞ք հանրապետության նախագահը ապրիլի 24-ին ուղերձով դիմելու է հայ ժողովրդին, արդյո՞ք նշելու է Օսմանյան կայսրության, նույնն է թե, Թուրքիայի կողմից հայերի նկատմամբ իրականացված ցեղասպանության մասին: Ինչպե՞ս է դա համատեղելու *«բարիդրացիական հարաբերություններին անհարիր քաղաքականություն վարելուց»* ձեռնպահ մնալու պարտավորության հետ: Որո՞նք են լինելու ՀՀ դատախազի քայլերը: Ի՞նչ ենք պատասխանելու թուրքերին, եթե այդ փաստի առիթով պաշտոնական բողոք ներկայացնեն: Ներողություն ենք խնդրելո՞ւ, ասելո՞ւ ենք, որ էլ չենք անի: Ի՞նչ է լինելու Թուրքիայի պատասխանը՝ փակելո՞ւ է սահմանը, հրահանգելո՞ւ է իր գործարարներին դադարեցնել բոլոր գործարքները Հայաստանի հետ:

Եթե հայ-թուրքական, այսպես կոչված, սահմանի բացման համար հիմք են հանդիսանում ամրագրված որոշակի պարտավորություն-

ներ, ապա պետք է նկատի ունենալ, որ երբ կողմերից մեկը հավատարիմ չէ իր պարտավորություններից թեկուզև մեկին, ապա մյուս կողմը ևս, ինքնըստինքյան, օրինապես ազատվում է իր պարտավորությունների կատարումից: Այսինքն՝ այս արձանագրությունների վավերացման արդյունքում մենք Թուրքիայի անօրինական շրջափակման փոխարեն կարող ենք ունենալ ավելի դաժան օրինական շրջափակում:

*25 սեպտեմբերի, 2009թ.*

## ԽԹ. **Խորհրդանշական ամսաթվերը դիվանագիտության մեջ**

Խորհրդանիշները միշտ էլ կարևոր դեր են ունեցել մարդկության կյանքի տարբեր ոլորտներում: Ի վերջո, Արարատ լեռը մեզ համար միայն մի քանի միլիոն տոննա սառույց, քար ու փոշի չէ: Խորհրդանիշները, ինչպես նաև հատուկ խորհուրդ ունեցող ամսաթվերը, գրեթե սրբագործված են ազգային հոգեբանության մեջ:

2002թ. հոկտեմբերի 29-ին Օտտավայում՝ Կանադայի ազգային պատկերասրահի դահլիճում, տեղի էր ունենում մեզ համար կարևոր մի իրադարձություն: Այդ օրը Կանադայի Ժառանգության նախարար (Մշակույթի նախարարի մեր համարժեքը) տկն. Շիլա Քոփսի և ՀՀ դեսպանի համատեղ հրավերով Օտտավայում հավատարմագրված դեսպաններն ու դիվանագետները հավաքվել էին՝ դիտելու «Արարատ» ֆիլմը: Օրվա հերոսներն էին ֆիլմի հեղինակ Ատոմ Էգոյանը, գլխավոր դերակատարներից՝ Արսինե Խանջյանը և իհարկե ֆիլմի պրոդյուսեր Ռոբերտ Լանթոշը:

Մթնոլորտում մի յուրատեսակ, անըմբռնելի բան կար, որովհետև այդ օրը պարզապես օրացուցային հերթական օր չէր, այդ օրը Թուրքիայի Հանրապետության օրն էր: Հրավիրյալներն «Արարատ» ֆիլմի ցուցադրմանն էին ժամանում Թուրքիայի դեսպանության պաշտոնական ընդունելությունից հետո: Ֆիլմի ավարտից հետո, տեսածից ցնցված ու իրենց անտեղյակությունից զարմացած, մի քանի դեսպան երբ ինձ մոտեցան և հարցրին. – Արդյոք հոկտեմբերի 29-ի օրը հատո՞ւկ էր ընտրված, որպեսզի հակադրության վրա զգացողություններն ավելի սուր լինեն, – ես պատասխանեցի. – Իհարկե ոչ, – և մենք բոլորս լայն ժպտացինք:

Այնպես որ, եթե այսօր մեկն ինձ հարցնի. – Արդյո՞ք չարամիտ դիտավորություն չէ կամ մեր վերքի վրա աղ ցանելու թուրքական ցանկություն, երբ մեր իրավունքներն ուրանալու արձանագրությունները մեզ ստորագրել են տալիս Կարսի պայմանագրի ստորագրման նախօրյակին, – ապա ես կպատասխանեմ. – Իհարկե՝ ոչ:

***Արա Պապյան***
ՀՀ արտակարգ և լիազոր դեսպան Կանադայում, 2000-2006թթ.

*28 սեպտեմբերի, 2009թ.*

## Ծ. Հայ-թուրքական արձանագրությունների վերլուծություն

*/ելույթ ՀՀ Ազգային ժողովի լսումների ժամանակ/*

Քննության առարկա.
*Արձանագրություն Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին:*
*Արձանագրություն Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև հարաբերությունների զարգացման մասին:*

Հարգարժա՛ն ներկաներ,

Ընթացող քննարկումները ճիշտ ուղով տանելու համար անհրաժեշտ է հստակեցնել մի քանի հանգամանք.

**Հանգամանք 1.** Քննարկումները չեն վերաբերում հայ-թուրքական հարաբերություններին ընդհանրապես: Քննարկումները վերաբերում են բացառապես սեղանին դրված երկու նախաստորագրված փաստաթղթի՝ ՀՀ և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին և ՀՀ և Թուրքիայի Հանրապետության միջև հարաբերությունների զարգացման մասին արձանագրություններին: Միմիայն: Հետևաբար, ցանկացած հուզախառն հայտարարություն՝ 21-րդ դարին վայել բաց սահմանների, հարևանների հետ հավերժական թշնամիներ չմնալու, ՀՀ տնտեսության նոր հնարավորությունների և նման բառախեղդ արված մտազեղումների շուրջ, հաստատապես կապ չունեն մեր այսօրվա քննարկումների հետ և հանգիստ խղճով կարելի է այն որակել որպես հարցը նենգափոխելու միջոցով քննարկումները ձախողելու փորձ:

**Հանգամանք 2**. Նշյալ արձանագրություններն առաջին հերթին միջպետական իրավական փաստաթղթեր են, որով կողմերը մտադիր են փոխադարձաբար ստանձնել որոշակի իրավունքներ ու պարտավորություններ: Հետևաբար, արձանագրությունները կարող են գործել միմիայն որպես ամբողջական փաստաթղթեր: Այսինքն՝, եթե այդ փաստաթղթերում առկա է գեթ մեկ մերժելի կետ, ուրեմն մերժելի է փաստաթուղթն ամբողջությամբ: Արձանագրությունները ճաշացանկ չեն, որ ընտրենք միայն մեր քիմքին հաճելի խորտիկները:

**Հանգամանք 3**. Նշյալ երկու արձանագրություններում առկա են խաչաձև հղումներ, ինչպես նաև երկու արձանագրությունները նույն

օրն ուժի մեջ մտնելու նախապայման: Հետևաբար, դրանք երկմիասնության մեջ են, այսինքն, եթե արձանագրություններից թեկուզև մեկում առկա է անընդունելի գեթ մի կետ, ուրեմն անընդունելի են երկու արձանագրություններն էլ ամբողջությամբ: Չի կարող լինել *«ընդհանուր առմամբ ընդունելի են, բայց կան մասնավոր մտահոգություններ»* և նման ձևակերպումներ: Միջազգային փաստաթուղթը կուսակցական որոշում չէ:

**<u>Հանգամանք 4</u>**. Նշյալ արձանագրությունները նախաստորագրված են: Այսինքն՝ դրանց տեքստերը, համաձայն Պայմանագրային իրավունքի մասին Վիեննայի կոնվենցիայի 10-րդ հոդվածի, վերջնականապես հաստատված են (authenticated) և ենթակա չեն փոփոխության (authentic and definitive): Հետևաբար, արձանագրությունները կարելի է կա՛մ ընդունել, կա՛մ մերժել՝ ամբողջությամբ: Եկե՛ք իզուր ժամանակ չվատնենք զանազան առաջարկների վրա, և թող յուրաքանչյուրս իր հերթին հստակ արտահայտի իր դիրքորոշումը <u>ներկայացված</u> փաստաթղթերի վերաբերյալ:

Ես միանգամից ասեմ հետևյալը. հաշվի առնելով, որ ներկայացված արձանագրությունները՝

- խախտում են ՀՀ *de jure* տարածքային ամբողջականությունը, ոտնահարում են միջազգային իրավունքի մի շարք հիմնադրույթներ, հակասում են ՀՀ սահմանադրությանը և գործող օրենսդրությանը,
- սակարկության առարկա են դարձնում ՀՀ և հայ ժողովրդի շահերը, իրավունքներն ու ազգային մեծագույն ողբերգությունը, խիստ կասկածելի, միայն ենթադրյալ տնտեսական շահի համար մեզ զրկում են ապագայում մեր զարգացման հնարավոր միջոցներից և վտանգի են ենթարկում ՀՀ բուն իսկ գոյությունը,
- չեն ապահովում բանակցությունների նպատակ հայտարարված <u>լիարժեք</u> դիվանագիտական հարաբերությունների հաստատումն ու սահմանի <u>երաշխավորված</u> բացումն ու բաց մնալը, **<u>ուստի ես կտրականապես դեմ եմ այս արձանագրությունները ստորագրելուն</u>**:

Եւ քանի որ վերջին 30 օրվա ընթացքում քննարկվող հարցի շուրջ գրել և հրապարակել եմ մոտ 30 հաղորդում և հոդված, հաշվի առնելով ժամանակի սղությունը՝ միայն մեկական պարբերությամբ կանդրադառնամ արձանագրությունները մերժելու հիմքերին:

Կան նախաստորագրված արձանագրությունները մերժելու քաղաքական, տնտեսական, բարոյական, իրավական և այլ հիմքեր:

Հաշվի առնելով, որ իրավական առումը հարցի համեմատաբար քիչ շոշափվող կողմն է՝ այստեղ ես կթվեմ արձանագրությունները մերժելու ընդամենը մի քանի իրավական հիմք.

1. ***Արձանագրությունները չեն կարող ստորագրվել, որովհետև հակասում են միջազգային օրենքին***: Կողմերը չեն կարող երկկողմ համաձայնությամբ բեկանել կամ փոփոխության ենթարկել, այսպես կոչված, հայ-թուրքական սահմանի վերաբերյալ բազմակողմ իրավական փաստաթուղթը, այն է՝ Վուդրո Վիլսոնի իրավարար վճիռը: Իրավարար վճիռները վերջնական են և ենթակա չեն բեկանման: Կողմերը չեն կարող սովետա-թուրքական սահմանի հայաստանյան հատվածը *«հաստատել»* որպես երկու երկրների սահման՝ հիմք ընդունելով միջազգային իրավունքի տեսանկյունից անվավեր (void), այսպես կոչված, *«համապատասխան պայմանագրեր»*:
2. ***Արձանագրությունները չեն կարող ստորագրվել, որովհետև հակասում են ՀՀ սահմանադրությանը***: Հայաստանը չի կարող ստանձնել պարտավորություններ, որոնք սահմանափակում են նրա միջազգային գործունեությունը և հակասության մեջ են մտնում սահմանադրորեն ամրագրված պարտավորությանը, այն է. *«1915 թվականին Օսմանյան Թուրքիայում և Արևմտյան Հայաստանում Հայոց ցեղասպանության միջազգային ճանաչման գործին»* սատար կանգնելուն:
3. ***Արձանագրությունները չեն կարող ստորագրվել, քանզի դրանց մեջ առկա են մի շարք իրավական թերություններ***: Մասնավորապես, միջազգային իրավունքի՝ *«ժողովուրդների իրավահավասարության և ինքնորոշման»* առաջնային սկզբունքը, որն ամրագրված է ՄԱԿ-ի կանոնադրության 1-ին հոդվածի 2-րդ կետում, անտեսված է, փոխարենը, չգիտես՝ ինչի հիման վրա, որպես սկզբունքներ են հայտարարվել *«այլ պետությունների ներքին գործերին չմիջամտելու»* և *«սահմանների անձեռնմխե-լիության»* մասին դատողությունները: Նման սկզբունքներ, ընդ-հանրապես, կրկնո՛ւմ եմ, ընդհանրապես չկան ՄԱԿ-ի կանոնա-դրության մեջ: Դրանք բացակայում են նաև միջազգային իրա-վունքի սկզբունքներն ամրագրած *«Պետությունների միջև՝ ըստ ՄԱԿ-ի կանոնադրության, բարեկամական հարաբերությունների և համագործակցության միջազգային իրավունքի սկզբունքների մասին 1970թ. հռչակագրում»*: Ինչ վերաբերում է Դիվանագի-

տական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության մեջ հիշատակված *«տարածքային ամբողջականության»* սկզբունքին, ապա անհրաժեշտ է նշել, որ նման <u>բացարձակ և անվերապահ սկզբունք չկա</u> միջազգային իրավունքի մեջ: ՄԱԿ-ի կանոնադրությունը (հոդված 2, կետ 4) կոչ է անում ՄԱԿ անդամ երկրներին ձեռնպահ մնալ *«տարածքային ամբողջականության կամ քաղաքական անկախության դեմ ուղղված ուժի սպառնալիքից կամ կիրառումից»*: Այսինքն՝ խոսվում է արտաքին ուժի բացառման մասին և բնավ կապ չունի առանձնացող հանրության կողմից իր ինքնորոշման իրավունքի կենսագործման, այսինքն՝ սեփական տարածքով անջատվելու հետ:

4. ***Արձանագրությունները չեն կարող ստորագրվել, որովհետև նշյալ փաստաթղթերում կամայական մոտեցում է ցուցաբերված միջազգային փաստաթղթերի ընտրության, ինչպես նաև դրանցում առկա դրույթների վկայակոչման հարցում***: Այսպես, Դիվանագիտական հարաբերություններ հաստատելու արձանագրության մեջ վկայակոչված է Հելսինկիի եզրափակիչ ակտը: Հասկանալի չէ, թե ինչո՞ւ: Այդ ակտն ունի խիստ սահմանափակ իրավական ընդգրկում. այն վերաբերում է Երկրորդ աշխարհամարտից հետո, Երկրորդ աշխարհամարտի հետևանքով Եվրոպայում առաջացած իրավիճակին և սահմաններին:[12] Այսպես կոչված, հայ-թուրքական սահմանը Երկրորդ աշխարհամարտից հետո չի առաջացել, հետևաբար, այն դուրս է վերոհիշյալ փաստաթղթի և՛ ընդգրկման, և՛ լիազորությունների շրջանակից: Բացի այդ, Ակտն ընդհանրապես պայմանագիր չէ, հետևաբար այն չունի կատարման համար պարտադիր իրավական ուժ:[13]

5. Այսուհանդերձ, քանի որ Հելսինկիի եզրափակիչ ակտի որոշ սկզբունքներ վկայակոչված են Դիվանագիտական հարաբերությունների հաստատման արձանագրության մեջ, անդրադառնանք Եզրափակիչ ակտի սկզբունքներին: Նշյալ փաստաթղթի առաջին գլուխը՝ որպես մասնակից պետությունների միջև հարաբերությունների <u>ուղենշային սկզբունքներ</u> *(Principles Guiding Relations between Participating States)*, շեշտում եմ, ոչ թե միջազգային իրավունքի սկզբունքներ, այլ միայն միջպետական

[12] Massimo Coccia, Helsinki Conference and Final Act, Encyclopedia of Public International Law, v. 2, Amsterdam, 1995, p. 693.

[13] Նույն տեղում, էջ 694-695:

վարքականոնային սկզբունքներ, առանձնանշում է 10 սկզբունք: Այս 10 սկզբունքներից նշյալ արձանագրության մեջ, չգիտես ինչո՞ւ, հիշատակված են միայն երեքը.

ա) սահմանների անձեռնմխելիությունը,

բ) պետությունների տարածքային ամբողջականությունը և

գ) ներքին գործերին չմիջամտելը:

Դուրս են թողնված, հիմա ուշադիր հետևե՛ք, հետևյալները.

դ) ինքնիշխան իրավահավասարությունը,

ե) ուժի սպառնալիքից կամ կիրառումից ձեռնպահ մնալը,

զ) վեճերի խաղաղ կարգավորումը,

է) մարդու իրավունքների և հիմնարար ազատությունների՝ ներառյալ մտքի, խղճի, կրոնի կամ դավանանքի նկատմամբ հարգանքը,

ը) պետությունների միջև համագործակցությունը,

թ) բարի կամեցողությամբ միջազգային պարտավորությունների կատարումը, և վերջապես,

ժ) <u>ժողովուրդների հավասար իրավունքներն ու ինքնորոշումը</u>:

***Հելսինկիի եզրափակիչ ակտի այս 10 ուղենշային սկզբունքներից 7-ը ձեռնտու են մեզ և բոլորն էլ դուրս են թողնված, 3-ը ձեռնտու են թուրքերին, բոլորն էլ ներառված են***: Միայն վերոհիշյալ բացթողումը բավական է խոտանելու ողջ բանակցային գործընթացը:

6. ***Արձանագրությունները չեն կարող ստորագրվել, որովհետև հակասում են ՀՀ ազգային անվտանգության ռազմավարությանը***: Նշյալ ռազմավարության մեջ, որն օրենքի կարգավիճակ ունի, միանշանակորեն ամրագրված է *«Հայաստանը հանդես է գալիս Թուրքիայի հետ առանց նախապայմանների դիվանագիտական հարաբերությունների հաստատման օգտին»*: Իսկ առկա արձանագրությունների մեջ պարտավորությունների տեսքով ներառված է առնվազն մեկ տասնյակ անընդունելի նախապայման: Պնդումը, թե նախապայմաններ չկան, ոչ միայն չի համապատասխանում իրականությանը, այլև վիրավորական է:

7. ***Արձանագրությունները չեն կարող ստորագրվել, քանզի եթե դրանք ընդունում ենք որպես միջազգային պայմանագրեր, պատրաստվել և նախաստորագրվել են Միջազգային պայմանագրերի մասին ՀՀ օրենքի կոպիտ խախտումներով***: Ըստ նշյալ օրենքի 8-րդ հոդվածի 1-ին մասի՝ *«միջազգային պայմանագրի կնքումը …. նախատեսված անհրաժեշտ <u>ընթացակարգերի</u>*

*ամբողջությունն է»*: Հիշյալ օրենքով սահմանված ընթացակարգը պահանջում է, որ մինչ պայմանագրի նախաստորագրումը, պայմանագիրը պետք է անցնի պաշտոնական նախաձեռնման, ծանուցման, ներպետական համաձայնեցման, այն է՝ շահագրգիռ գերատեսչությունների կողմից վերամշակման և լրամշակման փուլերի միջով: Որքան ինձ հայտնի է, օրենքի այս պահանջը չի պահպանվել կամ պահպանվել է մասամբ և խիստ թերություններով:

Հարգարժա՛ն ներկաներ,

Ասում են՝ ժամանակին Նադիր շահը մի կարգ էր սահմանել. ամեն քաղաք մտնելիս քաղաքի կայազորը պարտավոր էր թնդանոթային համազարկով դիմավորել նրան: Երբ մի քաղաքում նրան համազարկով չեն դիմավորում, նա կանչում է կայազորի պետին և հարցնում պատճառը: Զինվորականը պատասխանում է. – Թագավորն ապրած կենա, հազար ու մի պատճառ կա, բայց առաջինն այն է, որ թնդանոթ չունենք: – Այդ մի պատճառն էլ բավական է, – լինում է շահի պատասխանը:

Հիմա մերն է: Կարելի է ևս մի քանի տասնյակ քաղաքական, բարոյական, տնտեսական, ապահովական, մշակութային, ռազմական և այլ բնույթի պատճառներ բերել, թե ինչո՞ւ պետք է հրաժարվել խնդրո առարկա արձանագրություններից և սկսել նոր գործընթաց: Սակայն կարծում եմ, որ վերոհիշյալ պատճառներից յուրաքանչյուրը բավական է՝ չստորագրելու ներկայացված արձանագրությունները:

Չստորագրելու պարագայում հնարավոր է, որ խնդիրներ ունենանք, սակայն դրանք կլինեն կարճաժամկետ և, ամենակարևորը, անցողիկ: Ստորագրելու պարագայում մենք դարձյալ խնդիրներ կունենանք, սակայն դրանք կլինեն մնայուն և ճակատագրական:

Շնորհակալություն:

*01 հոկտեմբերի, 2009թ.*

## ԾԱ. ԲԱՑ ՆԱՄԱԿ
## Հայաստանի Հանրապետության արտաքին գործերի նախարար պրն. Էդ. Նալբանդյանին

*Մեծարգո՛ պարոն նախարար,*

Ս.թ. հոկտեմբերի 1-ին Հայաստան-Թուրքիա չարաբաստիկ զույգ արձանագրություններին նվիրված խորհրդարանական լսումների ավարտին, նախապես Ձեզ ուղղված հարցերին ի պատասխան Դուք հայտարարել եք հետևյալը. *«Վիլսոնի որոշումն իրավական ուժ չունի, քանի որ այն չի վավերացվել ԱՄՆ Սենատի կողմից»*: (Նախապես ներողություն եմ խնդրում, եթե Ձեր բառերն ինձ փոխանցելիս որոշ նրբերանգային փոփոխություններ կրած լինեն: Սակայն, կարծում եմ, որ միտքը ճիշտ է փոխանցվել): Ցավում եմ, որ այդ պահին արդեն դահլիճում չէի: Ես չէի կարող կանխատեսել, որ Ձեր պատասխանները կարող են տեղափոխվել օրվա վերջում և նախնական պայմանավորվածության պատճառով ստիպված էի հեռանալ ԱԺ դահլիճից:

Սակայն չկա չարիք առանց բարիքի: Հիմա ստիպված եմ բաց նամակով պատասխանել Ձեր պնդմանը: Վայել չէ նախարարի խոսքը թողնել անպատասխան: Դուք բառացիորեն կրկնել եք Ձեր համերկրացի Անդրանիկ Միհրանյանի՝ 2 շաբաթ առաջ Երևանում արտասանած միտքը: Այդ առիթով ես պատիվ ունեցել եմ արդեն պարզաբանումներ տալու, ուստի կկրկնեմ իմ իսկ փաստարկները:

Դուք, ինչպես և պրն. Միհրանյանը, ակնհայտորեն շփոթել եք ժամանակագրական առումով իրար շատ մոտ, սակայն 2 տարբեր՝ Հայաստանի մանդատի և Հայաստանի սահմանների վերաբերյալ հարցերը, հետևաբար, երկուսդ էլ հանգել եք սխալ եզրակացության: Հաշվի առնելով խնդրի այժմեականությունը՝ նպատակահարմար եմ գտնում համառոտակի անդրադառնալ վերոհիշյալ հարցերին:

***<u>Հայաստանի մանդատի և Հայաստանի սահմանների հարցը</u>*.**

Փարիզի խաղաղության վեհաժողովն ի վերջո անդրադարձավ Օսմանյան կայսրության հիմնահարցերին Սան Ռեմոյի նիստի ժամանակ՝ 1920թ. ապրիլի 24-27: Այս հարցի շրջանակում Վեհաժողովը ձեռնամուխ եղավ Հայաստանի հետագա ճակատագրի հստակեցմանը: Ըստ այդմ, Դաշնակից ուժերի Գերագույն խորհուրդը (Supreme Council of the Allied Powers) 1920թ. ապրիլի 26-ին պաշտոնապես դիմում հղեց ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնին երկու՝ իրարից անկախ խնդրանքով, որ.

ա) Միացյալ Նահանգներն ստանձնեն Հայաստանի մանդատը *(the United States to assume a mandate for Armenia)*,

բ) ԱՄՆ նախագահին իրավարարությամբ վճռի Հայաստանի սահմանները *(to arbitrate the frontiers of Armenia)*:[1]

Նշյալ հարցերն իրարից էապես տարբեր էին, հետևաբար ունեին և տարբեր հասցեատերեր ու գտնվում էին տարբեր իրավասությունների շրջանակներում:

Առաջին՝ մանդատի հարցով Փարիզի վեհաժողովը դիմում էր ԱՄՆ-ին՝ որպես պետության: Նման խնդրանքի իրավական հիմքը Ազգերի լիգայի Կանոնադրության (Covenant) 22-րդ հոդվածն էր, համաձայն որի՝ *Ազգերի լիգայի անդամ-պետությունները կարող էին Ազգերի լիգայի անունից իրականացնել խնամակալություն (tutelage)*: Քանի որ այս հարցը վերաբերում էր միջազգային պայմանագրով ստանձնելիք պարտավորությանը, ուստի ԱՄՆ նախագահը, ըստ ԱՄՆ սահմանադրության, պիտի ստանար ԱՄՆ սենատի *«խորհուրդն ու համաձայնությունը»*: Այսու, ԱՄՆ Սենատը, 1920թ. մայիսի 24-ից հունիսի 1-ը քննության առնելով Հայաստանի մանդատը ստանձնելու հարցը, քվեարկությամբ մերժեց այն: Բուն պատճառն այն էր, որ ԱՄՆ չէր հանդիսանում Ազգերի լիգայի անդամ, հետևաբար բացակայում էր այդ կազմակերպության անունից որևէ գործողություն կատարելու համար իրավական հիմքը:

Երկրորդ՝ Թուրքիայի հետ Հայաստանի սահմանն իրավարարությամբ որոշելու հարցը չի եղել Սենատի լիազորությունների շրջանակում, ուստի ԱՄՆ օրենսդիր մարմինը չէր կարող և երբևէ չի անդրադարձել այդ հարցին: Միջպետական իրավարարությունը *(international arbitration)* միջազգային իրավունքի հարց է և կառավարվում է բացառապես միջազգային հանրային իրավունքով: Հետևաբար, հայցադիմումի 2-րդ կետին, դեռևս Սենատի կողմից Հայաստանի մանդատի հարցի քննարկումներն սկսելուց 1 շաբաթ առաջ՝ 1920թ. մայիսի 17-ին, նախագահ Վիլսոնը տվել է դրական պատասխան և ստանձնել Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանը որոշող իրավարարի լիազորությունն ու պարտականությունները: Այսինքն՝ ***Սևրի պայմանագիրը կլիներ, թե՝ ոչ, իրավարարության օրինական հայցադիմումը կար, հետևաբար օրինական վճիռը կայացվելու էր***:

Հարցի հետագա ընթացքը համեմատաբար ավելի հայտնի է: Սան Ռեմոյի (26.04.1920թ.), ինչպես նաև Սևրի (10.08.1920թ.) հայցադիմումների (compromis) հիման վրա, ԱՄՆ նախագահ Վիլսոնը 1920թ.

նոյեմբերի 22-ին կայացնում է Հայաստանի և Թուրքիայի սահմանների վերաբերյալ իր իրավարար վճիռը (Arbitral Award), որն, ըստ պայմանավորվածության, ուժի մեջ է մտնում <u>*անմիջապես*</u> և <u>*առանց նախապայմանների*</u>: Երկու օր հետո՝ նոյեմբերի 24-ին, վճիռը պաշտոնական հեռագրով փոխանցվում է Փարիզ՝ Խաղաղության վեհաժողովի և Ազգերի լիգայի տնօրինմանը: Վճիռն ընդունվում է ի գիտություն, սակայն մնում է առկախ, քանի որ վճռի շահառուն՝ Հայաստանի Հանրապետությունը, 1920թ. դեկտեմբերի 2-ին դադարում է գոյություն ունենալուց:

<u>**Վիլսոնի իրավարար վճռի կարգավիճակի հարցը.**</u>

Նախ անհրաժեշտ է նշել, որ ցանկացած իրավարար վճիռ, եթե իրականացվել է առանց ընթացակարգային խախտումների, ոչ միայն վերացականորեն *«իրավական ուժ»* ունի, այլև անվերապահորեն պարտադիր է կատարման համար *(binding document)*: Ավելին, իրավարար վճիռները *«վերջնական են և անբեկանելի» (final and without appeal)*:[2] *«Իրավարար վճիռն իրավարարի վերջնական և կատարման համար պարտադիր որոշում է» (The arbitral award is the final and binding decision by an arbitrator)*:[3]

Իրավարար վճիռների վերջնական և անբեկանելի լինելը ամրագրված է (codified) միջազգային իրավունքի մեջ: Ի մասնավորի՝ *Միջազգային վեճերի խաղաղ կարգավորման Հաագայի կոնվենցիայի (The Hague Convention for the Pacific Settlement of International Disputes)*՝ 1899թ. խմբագրման #54 և 1907թ. խմբագրման #81 հոդվածներում:

Վերոշարադրյալից ակնհայտ է, որ Իրավարար վճիռը՝

ա) ինքնին պարտադիր և անբեկանելի վճիռ է,

բ) կարիք չունի ներպետական որևէ վավերացման կամ հավանության:

Ըստ այդմ, ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնն իր Իրավարար վճռով մեկընդմիշտ որոշել է Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանը, այն <u>***ուժի մեջ է առ այսօր և ենթակա չէ բեկանման***</u>:

Անդրադառնանք մի կարևոր հարցի ևս. *Իսկ ԱՄՆ իշխանական և հանրային կառույցները երբևէ որևէ դիրքորոշում արտահայտե՞լ են նախագահ Վիլսոնի՝ Հայաստանի և Թուրքիայի սահմանը որոշող իրավարար վճռի նկատմամբ:*

<u>**ԱՄՆ գործադիր իշխանության դիրքորոշումը.**</u>

ԱՄՆ բարձրագույն գործադիր իշխանությունը ոչ միայն ճանաչել է Վիլսոնի իրավարար վճիռը, այլև վավերացրել է այն և, ըստ այդմ, այն դարձրել ***ԱՄՆ ներքին օրենսդրության մաս (the law of the***

***land)***: ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնը և պետքարտուղար Բեյնբրիջ Քոլբին (Bainbridge Colby) իրենց ստորագրություններով և *Ամերիկայի Միացյալ Նահանգներ պետության Մեծ կնիքով (The Great Seal of the United States)* վավերացրել են իրավարար (Arbitrator) Վիլսոնի վճիռը: Ըստ միջազգային իրավունքի՝ իրավարարի անձնական ստորագրությունը և կնիքը, եթե կա այդպիսին, միանգամայն բավարար են Իրավարար վճռի վավերականության համար: Վիլսոնը կարող էր բավարարվել միայն իր ստորագրությամբ կամ նաև իր նախագահական կնիքով: Այդ դեպքում վճիռը կլիներ անհատական, թեկուզ և նախագահական, պարտավորություն: Սակայն Իրավարար վճիռը վավերացված է *պետության մեծ կնիքով* և ամրագրված է այդ կնիքի պահապան (keeper) պետքարտուղարի կողմից: Ըստ այդմ, **Վիլսոնի իրավարար վճիռը Միացյալ Նահանգներ պետության անվերապահ պարտավորությունն է**:

**<u>ԱՄՆ օրենսդիր իշխանության դիրքորոշումը</u>.**

Ինչպես նշել էի վերը, Իրավարար վճիռները ենթակա չեն որևէ օրենսդրական հավանության կամ վավերացման: Հետևաբար, ԱՄՆ Սենատը, որին՝ ըստ ԱՄՆ սահմանադրության, վերապահված է արտաքին քաղաքականության հարցերին անդրադառնալու իրավունքը, երբևէ ուղղակիորեն քննության չի առել հայ-թուրքական սահմանը որոշող իրավարար վճիռը: Այսուհանդերձ, այլ հարցերի քննարկման ժամանակ ԱՄՆ Սենատը միանշանակորեն, առնվազն մեկ անգամ, արտահայտել է իր վերաբերմունքը նշյալ վճռի նկատմամբ:

Երբ 1927թ. հունվարի 18-ին ԱՄՆ Սենատը մերժեց 1923թ. օգոստոսի 6-ի թուրք-ամերիկյան պայմանագրին հավանություն տալ, դա արեց երեք պատճառով: Պատճառներից մեկն այն էր, որ *«Թուրքիան ձախողել է Վիլսոնի վճռի իրականացումը Հայաստանի հանդեպ» (failed to provide for the fulfillment of the Wilson award to Armenia)*:[4] Այդ առիթով սենատոր Ուիլյամ Քինգը պաշտոնական հայտարարության մեջ շատ ավելի հստակ է արտահայտվել. *«Ակնհայտորեն Միացյալ Նահանգների կողմից ոչ ճիշտ և անհիմն կլիներ հավատ և հարգանք ընծայել Քեմալի պնդումներին ու հավաստիացումներին, քանի դեռ նա շարունակում է իր վերահսկողության ու ինքնիշխանության տակ պահել Վիլսոնյան Հայաստանը» (Obviously it would be unfair and unreasonable for the United States to recognize and respect the claims and professions of Kemal so long as he persist in holding control and sovereignty over <u>Wilson Armenia</u>)*:[5] 1927թ. Սենատի քվեարկությունը

միանշանակորեն վկայում է, որ Վիլսոնի իրավարար վճիռը 1927թ. վավերական և իրավական ուժ ունեցող վճիռ է եղել: Դրանից հետո իրավական տեսանկյունից ոչինչ չի փոխվել, հետևաբար, այն շարունակում է ուժի մեջ մնալ առ այսօր: Առանձնակի շեշտեմ, որ վերոհիշյալ քննարկումն ու քվեարկությունը տխրահռչակ զույգ արձանագրությունների մեջ վկայակոչված *«սահմանը որոշող համապատասխան պայմանագրերից»* տարիներ հետո էին:

Ի դեպ, առ այսօր թուրք-ամերիկյան հարաբերությունների վերահաստատումը չունի պայմանագրային հիմք և այդտեղ առկա են բազմաթիվ բաց մնացած և խնդրահարույց իրավական հարցեր:

**<u>ԱՄՆ հանրային կառույցների դիրքորոշումը</u>.**

Միացյալ Նահանգներում ամենակարևոր հանրային կառույցները կուսակցություններն են: Կուսակցությունների ծրագրային հիմնադրույթները ամփոփվում են Կուսակցությունների հիմնածրագրի (Party Platform) մեջ, որոնք հաստատվում են կուսակցությունների համագումարների կողմից: Միացյալ Նահանգների Դեմոկրատական կուսակցությունը (ներկա նախագահ Օբամայի կուսակցությունը) 2 անգամ՝ 1924թ. և 1928թ., պաշտոնական դիրքորոշում է արտահայտել Վիլսոնի իրավարար վճռի նկատմամբ:

Դեմոկրատական կուսակցությունը 1924թ. իր ծրագրի մեջ առանձին տողով՝ որպես հիմնադրույթ-նպատակ, ամրագրել է *«Հայաստանի նկատմամբ նախագահ Վիլսոնի իրավարար վճռի իրականացումը» (Fulfillment of President Wilson's arbitral award respecting Armenia)*:[6] Դեմկուսի 1928թ. ծրագիրը մի քայլ առաջ է գնում և խոսում է ԱՄՆ՝ որպես պետության և Դաշնակից պետությունների *«խոստումների և պարտավորությունների»* մասին. *«Մենք զորակցություն ենք հայտնում Միացյալ Նահանգների անկեղծ ջանքերին, որոնք նպատակամղված են Առաջին համաշխարհային պատերազմի և դրան հաջորդող տարիներին Միացյալ Նահանգների և դաշնակից ուժերի կողմից Հայաստանին և հայ ժողովրդին տված խոստումների և պարտավորությունների իրականացումն ապահովելուն»*:[6] Հայաստանին ԱՄՆ տված միակ անկատար *«խոստումն ու պարտավորությունը»* եղել և մնում է Վիլսոնի իրավարար վճիռը Հայաստանի և Թուրքիայի սահմանի վերաբերյալ:

*Մեծարգո՛ պարոն նախարար,*

Դուք նաև ասել եք, որ *«Հայաստանը ԽՍՀՄ պայմանագրերի իրավահաջորդն է»*: (Դարձյալ ներողություն, եթե նրբերանգային անճշտություններ կան):

Դուք ճիշտ չեք: ԽՍՀՄ իրավահաջորդը Ռուսաստանի Դաշնությունն է: Նայե՛ք ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի կազմին: Միջազգային ինքնությունը (international personality) չի կարող տրոհվել: Երբ, օրինակ, Հնդկաստանը տրոհվեց Հնդկաստանի և Պակիստանի, ինքնությունը չբաժանվեց: Այն ժառանգեց Հնդկաստանը, իսկ Պակիստանը ստիպված էր քայլ առ քայլ կերտել իր միջազգային ինքնությունը, այսինքն ստորագրել պայմանագրեր, հաստատել հարաբերություններ: Երբ Պակիստանից բաժանվեց Բանգլադեշը, Պակիստանի ինքնությունը չտրոհվեց և Բանգլադեշը սկսեց սեփական միջազգային ինքնության կերտումը:

ԽՍՀՄ տրոհման պարագայում էլ ինքնության անվերապահ ժառանգորդը ՌԴ-ն էր, բայց ոչ երբեք՝ Հայաստանը: Նորաստեղծ Հայաստանը, ինչպես նաև մյուս նորանկախ երկրները, ԱՊՀ ստեղծելու մասին համաձայնագրի 12-րդ հոդվածով հռչակել են սոսկ հետևյալը. *«Բարձր պայմանավորվող կողմերը երաշխավորում են նախկին ՍՍՀ Միության պայմանագրերից և համաձայնագրերից բխող միջազգային պարտավորությունների կատարումը»*:[7] Այսինքն՝ նորաստեղծ պետությունները ստանձնել են որոշակի վարքականոնային պարտավորություններ, սակայն սա չի նշանակում, որ սկսել են մաս կազմել ԽՍՀՄ կնքած պայմանագրերին: Հակառակ պարագայում, ՀՀ կարիք չէր ունենա մեկ առ մեկ կամ միանալու բազմաթիվ միջազգային կոնվենցիաների, պայմանագրերի, արձանագրությունների, որոնց վաղուց ի վեր մաս էր հանդիսանում ԽՍՀՄ-ը: Օրինակ, ՀՀ-ն այս օրերին հաճախ հիշատակվող Դիվանագիտական հարաբերությունների մասին Վիեննայի կոնվենցիային (1961թ.) միացել է 1993թ. հուլիսի 23-ին, այն դեպքում, երբ ԽՍՀՄ-ը (ներկայումս՝ ՌԴ) նշյալ կոնվենցիային մաս է կազմել 1964թ. փետրվարի 11-ից:

ԽՍՀՄ պարագայում գործել է *tabula rasa*-ի (մաքուր տախտակի) սկզբունքը: Այլ կերպ չէր էլ կարող լինել, քանի որ միջազգային իրավունքի տեսանկյունից Հարավային Կովկասի երկրները եղել են բռնատիրված երկրներ, որովհետև երբ 1920/21թ. բոլշևիկյան Ռուսաստանը վերանվաճեց Ադրբեջանը, Հայաստանը և Վրաստանը, դրանք արդեն ճանաչված երկրներ էին: Ոչ միայն Հայաստանի Հանրապետությունը ԽՍՀՄ պայմանագրերի իրավահաջորդը չէ, *(«երկրի համար ընդհանրապես իրավական հիմք չի կարող առաջացնել որևէ պայմանագիր կամ պարտավորություն, եթե փվյալ երկրի պաշտոնյաները բացահայտորեն գործել են օտար ուժի*

*հրահանգով»*[8]), այլև Սովետական Ռուսաստանի (1920-1922թթ.), ապաև ԽՍՀՄ բռնատիրության (1922-91թթ.) տարիներին ՀՀ տարածքի որևէ փոփոխություն օրինական չի եղել. *«բռնապիրման ժամանակ երկրի պարածքի որևէ մասի զիջում հեփևանազուրկ է»*:[9]

*Ընդունեցե՛ք, պարո՛ն նախարար, հարգանացս խորին հավասփիքը:*

***Հ.Գ.*** Պարո՛ն նախարար, եթե համաձայն չեք իմ փաստարկներին, խնդրում եմ ինձ հրավիրել ուղիղ եթերում բանավեճի: Ձեր լռությունը, այսինքն՝ բանավեճի հրավերի բացակայությունը կդիտարկվի որպես իմ փաստարկներին համաձայն լինելու նշան:


*Հղումներ և ծանոթագրություն*

1. Full Report of the Committee upon the Arbitration of the Boundary between Turkey and Armenia, App I, No 10. (The National Archives, Washington, 760J.6715-760J.90C/7).
2. Schlochauer H.-S. Arbitration, In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of the Public International Law, Amsterdam, 1992, v. I, p. 226.
3. A Dictionary of Arbitration and its Terms (ed. by Seide K.), NY, 1970, p. 32.
4. Lausanne Treaty is Defeated. Davenport Democrat, 19 Jan 1927, p. 1.
5. The New York Times, 19 Jan 1927, p. 1.
6. National Party Platforms (1840-1968) (compl. by Porter K., Johnson D.), Urbana-Chicago-London, 1972, p. 277.
7. ՀՀ ԱԳՆ պաշտոնական տեղեկագիր, 20.12.2004թ., #3(11), էջ 13:
8. Brownlie I. Principles of Public International Law. Oxford, 5th ed., 2001, p. 449.
9. Fiedler W. Continuity. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of Public International Law. Amsterdam, 1992, v. I, p. 808.


*02 հոկտեմբերի, 2009թ.*

## ԾԲ. ՏԵՂԵԿԱՆՔ
## Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին և Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև հարաբերությունների զարգացման մասին արձանագրությունների իրավական կարգավիճակի մասին

*Միջազգային պայմանագրերի մասին ՀՀ օրենքի* (22.02.2007թ.) 2-րդ հոդվածի 2-րդ կետը սահմանում է հետևյալը. *«Սույն օրենքով Հայաստանի Հանրապետության միջազգային պայմանագիր է համարվում ցանկացած գրավոր համաձայնություն, որ ձևակերպվել է պայմանագրի, համաձայնագրի, կոնվենցիայի, հուշագրի, արձանագրության տեսքով կամ որևէ այլ անվանումով փաստաթղթի տեսքով, կամ որն արտահայտվել է նոտաների կամ նամակների փոխանակումով»*:

Ըստ իս, այս ձևակերպումը շատ ավելի լայն մեկնաբանություն է տվել *պայմանագիր* հասկացությանը, քան առկա է միջազգային հանրային իրավունքի մեջ (տե՛ս Պայմանագրերի իրավունքի մասին Վիեննայի կոնվենցիա, հոդված 2): Այսուհանդերձ, քանի որ վերոհիշյալ սահմանումը տարբերվում է, սակայն չի հակասում միջազգային իրավունքին, ապա, առաջնորդվելով դրանով, քննության առարկա դարձնենք Հայաստանի և Թուրքիայի միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին ու Հայաստանի և Թուրքիայի միջև հարաբերությունների զարգացման մասին արձանագրությունները:

Ըստ *Միջազգային պայմանագրերի մասին ՀՀ օրենքի* վերոհիշյալ սահմանման՝ միջպետական արձանագրությունը միջազգային պայմանագիր է: Ուստի արձանագրության կնքումը ***«անհրաժեշտ ընթացակարգերի ամբողջություն է»*** (հոդված 8, կետ 1): Այսինքն՝ արձանագրության կնքումը կանոնակարգված հաջորդական գործողությունների շղթա է և պահանջում է օրենքով նախատեսված քայլերի ***անշեղ ու ամբողջական կատարում***:

Հայաստանի Հանրապետության վկայակոչյալ օրենքը նախատեսում է պայմանագրերի՝ տվյալ դեպքում խնդրո առարկա արձանագրությունների, նախապատրաստման հետևյալ փուլերը.

*Փուլ 1.* ***Միջազգային պայմանագիր կնքելու նախաձեռնություն.***

Հայ-թուրքական արձանագրություններ կնքելու գործընթաց սկզբնավորելու համար որպես առաջին քայլ անհրաժեշտ էր *<u>նախագահի գրավոր հանձնարարականը</u>* (հոդված 8, կետ 5):

*Փուլ 2.* ***Միջազգային պայմանագիր կնքելու նախաձեռնության ընթացք տալ.***

Արտգործնախարարությունը՝ որպես իրավասու նախարարություն, պարտավոր էր կազմել հայ-թուրքական արձանագրություններ կնքելու նպատակահարմարության մասին *<u>տեղեկանք և արձանագրությունների նախագծերը</u>* (հոդված 9, կետ 1) և ներկայացնել նախագահին (հոդված 9, կետ 2-1):

*Փուլ 3.* ***Միջազգային պայմանագրի կնքման ընթացակարգն սկսել.***

Նախագահը, ստանալով արձանագրությունների նախագծերը, պետք է ԱԳՆ հասցեագրված պատասխան նամակով արտահայտեր իր դիրքորոշումը: Դրական դիրքորոշման դեպքում, նախագահի գրավոր համաձայնությունն ստանալուց հետո՝ 10-օրյա ժամկետում, ԱԳՆ-ն պարտավոր էր սկսել արձանագրությունների նախագծերի ներպետական համաձայնեցման ընթացակարգը: Այսինքն՝ պետք է արձանագրությունների կնքման մասին գրավոր ծանուցեր *<u>բոլոր շահագրգիռ գերատեսչություններին</u>* և արձանագրությունների նախագծերն ուղարկեր նրանց (հոդված 10, կետ 2):

*Փուլ 4.* ***Միջազգային պայմանագրի նախագծի համաձայնեցում և միջազգային պայմանագրի վերաբերյալ առաջարկությունների և դիտողությունների ներկայացում.***

Շահագրգիռ գերատեսչությունները, իսկ մեր պարագայում դա բոլոր նախարարություններն են և ևս երկու տասնյակ այլ կառույցներ, *<u>ծանուցումն ու արձանագրությունների նախագծերն</u>* ստանալուց հետո՝ առավելագույնը 15 օրվա ընթացքում, պարտավոր էին իրենց իրավասության ոլորտին առնչվող հարցերի մասով գրավոր առաջարկությունները և դիտողությունները ներկայացնել իրավասու գերատեսչությանը՝ ԱԳՆ-ին (հոդված 12, կետ 1 և կետ 2):

*Փուլ 5.* ***Միջազգային պայմանագրի նախագծի վերաբերյալ կարծիքների ամփոփում.***

Իրավասու գերատեսչությունը, տվյալ դեպքում ԱԳՆ, շահագրգիռ գերատեսչությունների կարծիքները ստանալուց հետո պետք է

լրամշակեր կամ վերամշակեր միջազգային պայմանագրի նախագիծը (հոդված 14, կետ 1-1):

*Փուլ 6.* ***Միջազգային պայմանագրի տեքստի փոխհամաձայնեցում մյուս կողմի հետ.***

ՀՀ վկայակոչյալ օրենքը նախատեսում է, որ ՀՀ միջազգային պայմանագրի տեքստը մյուս կողմի հետ փոխհամաձայնեցվում է նախաստորագրման կամ օրենքով նախատեսված այլ ձևով (հոդված 18, կետ 1): Մեր դեպքում ընտրված է *նախաստորագրումը*: Անհրաժեշտ է շեշտել, որ միջազգային պայմանագիրը ՀՀ կողմից կարող է նախաստորագրվել միայն այդ պայմանագրի նախագծի մշակման և *նախաստորագրման համար սահմանված ընթացակարգն ավարտելուց հետո* (հոդված 18, կետ 2):

***Եզրակացություն.***

Հաշվի առնելով, որ քննության առարկա արձանագրությունները չեն անցել սույն օրենքով նախատեսվող ***«անհրաժեշտ ընթացակարգերի ամբողջությունը»***, ինչպես նաև այդ արձանագրությունների նախաստորագրումն իրականացվել է առանց նախաստորագրման համար օրենքով սահմանված ընթացակարգի, ուստի Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին և Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև հարաբերությունների զարգացման մասին ***արձանագրությունների նախաստորագրումն անվավեր է, հետևաբար արձանագրությունները ենթակա չեն ստորագրման: Ստորագրելը կլինի անօրինական քայլ***:

*05 հոկտեմբերի, 2009թ.*

## ԾԳ. Հնչեցրե՛ք զանգերը, սա մեր վերջին Սարդարապատն է

Մեզ ժամեր են բաժանում Հայոց ցեղասպանություն կոչված մեծագույն ողբերգության նախավերջին արարի ավարտից: Այսօր ևս մի քայլ են անելու՝ Հայոց ցեղասպանության հետևանքներն օրինականացնելու մոտ մեկդարյա ճանապարհին:

Այսօր Թուրքիան, պատժի փոխարեն՝ որպես պարգևավճար ստանալու է հազարամյա մեր Հայրենիքը, միջազգային իրավունքի անբեկանելի վճռով առ այսօր մեզ պատկանող, սակայն մեզնից խլված Հայրենիքը:

Այսօր խրախուսելու են ջարդարարին, այսօր մեր Հայրենիքը որպես ընծա են փաթեթավորելու: Փաթեթավորելու են մերոնց իսկ ձեռքերով, մեղա, տե՛ր Աստված, մեզանից շատերի մասնակցությամբ, մեզանից շատերի լուռ ու անտարբեր հայացքների ներքո:

Այն, ինչ այսօր պիտի տեղի ունենա Ցյուրիխում, նշանակում է ցեղասպանության խրախուսում, ուղղակի հրահանգ ուժեղներին՝ կոտորելու և զավթելու:

Հիշո՞ւմ եք ռուս դեսպանի խոսքերը Աբդուլ Համիդին.

– Կոտորեցե՛ք, Ձերդ գերազանցություն, կոտորեցե՛ք:

Մեր արյունը ջուր դարձավ: Տեսնես ստորագրելու պահին թանաքն արյուն կդառնա՞:

Սակայն սա դեռ վերջը չէ: Եթե ոմանց համար սա ներկայացում է, այն էլ՝ տրագիկոմեդիա, գուցեև ֆարս, մեզ համար լինելիության և արժանապատիվ գոյության հարց է:

Դեռ մի արար ևս կա, վերջին ու վճռորոշ արարը, մեր վերջին ճակատամարտը: Մենք այդպիսին ենք: Մենք միշտ հաղթում ենք վերջում: Մենք զիջում ենք անառիկ ամրոցները, սակայն վերջին պահին թշնամուն ջախջախում ենք բաց դաշտում: Այդպես եղավ Սարդարապատում: Այդպես է լինելու նաև հիմա:

Ազգային ժողովի դահլիճը մեր նոր Սարդարապատն է: Մենք նահանջելու տեղ չունենք: Մենք պարտվելու իրավունք չունենք:

**Հնչեցրե՛ք զանգերը: Սա մեր վերջին Սարդարապատն է, հաղթանակի վերջին հույսը:**

*ժ. $14^{30}$, 10 հոկտեմբերի, 2009թ.*

## ԾԴ. Արձանագրությունների առաջին պտուղները

Հայ-թուրքական արձանագրությունները պաշտպանողները մերժում էին բոլոր այն զգուշացումները, որ դրանք բացասաբար կանդրադառնան Հայոց ցեղասպանության ճանաչման գործընթացի վրա: Ավելին, ես, ի թիվս այլոց, կանխատեսում էի, որ բացասական հետևանքներ կլինեն նաև այն երկրներում, որտեղ Ցեղասպանությունն արդեն ճանաչված է: Ցավոք սրտի ես ճիշտ էի:

Խոսենք օրինակներով:

Կանադան, այն սակավ երկրներից է, որը և՛ խորհրդարանի (2002թ., 2004թ.), և՛ կառավարության մակարդակներով (2006թ.) ճանաչել է Հայոց ցեղասպանությունը: Հետևաբար, 2004թ.-ից հետո իրեն հարգող և ոչ մի լրատվամիջոց չէր տպագրում կամ հեռարձակում Հայոց ցեղասպանությունը ժխտող որևէ հոդված կամ հաղորդում: Ավելին, երբ 2006թ. փետրվարին, ի պատասխան Embassy magazine ազդեցիկ հանդեսում իմ հրաժեշտի հարցազրույցում Հայոց ցեղասպանության հիշատակման, Թուրքիայի և Ադրբեջանի դեսպանները բողոքեցին, հանդեսի խմբագրությունն առանց մեր միջամտության գրեց, որ *«ցեղասպանության եղելությունը չի կարող վիճարկվել, քանի որ այն կասկածի չի ենթարկվում»*: Հստակ և միանշանակ:

Տեսնենք՝ ի՞նչ ունենք հիմա: Արձանագրությունները ստորագրելուց ընդամենը 10 օր հետո նույն հիշատակածս Embassy magazine-ը (21.10.2009թ.) Գույնե Դյերի (Gwynne Dyer) հեղինակությամբ տպագրում է հոդված, որտեղ նշում է. *«հայասփանցի հայերը գործարքի մեջ են մփել» (<u>the Armenians back home have made a deal</u>), «սփեղծելու համափեղ պափմական հանձնաժողով՝ որոշելու համար, թե ինչ է իրականում փեղի ունեցել 1915թ.-ին» (<u>create a joint historical commission to determine what actually happened in 1915</u>)*: Հեղինակն իր հոդվածը միանշանակորեն եզրափակում է, որ այն, ինչ տեղի է ունեցել հայերի հետ *«ցեղասպանություն չէր» (<u>It was not a genocide</u>)*: Եւ սա Հայոց ցեղասպանությունը ճանաչած Կանադայում: Մենք, փողոցի լեզվով ասած, գցել ենք Կանադային և նա մեզ չի ներելու: Գցողներին չեն ներում, անգամ միջպետական հարաբերություններում:

Հիմա հերթական կանխատեսում: Այն բանից հետո, երբ արձանագրությունները կվավերացվեն [աստված չանի], այսինքն մենք օրենքի ուժով կասկածի կենթարկենք Հայոց ցեղասպանությունը

(խնդրեմ ձեր առարկությունները պահել կանադական դատարանների համար) կանադական դատարանները կլցվեն *«պապիվն ու արժանապապվությունն արապավորող»* նախկինում կատարված հայտարարությունների դեմ հայցադիմումներով: Չէ՞ որ մենք թուրքական պետությանը, հետևաբար նաև Կանադայի քաղաքացի թուրքերի անունը, արատավորել ենք՝ նրանց զրպարտել ենք դեռևս ապացուցման կարիք ունեցող և ենթահանձնաժողովի կողմից քննվելիք հանցանքի (ցեղասպանության) մեջ:

Քանի որ Կանադայի դատական համակարգը բարոյական վնասի դիմաց նախատեսում է դրամական հատուցում, ուստի առաջարկում եմ ՀՀ հաջորդ տարվա բյուջեի մեջ առանձնացնել մի քանի հարյուր միլիոն դոլար (ոչ պակաս)՝ բարոյական վնասների դիմաց հատուցումներ կատարելու համար: Ի վերջո հայցադիմումների վերջնահաշիվը մեզ են դեմ տալու:

*21 հոկտեմբերի, 2009թ.*

## ԾԵ. Հայ-թուրքական արձանագրությունների պտուղները

Ոմանք չեն ուզում հասկանալ մի պարզ ճշմարտություն. Ինչքան քաղաքագիտությունն է վերացական, նույնքան էլ քաղաքականությունն է կոնկրետ: Այսինքն, գործում է աստվածաշնչյան պարզ ճշմարտությունը՝ ծառը պտուղից է իմացվում: Քաղաքականությունը կոնկրետ դրսևորումներով է ի հայտ գալիս: Հետևաբար, բոլոր այն, այսպես կոչված, մասնավոր դեպքերը, որ ի հայտ են բերում Հայոց ցեղասպանության ճանաչման գործընթացի դժվարացումը, ամենակարևոր, ես կասեի նաև ամենամտահոգիչ, փաստերն են: Իհարկե սենատորներ Մենենդեզը (Menendez) և Էնսայնը (Ensign) միշտ էլ կարող են Ցեղասպանության ճանաչման բանաձև առաջադրել ԱՄՆ սենատում: Փա՛ռք աստծո, մենք դեռ դա արգելելու ուժը չունենք: Նաև նրանց ազնվությունը մեզ վերագրելու իրավունքը չունենք:

Դեռ նոր էր հրապարակվել իմ հաղորդումը կանադական Embassy magazine-ի Հայոց ցեղասպանության նկատմամբ փոփոխված քաղաքականության մասին, երբ Շվեդիայից ստացա իմ խոսքերն հաստատող մեկ այլ վկայություն: Աշխարհի մյուս ծայրից իմ բազմամյա գաղափարական ընկերն ինձ էր տրամադրում իր վերջին օրերի դառը փորձը: Մետրո (Metro) ազդեցիկ թերթի գլխավոր խմբագիր Փեր Գյուննեն (Per Gunne) հրաժարվում է տպագրել որևէ հոդված որտեղ հիշատակում կլինի Հայոց ցեղասպանության մասին, քանի որ այլևս վստահ չէ՝ եղել է արդյոք ցեղասպանություն, թե ոչ (are not sure that there was a genocide): Նույն փոփոխված քաղաքականությունն է որդեգրել շվեդական մեկ այլ օրաթերթ *«Սվենսկա Դագբլադեթ» (Svenska Dagbladet),* որը հանձին իր հայտնի լրագրող Բիտտե Համմարգրենի (Bitte Hammargren) այժմ գործածում է միայն «հայկական ջարդեր» (Armenian massacres) լրագրողական ձևակերպումը և ոչ թե իրավական «ցեղասպանություն» եզրը: Սրանք պարզապես բառեր չեն, սրանք քաղաքականության դրսևորում են: Քաղաքականություն, որն էապես փոփոխվել է վերջին օրերին, փոփոխվել է տխրահռչակ զույգ արձանագրությունների ստորագրումից հետո:

*22 հոկտեմբերի, 2009թ.*

## ԾՁ. ԲԱՑ ՆԱՄԱԿ
## Թուրքիայի Հանրապետության արտաքին գործերի նախարար պրն. Աիմեդ Դավութօղլուին

Մեծարգո՛ պարոն նախարար,

Հետաքրքրությամբ կարդացի ս.թ. հոկտեմբերի 21-ին Թուրքիայի Հանրապետության խորհրդարանում Ձեր արտասանած ելույթի տեքստը: Տպավորությունները խառն էին: Սակայն հիմնական զգացումն այն էր, որ Դուք ուզում եք ցանկալին ներկայացնել իրականի տեղ:

Նախ զամանալի էր, որ *«բռնազավթման» (occupation)* մասին է խոսում մի երկրի արտգործնախարար, որն արդեն ավելի քան երեք տասնամյակ բռնազավթված է պահում Կիպրոսի տարածքի 37%-ը, և գրեթե ինը տասնամյակ իմ հայրենիքի՝ Հայաստանի Հանրապետության, տարածքի երեք-քառորդը: Ուզում եմ շեշտել, որ խոսքը չի գնում ինչ-որ վերացական *«հայկական հողերի»* մասին, այլ միայն միջազգային օրինական փաստաթղթով, այն է ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի Իրավարար վճռով (22 նոյեմբերի, 1920թ.) Հայաստանի Հանրապետությանը հատկացված տարածքի: Իրավարար վճռին ես կանդրադառնամ ավելի ուշ, պարզապես առայժմ ուզում եմ նշել, որ համաձայն միջազգային իրավունքի իրավարար վճիռները *«վերջնական են և անբեկանելի»*:[1]

Մեծարգո՛ պարոն նախարար,

Մեկնաբանելով Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության հինգերորդ պարբերությունը՝[2] Դուք հետևություն եք անում, որ Հայաստանի Հանրապետությունը ճանաչում է *«գոյություն ունեցող սահմանը»* ըստ Մոսկվայի (16.03.1921թ.) և Կարսի (13.10.1921թ.) պայմանագրերի:

Խիստ կամայական մեկնաբանություն: Փաստաթուղթը չի վկայակոչում վերոհիշյալ, այսպես ասած, պայմանագրերը: Արձանագրությունը հիշատակում է միայն *«միջազգային իրավունքի համապատասխան պայմանագրերը» (the relevant treaties of international law)*: Այսինքն, հստակ է, որ վկայակոչյալ պայմանագրերը պետք է կառավարվեն միջազգային իրավունքով *(governed by international law)*, այսինքն՝ գոնե չհակասեն միջազգային իրավունքին: Միևնույն ժամա-

նակ, արձանագրությունը, վկայակոչելով *«միջազգային իրավունքի համապատասխան պայմանագրերը» (the relevant treaties of international law)* և ոչ թե պարզապես *«միջազգային պայմանագրերը» (international treaties)*, տալիս է ավելի ընդգրկուն սահմանում (inclusive definition), այսինքն ներառում է *«միջազգային իրավունքի գործիքներն» (the instruments of international law)* ընդհանրապես, անկախ անվանումից: Ինչպես ներկա դեպքում ունենք *«արձանագրություն»* կոչվող փաստաթղթերի պարագայում: Ըստ այդմ, *«պայմանագիր»* հասկացությունը պետք է մեկնաբանել անկախ փաստաթղթի անվանումից, որպես զուտ միջպետական օրինական գրավոր համաձայնություն:

Ակնհայտ է, որ արձանագրության մեջ հիշատակվող *«գոյություն ունեցող սահմանը»* դա բոլշևիկա-քեմալական գործարքի հետևանքով առաջացած անօրինական բաժանարար գիծը չէ: Անօրինականությունը չի կարող առաջացնել օրինական հետևանք՝ *ex injuria non oritur jus*. *«Գոյություն ունեցող սահման»* նշանակում է միջազգային իրավունքի մեջ գոյություն ունեցող և միջազգային իրավունքին համապատասխանող սահման: Իսկ նման միայն մի սահման կա Հայաստանի և Թուրքիայի միջև՝ դա ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի իրավարար վճռով որոշված սահմանն է:

Ձեր ելույթում վկայակոչված Մոսկվայի և Կարսի պայմանագրերն, միջազգային իրավունքի տեսանկյունից, ընդհանրապես պայմանագրեր էլ չեն: Որպեսզի նշյալ գործարքները պայմանագիր համարվեն, նրանք պետք է կնքված լինեին **ճանաչված** պետությունների **օրինական** իշխանությունների լիազոր ներկայացուցիչների կողմից: Ո՛չ քեմալականները և ո՛չ էլ բոլշևիկները, առավել ևս Հայաստանում իշխանության բերված հայ բոլշևիկները, 1921թ. չեն եղել այդպիսին: Այսինքն, պայմանագրերը կնքելու բուն գործողությունը կնքելու իսկ պահին հակասել է միջազգային իրավունքի հիմնարար նորմերի՝ *jus cogens*-ների: Իսկ համաձայն Ձեր իսկ ելույթում վկայակոչված Վիեննայի Պայմանագրերի իրավունքի մասին կոնվենցիայի (Vienna Convention on the Law of Treaties, 1969) 53 հոդվածի *«Պայմանագիրն անվավեր է, եթե կնքման պահին այն հակասել է միջազգային ընդհանուր իրավունքի հիմնարար նորմի»*:

Արդյո՞ք Դուք իսկապես կարծում եք, որ երկու չճանաչված, հետևաբար անօրինական վարչախմբեր, ինչպիսիք էին բոլշևիկներն ու քեմալականները 1921թ.-ին, կարող էին երկկողմ պայմանագրով (Մոսկվայի պայմանագիր) չեղյալ հայտարարել օրինապես բա-

նակցված և 18 ճանաչված պետությունների կողմից ստորագրված միջազգային փաստաթուղթը (Սևրի պայմանագիրը): Միթե՞ Դուք կարծում եք, որ Ռիբենտրոպ-Մոլոտով պակտն օրինական փաստաթուղթ է: Ես կարծում եմ, որ ոչ, որովհետև 2 երկիր՝ տվյալ դեպքում ԽՍՀՄ և Գերմանիան, չէին կարող որոշել 3-րդ երկրների սահմանները: Իսկ ինչո՞ւ եք կարծում, որ 2 խռովարարական շարժում, ինչպիսիք էին, կրկնում եմ, բոլշևիկներն ու քեմալականները 1921թ., իրավասու էին Մոսկվայում որոշելու մեկ այլ երկրի՝ թեկուզև բռնազավթված ՀՀ-ի, սահմանի հարցը:

Միթե՞ Դուք կարծում եք, որ Հայաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը, ինչպես նաև Վրաստանի և Ադրբեջանի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունները, երբևէ, ըստ միջազգային իրավունքի, ունեցել են պայմանագիր կնքելու կարողություն (capacity to make treaties under international law): Իհարկե՝ ոչ: 1920թ. ապրիլից (Ադրբեջան), 1920թ. դեկտեմբերից (Հայաստան) և 1921թ. փետրվարից (Վրաստան) ի վեր այս երկրները եղել են պարզապես տարբեր վարչատարածքային միավորների տեսքով ռուսական բոլշևիզմի կողմից բռնազավթված տարածքներ: Հայաստանի պարագայում ԱՄՆ Սենատը 1924թ. հունիսի 3-ին իր ընդունած #245 բանաձևով միանշանակորեն արձանագրել է դա. *«Հայկական պետությունը կործանվել է Սովետական Ռուսաստանի և Թուրքիայի համատեղ գործունեության արդյունքում» (Turkey joined with Soviet Russia in the destruction of the Armenian State)*:[3] Եթե 1920թ. դեկտեմբերի 2-ից չկար Հայաստանի Հանրապետությունը, ինչպե՞ս էր այն կարող 1921թ. հոկտեմբերին Կարսում միջազգային պայմանագիր կնքել:

Միջազգային իրավունքի անվիճելի նորմ է, որ զավթիչների գործողությունները իրավական հետևանք չեն ստեղծում նվաճված երկրների համար. *«բռնազավթման ժամանակ երկրի տարածքի որևէ մասի զիջում հետևանազուրկ է (a cession of territory during occupation is not effective)*:[4] Սրա մասին երկու կարծիք լինել չի կարող:

Այն, որ արձանագրությունները չեն օրինականացնում Հայոց ցեղասպանության հետևանքով առաջացած իրավիճակը և չեն ճանաչում որևէ սահման միանշանակորեն, արձանագրված է ՀՀ նախագահի պրն. Սերժ Սարգսյանի 2009թ. հոկտեմբերի 10-ի ուղերձի մեջ: Նա հստակորեն հայտարարում է. *«Ցանկացած հարաբերություն Թուրքիայի հետ չի կարող կասկածի տակ դնել հայ ժողովրդի հայրենազրկման ու ցեղասպանության իրողությունը»*, ինչպես նաև.

*«Հայաստանի և Թուրքիայի միջև առկա սահմանների հարցը ենթակա է լուծման գերակա միջազգային իրավունքի համաձայն: Արձանագրությունները դրանից ավելի ոչինչ չեն ասում»*:

Պարզ և հստակ:

Հիմա տեսնենք, թե որն է այն *«գերակա միջազգային իրավունքը»*, որի համաձայն *«Հայաստանի և Թուրքիայի սահմանների հարցը ենթակա է լուծման»*:

Սա հասկանալու համար պետք է վերադառնանք ոչ վաղ անցյալի այն կարճատև ժամանակահատվածին, երբ ՀՀ-ն որպես պետություն միջազգային հանրության կողմից ձեռք էր բերում իր ճանաչումը: Երբ Փարիզի խաղաղության վեհաժողովի Գերագույն խորհուրդը (Supreme Council) 1920թ. հունվարի 19-ին, հանձինս Բրիտանական կայսրության, Ֆրանսիայի և Իտալիայի, ճանաչեց ՀՀ-ն, դա արեց որոշակի պայմանով՝ ՀՀ սահմանները պետք է որոշվեին հետագայում: Նույն պայմանով 1920թ. ապրիլի 23-ին ՀՀ-ն ճանաչեց նաև ԱՄՆ:

ՀՀ սահմանների մեջ, բնականաբար, կարևորագույնը հայ-թուրքական սահմանի հարցն էր: Ուստի, Փարիզի վեհաժողովի Սան Ռեմոյի նիստը, ի շարս այլ հարցերի, 1920թ. ապրիլի 24-27-ին քննության առավ այդ հարցը և ապրիլի 26-ին պաշտոնապես դիմեց ԱՄՆ նախագահ Վիլսոնին, որպեսզի վերջինս իրավարարությամբ վճռի Հայաստանի սահմանները (to arbitrate the frontiers of Armenia):[5] 1920թ. մայիսի 17-ին նախագահ Վիլսոնը տվեց իր դրական պատասխանը և ստանձնեց Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանը որոշող իրավարարի պարտականություններն ու լիազորությունը: Հատուկ ուզում եմ շեշտել, որ սա Սևրի պայմանագիրը ստորագրելուց (10 օգոստոսի, 1920թ.) գրեթե 3 ամիս առաջ էր: Կլիներ Սևրի պայմանագիրը, թե՝ ոչ, իրավարարության օրինական հայցադիմումը (compromis) կար, հետևաբար Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանը որոշող իրավարար վճիռը կայացվելու էր: Ուրիշ բան, որ Սևրի պայմանագիրը պարունակում է ևս մեկ՝ լրացուցիչ, հայցադիմում: Հարկ եմ համարում նշել, որ հայցադիմումների *(compromis)* վավերականության *(validity)* համար բավարար է միայն լիազոր ներկայացուցիչների ստորագրությունները, և հայցադիմումները վավերացման *(ratification)* կարիք չունեն:

Ըստ այդմ, Սան Ռեմոյի (26 ապրիլի, 1920թ.), ինչպես նաև Սևրի (10 օգոստոսի, 1920թ.) հայցադիմումների (compromis) հիման վրա, ԱՄՆ նախագահ Վիլսոնը 1920թ. նոյեմբերի 22-ին կայացրեց

Հայաստանի և Թուրքիայի սահմանների վերաբերյալ իր իրավարար վճիռը (Arbitral Award), որն ըստ պայմանավորվածության ուժի մեջ մտավ *անմիջապես* և *անվերապահորեն*:

Երկու օր հետո՝ նոյեմբերի 24-ին, վճիռը պաշտոնական հեռագրով փոխանցվում է Փարիզ՝ Խաղաղության վեհաժողովի և Ազգերի լիգայի տնօրինմանը: Վճիռն ընդունվում է ի գիտություն, սակայն մնում է առկախ, քանի որ վճռի շահառուն՝ ՀՀ-ն, 1920թ. դեկտեմբերի 2-ին դադարում է գոյություն ունենալուց:

Վիլսոնի իրավարար վճռի ներկա կարգավիճակի հարցը.

Նախ անհրաժեշտ է նշել, որ ցանկացած իրավարար վճիռ անվերապահորեն պարտադիր է կատարման համար (binding document): Ավելին, իրավարար վճիռները *«վերջնական են և անբեկանելի» (final and without appeal)*:[6] «Իրավարար վճիռն իրավարարի *վերջնական և կատարման համար պարտադիր* որոշում է» *(The arbitral award is the final and binding decision by an arbitrator)*:[7]

Իրավարար վճիռների վերջնական և անբեկանելի լինելը ամրագրված է (codified) միջազգային իրավունքի մեջ: Ի մասնավորի՝ *Միջազգային վեճերի խաղաղ կարգավորման Հաագայի կոնվենցիայի (The Hague Convention for the Pacific Settlement of International Disputes)*, 1899թ. խմբագրման #54 և 1907թ. խմբագրման #81 հոդվածներում: Ըստ այդմ, ԱՄՆ նախագահ Վիլսոնն իր Իրավարար վճռով *մեկընդմիշտ* որոշել է Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանը, այն *ուժի մեջ է առ այսօր և ենթակա չէ բեկանման*:

Հետևաբար, երբ *Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության* 5-րդ պարբերությունը արձանագրում է *«միջազգային իրավունքի համապատասխան պայմանագրերով որոշված գոյություն ունեցող սահմանի փոխադարձ ճանաչումը»*, ապա այն միանշանակորեն նկատի ունի առ այսօր գոյություն ունեցող միակ օրինական փաստաթղթով՝ ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի իրավարար վճռով, որոշված (defined) սահմանը: Ուրիշ մեկ այլ օրինական, ինչպես արձանագրության տեքստում է՝ *«միջազգային իրավունքի»*, փաստաթուղթ չկա:

Այստեղ կարևոր է անդրադառնալ մի կարևոր հարցի ևս.

– Իսկ ԱՄՆ իշխանական և հանրային կառույցները երբևէ՞, որևէ՞ դիրքորոշում արտահայտել են Վիլսոնի՝ Հայաստանի և Թուրքիայի սահմանը որոշող իրավարար վճռի նկատմամբ:

Գործադիր իշխանության դիրքորոշումը.

ԱՄՆ բարձրագույն գործադիր իշխանությունը ոչ միայն ճանաչել է Վիլսոնի իրավարար վճիռը, այլև վավերացրել է այն և, ըստ այդմ, այն դարձրել ԱՄՆ ներքին օրենսդրության մաս (the law of the land): Նախագահ Վիլսոնը և պետքարտուղար Բեյնբրիջ Քոլբին (Bainbridge Colby) իրենց ստորագրություններով և *Ամերիկայի Միացյալ Նահանգներ պետության Մեծ կնիքով (The Great Seal of the United States)* վավերացրել են իրավարար (Arbitrator) Վիլսոնի վճիռը: Ըստ միջազգային իրավունքի, իրավարարի անձնական ստորագրությունը և կնիքը, եթե կա այդպիսին, միանգամայն բավարար է Իրավարար վճռի վավերականության համար: Վուդրո Վիլսոնը կարող էր բավարարվել միայն իր ստորագրությամբ կամ նաև իր՝ նախագահական, կնիքով: Այդ դեպքում վճիռը կլիներ անհատական, թեկուզև նախագահական, պարտավորություն: Սակայն Իրավարար վճիռը վավերացված է *պետության մեծ կնիքով* և ամրագրված է այդ կնիքի պահապան (keeper) պետքարտուղարի կողմից: Ըստ այդմ, Վուդրո Վիլսոնի իրավարար վճիռը Միացյալ Նահանգներ պետության անվերապահ պարտավորությունն է:

Օրենսդիր իշխանության դիրքորոշումը.

Իրավարար վճիռները ենթակա չեն որևէ օրենսդրական հավանության կամ վավերացման: Նրանք ղեկավարվում են միջազգային հանրային իրավունքով: Հետևաբար, ԱՄՆ Սենատը, որին ըստ ԱՄՆ սահմանադրության վերապահված է արտաքին քաղաքականության հարցերին անդրադառնալու իրավունքը, երբևէ ուղղակիորեն քննության չի առել հայ-թուրքական սահմանը որոշող իրավարար վճիռը: Այսուհանդերձ, այլ հարցերի քննարկման ժամանակ ԱՄՆ Սենատը միանշանակորեն, առնվազն մեկ անգամ, արտահայտել է իր վերաբերմունքը նշյալ վճռի նկատմամբ:

Երբ 1927թ. հունվարի 18-ին ԱՄՆ Սենատը մերժեց 1923թ. օգոստոսի 6-ի թուրք-ամերիկյան պայմանագրին հավանություն տալը, դա արեց երեք պատճառով: Պատճառներից մեկն այն էր, որ *«Թուրքիան ձախողել է Վիլսոնի վճռի իրականացումը Հայաստանի հանդեպ» (failed to provide for the fulfillment of the Wilson award to Armenia)*:[8] Այդ առիթով սենատոր Ուիլյամ Քինգը պաշտոնական հայտարարության մեջ շատ ավելի հստակ է արտահայտվել. *«Ակնհայտորեն Միացյալ Նահանգների կողմից ոչ ճիշտ և անհիմն կլիներ հավատ և հարգանք ընծայել Քեմալի պնդումներին ու հավաստիացումներին, քանի դեռ*

*նա շարունակում է իր վերահսկողության ու ինքնիշխանության փակ պահել <u>Վիլսոնյան Հայաստանը</u>» (Obviously it would be unfair and unreasonable for the United States to recognize and respect the claims and professions of Kemal so long as he persist in holding control and sovereignty over <u>Wilson Armenia</u>)*:[9] 1927թ. Սենատի քվեարկությունը միանշանակորեն վկայում է, որ Վիլսոնի իրավարար վճիռը 1927թ.-ին վավերական և իրավական ուժ ունեցող վճիռ էր: Դրանից հետո իրավական տեսանկյունից ոչինչ չի փոխվել, հետևաբար, այն շարունակում է ուժի մեջ մնալ առ այսօր:

<u>Հանրային կառույցների դիրքորոշումը.</u>

ԱՄՆ ամենակարևոր հանրային կառույցները կուսակցություններն են: Դրանց ծրագրային հիմնադրույթներն ամփոփվում են Կուսակցությունների հիմնածրագրի (Party Platform) մեջ, որոնք հաստատվում են կուսակցությունների համագումարների կողմից:

ԱՄՆ Դեմոկրատական կուսակցությունը (ներկա նախագահ Օբամայի և պետքարտուղար Քլինթոնի կուսակցությունը) երկու անգամ՝ 1924թ. և 1928թ., պաշտոնական դիրքորոշում է արտահայտել Վիլսոնի իրավարար վճռի նկատմամբ:

Դեմոկրատական կուսակցությունը 1924թ. իր ծրագրի մեջ առանձին տողով, որպես հիմնադրույթ-նպատակ, ամրագրել է *«Հայաստանի նկատմամբ նախագահ Վիլսոնի իրավարար վճռի իրականացումը» («Fulfillment of President Wilson's arbitral award respecting Armenia»)*:[10] Դեմկուսի 1928թ. ծրագիրը գնում է մի քայլ առաջ և խոսում է ԱՄՆ որպես պետության և Դաշնակից պետությունների *«խոստումների և պարտավորությունների»* մասին. *«Մենք զորակցություն ենք հայտնում Միացյալ Նահանգների անկեղծ ջանքերին, որոնք նպատակամղված են Առաջին համաշխարհային պատերազմի և դրան հաջորդող տարիներին Միացյալ Նահանգների և դաշնակից ուժերի կողմից Հայաստանին և հայ ժողովրդին տված խոստումների և պարտավորությունների իրականացումն ապահովելուն»*: *(«We favor the most earnest efforts on the part of the United States to secure the fulfillment of the promises and engagements made during and following the World War by the United States and the allied powers to Armenia and her people»)*:[10] Հայաստանի Հանրապետությանը տված ԱՄՆ միակ անկատար *«խոստումն ու պարտավորությունը»* եղել և մնում է նախագահ Վուդրո Վիլսոնի իրավարար վճիռը Հայաստանի և Թուրքիայի սահմանի վերաբերյալ:

Մեծարգո՛ պարոն նախարար,

Ի տարբերություն ամերիկացիների և եվրոպացիների ներկա սերնդի, մենք թուրքերին լավ ենք ճանաչում, ուստի պատրանքներ չունենք: Կարծում եմ, դուք էլ մեզ եք լավ ճանաչում, հետևաբար պատրանքներ պիտի չունենաք: Եթե դուք՝ թուրքերդ, կարծում եք, որ Հայաստանի ձեռքերն ոլորելով հայ ժողովրդին ինչ-որ բան կարելի է պարտադրել, չարաչար սխալվում եք: Մեր պատմությունը դրա հակառակի ապացույցն է:

Մենք՝ հայերս և թուրքերը, դատապարտված ենք միասնաբար, երկուստեք ընդունելի լուծումներ գտնելու: Լուծումները կարող են տարբեր դրսևորումներ ունենալ, բայց մի բան հստակ պիտի լինի՝ այն պիտի նպաստի ողջ տարածաշրջանում կայուն խաղաղության հաստատմանը, տնտեսության բազմակողմանի զարգացմանը, գործակցական մթնոլորտի ձևավորմանը, ինչպես նաև ծառայի համաշխարհային ուժային կենտրոնների որոշակի շահերի կենսագործմանն ու նրանց տարածաշրջանի հարցերի մեջ ավելի լայն ներգրավվմանը: Ընդսմին, այդ ձևը պիտի լինի այնպիսին, որ փարատի հայկական կողմի անվտանգության մտահոգությունները, հնարավորություն ընձեռի Հայաստանի Հանրապետության տնտեսությանը հարաճուն և շարունակական զարգանալու համար, ինչպես նաև երաշխավորի հայկական մշակութային արժեքների պահպանումը: Միևնույն ժամանակ, հարցի լուծումը չպիտի էականորեն ոտնահարի Թուրքիայի շահերը և թուրքական կողմին պետք է հնարավորություն տա զգալու, որ հարցի առաջարկվող լուծումը արժանապատիվ ելք է ստեղծված իրավիճակից:

Մեծարգո՛ պարոն նախարար,

Մենք պատրաստ ենք համագործակցության, սակայն մի ընկալեք դա որպես թուլության նշան և մի փորձեք մեզ ստիպել, որ սպիտակ դրոշ պարզենք: Դա երբեք չի լինի:

**Ընդունեցե՛ք, պարո՛ն նախարար, հարգանացս խորին հավաստիքը:**

*Հղումներ և ծանոթագրություն*

1. The Hague Convention for the Pacific Settlement of International Disputes, 1899, #54; 1907, #81.
2. «Հաստատելով միջազգային իրավունքի համապատասխան պայմանագրերով որոշված երկու երկրների միջև գոյություն ունեցող սահմանի փոխադարձ ճանաչումը», “Confirming the mutual recognition of the existing border between the two countries as defined by the relevant treaties of international law.”

3. The Armenian Review, vol. 30, No. 3-119, 1977, p. 286.
4. Fiedler W. Continuity. In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of Public International Law. Amsterdam, 1992, v. I, p. 808.
5. Full Report of the Committee upon the Arbitration of the Boundary between Turkey and Armenia, App I, No 10. (The National Archives, Washington, 760J.6715-760J.90C/7).
6. Schlochauer H.-S. Arbitration, In: Bernhardt R. (ed.) Encyclopedia of the Public International Law, Amsterdam, 1992, v. I, p. 226.
7. A Dictionary of Arbitration and its Terms (ed. by Seide K.), NY, 1970, p. 32.
8. Lausanne Treaty is Defeated. Davenport Democrat, 19 Jan 1927, p. 1.
9. The New York Times, 19 Jan 1927, p. 1.
10. National Party Platforms (1840-1968) (compl. by Porter K., Johnson D.), Urbana-Chicago-London, 1972, p. 277.

*23 հոկտեմբերի, 2009թ.*

## ԾԷ. Սերժ Սարգսյանը ձեռք կբերի ոչ միայն նորանոր քաղաքական հակառակորդներ, այլև բազմաթիվ անձնական թշնամիներ

*/հարցազրույց Hetq.am-ին/*

**Hetq.am** – *Եթե և Հայաստանի, և Թուրքիայի խորհրդարանները վավերացնեն հայ-թուրքական արձանագրությունները, Ձեր գնահատմամբ՝ դա ի՞նչ ազդեցություն և հետևանքներ կունենա Հայաստանի համար՝ Ցեղասպանության միջազգային ճանաչման առումով:*

**Ա.Պ.** – Ցեղասպանության միջազգային ճանաչումն էական վնասներ կկրի: Ենթահանձնաժողովի գոյությունն ինքնին, անկախ հարցերի քննարկման շրջանակից, դիտարկվելու է որպես փորձ՝ «անաչառ և գիտական» ուսումնասիրության ենթարկելու Հայոց ցեղասպանությունը:

Ուզում եմ Ձեր ուշադրությունը հրավիրել մի հանգամանքի վրա. նրանք, ովքեր ասում են, որ բացասական ազդեցություն կունենա, հարցի գործնական մասնագետներ են և տարիներով զբաղվել են Ցեղասպանության ճանաչման գործընթացով: Նրանք, ովքեր ասում են, որ չի ազդի, մի օր իսկ չեն զբաղվել Ցեղասպանության միջազգային ճանաչմամբ: Լավագույն դեպքում հոդվածներ են գրել Ցեղասպանության մասին, սակայն երբեք չեն զբաղվել ճանաչման գործընթացով:

Եթե արձանագրությունները վավերացվեն, դրանք կդառնան ՀՀ իրավական համակարգի մաս և կգործեն անմիջականորեն: Այսինքն, որևէ պետական անձ չի կարողանա հիշատակել Հայոց ցեղասպանությունը, որևէ պետական աջակցություն չի կարող լինել Ցեղասպանության ճանաչմանը կամ ուսումնասիրությանը անգամ Հայաստանի ներսում՝ առանց խախտելու դիվանագիտական հարաբերություններ հաստատելու մասին արձանագրության 7-րդ պարբերությունը, որը կողմերի վրա պարտավորություն է դնում «ձեռնպահ մնալ բարիդրացիական հարաբերությունների ոգուն անհարիր քաղաքականությունից»:

Ուզում եմ, որ մի բան հստակ լինի: Մենք Թուրքիայի նկատմամբ տարածքային պահանջներ չունենք: Մեր պահանջն այն է, որ Թուրքիան դադարեցնի միջազգային իրավունքով ՀՀ տարածքի բռնազավթումը: Ինչպես, երբ կիպրոսցիները պահանջում են, որ

Թուրքիան դուրս գա Հյուսիսային Կիպրոսից, դա չի նշանակում, որ նրանք տարածքային պահանջներ ունեն Թուրքիայի նկատմամբ:
Ներկայումս մենք շատ ուժեղ իրավական հիմքեր ունենք տարածքային պահանջատիրության համար: Առ այսօր ՀՀ-ը պահպանում է նախկին Օսմանյան կայսրության Վանի, Բիթլիսի, Էրզրումի և Տրապիզոնի նահանգների մեծ մասի վրա իր տիտղոսը: Իրավական տեսանկյունից թուրքական ներկայությունն այդ տարածքում ոչ այլ ինչ է, քան բռնազավթում: Այսինքն՝ այն նույն կարգավիճակը, որն այսօր Թուրքիան ունի Հյուսիսային Կիպրոսում: Վավերացնելով արձանագրությունները՝ մենք կվավերացնենք նաև թուրքական բռնազավթումը: Այսինքն՝ մենք կօրինականացնենք Հայոց ցեղասպանության հետևանքները, քանի որ այսօրվա *de facto* իրավիճակը Ցեղասպանության հետևանք է:

**Hetq.am** – *Երկու երկրների կողմից արձանագրությունների վավերացումն ի՞նչ ազդեցություն և հետևանքներ կունենա Հայաստանի համար Արցախի հիմնահարցում:*
**Ա.Պ.** – Թուրքիան, համարելով, որ լուծել է իր հարցերը Հայաստանի հետ, ամբողջովին կկենտրոնանա Ղարաբաղի վրա: Նա նոր լծակներ ձեռք կբերի Հայաստանի ներսում, հետևաբար ավելի ազդեցիկ կլինի Ղարաբաղի հարցում: Արձանագրությունները ճանաչում են «տարածքային ամբողջականության և սահմանների անձեռնմխելիության սկզբունքները» ոչ միայն երկկողմ, այլև միջազգային հարաբերություններում (1-ին արձանագրություն, կետ 3): Այս կետը Թուրքիային հնարավորություն կտա ուղղակիորեն միջամտելու հայ-ադրբեջանական հարաբերություններին:

**Hetq.am** – *Եթե արձանագրությունները վավերացնի երկրներից միայն մեկը՝ Հայաստանը կամ Թուրքիան, ապա այս դեպքում ի՞նչ հետևանքներ կլինեն: Ձեր գնահատմամբ, ի՞նչ հետևանքներ կլինեն, եթե ոչ Հայաստանի և ոչ Թուրքիայի խորհրդարանը չվավերացնի արձանագրությունները:*
**Ա.Պ.** – Եթե կողմերից մեկը կամ երկու կողմերն էլ չվավերացնեն արձանագրությունները, ապա դրանք ուժի մեջ չեն մտնի: Ոչինչ էլ տեղի չի ունենա: Կշարունակենք ապրել, ինչպես ապրում էինք մինչև արձանագրությունների ի հայտ գալը: Կխուսափենք հետագա մեծ կորուստներից և ցնցումներից: Ուզում եմ շեշտել, որ սրանք սովորական միջպետական փաստաթղթեր չեն: Սրանք հայոց էական շահե-

րին առնչվող միջազգային պարտավորություններ են: Արձանագրությունները ուժի մեջ մտնելու պարագայում՝ Սերժ Սարգսյանը ձեռք կբերի ոչ միայն նորանոր քաղաքական հակառակորդներ, այլև բազմաթիվ անձնական թշնամիներ: Շատերը պիտի համարեն, որ իրենց ողջ կյանքի գործը ոչնչի համար տրվել է թուրքերին:

**Hetq.am** – *Ձեր գնահատմամբ՝ վերոնշյալ 4 տարբերակից ո՞րն է ավելի հավանական:*

**Ա.Պ.** – Հավանական եմ համարում, որ երկու կողմերն էլ կվավերացնեն արձանագրությունները: Թուրքերը լավ են հասկանում, որ նման հնարավորություն հարյուր տարին մեկ է լինում: Նրանք ոչնչի դիմաց ստանում են ավելին, քան կարող էին մինչևիսկ երազել մի քանի տարի առաջ: Հայոց խորհրդարանը, ընդհանուր առմամբ, սկզբունքներ և համոզումներ չունեցող մարդկանց հավաքածու է: Նրանք երբեք անձնական բարեկեցությունը չեն վտանգի հանուն հայրենիքի: Նրանք կծախեն հայրենիքը և դա կփաթեթավորեն հայրենասիրական բառերով: Իրավիճակն այնքան է անհեթեթ, որ երբեմն ինձ թվում է, թե այս ամենը իրականություն չէ: Ուզում եմ արթնանալ, բայց չի ստացվում:

*29 հոկտեմբերի, 2009թ.*

## ԾԸ. «Ողջամիտը» դուրս է ողջամտության շրջանակից

Խոսելով հայ-թուրքական տխրահռչակ արձանագրությունների վավերացման հնարավոր ժակետի մասին՝ իրենց քաղաքական գործիչ համարող որոշ պաշտոնյաներ խրոխտ ձայնով հայտարարում են, որ հայ-թուրքական, ըստ իրենց, կարգավորումը պետք է տեղի ունենա *«ողջամիտ ժամանակահատվածում»*: Ըստ այդմ, անհրաժեշտություն է առաջանում պարզելու՝ արդյո՞ք միջազգային իրավունքի մեջ առկա է «ողջամիտ ժամանակահատված» հասկացության հստակեցված տևողություն:

«Ողջամիտ ժամանակահատված» եզրույթն ունի, թեև ոչ հաճախադեպ, սակայն որոշակի կիրառություն միջազգային հանրային իրավունքի մեջ: Օրինակ, Մարդու իրավունքների եվրոպական կոնվենցիայի (European Convention on Human Rights) 5-րդ և 6-րդ հոդվածները երաշխավորում են կալանքի կամ ձերբակալության մեջ գտնվող անձի դատավարությունը «ողջամիտ ժամանակահատվածում»: ("Everyone arrested or detained … shall be entitled to trial within a reasonable time or release pending trial". Article 5(3). "Everyone is entitled to a fair and public hearing within a reasonable time". Article 6(1).)[1] Ակնհայտ է, որ նման ձևակերպումն ունի բավարար ճկունություն և հնարավորություն է տալիս վերոհիշյալ բազմակողմ փաստաթուղթը դարձնել առավել ներառական և այն կիրառելի դարձնել դատական տարբեր համակարգերի համար: Այսուհանդերձ, «ողջամիտ ժամանակահատված» բառակապակցության գործածումը երկկողմ փաստաթղթերում, որտեղ ամրագրվում են միայն փոխադարձ պարտավորություններ, տրամաբանական և բնավ ցանկալի չէ: Առավել ևս, հաշվի առնելով թուրքերի սեփական պարտավորություններն ուրանալու և խոսքը դրժելու դարավոր ավանդույթը, նման բան ընդհանրապես անընդունելի է նրանց հետ հարաբերություններում:

Բելգիացի ժամանակակից մեծագույն իրավագետ Օլիվյե Քորտենը (Olivier Corten) «ողջամիտ» եզրույթի հիմնական բնութագրիչն իրավացիորեն համարում է նրա «վերացական երկիմաստությունը» (profound ambiguity):[2] Այսինքն, միջազգային հարաբերություններում նման ժամկետորոշիչի գործածումը որևէ հստակեցում չի մտցնում երկկողմ փաստաթղթի կիրարկման հարցում: ՄԱԿ-ի Արդարության միջազգային դատարանը (UN International Court of Justice) Մայրցամաքային ափեզերքի (Թունիսն ընդդեմ Լիբիայի) դատական գործի մեջ մեզ

հետաքրքրող հարցի վերաբերյալ տվել է հետևյալ մեկնաբանությունը. «որևէ դատական գործում որոշելը՝ ի՞նչն է ողջամիտը և անաչառը, պետք է կախված լինի տվյալ գործի հանգամանքներից» (“what is reasonable and equitable in any given case must be depend on its circumstances”):[3] Այսինքն, ՄԱԿ-ի բարձրագույն դատական ատյանը միանշանակորեն ամրագրել է, որ «ողջամիտ» հասկացությունը խիստ հարաբերական է և միջազգային հանրային իրավունքի մեջ այն չի կարող ունենալ համընդգրկուն և միանշանակ մեկնաբանություն:

Այսինքն, եթե հայկական կողմի համար «ողջամիտ» ժամանակահատվածը տրամաբանորեն, օրինակ, կարող է լինել 3 ամիսը, ապա նույնքան տրամաբանորեն «ողջամիտը» թուրքական կողմի համար կարող է լինել 3 տարին:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Basic Documents in International Law (ed. Brownlie I.), Oxford, 1989, p. 323.
2. Corten O. The Notion of “Reasonable” in International Legal Discourse, Reason and Contradictions. Int Compar Law Quart 1999;48(3):613.
3. Continental Shelf (Tunisia/Libyan Arab Jamahiriya) I.C.J. Re. 1982, §60.


*04 հունվարի, 2010թ.*

## ԾԹ. ՀՀ Սահմանադրական դատարանի որոշման մասին

Հրապարակվեց ՀՀ Սահմանադրական Դատարանի (ՍԴ) որոշումը հայ-թուրքական զույգ տխրահռչակ արձանագրությունների վերաբերյալ: Եղավ այն, ինչ պիտի լիներ՝ հայտարարվեց, որ *«արձանագրություններում ամրագրված պարտավորությունները համապատասխանում են Հայաստանի Հանրապետության Սահմանադրությանը»*: Իհարկե կարող էր և ցանկալի էր, որ այլ որոշում լիներ: Ես մնում եմ իմ տեսակետին՝ արձանագրությունները հակասում են ՀՀ Սահմանադրությանը, և դրանց նախաստորագրման և ստորագրման գործընթացները խախտել են ՀՀ գործող համապատասխան օրենքն ու կարգը:

Սակայն այսօր ունենք այն, ինչ որ ունենք, ու հիմա ծառանում է ամենակարևոր հարցը՝ ի՞նչ պիտի անենք: Մեզ մնում է մի բան՝ խորը շունչ քաշել և շարունակել պայքարը: Առավել ևս այդ պայքարի համար ՍԴ-ի խնդրո առարկա որոշումը տվել է նման հնարավորություններ, քանի որ ՍԴ-ի իրավական դիրքորոշումն անվերապահ և բացարձակ չէ, այլ ունի որոշակի հստակ մեկնաբանություններ և վերապահումներ: Իհարկե շատ ավելի երկար ժամանակ ու մանրազնին վերլուծություն է հարկավոր ամբողջությամբ հասկանալու համար առկա հնարավորությունները: Այսուհանդերձ, առաջին իսկ հայացքից ակնհայտ է, որ նման հնարավորություններ կան: Օրինակ, իր իրավական դիրքորոշման մեջ ՍԴ-ն ամրագրում է, որ արձանագրություններով ստանձնվող պարտավորությունները միայն *«փոխադարձ»* են և *«ունեն բացառապես երկկողմանի միջպետական բնույթ»*: Հստակորեն ամրագրված է, որ Հայաստան-Թուրքիա հարաբերությունները տարանջատված են Հայաստան-Ադրբեջան հարաբերություններից կամ Թուրքիա-հայկական սփյուռք հարաբերություններից: Կամ, ինձ համար ամենակարևորը, *«միջազգային պայմանագրերը Հայաստանի Հանրապետության համար իրավաբանական*[14] *ուժ կարող են ունենալ միայն … նկատի ունենալով միջազգային իրավունքի տեսանկյունից դրանց վավերականությունը»*: Այսինքն, ՍԴ-ն ամրագրում է, որ, օրինակ, եթե Ալեքսանդ-

---

[14] Ես կնախընտրեի «**<u>իրավական</u>**» եզրույթը, քանի որ իրավաբանականը վերաբերում է իրավաբանությանը, այսինքն իրավունքի մասին գիտությանը, իսկ իրավականը վերաբերում է իրավունքին, օրենքին:

րապոլի, Մոսկվայի կամ Կարսի պայմանագրերը միջազգային իրավունքի տեսանկյունից անվավեր են (void), իսկ այդ հարցում կասկած լինել չի կարող, ապա նրանք չեն կարող *«Հայաստանի Հանրապետության համար իրավաբանական ուժ ունենալ»*, հետևաբար դրանցում նկարագրված սահմանագծերը չեն կարող օրինական հիմք հանդիսանալ *«գոյություն ունեցող սահմանի համար»*: Ըստ այդմ, ՀՀ ՍԴ-ի իրավական դիրքորոշմամբ, արձանագրությունները չեն կարող և չեն օրինականացնում Ալեքսանդրապոլի, Մոսկվայի կամ Կարսի պայմանագրերի, ինչպես նաև միջազգային իրավունքի տեսնակյունից անվավեր (void) այլ հնարավոր անօրինական իրավական գործիքների (unlawful legal instruments) հետևանքները: Պարզ ասած, ՀՀ ՍԴ-ը տխրահռչակ արձանագրությունների վերաբերյալ տվել է իրավունքի հիմնարար և համընդհանուր սկզբունքներից մեկի կիրառական մեկնաբանությունը. *Jus ex injuria non oritur («Իրավունքը չի կարող խարսխված լինել անօրինականության վրա»)*:

ՍԴ-ը գտել է նաև, որ արձանագրությունների դրույթները *«չեն կարող մեկնաբանվել և կիրառվել այնպես, որ հակասեն ՀՀ Սահմանադրության նախաբանի դրույթներին և Հայաստանի անկախության մասին հռչակագրի 11-րդ կետի պահանջներին»*: Ուզում եմ հիշեցնել, որ ըստ վերոհիշյալ կետի ***«Հայաստանի Հանրապետությունը սատար է կանգնում 1915 թվականին Օսմանյան Թուրքիայում և <u>Արևմտյան Հայաստանում</u> հայոց ցեղասպանության միջազգային ճանաչման գործին»***:

ՍԴ-ի որոշումը խիստ կարևոր և օրենքով նախատեսված քայլ է ՀՀ միջազգային պամանագրերի նկատմամբ վերաբերմունք արտահայտելու ընթացակարգում: Այսուհանդերձ, այն ներքին ընթացակարգի մաս է կազմում և միջազգային իրավունքի տեսանկյունից գրեթե նշանակություն չունի: Երկրների մեծ մասում Սահմանադրական կամ այլ դատարանները որևէ դերակատարություն չունեն միջպետական հարաբերությունների մեջ: Որպեսզի միջազգային իրավունքի տեսանկյունից ՀՀ ՍԴ-ի արտահայտած դիրքորոշումն իրավական ուժ ստանա, ապա այն պետք է պաշտոնական վերապահումների տեսքով ներառված լինի ՀՀ Ազգային ժողովի համապատասխան որոշման մեջ: Ազգային ժողովը պիտի անսակարկ նկատի ունենա, որ ՍԴ-ի խնդրո առարկա որոշումը խարսխված է որոշակի իրավական դիրքորոշման վրա, որոշման մեջ առկա են հստակ վերապահումներ և մեկնաբանություններ: Ուստի, ՀՀ

Ազգային ժողովը միանշանակորեն պարտավոր է իր քննարկումներում արտացոլել և, առավել ևս, իր որոշման մեջ առնվազն ամրագրել ՍԴ-ի բոլոր վերապահումները և մեկնաբանությունները:

Այս ամենով հանդերձ ես չեմ գտնում, որ հայ-թուրքական արձանագրությունները վավերացնելը բխում է ՀՀ և հայ ժողովրդի շահերից: Լավագույն ելքն այդ արձանագրություններն ընդհանրապես մերժելն է: Ինչո՞ւ ենք մեզ համար խնդիրներ ստեղծում, որ հետո հերոսաբար հաղթահարենք: Միթե՞ ընկեր Փանջունու ոգին դեռ կենդանի է: Նա ասում էր. *«Դուռը գոցեք, ես պատուհանէն պիտ մտնեմ»*: Եկեք այսօր չփակենք բաց դուռը, որ վաղը ստիպված չլինենք պատուհանով ներս մտնել:

*12 հունվարի, 2010թ.*

## Կ. Հայ-թուրքական արձանագրությունների վերապահումների մասին

Ըստ երկու բանախոսների էլ երկկողմ միջազգային պայմանագրերում վերապահումներն անելն անհեթեթություն է:

*Ազգ, 15 հունվարի, 2010թ.*

Իսկապես, վերապահումներն առավել լայնորեն կիրառվում են բազմակողմ պայմանագրերի պարագայում, սակայն դրանք տեղ են գտել և գտնում են նաև երկկողմ փաստաթղթերում:[1] Նման ընթացքը պայմանավորված է գործնական հարմարությամբ, սակայն ոչ երբեք՝ միջազգային օրենքի սահմանափակումներով: Ուրիշ բան, որ տրամաբանորեն ենթադրվում է. եթե կողմերն ընդամենը երկուսն են, ապա գործնականում արագ հնարավորություն կա մինչև տեքստի նախաստորագրումը, այսինքն՝ տեքստի վերջնական ընդունումը, հստակեցնել բոլոր տարըմբռնումները: Սակայն դա վերաբերում է օրինական և իմտորեն բանակցված փաստաթղթերին: Ինչպե՞ս վարվել այն պարագայում, երբ հասարակությունը մի օր արթնացել և իմացել է, որ իր արտգործնախարարությունը, շրջանցելով նախաստորագրման համար օրենքով նախատեսված համաձայնեցման ողջ ընթացակարգը, կեսկատար բանակցել է երկու թերարժեք և սխալաշատ փաստաթուղթ: Ինչպե՞ս վարվել, երբ որևէ պաշտոնյայի կամ պաշտոնյաների խմբի անփութության, տգիտության կամ դավաճանության հետևանքով պետության ձեռքում են հայտնվել երկու անընդունելի փաստաթղթեր: Արդյո՞ք պետությունը պարտավոր է իր շահերը մի կողմ դնել և անվերապահորեն ընդունել դրանք: Իհարկե՝ ոչ:

Այսօր մեր պետության ու ազգի անցյալին, ներկային ու ապագային վերաբերող գրեթե բոլոր կենսական հարցերը ի մի են բերված մի քանի էջանոց 2 խեղճուկրակ այնպիսի արձանագրությունների մեջ, որոնց միևնույն կետերի վերաբերյալ կողմերն ունեն ծայրահեղորեն տարբեր և իրարամերժ դիրքորոշումներ: Բավական է ծանոթանալ հայ-թուրքական չարաբաստիկ արձանագրությունների ստորագրումից մի քանի ժամ առաջ արված Սերժ Սարգսյանի ուղերձին և ստորագրումից մի քանի ժամ հետո արված Թուրքիայի վարչապետի հայտարարությանը, որ պարզ լինի ասածիս իրավացիությունը՝ կողմերի ըմբռնումների իրարամերժությունը: Այս պարագայում բնական է, որ յուրաքանչյուր կողմ, ըստ իր կարգի, պիտի իր վերապահումներն ու

ընբռնումներն ամրագրի համապատասխան վավերաթղթերի մեջ: Դա չանելը կլինի ոչ միայն անտրամաբանական, այլև՝ անօրինական:

Ուզում եմ հիշեցնել երկու հանգամանք:

1. ՀՀ սահմանադրությամբ հանրապետության նախագահին է վերապահված արտաքին քաղաքականության ընդհանուր ղեկավարումը: Հետևաբար, Ազգային ժողովը պարզապես իրավունք չունի անտեսելու Սերժ Սարգսյանի 2009թ. հոկտեմբերի 10-ի ուղերձի հիմնադրույթները:
2. ՀՀ Սահմանադրական դատարանի որոշումը չի եղել անվերապահ և բացարձակ, այլ խարսխված է որոշակի իրավական դիրքորոշման վրա և ամբողջական, հետևաբար գործադրելի է, միմիայն դրանով հանդերձ:

Հիմա համառոտակի անդրադառնանք երկկողմ փաստաթղթերում վերապահումների «անհեթեթությանը»: Վիեննայի Միջազգային պայմանագրերի օրենքի մասին միջազգայնագրի 19-րդ հոդվածը թույլ է տալիս *վերապահումներ ձևակերպել պայմանագրի ստորագրման, վավերացման, ընդունման, հավանության արժանացման կամ պայմանագրին միանալու ժամանակ:* Նույն միջազգայնագիրը տարբերակում կամ խտրականություն չի դնում երկկողմ նաև բազմակողմ պայմանագրերի միջև: Վերապահումների արգելքը գործում է ոչ թե ըստ պայմանագրերի տեսակի՝ երկկողմ կամ բազմակողմ, այլ ըստ բնույթի: Օրինակ, Ցեղասպանության կանխարգելման մասին միջազգայնագիրը չի կարող վերապահումներ ունենալ:[2]

Եթե երկրի շահը պահանջել է, ապա շատ երկրների խորհրդարաններն անվարան իրենց վերապահումներն են արել երկկողմ պայմանագրերի նկատմամբ: Օրինակ, ԱՄՆ Սենատը վերջին 200 տարվա մեջ ավելի քան 100 երկկողմ փաստաթղթի նկատմամբ վերապահումներ է արել, այդ թվում առնվազն 13 անգամ 1975-85թթ. տասնամյակում[3] և 28 անգամ 1975-95թթ. քսանամյակում:[4]

Ընդ որում, հանդիպակաց կողմն ազատ է իր դիրքորոշման մեջ՝ ընդունել կամ մերժել, սակայն նա դա կարող է անել որպես մեկ ամբողջություն, այսինքն՝ պայմանագիրը վերապահումներով հանդերձ: Բերենք մի երկու օրինակ. ԱՄՆ Սենատը 1824թ. մայիսին, չնայած նախագահ Մոնրոյի (Monroe) զգուշացումներին, միայն որոշակի վերապահումներով հավանության արժանացրեց ԱՄՆ և Մեծ Բրիտանիայի միջև ստորագրված Աֆրիկյան ստրկավաճառությունը ճնշելու վերաբերյալ պայմանագիրը (The Treaty between United States

and Great Britain for the Suppression of the African Slave Trade):[5] ԱՄՆ նախագահը բացատրական նամակով այն ուղարկեց բրիտանացիներին, սակայն վերջիններս մերժեցին ընդունել պայմանագիրը:[6] Ավելի քան մեկուկես դար հետո՝ 1985թ., ԱՄՆ Սենատը որոշակի վերապահումով հավանության արժանացրեց ԱՄՆ և Միացյալ Թագավորության միջև ստորագրված Արտահանձնման հավելյալ պայմանագիրը (UK-US Supplementary Extradition Treaty): ԱՄՆ կառավարությունը բրիտանական կողմին համապատասխան նոտայով տեղեկացրեց Սենատի վերապահումների մասին և հարցրեց. արդյո՞ք դրանք ընդունելի կլինեն Միացյալ Թագավորության համար: Դրական պատասխան ստանալուց հետո 1986թ. դեկտեմբերին փոխանակվեցին վավերաթղթերը:[7]

Այստեղ անհրաժեշտ է ընդգծել, որ ամերիկյան իրավական համակարգը նման է հայաստանյանին, այսինքն՝ օրինապես ուժի մեջ մտած միջազգային պայմանագրերը ներքին օրենսդրության մաս են կազմում ուղղակիորեն և անմիջապես: Եթե ՀՀ Սահմանադրական դատարանն իր որոշումը խնդրո առարկա արձանագրությունների նկատմամբ տվել է որոշակի իրավական դիրքորոշմամբ և հստակ մեկնաբանություններով, այսինքն ասել է, որ արձանագրություններով ստանձնվող պարտավորությունները չեն հակասում ՀՀ սահմանադրությունը միայն որոշակի ընկալման և ըմբռնման պարագայում, ապա դա պիտի ամրագրվի վերապահումների մեջ: Հակառակ պարագայում վավերաթղթերի փոխանակման հետևանքով ամրագրած պարտավորություններն իրենք կլինեն հակասահմանադրական:

Վերապահումների հնարավորությունը նախատեսված է ոչ միայն միջազգային, այլև բազմաթիվ երկրների օրենքներով: ՀՀ Ազգային ժողովի կանոնակարգ-օրենքը (հոդված 95/5) պայմանագրի խորհրդարանական վավերացման ժամանակ նույնպես նախատեսում է վերապահության հնարավորություն: Սակայն, ի տարբերություն միջազգային իրավունքի, որը վերապահման հնարավորությունը տալիս է պետությանը (the State), ապա կանոնակարգ-օրենքը, չգիտես ինչու, այն վերապահում է միայն գործադրին՝ հանրապետության նախագահի ներկայացուցչին: ՀՀ Ազգային ժողովի կանոնակարգ-օրենքը (հոդված 95/5) արձանագրում է. *«Միջազգային պայմանագիրը կարող է վավերացման ներկայացվել նաև <u>հիմնական զեկուցողի կողմից սահմանված վերապահումներով</u>»*: Նույն կանոնակարգ-օրենքի նախորդ կետը (հոդված 95/4) հստակեցնում է.

*«<u>Հիմնական զեկուցմամբ հանդես է գալիս հանրապետության նախագահի ներկայացուցիչը</u>, իսկ հարակից զեկուցումներով՝ արտաքին հարաբերությունների մշտական հանձնաժողովի և Ազգային ժողովի նախագահի կողմից նշանակված այլ գլխադասային հանձնաժողովների ներկայացուցիչները»*:

Այս ընթացակարգը մի փոքր բարդացնում է վերապահումների ներառումը պայմանագրի փաթեթի մեջ: Այսուհանդերձ, եթե խորհրդարանի մեծամասնությունը միասնաբար ձևակերպի վերապահումները (իսկ ՍԴ որոշումից հետո դա ուղղակի օրենքի պահանջ է և Ազգային ժողովը պարտավոր է դա անել), ապա առաջարկվող վերապահումները գործադիրը *«կսահմանի որպես հիմնական զեկուցողի»* վերապահումներ և նորից կներկայացնի խորհրդարանի վավերացմանը:

Այո՛, հնարավոր է, որ Թուրքիան չհամաձայնի մեր վերապահումների հետ: Հնարավոր է, որ Թուրքիան մեր վերապահումներն ընդունի որպես ողջ փաթեթը նորափոխելու առաջարկ (request for a modification): Հետո ի՞նչ: Արդյո՞ք դա նշանակում է, որ մենք պիտի հրաժարվենք մեր շահերից, որպեսզի հաճելի լինենք թուրքերի քիմքին: Միթե՞ պարզ չէ, որ եթե նախագահի ուղերձի մեջ արտահայտված մտահոգությունները և ՍԴ-ի իրավական դիրքորոշումը պաշտոնապես չներառվեն համապատասխան վավերաթղթերի մեջ, ապա կնշանակի, որ և՛ նախագահը, և՛ ՍԴ-ը միևնույն թատերական ներկայացման մեջ պարզապես դերեր էին խաղում:

Ի վերջո, միջազգային փաստաթուղթ կնքելն ինքնանպատակ չէ: Փաստաթղթերը պետությունների շահերն ամրագրելու համար են և ոչ թե՝ պետությունները փաստաթղթերի մատաղացու գառները:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. The American Law Institute, Restatement of the Law (3d ed.), St. Paul, Minn., 1987, § 313(f), Reservations to bilateral agreements, p. 182.
2. Whiteman M.M. Digest of International Law, v. 14, Reservations, Department of State Publication. Washington, 1970, p. 144.
3. Aust A. Modern Treaty Law and Practice. Cambridge, 2000, p. 106.
4. Ավելի հանգամանալից տե՛ս. Whiteman, Ibid, p. 159-70.
5. Moore J.B. A Digest of International Law. Washington, 1906, v. II., p. 924.
6. Freming D.K. The Treaty Veto of the American Senate. NY, 1930, p. 54-5.
7. Aust A. Ibid, p. 106-7.

*15 հունվարի, 2010թ.*

## ԿԱ. **Հետևողական նենգության քաղաքականություն**

Երբ Թուրքիայի իշխանության բարձրագույն ներկայացուցիչները՝ նախագահը, վարչապետը և արտգործնախարարը, ամեն քաղաքական խաչմերուկում հայ-թուրքական արձանագրությունները (որոնց չարաբաստիկ լինելն ավելի ու ավելի ակնհայտ է դառնում) պայմանավորում էին *«Լեռնային Ղարաբաղի հարցում առաջընթացով»*, մեր իշխանությունները կամ լուռ էին կամ ասում էին, որ այդ հայտարարությունները *«ներքին լսարանի համար են»*: Իհարկե, նման պնդումը նախատեսված է մանկամիտների համար, քանի որ միջազգային իրավունքը (մասնավորապես Պայմանագրերի օրենքի մասին Վիեննայի կոնվենցիայի 7-րդ հոդվածի 2(a) կետը) հստակորեն ամրագրել է ցանկացած երկրի նախագահի, վարչապետի և արտգործնախարարի անվերապահ իրավունքները արտաքին քաղաքականության բնագավառում: Այսինքն, արտաքին քաղաքականության բնագավառում նրանց լիազորություններն այնքան լայն են, որ առանց լրացուցիչ լիազորությունների իրավասու են երկրի անունից պայմանագրեր ստորագրելու, ուր մնաց, հայտարարություններ անելու: Կարճ ասած, այս երեք պաշտոնյաների հայտարարությունները երբեք չեն կարող դիտարկվել *«միայն ներքին օգտագործման համար»*:

Հիմա տեսնենք՝ ի՞նչ ունենք այսօր: ՀՀ Սահմանադրական դատարանը, համաձայն մեր երկրի սահմանադրության պահանջի, որոշում է ընդունել մեր երկրի ԱԳ նախարարի ստորագրած երկու արձանագրության վերաբերյալ: Տվյալ դեպքում իրավացիորեն կարող ենք ասել *«ներքին օգտագործման համար»*, քանի որ որոշման մեջ արտահայտված իրավական դիրքորոշումն առանց վավերաթղթերի (instruments of ratification) մեջ ներառվելու, չունի որևէ կիրառություն և նշանակություն միջազգային հարաբերությունների մեջ: Ուրիշ հարց, որ ՀՀ նախագահը **պարտավոր է** ՍԴ-ի որոշման իրավական դիրքորոշումը հաշվի առնել և նրա ներկայացուցիչն էլ **պարտավոր է** խնդրո առարկա արձանագրություններն արդեն վերապահումներով ներկայացնել ԱԺ-ի վավերացմանը: Դա չանելը նշանակում է չկատարել դատարանի որոշումը: Այն դատարանի, որի որոշումը պարտադիր է և՛ ՀՀ նախագահի, և՛ ՀՀ ԱԳՆ համար: Այսուհանդերձ, ՍԴ-ի ինքնին որոշումը բնավ կապ չունի որևէ օտար երկրի հետ: Դա մեր իրավունքն է և մեր սահմանադրության պահանջը: Դա մեր ներքին գործն է:

Թուրքական դիվանագիտությունն ունի մի շարք բնութագրիչներ: Կան բաներ, որոնք արժանի են ընդօրինակման: Օրինակ, համարժեք միջոցների տրամադրումն ըստ արտաքին գերատեսչության առջև ծառացած խնդիրների: Թուրքիայի Հանրապետությունն անգամ իր ստեղծման առաջին ծանրագույն տարիներին խորթ զավակի տեղ չի դրել արտգործնախարարությանը: Սակայն թուրքական դիվանագիտության ամենից ակնառու գիծը **հետևողական նենգությունն է**: Միշտ պետք է հիշել, որ Թուրքիայի Հանրապետության դիվանագիտության ավանդույթները, դեռևս նրա ճանաչումից առաջ, հիմնվել են պատանդառության և այդ պատանդներին փոխանակելու միջոցով պատերազմի հանցագործներին ազատելու վրա: 1919թ. քեմալականները, ոտնահարելով Մուդրոսի զինադադարով (30.10.1918թ.) իրենց երկրի ստանձնած պարտավորությունները, նենգաբար պատանդ վերցրեցին բրիտանական դիտորդական առաքելությունների ավելի քան վեցը տասնյակ անդամների (այդ թվում նրանց կանանց և երեխաներին, ինչպես նաև Էրզրում բանագնացության մեկնած գնդապետ սըր Ալֆրեդ Ռաուլինսոնին /Sir Alfred Rawlinson/), ապա փոխանակեցին Մալթայում պահվող պատերազմի ավելի քան 150 հանցագործների հետ: Ուսանելի է բանակցությունների և հատկապես դրանց գործադրման ընթացքը: Թեև 1921թ. մարտի 16-ին բրիտանացիներն ու քեմալականները համաձայնագիր էին ստորագրել թուրքերի կողմից բրիտանացիներին *«անմիջապես» (immediately)* ազատ արձակելու վերաբերյալ,[15] սակայն վերջին բրիտանացին ազատվեց գրեթե 6 ամիս հետո միայն՝ 1921թ. հոկտեմբերի 31-ին: Միաժամանակ, չնայած նախնական պայմանավորվածությանը՝ 64 բրիտանացու դիմաց ազատ արձակել նույնքան թուրքի, վերջում այնպես ստացվեց, որ բրիտանացիները բաց թողեցին բոլորին, դեռ մի բան էլ պարտք մնացին: Իսկ ինչպե՞ս դա եղավ. շատ պարզ: Բրիտանացիներն, ըստ պայմանավորվածության, բաց էին թողնում համապատասխան խմբին, բայց թուրքերը **հետևողական նենգությամբ** ոչ միայն իրենց խոստումը չէին կատարում, այլև առաջադրում էին նորանոր պահանջներ: Ծանոթ ձեռագիր է, չէ՞: Այսօր դրանց կանվանեինք նախապայմաններ: Հիշո՞ւմ եք թուրքերի հայտարարությունը՝ *«ստորագրելու պահին նախապայմաններ չկային, սակայն այժմ Հայաստանը պիտի առաջընթաց գրանցի Լեռնային Ղարաբաղի հարցում, որպեսզի մեր*

[15] British Foreign Office Dossiers on Turkish War Criminals (ed. V. Yeghiayan), Le Verne, 1991, 470.

*խորհրդարանն արձանագրությունները վավերացնի»:* Սա **հետևողական նենգության** քաղաքականությունն է գործի մեջ: Ոչինչ չի մոռացվել, ոչ ոք չի մոռացվել: Հավատ ընծայել Թուրքիայի որևէ խոսքի՝ լինի բանավոր կամ գրավոր, նշանակում է ամեն անգամ կանգնել նույն փոցխի վրա:

Այսօրվա Թուրքիան իրականացնում է նույն պատանդառության քաղաքականությունը: Պարզապես այսօր մի խումբ մարդկանց փոխարեն Թուրքիան պատանդի վիճակի մեջ է պահում, մի ողջ պետություն, մի ամբողջ ժողովուրդ: Դրանով հանդերձ Թուրքիան իրեն իրավունք է վերապահում մեզ դաս տալու:

Թուրքիայի ԱԳՆ հայտարարությունը ՀՀ Սահմանադրական դատարանի որոշման վերաբերյալ ուղղակի և լկտի միջամտություն է ՀՀ ներքին գործերին: Քանի դեռ այդ դիրքորոշումը սահմանադրական իրավունքի ոլորտից չի անցել միջազգային իրավունքի ոլորտ, այն միմիայն մեր ներքին գործն է: Արդյո՞ք մեր ԱԳՆ-ն երբևէ պաշտոնական հայտարարությամբ հանդես եկել է Թուրքիայի քրեական օրենսգրքի բարեփոխման անհրաժեշտության վերաբերյալ, առանց որի հնարավոր չի լինելու կյանքի կոչել արձանագրություններով ստանձնվող պարտավորությունները: Փոխադարձության և իրավահավասարության սկզբունքները միջազգային հարաբերությունների հիմնասյուներից են:

Եթե ՀՀ բարձրագույն իշխանությունները համարժեք պատասխան չտան Թուրքիայի ԱԳՆ հայտարարությունը, կշանակի՝ մենք ընդունում ենք Թուրքիայի մեզ գաղութի տեղ դնելու քաղաքականությունը: Եթե մենք այսօր Թուրքիային իր տեղը չդնենք, վաղն ավելի ենք զղջալու, քանի որ Թուրքիան ակնհայտորեն չի հրաժարվել **հետևողական նենգության** քաղաքականությունից:

*19 հունվարի, 2010թ.*

## ԿԲ. Հաշվի առնելով սույն որոշման մեջ արտահայտած իրավական դիրքորոշումները…

> ՀՀԿ խմբակցության ղեկավար Գալուստ Սահակյանն այսօր լրագրողների հետ հանդիպման ժամանակ ասաց, որ ՍԴ որոշումը՝ հայ-թուրքական արձանագրությունների մասին միայն այն է, որ դրանք համապատասխանում են Սահմանադրությանը, այլ ոլորտներ, ըստ Սահակյանի, չեն կարող պարտադրաբար լինել ՀՀ ԱԺ-ի համար:
>
> *www.aysor.am, 20 հունվարի, 2010թ.*

Երբեմն տպավորություն է ստեղծվում, որ մեր օրենսդիրները չգիտեն իրենց իսկ ընդունած օրենքները: ***Հայաստանի Հանրապետության օրենքը Սահմանադրական դատարանի մասին (2006թ.)*** միանշանակ ամրագրում է. *«Սահմանադրական դատարանի գործով ըստ էության ընդունված որոշումները <u>պարտադիր են բոլոր պետական</u> և տեղական ինքնակառավարման <u>մարմինների</u>, դրանց պաշտոնատար անձանց, <u>ինչպես նաև ֆիզիկական և իրավաբանական անձանց համար</u>՝ Հայաստանի Հանրապետության ամբողջ տարածքում»*: [Հոդված 61(5)]

Ըստ այդմ, անառարկելիորեն պարզ ու հստակ է, որ հայ-թուրքական արձանագրությունների վերաբերյալ որոշումը (12 հունվարի, 2009թ.) **<u>պարտադիր է Ազգային ժողովի համար</u>**՝ որպես պետական մարմնի, և պարտադիր է ԱԺ պատգամավորների համար՝ որպես ֆիզիկական անձանց: Այն **<u>պարտադիր է նաև ՀՀ նախագահի</u>** (պետության գլխի) և **<u>ՀՀ ԱԳՆ</u>** (կառավարության համապատասխան գերատեսչության) համար՝ որպես իրավաբանական անձանց, ինչպես նաև **<u>Սերժ Սարգսյանի</u>** և **<u>Էդվարդ Նալբանդյանի համար</u>**՝ որպես ՀՀ տարածքում գտնվող ֆիզիկական անձանց:

Անհրաժեշտ է մշտապես հիշել, որ ՍԴ-ի մասին օրենքը սահմանել է պատասխանատվություն. *«Սահմանադրական դատարանի որոշումը չկատարելը, ոչ պատշաճ կատարելը կամ կատարմանն արգելք հանդիսանալն առաջացնում է օրենքով սահմանված պատասխանատվություն»*: [Հոդված 66]

Հիմա տեսնենք՝ ի՞նչ որոշում է ընդունել ՀՀ ՍԴ-ը: Շատերն ուզում են այնպես ներկայացնել, իբր ՍԴ-ը պարզապես որոշել է, որ *«արձանագրություններում ամրագրված պարտավորությունները համապատասխանում են Հայաստանի Հանրապետության Սահմանադրությանը»*: Բնավ այդպես չէ: ՍԴ-ը պարզապես վերացական

որոշում չի կայացրել, այլ որոշումը կայացրել է որոշակի և էական վերապահությամբ. *«ելնելով գործի քննության արդյունքներից, **<u>հաշվի առնելով սույն որոշման մեջ արտահայտած իրավական դիրքորոշումները</u>** և …»*: Այսինքն, որոշումը որոշում է միմիայն *«հաշվի առնելով որոշման մեջ արտահայտած իրավական դիրքորոշումները»*: Առանց այդ դիրքորոշումների՝ որոշումը որոշում չէ:

Հետևաբար, ՀՀ նախագահի ներկայացուցիչը, համաձայն ՍԴ-ի մասին ՀՀ օրենքի 61-րդ հոդված 5-րդ կետի պահանջի, ***<u>պարտավոր է</u>*** խնդրո առարկա արձանագրություններն Ազգային ժողովի վավերացմանը ներկայացնել արդեն ՍԴ-ի համապատասխան որոշման մեջ ամրագրված իրավական դիրքորոշումների հիման վրա սահմանված վերապահումներով: Հակառակը կլինի վերոհիշյալ օրենքի խախտում, և այդ դեպքում պիտի գործի նույն օրենքի 66-րդ հոդվածով նախատեսված *«օրենքով նախատեսված պատասխանատվությունը»*:

*20 հունվարի, 2010թ.*

## ԿԳ. Ֆիլիպ Գորդոնի, Սահմանադրական դատարանի որոշման և օրինապաշտության մասին

Հայ-թուրքական արձանագրությունների վերաբերյալ ՀՀ Սահմանադրական դատարանի (ՍԴ) որոշումից (12.01.2010թ.) հետո նշյալ որոշման մասին բազմաթիվ կարծիքներ են հնչել: Կարծում եմ, ինչպես արդեն առիթ ունեցել եմ արտահայտվելու, որոշումը խիստ կանոր էր:

Թեև ինքնին որոշումը միջազգային իրավունքի առումով հարց չի լուծում, այսուհանդերձ, որոշման իրավական դիրքորոշումը, որը պարտադիր է բոլորիս՝ այդ թվում օրենսդիր և գործադիր իշխանությունների համար, լուրջ հիմքեր է ստեղծում արձանագրությունների հասցնելիք վնասը մեղմելու (damage control) համար: Ըստ այդմ, այսուհետ ամեն ինչ կախված է լինելու ՀՀ նախագահի և Ազգային ժողովի օրինապաշտության աստիճանից:

Այս ամենի մեջ խիստ հետաքրքրական է ԱՄՆ պետքարտուղարի տեղակալ Ֆիլիպ Գորդոնի հայտարարությունը. *«Դատարանի որոշումը մենք դիտարկում ենք որպես դրական առաջքայլ՝ Թուրքիայի և Հայաստանի միջև հարաբերությունների բնականոնացման արձանագրությունները վավերացնելու գործընթացի առումով: Դատարանի որոշումը թույլ է տալիս արձանագրությունները, ինչպես դրանք բանակցվել և ստորագրվել են, առաջ մղել դեպի խորհրդարանական վավերացում և չի թվում, որ [դատարանի որոշումը] որևէ բանով սահմանափակում կամ պայմանավորում է դրանք»:*

Կարծում եմ, որ այս պարբերության մեջ ամենակարևոր և նույնքան խնդրահարույց միտքը՝ *«<u>ինչպես դրանք բանակցվել և ստորագրվել են</u>»* արտահայտությունն է: Խնդիրը հենց այն է, որ կողմերը միևնույն պարբերությունների, անգամ արտահայտությունների ու մինչևիսկ բառերի նկատմամբ չունեն նույնական ըմբռնում: Այդ ըմբռնումները հաճախ ոչ միայն էապես տարբեր են, այլև՝ իրարամերժ: Բավական է համեմատել ՀՀ նախագահի ու ԱԳ նախարարի և Թուրքիայի վարչապետի ու ԱԳ նախարարի արձանագրությունների միևնույն հարցերի մասին արտահայտած մտքերը, որ ակնհայտ լինի. չկա կողմերի միասնական ըմբռնում ընդգրկված հարցերի նկատմամբ, հետևաբար հնարավոր չէ ընդհանրացնել. *«<u>ինչպես դրանք բանակցվել և ստորագրվել են</u>»*:

Հենց այս առումով էլ խիստ կարևոր է ՀՀ ՍԴ-ի խնդրո առարկա որոշումը: Այն ոչ այլ ինչ է, եթե ոչ արձանագրությունների մեջ ներառված հարցերի հայկական կողմի իրավական ըմբռնումը՝ ՀՀ սահմանադրության և օրենքների, ինչպես նաև միջազգային իրավունքի հիման վրա:

Ես համաձայն եմ պրն. Գորդոնի հետ՝ ՍԴ-ի որոշումը չի խոչընդոտում արձանագրությունների վավերացմանը: ՍԴ-ը որոշել է, որ արձանագրությունների նպատակն ու առարկան, այն է դիվանագիտական հարաբերությունների հաստատումն ու սահմանի բացումը, ինչպես նաև դրանցով ստանձնվող պարտավորությունները, չեն հակասում ՀՀ սահմանադրությանը և օրենքներին: Պարզապես ՍԴ-ը հստակեցնում է հայկական կողմի դիրքորոշումն արձանագրությունների մեջ ներառված *__այլ հարցերի__* նկատմամբ և այդ հարցերի նկատմամբ հայկական կողմի ըմբռնումներին տալիս է իրավական ձևակերպումներ: Այստեղ պրն. Գորդոնին պետք է հիշեցնել մի քանի հանգամանք: Առաջին. ՍԴ-ի որոշումը վերջնական և ուժի մեջ մտած դատավճիռ է: Երկրորդ. ՀՀ ՍԴ-ի որոշումը, ինչպես ամերիկացիների համար ԱՄՆ-ի ՍԴ-ի որոշումը, անսակարկ ու պարտադիր փաստաթուղթ է ՀՀ բոլոր քաղաքացիների համար՝ ներառյալ ՀՀ նախագահի և ԱԳ նախարարի, ինչպես նաև ԱԺ պատգամավորների: Երրորդ. ՍԴ-ի որոշումն ամբողջական փաստաթուղթ է, որտեղ իրավական դիրքորոշումն ունի նույնքան իրավական ուժ, որքան եզրափակիչ մասը:

Այսպիսով, առաջին հերթին հաշվի առնելով ՀՀ ՍԴ-ի մասին օրենքի պահանջը, ինչպես նաև ամերիկացիների դրական վերաբերմունքը ՀՀ ՍԴ-ի որոշման նկատմամբ, **__ՀՀ նախագահը պարտավոր է__** խնդրո առարկա արձանագրություններն ԱԺ-ի վավերացմանը ներկայացնել ՀՀ ՍԴ-ի իրավական դիրքորոշմամբ հանդերձ՝ դրանք արդեն իսկ որպես վերապահումներ ձևակերպած:

**Հայաստանի Հանրապետության նախագահը պարտավոր է իր օրինակով մեզ բոլորիս ցույց տալ, որ հարգում է երկրի օրենքները: Ամերիկացիներն էլ պարտավոր են ցույց տալ, որ հարգում են օրենքներն ընդհանրապես և ոչ միայն ամերիկյանը:**

*25 հունվարի, 2010թ.*

## ԿԴ. Սպասելով նախագահի հետագա քայլերին

Հայկական կողմը միայն *«կասեցրեց արձանագրությունների վավերացման գործընթացը»*, այսինքն՝ չստեղծեց նոր իրավիճակ, այլ առկա իրավիճակին տվեց փաստաթղթային ձևակերպում: Ի դեպ, «հայկական կողմ» ասելով, ես նկատի ունեմ Սերժ Սարգսյանին՝ միմիայն: Իհարկե, սույն քայլը փաթեթավորված էր ավանդական «ընդառաջելով աշխատավորների բազում խնդրանքներին» գունաթղթով, այն է *«հաշվի առնելով Հայաստանի ազգային ժողովում քաղաքական կոալիցիա կազմած կուսակցությունների քաղաքական խորհուրդների 2010 թվականի ապրիլի 22-ի համատեղ հայտարարությունը»* պարբերությամբ, սակայն ակնհայտ է, որ որոշումը միանձնյա էր: Եթե Սերժ Սարգսյանն անգամ սրանից հետո վաղը խորհրդարանին հանձնարարի վավերացնել արձանագրությունները, ապա խորհրդարանը նույնպիսի աշակերտական ջանասիրությամբ դա կանի: Պարզապես այդ օրը ճառերը մի փոքր այլ բովանդակությամբ կլինեն, բայց նրանց արտասանողների դեմքերի արտահայտությունը կմնա նույնքան հերոսական: Ցավալի է, որ մենք խորհրդարան չունենք: Պետությունը փախչում է մեր ոտքի տակից ու մենք, ընդհանուր առմամբ, գնալով ավելի ու ավելի քիչ պետություն ենք ունենում: Այսօր մեկ պաշտոնյայի քաղաքական կամքը լիովին դուրս է մղել քաղաքական որոշում կայացնելու պետության գործառույթը: Սա ցավալիորեն նոր երևույթ չէ: Այսօր ավարտին է մոտենում մի գործընթաց, որը սկսվել և խորանալու հակում ուներ դեռ նախորդ 2 նախագահների օրոք: Պարզապես չարաբաստիկ արձանագրություններն ավելի ակնառու դարձրեցին իրավիճակի անհեթեթությունը:

Այսուհանդերձ, արձանագրությունների վավերացման գործընթացի կասեցման բուն քայլը պետք է գնահատել որպես <u>քայլ ճիշտ ուղղությամբ՝ անհրաժեշտ, բայց ոչ բավարար քայլ</u>: Հուսանք, որ քայլերը շարունակական կլինեն, քանի որ ամեն մի ճանապարհ առաջին քայլից է սկսում:

Ո՞րն է այս ամենի մեջ ամենակարևորը: Կարծում եմ դրանք պետք է լինեն հետևություններն ու դասերը: Իր նորագույն պատմության ընթացքում հայոց նորանկախ պետականությունն առաջին անգամ լուրջ քաղաքական փորձության ենթարկվեց և ակնհայտորեն ձախողվեց: Հիմա բաժակաճառերի ժամանակը չէ, պետք է ընդունել՝ ձախողումը կատարյալ է և բացարձակ: Ուրիշ ինչպե՞ս կարելի է

անվանել մի արդյունք, երբ պետությունն իր առջև երկու խնդիր էր դրել՝ դիվանագիտական հարաբերությունների հաստատում և սահմանի բացում, և երկուսում էլ զրոյական արդյունք է:

Իսկ արդյո՞ք հնարավորություն կար արդյունքի հասնելու: Կարծում եմ՝ այո: Բուն սխալն արձանագրությունների ոչ թե նպատակի, այլ արձանագրությունների բովանդակության մեջ էր: Դրանք գերբեռնված էին բազմիմաստ ձևակերպումներով և երկուստեք անընդունելի դրույթներով: Կարծում եմ, որ այս արձանագրությունները դիվանագիտության պատմության մեջ կմնան որպես բարդագույն հարցերը գրչի մի հարվածով լուծելու անպատասխանատու փորձի վառ օրինակներ:

Ի սկզբանե էր բառը և բառը սխալ էր: Եթե արձանագրությունները մի երկու պարբերությամբ ամրագրեին հռչակված նպատակները, ապա մենք այսօր այլ իրավիճակ կունենայինք:

Ինձ կարող են առարկել, թե թուրքերը դրան չէին գնա: Չէին գնա, մենք էլ չէինք ստորագրի, ինչպես չենք ստորագրել առնվազն մի 15 տարի: Հետո սահմանը բացելու այլ ձևեր ևս կան. ի վերջո Թուրքիայի կողմից Հայաստանի շրջափակումը հակասում է իր իսկ ստանձնած միջազգային պատարավորություններին: Իհարկե այս օրերին իրենց գլուխներին շատերը դափնեպսակ կդնեն, սակայն ազնվորեն պիտի խոստովանել՝ արձանագրությունների վավերացման գործընթացի կասեցման մեղքն ու շնորհքը Թուրքիայինն է, մեկ էլ արձանագրությունները մեր կողմից բանակցողներինը: Եթե Թուրքիան բավարարվեր ՀՀ տարածքների ռազմակալման (օկուպացիա) *de jure* հաստատագրումով (որն ամրագրված է գոյություն ունեցող սահմանի ճանաչմամբ) և Հայոց ցեղասպանության ճանաչման գործընթացին մահացու հարված հասցնելով (որն ամրագրված է պատմության հարթության հարցերի հանձնաժողովի ստեղծումով), ապա արձանագրություններն անխոս կվավերացվեին: Սակայն Թուրքիան ցուցաբերեց, ինչպես միշտ, քաղաքական անկշտություն: Նա իր ունեցած նախաճաշին և ճաշին որպես ընթրիք ուզեց ավելացնել նաև ԼՂ հարցը:

Այստեղ անհրաժեշտ է անդրադառնալ երկու հարցի. ա) ինչո՞ւ էր դա ուզում անել *և* բ) ի՞նչ հիմքեր ուներ դրա համար:

ա) Թուրքիայի նպատակը եղել և մնում է հայոց պետականության կործանումը: Ուզում եմ հստակեցնել՝ կործանում ասածը պետք չէ հասկանալ միայն քայլող քարավանների և կանանց ու երեխաների վաճառքի շուկաների տեսքով, ինչպես անցյալում էր: Այսօր իրավիճակն աշխարհում փոխվել է: Այսօր հայոց պետականության կործա-

նումն իրականացվում է պետականության գործառույթների չեզոքացման ճանապարհով: Երբ Հայաստանի Հանրապետությունը վերջնականապես ետ կանգնի իր տարածքային, նյութական և բարոյական կորուստները վերականգնելու ձգտումից, այն ժամանակ էլ այն կդադարի պետություն լինելուց: Կոյուղագծերը և ջրագծերը փոխելու, թոշակները բաժանելու կամ հարկերն հավաքելու համար պետականություն պետք չէ: Դա կարելի է անել նաև պրովինցիայի կամ վիլայեթի մակարդակով: Հայաստանը կարելի է կործանել կամազուրկ և ապազգային Հայաստանի Հանրապետություն կոչվող թուրքական պրոտեկտորատի ստեղծումով: Թուրքիայի համար ակնհայտ է, որ այս ճանապարհին Լեռնային Ղարաբաղն անհաղթահարելի խոչընդոտ է: Քանի դեռ հայերը չեն համաձայնել Լեռնային Ղարաբաղն Ադրբեջանին հանձնելու հետ, իսկ դա սկսվելու է սիրուն բառերի ներքո Լեռնային Ղարաբաղի պաշտպանական կայացած համակարգը կործանելուց, ուրեմն նրանք դեռ պահպանում են ազգ մնալու կամքի վերջին փշուրները: Թուրքական հետևողական պնդումները՝ նպատակաուղղված Լեռնային Ղարաբաղի Հանրապետությունը հանուն հայ-թուրքական հարաբերություններին ուղիղ և փոխաբերական իմաստով մատաղ անելուն, կապ չունեն Ադրբեջանի շահերի հետ: Եթե հարցը վերաբերեր միայն Ադրբեջանի շահերին, ապա Թուրքիան հաճույքով այն աճուրդի կհաներ, ինչպես, օրինակ, արեց 1920թ. ապրիլին: Լեռնային Ղարաբաղի հարցում Հայաստանին զիջումներ պարտադրելու թուրքական քաղաքականությունը պայմանավորված է բուն Թուրքիայի շահերով, այն է՝ հայերին պետություն ունեցող, բայց պետականազուրկ ազգ դարձնելու ձգտումով: Պետականությունը պետության պատյանը չէ, այլ ազգային շահերը հետամտելու կամքը և դրանք կյանքի կոչելու կարողությունը:

բ) Իսկ ի՞նչ հիմքեր ուներ Թուրքիան նման նկրտումների համար: Կարծում եմ կան, և այդ հիմքերը մենք ենք տվել թուրքերին: Երբ արձանագրություններով այդքան դյուրությամբ հրաժարվեցինք մեր հայրենիքից և սակարկման առարկա դարձրեցին մինչևիսկ մեր մեծագույն ողբերգությունը, արձանագրությունները դարձան խիստ ախորժաբեր. ախորժակն ուտելիս է բացվում: Իր քաղաքական որկրամոլությամբ հայտնի Թուրքիայի առջև դնել նման պատառ և Թուրքիայից ժուժկալություն ակնկալել, առնվազն միամտություն էր և է: Ի վերջո պատահական չէ, որ թուրքերի տոտեմը գորշ գայլն է՝ միակ կենդանին, որ սպանում է ոչ թե կշտանալու, այլ սպանելու համար:

Հետևաբար, մենք թուրքերի հետ միասին, թեև ոչ նույն չափով, կիսում ենք հայ-թուրքական միջպետական հարաբերությունների սկզբնավորումը (անհեթեթ է, երբ գործածում են հաշտություն կամ նորմալացում բառերը) ձախողելու համար: Մենք ասելով՝ ես նկատի ունեմ, այն պաշտոնյաներին, ովքեր բանակցել և նախաստորագրել են տխրահռչակ արձանագրությունները: Արձանագրություններ, որոնց մեջ ի սկզբանե դրված էին դանդաղ գործող բազմաթիվ ականներ: Մեր քաղաքական սակրավորները իրենց գործը չեն արել, որի հետևանքով մենք չարդարացված վնասներ ենք կրում և կրելու ենք: Պատասխանատվության իրենց բաժինն ունեն նաև պետական բոլոր այն պաշտոնյաները, ներառյալ պատգամավորները և, այսպես կոչված, գիտնականները, ովքեր աշխատավարձ են ստանում մեր վճարած հարկերից և ի պաշտոնե պարտավոր էին խոսել, մատնացույց անել ականները, սակայն մորթապաշտորեն լռեցին: Պատասխանատու պիտի լինեն բոլորն, ովքեր իրենց գործունեությամբ կամ անգործությամբ նպաստեցին այս իրավիճակի առաջացմանը:

Եթե ՀՀ նախագահի հրամանագրով ԱԺ-ի և շահագրգիռ մարմինների մասնակցությամբ ստեղծվի միջգերատեսչական հանձնաժողով, որի նպատակը լինի հետաքննել, թե ինչպե՞ս ընդունելի գաղափարը, այն է դիվանագիտական հարաբերությունների հաստատումը և սահմանի բացումը, փչացվեց և ի վերջո հասցվեց մահվան դուռը, ապա դեռ պետություն ենք ու ազգ ենք: Եթե հանձնաժողովը պարզի և մեզ պարզաբանի, թե ինչպե՞ս եղավ, որ չարաբաստիկ արձանագրությունների բանակցային գործընթացն ու նախաստորագրումը տեղի ունեցան գործող օրենսդրության կոպտագույն խախտումներով, թե ինչպե՞ս արձանագրությունների մեջ տեղ գտան հակասահմանադրական դրույթներ (հիշենք, որ ՍԴ-ը տվեց իրավական դիրքորոշում-մեկնաբանություն և, միայն դա հաշվի առնելով, տվեց իր դրական եզրակացությունը), ուրեմն նախագահն իսկապես նպատակ ունի վիճակը շտկել:

Եթե ոչ, ուրեմն նախագահի հայ-թուրքական արձանագրությունները կասեցնող հրամանագիրը զուտ ձևական բնույթ ունի և հերթական անգամ ճիշտը Չարենցն է.

– Ողջո՛ւյն արխադաշ Ալուն,

– Հաղթանա՛կ գործին Իլյիչի:

*23 ապրիլի, 2010թ.*

## ԿԵ. Միջազգային իրավունքը որպես փոքրամասնությունների հիմնախնդիրները լուծելու վստահելի ճանապարհ [1]

1991թ. անկախացումից ի վեր Հայաստանի Հանրապետությունն ամեն գնով աշխատել է անխաթար պահել հայ և վրաց ժողովուրդների բարեկամությունը: Հայաստանի բոլոր իշխանությունները հետևողականորեն ջանքեր են գործադրել մեր երկրի և Վրաստանի միջև կայուն բարիդրացիական հարաբերություններ պահպանելու համար: Հայաստանը դա արել է անսակարկ և իր քաղաքականությունը բնավ չի պայմանավորել Վրաստանի ներքաղաքական կամ տարածաշրջանի արտաքին քաղաքական հանգամանքներով:

Դյուրին չի եղել այդ ընթացքը: Վրաստանում մեկը մյուսին հաջորդած հեղաշրջումները, ներքին ռազմական բախումներն ու պատերազմները, ռազմատենչ ազգայնականությունը, այլազգիներին որպես տնվոր ու անկոչ հյուր դիտելու քաղաքականությունը, միջազգային կառույցներում մշտապես Հայաստանի դեմ քվեարկելը, էական խոչընդոտներ են ստեղծել այդ ճանապարհին: Անգամ իր տարածքով հայաստանյան բեռնափոխադրումների իրականացումը Վրաստանը դիտարկել է ոչ թե որպես բազմակողմ և երկկողմ միջպետական պարտավորությունների կատարում, որն էապես համալրում է երկրի բյուջեն, այլ լծակ՝ Հայաստանի հետ հարաբերություններում առավելագույնը կորզելու համար: Նման քաղաքականությունը, թերևս, կարելի է բացատրել Վրաստանի այն սխալ ընկալմամբ, որով մեկնաբանվել և առ այսօր մեկնաբանվում են հայերի և Հայաստանի հանդուրժողականությունն ու համբերատարությունը:

Հայ-վրացական հարաբերությունների մեջ հարցերի մի ողջ փաթեթ առնչվում է վիրահայության ճակատագրին: Թեև այսօր իրավական տեսանկյունից վիրահայությունն ընկալվում է որպես մեկ ամբողջություն, այսուհանդերձ, այն բաղկացած է երկու մեծ՝ սերտաճած ու հարափոփոխ, հատվածից. Թիֆլիսի և այլ քաղաքների ու շրջանների գաղթականասերունդ հայություն և Ջավախքի բնիկ հայություն:

Վիրահայությունն ընդհանրապես և թիֆլիսահայությունը մասնավորապես, բացառիկ դերակատարություն են ունեցել Վրաստանի կյանքում: Աշխարհում քիչ ժողովուրդներ կան, որ

ուրիշի երկրի շենացման գործում այնքան մեծ ներդրում ունեցած լինեն, որքան հայերը՝ Վրաստանի: Դարեր շարունակ հայի քրտինքն առատորեն հոսել է ի շահ Վրաստանի շենացման, իսկ արյունն՝ ի պաշտպանություն այդ երկրի: Հայերը դա արել և անում են՝ առաջնորդվելով իրենց նոր հայրենիքի նկատմամբ ունեցած սիրո և հավատարմության զգացումով: Սակայն միշտ չէ, որ նրանց այդ վարքը գնահատվել ու գնահատվում է ըստ արժանվույն. հաճախ են նրանք երախտագիտության խոսքերի փոխարեն արժանանում պարսավանքի, տուժում ազգային և կրոնական խտրականության դրսևորումներից: Ընդհանուր վիրահայության հարցի մեջ, առանձնակի և էապես տարբեր է Ջավախքի հայության հարցը: Եթե, օրինակ, թիֆլիսահայության համար բնակավայրը եղել է գիտակցված ընտրություն, որի հետևանքով էլ նրանք այսօր ունեն ազգային փոքրամասնության կարգավիճակ, ապա այլ է ջավախահայության ճակատագիրը: Հայրենի հողում ապրող բնիկ հայության այդ հատվածը բոլշևիկյան կամայականության հետևանքով նախ դրվել է Սովետական Վրաստանի վարչական ենթակայության տակ, իսկ ԽՍՀՄ փլուզումից հետո հայտնվել է սեփական հայրենիքի սահմաններից դուրս:

Տեսնենք պատմական ի՞նչ զարգացումների հետևանք է Ջավախքի ներկա կարգավիճակը և ի՞նչ իրավական փաստաթղթերի վրա է դա խարսխված: Երբ 1918թ. մայիսին Ռուսական կայսրության Կովկասի փոխարքայության հարավային մասի վրա իրենց անկախությունը հռչակեցին երեք նորաստեղծ երկիր, միջազգային հանրությունը չէր շտապում ճանաչել դրանց անկախությունը: Կային մի շարք պատճառներ: Էական պատճառներից մեկն այն էր, որ դեռևս չէին հստակեցվել նշյալ երկրների սահմանները: Փարիզի խաղաղության վեհաժողովը (1919-1920թթ.), որի հիմնական խնդիրն էր մշակել նոր աշխարհակարգի ձևավորման սկզբունքները, բնականաբար պիտի անդրադառնար նաև այս նորաստեղծ երկրների՝ Հայաստանի, Վրաստանի և Կովկասի թաթարների պետության սահմաններին: Իհարկե, սահմանների վերջնական հստակեցումը պիտի կատարվեր նշյալ երկրների երկկողմ համաձայնությամբ, այսուհանդերձ Հարավային Կովկասի համար վեհաժողովը որդեգրեց 2 առաջնորդող սկզբունք. ա) Ռուսական կայսրության նախկին վարչատարածքային բաժանումը չի կարող հիմք հանդիսանալ միջպետական օրինական

սահմանների համար; բ) տարածքների իրավատիրությունը որոշելու հարցում պետք է առաջնորդվել ԱՄՆ նախագահ Վիլսոնի *ազգերի ինքնորոշման սկզբունքով* և սահմանորոշումը (delimitation) կատարել՝ հաշվի առնելով ազգային տեղաբաշխման պատկերը: Այս և նման այլ խնդիրներ լուծելու համար Փարիզի վեհաժողովի շրջանակներում ստեղծվեցին մի շարք հանձնաժողովներ և աշխատանքային խմբեր: Միացյալ Նահանգները, բացի համատեղ աշխատանքներին մասնակցելուց, ստեղծեց նաև հատուկ հանձնախումբ. *Ամերիկյան պատվիրակության հետախուզական բաժինը (The Intelligence Section of the American Delegation)*, որի նպատակն էր մշակել ԱՄՆ դիրքորոշումը բոլոր կարևորագույն հարցերի շուրջ: Ահա այս հանձնախումբը պատրաստեց և 1919թ. հունվարի 31-ին նախագահ Վիլսոնի ուշադրությանը ներկայացրեց ԱՄՆ դիրքորոշման հիմնադրույթները Հարավային Կովկասի և Միջին արևելքի տարածքային հարցերի նկատմամբ: Այստեղ, բնականաբար անդրադարձ կար նաև Հայաստանի սահմաններին: Ամերիկյան մոտեցմամբ Ջավախքը միանշանակորեն դիտարկվում էր որպես Հայաստանի Հանրապետության տարածք. *«Նախկին Ռուսական [կայսրության] Կարսի և Երևանի նահանգների, Ախալքալաքի և Ախալցիխի ենթաշրջանների հետ միասին, ներառումը պայմանավորված է այն փաստով, որ դրանք ունեն հայկական բնակչության ամենամեծ զանգվածը» (The inclusion of the former Russian provinces of Kars and Erivan, with the sub-districts of Akhalkalaki and Akhaltsikh, is determined by the fact that they contain the largest block of Armenian peoples.)*[2]

Հետագայում Ջավախքի հայաստանապատկանությունը վերահաստատվեց Ազգերի լիգայի խորհրդի հովանու ներքո գործող *Հայաստանի սահմանները որոշող հատուկ հանձնաժողովի (Commission for the Delimitation of the Boundaries of Armenia)* կողմից: Սույն հանձնաժողովի զեկույցի տակ դրված են Ազգերի լիգայի Խորհրդի (Council of League of Nations) անդամ երկրների՝ Ֆրանսիայի, Բրիտանական կայսրության, Իտալիայի և Ճապոնիայի, լիազոր ներկայացուցիչների ստորագրությունները: Այս զեկույցը, որը թվագրված է 24 փետրվարի, 1920թ.-ով և վերնագրված է *«Զեկույց և առաջարկներ Հայաստանի սահմանները որոշող հանձնաժողովի» (Report and Proposals of the Commission for the Delimitation of the Boundaries of Armenia, 24 February 1924)*[3]

հստակեցրել և ամրագրել է Հայաստանի Հանրապետության սահմանազատման սկզբունքները նրա հյուսիսային հարևանների հետ: Այն մասնավորապես արձանագրում է. *«Ինչ վերաբերում է Հայաստանի պետության և Վրաստանի, ինչպես նաև Ադրբեջանի սահմանին, ապա Հանձնաժողովը գտնում է, որ ներկայումս նախընտրելի է սպասել վերոնշյալ սահմանների հստակեցման վերաբերյալ այնպիսի համաձայնության արդյունքների, որոնց երեք հանրապետություններն իրենք կհանգեն պայմանագրերի մեջ: Այն դեպքում, եթե սույն հանրապետություններն իրենց սահմանների վերաբերյալ չեն հանգի որևէ համաձայնության, ապա հարցը պետք է փոխանցվի Ազգերի լիգայի իրավարարությանը, որը կստեղծի միջդաշնակցային Հանձնաժողով՝ տեղում որոշելու վերոնշյալ սահմանները՝ հաշվի առնելով, որպես սկզբունք, ազգագրական տվյալները»: (As regards the boundary between the State of Armenia and Georgia and Azerbaijan, the Commission considers that, it is advisable for the present to await the results of the agreement, provided for in the treaties existing between the three Republics, in regard to the delimitation of their respective frontiers by the States themselves. In the event of these Republics not arriving at an agreement respecting their frontiers, resort must be had to arbitration by the League of Nations, which would appoint an interallied Commission to settle on the spot the frontiers referred to above, taking into account, in principle, ethnographical data.)*

Հույժ կարևոր է, որ նշյալ փաստաթուղթն ընդգրկվել է ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի իրավարար վճռի (22 նոյեմբերի, 1920թ.) (Arbitral Award, November 22, 1920) Ամբողջական զեկույցի մեջ, որպես 1-ին հավելվածի 2-րդ փաստաթուղթ (Full Report, Annex I, No 2), որը վկայում է, որ Միացյալ Նահանգները ճանաչել են նշյալ փաստաթղթի իրավական էությունն ու օրինականությունը:

Նշյալ դրույթները ներառվել են նաև Սևրի պայմանագրի (10 օգոստոսի, 1920թ.) մեջ,[4] որպես Պայմանագրի 92-րդ հոդված. *«Հայաստանի և Ադրբեջանի, ինչպես նաև Վրաստանի, միջև սահմանները կորոշվեն շահագրգիռ երկրների ուղղակի համաձայնության միջոցով: Այն դեպքում, երբ շահագրգիռ երկրները մինչև 89-րդ հոդվածում հիշատակված որոշման օրը չեն կարողանա համաձայնությամբ որոշել սահմանները, ապա խնդրո առարկա սահմանը կորոշվի Գլխավոր դաշնակից ուժերի կողմից, որոնք էլ տեղում կիրականացնեն նաև սահմանանշումը»: (The frontiers between*

*Armenia and Azerbaijan and Georgia respectively will be determined by direct agreement between the states concerned. In the either case the States concerned have failed to determine the frontier by agreement at the date of the decision referred to in Article 89, the frontier line in question will be determined by the Principal Allied Powers, who will also provide for its being traced on the spot).* Սկզբունքները մշակված էին, վճիռները՝ կայացված, անգամ Սահմանային հանձնաժողովն (Boundary Commission) էր ձևավորված:

Սակայն Հայաստանի, ապա և Վրաստանի խորհրդայնացումը, Ազգերի լիգային թույլ չտվեց իրականացնել իր իսկ որոշումը, այն է ազգային տեղաբաշխման սկզբունքի հիման վրա կատարել սահմանազատում և սահմանանշում: Իշխանության եկած բոլշևիկները, թեև մշտապես խոսում էին ազգերի ինքնորոշումից, սակայն, ինչպես միշտ, Ջավախքի հարցում էլ նրանց գործը տարբերվեց խոսքից:

Այսպես, 1921թ. հուլիսի 7-ին Թիֆլիսում տեղի ունեցավ Ռուսաստանի Սոցիալ-Դեմոկրատական (բանվորական) Կուսակցության Կովկասյան բյուրոյի պլենումի նիստ, որի հարցերից մեկը վերաբերում էր Ջավախքին: *«Հայաստանին Ախալքալաքի և Խրամի (Ծալկայի) շրջանների միացման հարցը»* որոշվեց փոխանցել Վրաստանի Կոմկուսի կենտկոմ, վեջինիցս այդ մասին ստացվելիք եզրակացությունը դնել Կավբյուրոյի հաջորդ նիստի քննարկմանը:[5] 1921թ. հուլիսի 16-ին տեղի ունեցավ Վրաստանի կոմկուսի կենտկոմի բյուրոյի նիստ՝ Մախարաձեի, Մդիվանու և Օրախելաշվիլու մասնակցությամբ: Նիստը Ջավախքի վերաբերյալ ընդունեց հետևյալ որոշումը. *«Թիֆլիսի հետ Ախալքալաքի շրջանի ունեցած քաղաքական, ինչպես նաև տնտեսական կապերի նկատառումներից ելնելով՝ ընկերներ հայերի առաջարկությունը համարել անընդունելի»*:[6] Ահա այսպես, առանց որևէ իրավական վճռի, միայն կուսակցական որոշումով, Ջավախքը 1921-1991թթ. հայտնվեց Վրաստանի ՍՍՀ ենթակայության ներքո: Անհրաժեշտ է ընդգծել, որ հետխորհրդային Վրաստանի բոլոր ղեկավարներն ու կառավարությունները միանշանակ բացասական գնահատականներ են տվել Վրաստանում կոմունիստական տիրապետության ժամանակաշրջանին (1921-91թթ.), մերժել են այն, իրավացիորեն այդ ժամանակաշրջանը համարել օտարերկրյա ռազմական ուժի կողմից վրաց ժողովրդի պետականազրկման, երկրի ապօրինի բռնազավթման (1921թ. փետրվարից), ապա և բռնակցման (1922թ. դեկտեմբերից) տարիներ:

Միջազգային իրավունքի տեսանկյունից միանգամայն օրինաչափ գնահատականներ, քանի որ նույն միջազգային իրավունքի հիմնադրույթներից է, որ զավթիչ վարչախմբի (օկուպացիոն ռեժիմի) գործողությունները չեն կարող և չեն ծնում իրավական հետևանքներ տվյալ երկրի համար, անկախ այն բանից՝ այդ հետևանքները դրական են, թե բացասական: Վրացկոմկուսի որոշման անօրինականության փաստն ամրապնդվում է նաև այն հանգամանքով, որ ներկա Վրաստանի ուղղակի իրավահաջորդությունը Վրաստանի առաջին հանրապետությանը ամրագրված է *«Վրաստանի պետական անկախության վերականգնման ակտով»*, (9 ապրիլի, 1991թ.), որն էլ վկայակոչման ճանապարհով ներառված է Վրաստանի գործող սահմանադրության 1-ին հոդվածի 1-ին մասում: Այսպիսով, միանգամայն հստակ է, որ չկա որևէ միջազգային փաստաթուղթ (international instrument), որը միջազգային իրավունքի հիման վրա և միջազգային իրավունքի ընթացակարգի կիրառմամբ որոշած լինի սահմանը ՀՀ-ի և Վրաստանի միջև: Ավելին, չկա որևէ միջազգային փաստաթուղթ, որը հիմք կհանդիսանա Ջավախքի տարածաշրջանի (կամ ինչպես ամերիկացիներն էին գրում, Ախալքալաքի և Ախալցիխի ենթաշրջանների) վրա վրացական տիտղոսի ամրակցման (consolidation) համար: Ընդհակառակը, կան միջազգային փաստաթղթեր,[7] որոնց մեջ ընդգրկված սկզբունքները և առաջարկները ամրակցել են հայկական տիտղոսը խնդրո առարկա տարածքի վրա և հստակ նախանշել հայ-վրացական սահմանազատման միակ օրինական ուղին, այն է՝ ըստ ազգագրական պատկերի: Առնվազն տարօրինակ է, որ այսօր փորձ է արվում կուսակցական որոշումներին գերակա կարգավիճակ տալ միջազգային փաստաթղթերի նկատմամբ: Այսուհանդերձ, ՀՀ-ն և ջավախահայությունը երբեք չեն բարձրացրել միջազգային իրավունքով իրենց վերապահված իրավունքների կյանքի կոչման հարցը: Նրանք հանուն տարածաշրջանային կայունության և հանուն երկու ժողովուրդների բարեկամության անխաթարության մշտապես ձգտել են հարցերը լուծել փոխզիջումների և բարիկամեցողության ոգով: Միևնույն ժամանակ Հայաստանն ու հայությունը լռելյայն ակնկալել են, որ Վրացական իշխանությունները կհասկանան հարցի նրբությունը և առկա խնդիրները կլուծեն նույն փոխզիջումների և բարիկամեցողության ոգով: Ջավախքում կյանքը միշտ էլ դժվար է եղել, սակայն կրկնակի դժվար է հայրենի

հողում խորը զավակ լինելը: Այսօր Վրաստանի իշխանությունները, հակառակ իրենց ստանձնած բազմաթիվ միջազգային պարտավորությունների, վիրահայության և, մասնավորապես ջավախահայության նկատմամբ, իրականացնում են կոպիտ խտրականության և կոշտ ճնշման քաղաքականություն: Ազգային ինքնության ցանկացած դրսևորում որակվում է որպես ազգայնականություն, ցանկացած պատմական կամ իրավական հարցի քննարկում պիտակվում է որպես անջատողականություն, ցանկացած մշակութային ձեռնարկ դիտարկվում է կասկածամտությամբ: Հաճախ այս ամենը վերջանում է պատժիչ անօրինական գործողություններով:

ՀՀ իշխանությունների թողտվությամբ և Վրաստանի իշխանությունների գործողությունների պատճառով ջավախահայությունը հետզհետե գլորվում է մեկուսացման գիրկը, որի հետևանքով նրանց մեջ կուտակվում է անձնական և ազգային վիրավորանքը: Հայաստանի իշխանություններն իրավունք չունեն անտարբեր գտնվելու հայության այդ մի արժանավոր հատվածի նկատմամբ:

Ջավախքի հայկական գոյությունը Հայաստանի Հանրապետության անվտանգության անկյունաքարերից է: Ջավախքը Հայաստանը մեծ աշխարհի հետ անխափան կապ ունենալու երաշխիքն է: Վրաստանի իշխանություններն էլ, իրենց իսկ երկրի շահերից ելնելով, պիտի գավառային խորամանկություն չանեն և պիտի չբավարարվեն Ջավախքում առկա հիմնախնդիրներին միայն սոցիալ-տնտեսական բացատրություններ տալով: Մարդիկ հաճախ անձնական դժվարություններն ավելի հեշտ են տանում, քան ազգային վիրավորանքն ու խտրականությունը:

Ջավախահայությունը Վրաստանում այսօր 2 կարգավիճակ ունի: Այն, ինչպես ողջ վիրահայությունը, ազգային փոքրամասնություն է, միևնույն ժամանակ նաև բնիկ ժողովուրդ է: Հետևաբար, ջավախահայության կյանքը Վրաստանում պետք է կարգավորվի ոչ միայն Վրաստանի օրենքներով, այլև ազգային փոքրամասնություններին և բնիկ ժողովուրդներին վերաբերող միջազգային այն փաստաթղթերով, որոնց մաս է կազմում Վրաստանը:

Այս առումով խիստ շահեկան է «Միտք» վերլուծական կենտրոնի հովանու ներքո Վահե Սարգսյանի կողմից պատրաստված «Ջավախահայության իրավունքների ամրագրումը միջազգային փաստաթղթերում» ժողովածուն: Ժողովածուի մեջ ի մի են բերված միջազգային իրավունքի այն փաստաթղթերը, որոնցով Վրաստանն

անսակարկ պարտավորություն է ստանձնել իր երկրի ազգային, կրոնական (հարանվանական), լեզվական և այլ փոքրամասնությունների իրավունքները հարգելու և պաշտպանելու գործում: Ջավախահայության իրավունքները ոչ միայն ամրագրված են Վրաստանի ներքին օրենսդրությամբ, այլև միջազգային իրավունքով: Այսօր Վրաստանը մաս է հանդիսանում հինգ տասնյակից ավելի միջազգայնագրերի՝ կոնվենցիաների, բազմակողմ արձանագրությունների, համաձայնագրերի, կանոնակարգերի և այլն, որոնք ուղղակի և անուղղակի վերաբերում են ազգային և կրոնական փոքրամասնություններին, հասարակության կայուն խմբերին, տեղաբնիկ ժողովուրդներին:

Ցավոք սրտի, այսօր կարող ենք ասել, որ Հայաստանի Հանրապետությունը Վրաստանի, ինչպես նաև Թուրքիայի և Ադրբեջանի հետ հարաբերություններում, ոչ բավարար է օգտագործում բազմակողմ միջազգային փաստաթղթերի ընձեռած հնարավորությունները: Ցանկացած փոքրամասնություն ընդհանրապես ավելի խոցելի է: Միջազգային հանրությունը սա վաղուց է գիտակցել, ուստի միջազգային իրավունքի համապատասխան փաստաթղթերի միջոցով փոքրամասնություններին ոչ միայն հիմնական բնակչության հետ հավասարազոր իրավունքներ է շնորհել, այլև նրանց օժտել է որոշակի առանձնաշնորհումներով և նրանց շահերի պաշտպանությանը տվել է լրացուցիչ երաշխիքներ:

Հայաստանը և Վրաստանը հարևան երկրներ են և այդպիսին մնալու են: Հարևան երկրների միջև, ինչպես առօրյա կյանքում հարևանների միջև, կարող են առաջանալ թյուրիմացություններ, ծագել տարաբնույթ վեճեր ու անհամաձայնություններ, մինչևիսկ շահերի բախումներ: Այսօր քաղաքակիրթ երկրները, մանավանդ Արևմուտքի, որին այդքան ձգտում են Հայաստանը և հատկապես Վրաստանը, հարևանների հետ խնդիրները լուծում են միջազգային օրենքի դաշտում: Այսօր միջազգային իրավունքում առկա է բավականին կայացած իրավական դաշտ, որտեղ կարելի է լուծել նաև փոքրամասնությունների, հասարակական կայուն խմբերի և տեղաբնիկ համայնքների առջև ծառացած խնդիրները, մասնավորապես վիրահայության և նրա մի հատվածը հանդիսացող ջավախահայության խնդիրները:

Ընդհանրապես ցանկացած հարց կարելի է լուծել, եթե իհարկե Վրաստանի իշխանություններն այն լուծելու ցանկություն ունենան և

փորձ չանեն հարցի էությունը նենգափոխելու ճանապարհով առկա հիմախնդիրները ներկայացնել լոկ որպես Վրաստանի ողջ բնակչության համար ընդհանուր դժվարություններ:

Ջավախքն ու ջավախահայությունն ունի իր առանձնահատկությունն ու առանձնահատուկ խնդիրները, ուստի նա կարիք ունի, որ դրանք համապատասխանաբար ընկալվեն և լուծումների արժանանան:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Նախաբանի փոխարեն. Ջավախահայության իրավունքների ամրագրումը միջազգային փաստաթղթերում. «Միտք» վերլուծական կենտրոն, Երևան, 2009:
2. Tentative Recommendations for President Wilson by the Intelligence Section of the American Delegation to the Peace Conference, 21 Jan 1919. [Hurewitz J.C. Diplomacy in the Near and Middle East, v. II, A Documentary Record, 1914-1956. New Jersey, 1956, p. 42.]
3. United States National Archives. Records of the Department of State Relating to Political Relations between Armenia and other States, 1910-1929, 760J.6715/60-760J.90C/7. Appendix I, No. 2.
4. Պետք է շեշտել, որ Սևրի պայմանագիրը կատարման համար պարտադիր փաստաթուղթ է, քանի որ այն ստորագրվել է «բարձր պայմանավորվող կողմերի» միջև և, ինչպես ամրագրված է Վիեննայի Պայմանագրերի մասին միջազգայնագրի (1969թ.) 2-րդ հոդվածի 6-րդ կետով, և Պայմանագրերի նկատմամբ պետությունների իրավահաջորդության մասին Վիեննայի միջազգայնագրի (1978թ.) 2-րդ հոդվածի 11-րդ կետով, կողմերը պարտավորվում են պայմանագիրն ընդունել որպես կատարման համար պարտադիր փաստաթուղթ, անկախ պայմանագրի ուժի մեջ մտած կամ չմտած լինելուց:
5. ՀՀ ՀՔԿՓ ԿՊԱ, Հավաքածու 1, գ. 7, թ. 45:
6. ՀՀ ՀՔԿՓ ԿՊԱ, Հավաքածու 1, գ. 7, թ. 43:
7. Օրինակ՝ 1. Tentative Recommendations for President Wilson by the Intelligence Section of the American Delegation to the Peace Conference, 21 Jan 1919; 2. League of Nations Council, Report and Proposals of the Commission for the Delimitation of the Boundaries of Armenia, 24 Feb 1924; 3. Woodrow Wilson, Arbitral Award, Full Report, 22 Nov 1920, Annex I, No 2.

*12 սեպտեմբերի, 2009թ.*

## ԿՁ. **Պետությունների և պայմանագրերի նկատմամբ իրավահաջորդության հարցը**

*/Մոսկվայի և Կարսի պայմանագրերի օրինակով/*

Պետությունների իրավահաջորդության (state succession)՝ մասնավորապես պայմանագրերի նկատմամբ իրավահաջորդության հարցը, լինելով միջազգային հանրային իրավունքի հարց, ներկայումս ունի հույժ գործնական նշանակություն: Հայ-թուրքական զույգ արձանագրությունների լույսի ներքո, հատկապես նրանցից առաջինում *«միջազգային իրավունքի համապատասխան պայմանագրերի»* վկայակոչման պարագայում, այդ հարցը ձեռք է բերել միանգամայն կիրառական նշանակություն: Թուրքական կողմը *«միջազգային իրավունքի համապատասխան պայմանագրեր»* բառակապակցությունը մեկնաբանում է որպես Մոսկվայի (16.03.1921թ.) և Կարսի (13.10.1921թ.) պայմանագրեր:

Ըստ այդմ, մեր խնդիրն է համառոտակի քննարկել մի քանի հարց.

1. Ընդհանրապես պետությունների իրավահաջորդության հարցը:
2. Պայմանագրերի նկատմամբ պետությունների իրավահաջորդության հարցը:
3. Մասնավորապես, Մոսկվայի (16.03.1921թ.) և Կարսի (13.10.1921թ.) պայմանագրերի նկատմամբ Հայաստանի Հանրապետության իրավահաջորդության հարցը:

1. <u>Պետությունների իրավահաջորդության հարցը</u>**.**

*ա) ՀՍՍՀ և ՀՀ իրավահաջորդության հարցը.*

Պետությունների իրավահաջորդությունը *«տվյալ տարածքի վրա, ըստ միջազգային իրավունքի, <u>մի պետության ինքնիշխանության վերջնական փոխարինումն է մեկ այլ պետության ինքնիշխանությամբ</u>»*: *State succession is a definitive replacement of one state by another in respect of sovereignty over a given territory in conformity with international law.*[1]

Այսու, պետությունների իրավահաջորդությունը վերացական հասկացություն չէ, այլ ածանցվում է ինքնիշխանությունից (sovereignty): Միմիայն երկու ինքնիշխան պետությունների միջև կարող է լինել իրավահաջորդություն: Քանի որ ինքնիշխանությունը պետության բացառիկ իրավունքն է կառավարելու սեփական բնակչության հարաբերությունները և զերծ լինելու արտաքին վերահսկողությունից

*(Sovereignty is the exclusive right of a State to govern the affairs of its inhabitants – and to be free from external control)*,[2] ապա ակնհայտ է, որ Հայաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը (ՀՍՍՀ) երբևէ չի եղել ինքնիշխան պետություն: Քանի որ ՀՍՍՀ-ն չի եղել ինքնիշխան պետություն, հետևաբար Հայաստանի Հանրապետությունը չի կարող լինել նրա իրավահաջորդը: 1920թ. դեկտեմբերից (երբ Հայաստանը բռնազավթվեց արտաքին ռազմական ուժի կողմից և ՀՍՍՀ-ում օրենքի ուժ ստացան ՌՍՖՍՀ-ում գործող դեկրետները) մինչև 1991թ. սեպտեմբեր / դեկտեմբերը (երբ գործում էին միութենական սահմանադրությունը, օրենքներն ու կարգերը), ՀՍՍՀ երբեք բացառիկ իրավունք չի ունեցել ո՛չ սեփական տարածքի և ո՛չ էլ սեփական բնակչության նկատմամբ:

Հայաստանի Հանրապետության ինքնիշխանության վերականգնումը հռչակվել է Անկախության հռչակագրի (23.08.1990թ.) 2-րդ կետով. *«Հայաստանի Հանրապետությունը ինքնիշխան պետություն է՝ օժտված պետական իշխանության գերակայությամբ, անկախությամբ, լիիրավությամբ: Հայաստանի Հանրապետության ամբողջ տարածքում գործում են միմիայն Հայաստանի Հանրապետության սահմանադրությունը և օրենքները»*:

*բ) ԽՍՀՄ և ՀՀ իրավահաջորդության հարցը.*

Իրավահաջորդությունը լայն առումով և, մասնավորապես պայմանագրային իրավունքների ու պարտավորությունների մասով, ոչ թե պետության կամքի կամ ցանկության հարց է, այլ տվյալ պետության ժառանգած տարածքի կարգավիճակից, չափից և նշանակությունից ածանցվող իրավական հետևություն: Այսինքն, այս հարցում վճռորոշն այն իրավական կարգավիճակն է, ինչպես նաև չափն ու նշանակությունը, որն անջատվող տարածքը կամ միավորն ունեցել է նախկին պետության մեջ: Երբ նոր երկիրն առաջանում է նախկին պետության բուն և իշխանակիր *(core and dominant)* տարածքի վրա, ապա այն կոչվում է նոր երկիր *(new state)* և հանդիսանում է գոյություն ունեցող պայմանագրային իրավունքների և պարտավորությունների (existing treaty rights and obligations) իրավահաջորդը: Օրինակ, երբ Ավստրո-Հունգարիան Առաջին աշխարհամարտից հետո տրոհվեց, ապա Ավստրիան և Հունգարիան ամբողջությամբ ժառանգեցին Ավստրո-Հունգարիայի իրավունքներն ու պարտավորությունները:[3] Նույն կայսրությունից անջատված Չեխոսլովակիան և Լեհաստանը, որոնք առաջ եկան որպես նորաստեղծ պետություններ (newly independent

state) չհանդիսացան իրավահաջորդներ և նրանց պարագայում գործեց *tabula rasa*-յի (մաքուր տապանակի, clean slate*)* սկզբունքը:[4]

Բնական է, որ ցանկացած պետություն կայանում է որոշակի տարածքի վրա: Հարմարության համար այդ տարածքն անվանենք *պետականաստեղծ տարածք*: Եթե պետականաստեղծ տարածքն ունեցել է նախկին գաղութի կամ արտաքին քաղաքականության հարցերում կախյալ տարածքի կարգավիճակ (former colonies and other territories dependent upon a dominant state for the conduct of foreign policy), ապա տվյալ դեպքում գործում է *tabula rasa* սկզբունքը:[5] Այսինքն, տրամաբանությունը շատ հստակ է. նորանկախ երկիրը չի կարող պատասխանատվություն կրել մի բանի համար, մեզ հետաքրքրող պարագայում՝ արտաքին քաղաքականության, որի կայացման և ընթացքի վրա ոչ մի ազդեցություն չի ունեցել:[6]

Ակնհայտ է, որ արտաքին քաղաքականության հարցերում, ինչպես նաև մնացած բոլոր հարցերում, ՀՍՍՀ ունեցել է կախյալ տարածքի կարգավիճակ: Ըստ այդմ, Հայաստանի Հանրապետության դեպքում անտարակույս գործում է *tabula rasa*-յի սկզբունքը:

Բացի այդ, ՀՍՍՀ իր տարածքով և բնակչությամբ չէր կարող հավակնել ԽՍՀՄ տարածքի բուն և իշխանակիր տարածք լինելուն: ՀՍՍՀ-ն եղել է ԽՍՀՄ տարածքի մոտավորապես 0.14%-ը (22.402.200 քկմ-ից 29.800 քկմ) և ունեցել է բնակչության գրեթե 1.2%-ը (290 միլիոնից 3.4 միլիոնը):

Միջազգային իրավունքի տեսանկյունից 14 նորանկախ երկրի, այդ թվում նաև Հայաստանի Հանրապետության, առաջացումը տեղի է ունեցել ոչ թե ԽՍՀՄ տրոհումով, ինչպես հաճախ բնութագրվում է լրագրողական մակարդակում, այլ մայր երկրից (parent state)՝ ԽՍՀՄ-ից, նրա մասերի անջատումով և նորանկախ պետությունների ստեղծումով: Անգամ դրանից հետո Ռուսաստանի տարածքը շարունակում է շատ ավելի մեծ լինել, քան հիշյալ բոլոր 14 պետությունների տարածքները միասին վերցրած: Այդ իսկ պատճառով, Ռուսաստանի Դաշնությունն անվիճելիորեն համարվեց ԽՍՀՄ շարունակությունը (continuity) և նրա համար, ի տարբերություն մյուսների, կարիք չառաջացավ նորից վերանդամակցելու միջազգային կառույցներին կամ վերաստորագրելու ԽՍՀՄ միջազգային, բազմակողմ և երկկողմ պայմանագրերը:

ՄԱԿ-ի քարտուղարությունն այլ առիթով՝ Հնդկաստանից Պակիստանի անջատման ժամանակ (1947թ.), անդրադարձել է

նույնաբովանդակ հարցի և տվել իր միանշանակ իրավական գնահատականը. *«Միջազգային իրավունքի տեսանկյունից իրավիճակը հետևյալն է. գոյություն ունեցող պետության մի մասն անջատվում է և դառնում է նոր երկիր: Ըստ այդմ, Հնդկաստանի միջազգային կարգավիճակում չկա որևէ փոփոխություն, այն շարունակում է մնալ պետություն՝ պայմանագրերի բոլոր իրավունքներով և պարտավորություններով, և հետևաբար, ՄԱԿ-ի անդամակցության բոլոր իրավունքներով և պարտավորություններով: Անջատվող տարածքը՝ <u>Պակիստանը, կլինի նոր երկիր, այն չի ունենա հին [նախկին] պետության իրավունքներն ու</u> պարտավորությունները, և այն, իհարկե, չի ունենա [ժառանգի] անդամակցություն ՄԱԿ-ում»*: *From the viewpoint of international law, the situation is one in which a part of an existing State breaks off and becomes a new State. On this analysis, there is no change in the international status of India; it continues as a State with all the treaty rights and obligations, and consequently, with all the rights and obligations of membership in the United Nations. The territory which breaks off, Pakistan, will be a new State; it will not have the treaty rights and obligations of the old State, and it will not, of course, have membership in the United Nations.*[7]

ՄԱԿ-ի քարտուղարության իրավական պարզաբանումից միանշանակորեն կարելի է եզրակացնել, որ անջատվող երկիրը չի հանդիսանում նախկին պետության պայմանագրային իրավունքների և պարտավորությունների իրավահաջորդը:

2. <u>Պայմանագրերի նկատմամբ պետությունների իրավահաջորդության հարցը.</u>

Միջազգային իրավունքի ցանկացած հարցի քննարկման համար միջազգային իրավունքը որպես առաջնային աղբյուր է դիտարկում միջազգային կոնվենցիաները՝ լինի դա ընդհանուր կամ մասնահատուկ (international conventions, whether general or particular):[8]

Այս տեսանկյունից բացառիկ կարևորություն ունի Պայմանագրերի նկատմամբ պետությունների իրավահաջորդության վերաբերյալ Վիեննայի (1978թ.) կոնվենցիան (The Vienna Convention on Succession of States in respect of Treaties, 1978)[9] [հետայսու՝ Վիեննայի կոնվենցիա (1978)]: Թեև նշյալ փաստաթուղթը դեռևս մասնակիցների լայն ընդգրկում չունի, այնուհանդերձ այն խնդրո առարկա հարցի մեկնաբանության կարևորագույն մեկնակետն է, քանի որ իր մեջ է ամփոփել Միջազգային իրավունքի հանձնաժողովի (International Law Commission) տասնամյակների աշխատանքը և կուտակած փորձը:

Վիեննայի կոնվենցիան (1978) ամրագրել է հետևյալը.

• *«Նորանկախ պետությունը պարտավորված չէ ուժի մեջ թողնել կամ կողմ դառնալ որևէ պայմանագրի միայն այն պատճառով, որ պետությունների փոխհաջորդման օրն այդ պայմանագիրն ուժի մեջ է եղել խնդրո առարկա (պետությունների փարանջապված) փարածքի համար»*: [Հոդված 16. Դիրքորոշում նախորդող պետության պայմանագրերի նկատմամբ]: *A newly independent State is not bound to maintain in force, or to become a party to, any treaty by reason only of the fact that at the date of the succession of States the treaty was in force in respect of the territory to which the succession of States relates. [Article 16. Position in respect of the treaties of the predecessor State].*

Միջազգային իրավունքի վերոհիշյալ սահմանումից ակնհայտ է, որ պետությունների ընդհանուր իրավահաջորդությունը, որն էության մեջ իրարահաջորդություն է, և պայմանագրերի նկատմամբ իրավահաջորդությունը 2 տարբեր իրավական երևույթներ են: Այսինքն, երբ առաջ է գալիս նորանկախ երկիր, ապա դա բնավ չի նշանակում, որ այն ժառանգում է նաև տվյալ տարածքին վերաբերող միջազգային իրավունքով ամրագրված պարտավորությունները:[10] Ինչպես գրել ենք վերը, դա առավելապես պայմանավորված է պետականաստեղծ տարածքի նախկինում ունեցած իրավական կարգավիճակից: Հայաստանի Հանրապետության պարագայում, որպես նորանկախ երկրի, միանշանակորեն գործել է *tabula rasa*-ի սկզբունքը:

Այսուհանդերձ, ԱՊՀ որոշ փաստաթղթերում, ինչպես նաև միջազգային պայմանագրերում կարելի է հանդիպել «ԽՍՀՄ իրավահաջորդ-պետություններ» *(государства-правопреемники СССР)* բառակապակցությունը: Ակնհայտ է, որ սա քաղաքական-կարգավիճակային բնութագրում է և վերաբերում է ընդհանուր իրավահաջորդությանը (գույք, պարտքեր, զինամթերք, արխիվներ և այլն): Այն չի կարող վերաբերել և չի վերաբերում պայմանագրային իրավահաջորդությանը, քանի որ Անկախ երկրների համագործակցության հիմնադիր փաստաթուղթն (Ալմա-Աթայի հռչակագիր, 21 դեկտեմբերի, 1991թ.) ամրագրում է սոսկ «նախկին ԽՍՀՄ պայմանագրերից և համաձայնագրերից բխող միջազգային պարտավորությունների կատարման երաշխավորումը» և ոչ՝ իրավահաջորդությունը, այն էլ միայն «համաձայն իրենց սահմանադրական ընթացակարգի», այսինքն համապատասխան վավերացումից հետո: (Государства-участники Содружества гарантируют в соответствии со своими конституционными процедурами выполнение международных

обязательств, вытекающих из договоров и соглашений бывшего Союза ССР. Алма-Ата, 21 декабря 1991г.)

Ավելին, 1992թ. հուլիսի 6-ին ԱՊՀ երկրների ղեկավարները ստորագրել են «Փոխըմբռնման հուշագիր փոխադարձ հետաքրքրություն ներկայացնող նախկին ԽՍՀՄ պայմանագրերի նկատմամբ իրավահաջորդության մասին» (Меморандум о взаимопонимании по вопросу правопреемства в отношении договоров бывшего СССР, представляющих взаимный интерес):[11] Հուշագիրը մասնավորապես հստակեցնում է, որ ամեն մի երկիր ինքն է որոշելու յուրաքանչյուր պայմանագրին միանալ-չմիանալու հարցը՝ ելնելով պայմանագրի բնույթից և բովանդակությունից: «Այդ [նախկին ԽՍՀՄ] պայմանագրերին մասնակցելու հարցը կլուծվի ԱՊՀ յուրաքանչյուր երկրի կողմից ինքնուրույնաբար՝ համաձայն միջազգային իրավունքի սկզբունքների և նորմերի, կախված յուրաքանչյուր կոնկրետ դեպքից, այս կամ այն պայմանագրի բնույթից և բովանդակությունից»: (Вопрос об участии в этих договорах [бывшего Союза ССР ] решается в соответствии с принципами и нормами международного права каждым государством-участником Содружества самостоятельно, в зависимости от специфики каждого конкретного случая, характера и содержания того или иного договора.)

Օրինակ, այդ հուշագրից հետո (13.08.1992թ.) Ադրբեջանը պաշտոնապես տեղեկացրեց (notified) ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարին, որ ինքը չի հանդիսանում ԽՍՀՄ պայմանագրերի իրավահաջորդը, բացառությամբ մարդու իրավունքներին վերաբերող 3 պայմանագրերի:[12]

### 3. Մոսկվայի (16.03.1921թ.) և Կարսի (13.10.1921թ.) պայմանագրերի նկատմամբ Հայաստանի Հանրապետության իրավահաջորդության հարցը.

Անհրաժեշտ է ընդգծել, որ «նախկին ԽՍՀՄ պայմանագրերից և համաձայնագրերից բխող միջազգային պարտավորությունների կատարման երաշխավորումը» չի կարող վերաբերել և չի վերաբերում Մոսկվայի (16.03.1921թ.) և Կարսի (13.10.1921թ.) պայմանագրերին մի շարք պատճառներով.

ա) Վերոհիշյալ պարտվորությունն ունի հստակ ժամանակային շրջանակ: Այն վերաբերում է միայն ԽՍՀՄ գոյության ժամանակաշրջանին՝ 30 դեկտեմբերի 1922թ. – 26 դեկտեմբերի 1991թ.:

բ) Վերոհիշյալ պարտավորությունն ունի պայմանագրերի մասնակիցների (parties to treaties) հստակ սահմանափակում: Այն չի վերաբերում, այսպես կոչված ՀՍՍՀ կամ ՌՍՖՍՀ կնքած պայմա-

նագրերին: Պարտավորությունը վերաբերում է միայն այն պայմանագրերին, որոնք կնքվել են ԽՍՀՄ-ի անունից և ԽՍՀՄ-ի կողմից:

գ) Վերոհիշյալ պարտավորությունն ունի իրավական սահմանափակում: Այն, բնականաբար, վերաբերում է միայն օրինական, այսինքն՝ միջազգային իրավունքին համապատասխան, կնքված պայմանագրերին:

դ) Վերոհիշյալ պարտավորությունն ունի սահմանադրական սահմանափակում: Պարտավորությունը վերաբերում է միայն այն պայմանագրերին, որոնք ընդունվել են ՀՀ կողմից «համաձայն իրենց սահմանադրական ընթացակարգի»:

Եզրակացություն.

1. Հայաստանի Հանրապետությունը չի հանդիսանում Հայաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետության վարչա-տարածքային միավորի իրավահաջորդը:
2. Հայաստանի Հանրապետությունը քաղաքական-պատմական առումով լինելով ԽՍՀՄ-ին հաջորդող պետություններից մեկը, պայմանագրերի առումով չի հանդիսանում նրա իրավահաջորդը:
3. Հայաստանի Հանրապետությունը չի հանդիսանում Մոսկվայի (16.03.1921թ.) և Կարսի (13.10.1921թ.) պայմանագրերի իրավահաջորդը:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Brownlie I. Principles of Public International Law. Oxford, 5th ed., 1998, p. 649.
2. Slomanson W.R. Fundamental Perspectives on International Law. Belmont, 3rd ed., 2000, p. 206.
3. Williamson E.D. (Legal Adviser, U,S. Department of State) Treaty Succession and Related Issues in the wake of the Breakup of the USSR, p. 3. (Panel on State Succession and Relations with Federal States," March 31, 1992, Washington, D.C.)
4. Նույն տեղում:
5. Նույն տեղում, էջ 4:
6. Ի դեպ, ԱՄՆ արտաքին քաղաքականության մասին օրենքի կրկնամեկնությունը (Restatement of the Law (3d) of Foreign Relations Law of the United States) tabula rasa-ի սկզբունքը վերապահում է ոչ միայն նորանկախ երկրներին (newly independent state), այլև բոլոր նոր երկրներին (new states).
7. SUCCESSION OF STATES AND GOVERNMENTS, DOCUMENT A/CN.4/149 AND Add. l;
8. The succession of States in relation to membership in the United Nations: memorandum prepared by the Secretariat, Yearbook of the International Law Commission, 1962 , vol. II, p. 101.
9. Statute of the International Court of Justice, Article 38.1. a.
10. Կոնվենցիան ստորագրման համար բաց է հայտարարվել 1978թ. օգոստոսի 22-ից: Ուժի մեջ է մտել 1996թ. նոյեմբերի 6-ին: Ներկայումս նրան մաս են կազմում հետևյալ երկրները. Բոսնիա, Խորվաթիա, Կիպրոս, Չեխիա, Դոմինիկա, Էկվադոր,

Եգիպտոս, Էստոնիա, Եթովպիա, Իրաք, Լիբիա, Մարոկկո, Սենտ Վինսենթ և Գրենադիններ, Սերբիա, Սեյշելներ, Սլովակիա, Սլովենիա, Մակեդոնիա, Թունիս և Ուկրաինա (20 պետություն):

11. Կարծում եմ շփոթությունն առաջացել է նաև անգլերեն "succession of states" բառակապակցությունը մշտապես պետությունների իրավահաջորդություն թարգմանությամբ: Այն ավելի հաճախ նշանակում է պարզապես պետությունների փոխհաջորդում:
12. Меморандум о взаимопонимании по вопросу правопреемства в отношении договоров бывшего СССР, представляющих взаимный интерес от 6 июля 1992 г. // Действующее международное право: В 3 т., М., 1996, Т. 1, с. 492-493.
13. Mullerson R. The Continuity and Succession of States, by Reference to the Former USSR and Yugoslavia. The International & Comparative Law Quarterly, 1993, v. 42, №3: p. 490.

*03 նոյեմբերի, 2009թ.*

## ԿԷ. **Ավստրալիան՝ այդքան հեռու ու այդքան մոտ**

Ավստրալիան առանձնահատուկ է ու բացառիկ: Այն առանձնահատուկ է իր աշխարհագրական դիրքով և բացառիկ՝ իր պատմական անցյալով: Ավստրալիան, լինելով աշխարհի միակ աշխարհամաս-պետությունը, ձևավորել է յուրօրինակ ինքնություն, որը հանդարտության ու գործնականության համաձուլվածք է: Այդ երկրից կենցաղային հանդարտություն և տնտեսական գործնապաշտություն է ճառագում: Մի խոսքով՝ աշխարհից այդքան հեռու, սակայն աշխարհին այդքան մոտ:

Խիստ ուսանելի է Ավստրալիայի անցած ուղին: Աշխարհում բազմաթիվ երկրներ կան, որ նախկինում դրախտավայր են եղել, սակայն այսօր բանտ են դարձել բաց երկնքի տակ: Դարեր շարունակ լինելով Բրիտանական կայսրության բանտ-աքսորավայրը՝ ներկայիս Ավստրալիան աշխարհին ցույց է տալիս, թե ինչպես օրինապաշտ հասարակությունը և ազատ տնտեսությունը բանտը կարող են դարձնել դրախտավայր: Ավստրալիայի անցած ուղին բռնության մերժում է, իսկ նրա ներկան բռնատիրության ու կապանքների նկատմամբ ազատության առավելության ամենացայտուն օրինակ:

Աշխարհի վրա հայ համայնքների տեղաշարժով կարելի է ճշգրտորեն հետևել համաշխարհային տնտեսության զարգացման պատմությանը: Որպես պետականազուրկ ազգի զավակներ և հիմնականում զրկված լինելով քաղաքական բարձունքների հասնելու հնարավորությունից՝ հայերն առավելապես ինքնահաստատվել են գործարարության դաշտում: Բնականաբար, Ավստրալիայի քաղաքական բարությունն ու տնտեսական հնարավորությունները գրավիչ են եղել և են հայերի համար: Ներկայումս Ավստրալիայում ապրում է 40-50 հազ. հայ: Ճշգրիտ թիվը որևէ մեկը չգիտի: Ըստ էության, չի էլ կարող իմանալ, քանի որ հիմնականում ներգաղթելով Միջին արևելքից, հայերը պետության կողմից հաշվառվում են ըստ ծագման երկրի: Հայերն հիմնականում ավանդական գաղթօջախներից են՝ Լիբանան, Սիրիա, Իրան, Եգիպտոս: Ավստրալիայում կյանքումս առաջին անգամ հանդիպեցի Լիբիայում՝ Մուըամար Քադաֆիի հայրենիքում, ծնված հայի: Հայաստանցիներ դեռ քիչ կան, սակայն Հայաստանը դատարկվելուն զուգահեռ շատանում են: Ինչպես ամենուր, Ավստրալիայում էլ հայերն ունեն եկեղեցի, դպրոց, ավանդական կառույցներ: Ինչպես ամենուր, այստեղ էլ երիտասարդությունը հեռանում է եկեղեցուց, դպրոց պահելը տարեցտարի դառնում է ավելի դժվար, իսկ ավանդական կառույց-

ները կարող են գործել, եթե նրանց աշխատանքներին մասնակցում է նոր սերունդը: Ահա այդ ավանդական կառույցներից մեկի՝ Ավստրալիայի Հայ դատի (Armenian National Committee of Australia) հանձնաժողովի հրավերով էլ այս նոյեմբերին 10-օրյա աշխատանքային այցով գտնվում էի Ավստրալիայում: Ի դեպ, ինձ վրա բացառիկ դրական տպավորություն թողեց հիշյալ կազմակերպությունը: Ինչպես նշել էի վերը, Ավստրալիան մի շարք առումներով բացառիկ է: Ավստրալահայությունն էլ բացառիկ է Հայ դատի հանձնաժովովի հարցով: Նախ Հայ դատի հանձնաժողովի բոլոր անդամները երիտասարդ են, դեռ 30 էլ չկան: Բոլորը՝ Վարանդը, Հայկը, Սթիվը, Վաչեն, Ռայմոնդը և այլոք, թեև ծնվել են Ավստրալիայում, սակայն միանգամայն հայախոս են և լավատեղյակ են հայոց պատմությունից և Հայաստանի ներկայից: Հայ ժողովրդի պատմության և հայոց լեզվի իր գիտելիքներով հատկապես աչքի էր ընկնում Հայ դատի հանձնաժողովի ատենապետը՝ Վարանդ Մկրտչյանը: Կրկնում եմ՝ այս երիտասարդները բոլորն էլ ծնվել են հեռավոր Ավստրալիայում: Երբ խոսում էի այս երիտասարդների հետ, հիշում էի հայաստանյան այն, այսպես կոչված, քաղաքագետներին, ովքեր տարիներ ապրելով Հայաստանում և իրենց հացը վաստակելով Հայաստանի մասին խոսելով, այդպես էլ հայերեն չեն սովորում: Միգուցե մայրենի լեզուն սովորելն իրենց պատվից ցածր են համարում:

Ավստրալահայերի ներկա քաղաքական կյանքը, այսինքն՝ Հայ դատի գործունեությունն, ունի մի առանձնահատկություն ևս: Նրանք յուրաքանչյուր տարի նոյեմբեր ամսին կազմակերպում են *Պահանջատիրության շաբաթ* (Advocacy week): Ինձ համար մեծ պատիվ է, որ ես եղա առաջին հայաստանցին՝ հրավիրված մասնակցելու Պահանջատիրության շաբաթի աշխատանքներին: Տեսնես մի օր Հայաստանում էլ Պահանջատիրության շաբաթ կունենա՞նք: Գոնե ներկայումս իբր հայոց պետականության իբր կառավարությունը նպատակահարմար չի համարում տարեկան գոնե մեկ օր «Պահանջատիրության օր» ունենալը: Տեսնես ո՞ր կամ ո՞ւմ նպատակներին հարմար չի: Պատկերացնում եք չէ՞, միլիցու օր ունենք, կագեբիստի օր ունենք, իսկ **Հայրենատիրության օրը** նպատակահարմար չէ:

Վերադառնանք բուն այցիս: Մի քանի պարբերություն վերը այցս աշխատաքային անվանեցի, որովհետև հայ դատի գրասենյակի լավ կազմակերպած աշխատակարգի շնորհիվ այն իսկապես աշխատանքային էր, հուսամ՝ նաև արդյունավետ: Երկիր ժամանելու հաջորդ իսկ օրը՝ նոյեմբերի 16-ին, առավոտյան ժ. 5-ին Սիդնեյից

ուղևորվեցինք մայրաքաղաք Քանբերրա և ժ. 9-ից արդեն հանդիպումների մեջ էինք խորհրդարանի պատգամավորների հետ:

Հետաքրքիր զուգադիպությամբ այդ օրը Ավստրալիայի խորհրդարանում Ազգային ներողության օր էր (National Apology Day), այսինքն՝ Ավստրալիայի խորհրդարանը երկրի անունից ներողություն էր խնդրում իր այն զավակներից, որոնց նկատմամբ տասնամյակներ առաջ անարդարություն էր գործադրել: 20-րդ դարի ընթացքում գրեթե կես միլիոն երեխա բաժանվել էր հարազատ ընտանիքից և հանձնվել պետության խնամքին: Պետք է ենթադրել, որ մտադրությունը բարի է եղել՝ երեխաներին բերել են հեռավոր շրջաններից, հավաքել են անառողջ և ծայրահեղ աղքատ ընտանիքներից, ուզել են կրթել և ապագա տալ: Սակայն այսօր հասկանում են, որ, չնայած բարի մտադրություններին, այդ երեխաներին ու նրանց հարազատներին տառապանք են պատճառել ու անցյալի համար այսօր ներողություն են խնդրում: Ես կանգնած էի Ավստրալիայի խորհրդարանում, լսում էի Ավստրալիայի վարչապետ Քևին Ռուդի (Kevin Rudd) և ընդդիմության առաջնորդ Մալքոլմ Թյորնբալի (Malcolm Turnbull) ցավի ու ներողության խոսքերը և մտածում էի, որ Ավստրալիան դրանից դարձավ ավելի վեհ, ավելի ուժեղ, իսկ տառապյալների հոգին խաղաղվեց:

*Միայն ուժեղները կարող են ներողություն հայցել:*

Ես մտածում էի, թե արդյոք երբևէ մեր հոգիները խաղաղվելո՞ւ են, թե Թուրքիան, օգտվելով մեր պատեհապաշտ և եսակենտրոն իշխանությունների վարքից, Հայոց ցեղասպանությունը ծամծմելու է բյուրոկրատական սեղանատամով և մեզ զրկելու է համազգային ապաքինման հնարավորությունից:

Քանբերրայում 3 օրվա ընթացքում՝ նոյեմբերի 16-18-ին, առանձին հանդիպումներ ունեցանք ավելի քան երեք տասնյակ պատգամավորների հետ և հիմա կարող եմ որոշ եզրահանգումներ անել: Առայժմ քննարկումների մանրամասներն ու պայմանավորվածությունները դուրս եմ թողնում, քանի որ դեռ դրանց բացահայտելու ժամանակը չէ:

Իրավիճակը ճիշտ հասկանալու համար նախ մի քանի հիմնական տեղեկություններ Ավստրալիայի խորհրդարանի մասին: Այն երկպալատ է՝ ունի Սենատ (76 անդամ, պաշտոնավարման առավելագույնը 6 տարի) և Համայնքների պալատ (150 անդամ, պաշտոնավարման առավելագույնը 3 տարի): Թեև ավստրալական քաղաքական դաշտում դերակատարություն ունեն 6-7 կուսակցություն, բայցևայնպես բուն պայքարն արդեն տասնամյակներ ի վեր ընթանում է Աշխատավորա-

կան կուսակցության (Labor Party) և Ազատական կուսակցության (Liberal Party) միջև: Ներկայումս Աշխատավորականներն են կառավարում: Ի դեպ աշխատավորականներն իսկապես աշխատավորներին են ներկայացնում, իսկ ազատականներն՝ ազատականներին: Թե չէ մերոնց պես՝ նժդեհականներն ուզում են ամրագրել Հայոց ցեղասպանության հետևանքները: Քանբերրայի եռօրյա այցի ընթացքում մեզ հաջողվեց հանդիպումներ ունենալ գրեթե բոլոր կուսակցությունների ներկայացուցիչների հետ: Բնականաբար, քննարկվող հիմնական հարցը Ավստրալիայի դաշնային խորհրդարանի կողմից Հայոց ցեղասպանության ճանաչումն էր: Պատգամավորների/սենատորների ճնշող մեծամասնությունը, բացառությամբ երկու-երեքի, տեղյակ էին Հայոց ցեղասպանության մասին և նրանց հիմնական մասը միանշանակ հայտարարեց. *«Կասկած չունեմ, որ հայերի հետ կատարվածը ցեղասպանություն է»*: Սակայն այստեղ է սկսում վերաբերմունքի տարբերությունը: Նրանց մի մասն հայտարարեց, որ «քաղաքական զգայնությունների» (political sensitivities) պատճառով նպատակահարմար չէ (ծանոթ ձևակերպում է, չէ՞) այժմ Հայոց ցեղասպանության ճանաչումը: Սրանց վերաբերմունքը ցավալի էր, անընդունելի, սակայն հասկանալի էր: Ամենացավալին այն խմբի վերաբերմունքն էր, որ հայտարարեց (դիվանագիտական լեզվից թարգմանած հայերենի), թե *հայերն առաջնորդվելով իրենց շահով՝ թուրքերի հետ իրենց հարցերը լուծել են*: Հետևաբար, ինչո՞ւ պիտի իրենք հարվածի տակ դնեն իրենց շահերը և փչացնեն իրենց հարաբերությունները թուրքերի հետ: Զույգ տխրահռչակ արձանագրությունների ստորագրումից հետո իշխանության և մերձիշխանական ներկայացուցիչները, որոնցից և ոչ մեկը մեկ օր իսկ չէր զբաղվել Հայոց ցեղասպանության ճանաչման գործընթացով, շնչակտուր կրկնում էին, որ արձանագրությունները չեն վնասի, այլ կօգնեն Հայոց ցեղասպանության ճանաչմանը: Ավստրալիայի խորհրդարանում գլխիկոր նստած շատ էի ուզում, որ այդ պահին նրանք կողքիս լինեին:

Աշխարհում դեռ կան մարդիկ, որոնց համար սկզբունքները վեր են ամեն ինչից: Մեր հույսը նրանք են: Հետևաբար, չնայած Հայոց ցեղասպանության միջազգային ճանաչման հարցում մեր խիստ վնասաբեր քաղաքականությանը, այսուհանդերձ պայքարը պետք է շարունակել: Եթե արձանագրությունները վավերացվեն, այդ պայքարը տասնապատիկ դժվար է լինելու, սակայն անհույս չէ: Դա ես զգացի Ավստրալիայի խորհրդարանում, որտեղ պատգամավորների մի

որոշակի խումբ հստակ արտահայտվեց՝ անկախ իրենց կառավարության դիրքից, անկախ իրենց կուսակցության դիրքորոշումից, իրենք հանդես են գալու Հայոց ցեղասպանության ճանաչման օգտին, որովհետև իրենց համար դա առաջին հերթին անարդարության մասնակի վերականգնման և ճշմարտության հաղթանակի հարց է: Նրանցից մեկն ասաց. *«Իմ ընտրատեղամասում 4500 թուրք ընտրող ունեմ և 100-ից պակաս հայ, սակայն ես ձեր կողքին կլինեմ: Որպես պատգամավոր ես պարտավոր եմ պաշտպանել արդարությունը»*: Ու երբ հաջորդ օրն ինքը զանգեց հստակ հարցերով, ես հասկացա, որ մարդը պարապ խոսքեր չէր շռայլում: Տպավորվել է նրա մի միտքը. *«Եթե հանցագործը չի պատժվում, ապա գոնե հանցագործությունը պիտի դատապարտվի»*: Այո՛, պատգամավորները տարբեր են լինում: Ոմանք նաև սկզբունքներ ունեն:

Ավստրալիայում բնակվող սկզբունքային մարդկանցից պիտի հիշատակեմ Հարավային Ավստրալիայի (South Australia) նահանգի գլխավոր դատախազ Մայքլ Աթքինսոնին (Michael Atkinson), ում հետ միասին մենք պատվո հյուրեր ու հիմնական բանախոսներն էինք Պահանջատիրության շաբաթի ժամանակ: Հարավային Ավստրալիան Ավստրալիայի 6 նահանգներից մեկն է, ունի գրեթե 1 մլն քկմ տարածք և 2 մլն-ից պակաս բնակչություն: Հայեր գրեթե չկան, փոխարենը կան բազմաթիվ թուրքեր: Ահա այս մարդու ջանքերի շնորհիվ ամիսներ առաջ հիշյալ նահանգի խորհրդարանը ճանաչել է Հայոց ցեղասպանությունը: Տվյալ պարագայում ինձ համար ոչ միայն ինքնին ճանաչումն է կարևորը, այլ նման մարդկանց առկայությունը: Նման մարդիկ են, որ թույլ չեն տալիս վերջնականապես հիասթափվել մարդկությունից: Դեռ ամեն ոք չէ, որ շահով է առաջնորդվում, ամեն ինչ չէ, որ շահով է որոշվում:

Ավստրալիան Կանադայի եղբայր է: Նրանք նույն հորից են, սակայն՝ տարբեր մորից: Ըստ այդմ, իմ կանադական փորձն ինձ հնարավորություն տվեց կարճ ժամանակահատվածում ընկալել այդ երկիրը: Ես վաղուց եմ նկատել՝ երկրները մարդկանց նման են: Նրանցից ոմանք բնածին սրիկա են, ոմանք՝ արդարության հետամուտ մարտիկներ: Ավստրալիան երկրորդ խմբից է: Առաջիկա տարիներին մենք ևս առիթ կունենանք դրանում համոզվելու:

Այդպիսին է Ավստրալիան՝ այդքան հեռու ու այդքան մոտ:

*22-28 նոյեմբերի, 2009թ.*

## ԿԸ. Էրդողանի նախնիներն ու Հայոց ցեղասպանությունը

Արմեն Այվազյան, Արա Պապյան անուններով հայ բազմավաստակ թուրքագետներ ունենք պատվավոր՝ թող նրանք պրպտեն պարզեն՝ ովքեր են Էրդողանի նախնիները եղել եւ արդյոք նրանց կլանը, ցեղը, տոհմը Հայոց Մեծ ԵՂԵՌՆԻՆ ինչպիսի մասնակցություն է ունեցել:

*Մ.Մ. Չորրորդ ինքնիշխանություն, 10 դեկտեմբերի 2009թ.*

(Շարահյուսությունը պահպանված է անփոփոխ, որի համար ընթերցողից ներողություն եմ խնդրում)

Մի ֆրանսիացի հայտնի գրող իրավացիորեն ասում էր. *«Մենք բոլորս գալիս ենք մեր մանկությունից»*: Որևէ քաղաքական գործչի, ինչպես նաև յուրաքանչյուր մարդու ճիշտ հասկանալու համար, անհրաժեշտ է հասկանալ, թե որտեղի՞ց է նա գալիս: Առավել ևս դա կարևորվում է Էրդողանի. *«Իմ նախնիները երբեք ցեղասպանություն չեն իրականացրել»* նախադասությունից հետո:

Նախ Էրդողանի նախնիների մասին: Ռեջեփ Թայյիփ Էրդողանն (Recep Tayyip Erdogan) ունի քարթվելական ծագում,[1] ավելի հստակ՝ նրա նախնիները լազեր են: Այդ մասին հայտարարել է նաև ինքը 2004թ. օգոստոսի 12-ին, Բաթումի կատարած այցի ժամանակ:[2] Թուրքիայի ներկա վարչապետի մեծ հոր անունը նույնպես Ռեջեփ է եղել և նա մինչև 1878թ. բնակվել է Բաթումիի կողմերում գտնվող Բագատ վայրում: Վերջինիս հայրը երկար տարիներ տեղի իմամն էր: Երբ 1877-78թթ. ռուս-թուրքական պատերազմից հետո Բաթումն իր շրջակայքով անցնում է Ռուսաստանին, Ռեջեփը գաղթում և բնակություն է հաստատում Ռիզե քաղաքում,[3] որտեղ հայտնի է դառնում Բագատլի Ռեջեփ (Bagatlı Recep) մականունով: Նա զոհվել է Առաջին աշխարհամարտի տարիներին՝ 1916թ., դեպի Ռիզե առաջացող ռուսական զորքերի դեմ կռվելիս:[4]

Թեև Ռեջեփ Թայյիփը ծնվել է Ստամբուլում (1954թ. փետրվարի 26-ին) սակայն իր վաղ մանկությունը՝ մինչև 13 տարեկանը, ապրել է իր նախնիների քաղաք Ռիզեում: Այստեղ նրա հայրը՝ Ահմեդը, աշխատում էր ծովային ընկերությունում: Մայրը՝ Թենզիլեն, տնային տնտեսուհի էր և զբաղված էր 5 երեխաների խնամքով: 1967թ. Էրդողանների ընտանիքը նորից բնակություն է հաստատում Ստամբուլում, ուր 1973թ. Ռեջեփն ավարտում է կրոնական դպրոց *(İmam Hatip Lisesi)*: Արդեն ուսումնառության տարիներին՝ 16 տարե-

կանում, նա կարդում է իր առաջին քարոզները: Թերևս Ռեջեփն իր պապի նման իմամ դառնար, եթե կրոնն աստիճանաբար ավելի ու ավելի մեծ տեղ չգրավեր Թուրքիայի քաղաքական կյանքում:

Ռեջեփ Էրդողանի կինը՝ Էմինե Էրդողանը, Սղերդ (Siirt) քաղաքից է, ազգությամբ՝ արաբ: Նրանք ունեն 4 երեխա:

Հիմա՝ ցեղասպանության իրականացման մասին:

Որևէ մեկն անձամբ Էրդողանի նախնիներին չի մեղադրում Հայոց ցեղասպանությունն իրականացնելու համար: Ավելին, որևէ մեկը չի մեղադրում նաև թուրք ժողովրդի ներկա սերնդին Հայոց ցեղասպանության համար: Այսուհանդերձ, թեև մեր ժամանակակից թուրքերը *մեղավոր չեն* իրենց նախնիների հանցագործությունների համար, այնուամենայնիվ նրանք ***պատասխանատու են*** դրանց համար: Ինչպես ժամանակակից գերմանացիները, մեղավոր չլինելով նացիստների հանցագործությունների համար, պատասխանատու են դրանց համար և մինչ այժմ շարունակում են լուռ ու համբերատար կրել ծանր պատասխանատվությունը: Իսկ այդ պատասխանատվությունն արտահայտվում է ոչ միայն կատարված հանցագործության միանշանակ դատապարտումով, այլև տասնամյակների ընթացքում Իսրայելին հատկացված և հատկացվող հարյուրավոր միլիարդների հասնող օգնությամբ:

Ներկայիս Թուրքիայի Հանրապետությունը ոչ միայն հանդիսանում է Օսմանյան կայսրության ուղղակի իրավական շարունակությունը (legal continuity), այլև շարունակում է քաղաքական-գաղափարական պորտալարով կապված մնալ այդ կայսրության վերջին՝ երիտթուրքական, վարչախմբի հետ: Հանրահայտ իրողություն է՝ Թուրքիայի Հանրապետության բոլոր հիմնադիրները, այդ թվում նաև Մուստաֆա Քեմալը, եղել են Հայոց ցեղասպանության կազմակերպիչ և իրականացնող *Իթթիհադ վե թարրակի* կուսակցության անդամներ: Այդ իսկ պատճառով շատ մասնագետներ երիտթուրքերի կառավարման շրջանի մեջ ներառում են նաև հանրապետության առաջին տասնամյակները՝ 1908-50թ.:[5]

Ըստ այդմ, եթե Էրդողանի նախնիները, գուցեև, անմիջականորեն չեն մասնակցել Հայոց ցեղասպանությանը, անտարակույս, Էրդողանի քաղաքական նախնիները 20-րդ դարի առաջին ցեղասպանության իրականացնողներն են:

Հետևաբար, քանի դեռ թուրք ժողովուրդը չի դատապարտել Հայոց ցեղասպանությունը և շարունակում է վայելել հանցագործու-

թյան պտուղները, նա առնվազն հանցակից է 20-րդ դարի առաջին ցեղասպանությանը:

Ի վերջո հանցագործները միայն նրանք չեն, որ իրականացնում են հանցագործությունները, հանցագործներ են նաև հանցագործությունը պարտակողներն ու գողոնն իրացնողները:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Քարթվելները բաղկացած են 4 ազգակցական խմբից՝ սվաններ, վրացիներ, մենգրել-ներ և լազեր [Kutscher S., Nena L. The Language of the Laz, University of Cologne]:
2. RFE/RL, July 23, 2007.
3. Ռիզեից են նաև Թուրքիայի մեկ այլ վարչապետի՝ Ահմեդ Մեսութ Յիլմազի (Ahmet Mesut Yılmaz) նախնիները, սակայն վերջինիս վերագրվում է համշենահայ ծագում:
4. Ռիզե քաղաքը ռուսների կողմից գրավվել է 1916թ. մարտի 7-ին [The Russian Campaign of 1915-16 in Armenia. The Times History of the War. London, 1917, v. X, p. 260]:
5. Zurcher E.J. Turkey, The Modern History. London-New York, 1998.

*12 դեկտեմբերի, 2009թ.*

## ԿԹ. **Մի բեկոր Եվրոմիություն հայ-թուրքական սահմանին**

«Միջանկեալ տարբերակ տեսնել Ուիլսընեան հողամասին վրայ. այսինքն Թուրքիան Արևմտահայաստանի վարձակալ դարձնել ու եկամուտ յուսալ … ըսելով «ես իրաւունքներն եմ ուզում այդ հողերի վրայ, ոչ թէ հողեր եմ ուզում», անհասկանալի կը մնայ մեզի»:

*Նորա Պարութճեան, Հանդիպում Արա Պապեանի հետ, «Հայկական հարցի լուծման հայեցակարգ» մը, Նոր Յառաջ, Փարիզ, 29 Դեկտեմբեր, 2009, էջ 9:*

Հայկական հարցի տարածքային բաղադրիչի լուծման մեծագույն դժվարությունը, պատմական Հայաստանում հայության լիովին բացակայությամբ հանդերձ, 6.5 մլն քրդերի և թուրքերի առկայությունն է «վիլսոնյան Հայաստանում»: Ակնհայտ է, որ ապագայում ինչպիսի լուծում էլ ստանա Հայկական հարցը, այդ մարդիկ շարունակելու են ապրել վերոհիշյալ տարածքում: Այսինքն, այդ տարածքի վրա ՀՀ ինքնիշխանության ուղղակի և անվերապահ հաստատումը (ինչը ժողովուրդն առօրյա լեզվում ասում է «հողերի միացում Հայաստանին») կարող է խաթարել Հայաստանի հայկական էությունը և համապետական առաջին իսկ ընտրության ժամանակ վերջ դնել նրա՝ որպես ազգային պետության, գոյությանը: ՀՀ-ում ներկայումս ուղիղ 2 անգամ ավելի քիչ մարդ է ապրում, այսինքն՝ քվե ունեցող կա, քան «վիլսոնյան Հայաստանում»: Ցեղասպանությունը, պատերազմներն ու հայրենի իշխանությունների ապիկար կառավարումն իրենց գործն արել են:

Ուստի անհրաժեշտ է միջազգային իրավունքի շրջանակում գտնել վերոհիշյալ տարածքի վրա ՀՀ *de jure* իրավատիրությունը և Թուրքիայի *de facto* տիրապետումը համադրելու այնպիսի ձև, երբ Հայաստանը կվերականգնի իր իրավունքների զգալի մասը «վիլսոնյան Հայաստանում», սակայն զերծ կմնա իր քաղաքական ճակատագիրը քրդերի և թուրքերի ձեռքը հանձնելուց: Միևնույն ժամանակ, որպեսզի լուծումն իրականանալի լինի, անհրաժեշտ է, որ գետնի վրա շատ բան չփոխվի: Այսինքն, անհրաժեշտ է, որ հարցի լուծման ձևը Թուրքիայի համար լինի արժանապատիվ ելք ստեղծված իրավիճակից և ոչ թե՝ վերակացուի մտրակի տակ արվող քայլ:

Հնարավոր լուծումներից մեկը տարածքային վարձակալության ուղին է: (Ավելի դյուրամարս լինելու համար այդ ծրագիրը կարող է

հանդես գալ այլ անվանումով, օրինակ՝ Հաշտության ուղի /The Path to Reconciliation/ կամ նման մի բան:) Այսինքն, «վիլսոնյան Հայաստանի» տարածքը տնօրինողը (Թուրքիան) տարածքի իրավատիրոջից (Հայաստանից) երկարաժամկետ վարձակալում է այն: Համապատասխանաբար, Հայաստանի և Թուքիայի Հանրապետությունները, միջազգային գերուժերի մասնակցությամբ և երաշխիքով, կնքում են երկկողմ պայմանագիր, որը «վիլսոնյան Հայաստանի» վրա 2 կողմերի համար երաշխավորում է մարդկանց և կապիտալի ազատ տեղաշարժի, ինչպես նաև տարանցիկ անկաշկանդ ու անվճար բեռնափոխադրման իրավունք: Միևնույն ժամանակ տարածքն ապառազմականացվում է հարձակողական զինուժից:

Թեև առաջին հայացքից թվում է, թե Թուրքիան շատ բան է զիջում, սակայն, էության մեջ, վերոհիշյալ կետերը, բացառությամբ տարածքային վարձավճարի, ցանկացած երկրի՝ ԵՄ անդամակցելու նախապայմաններն են: Նշյալ կետերի նկատմամբ Թուրքիայի վերաբերմունքը ցույց կտա նաև, թե ինչքանով է Թուրքիան գործնականում պատրաստ ԵՄ անդամակցությանը:

Այսուհանդերձ, օրինական հարց կարող է առաջանալ.

– Ինչո՞ւ Թուրքիան պիտի գնա դրան:

Որովհետև դա առաջին հերթին ձեռնտու է Թուրքիային: Թուրքիայի համար Հայկական հարցի լուծումն անհրաժեշտություն է: Առանց այդ հարցի լուծման (և ոչ թե՝ լուծման պատրանքը ստեղծելու, ինչպես ներկայումս անում են Հայաստանի և Թուրքիայի իշխանությունները) Թուրքիան չի կարող իրականացնել ներկայիս իր հիմնական նպատակը՝ դառնալ կամ գոնե համարվել շրջանային գերուժ: Չնայած բոլոր ջանքերին՝ թուրքական պետականության նավը չի կարողացել և չի կարողանում դուրս գալ մեծ նավարկության: Չլուծված Հայկական հարցը, փոքրիկ ստորջրյա խութի պես, մշտապես կաշկանդում և կաշկանդելու է այդ նավի ընթացքը:

Կարճ ասած՝ տարածաշրջանային կայունության և բարգավաճման հասնելու համար անհրաժեշտ է Հայաստանի և Թուրքիայի միջև տեղադրել մի բեկոր Եվրոմիություն՝ մի տարածք, որը բաժանելու փոխարեն կմիավորի երկու երկրներին ու ժողովուրդներին: Տարածք, ուր 2 երկրներն էլ կունենան որոշակի և ամրագրված իրավունքներ և պարտականություններ:

Մի քանի ամիս առաջ հնարավորություն ունեցա ծանոթանալու հայկական հնագույն բերդաքաղաքներից մեկի՝ Արցախի Տիգրա-

նակերտի պեղումներին: Դարեր շարունակ բերդի պարիսպների հսկայական ժայռաբեկորներն անսասան են եղել, որովհետև միմյանց նաև ագուցված են եղել ոչ մեծ հանգույցներով: Երբեմն փոքր հանգույցներն անհամամասնորեն մեծ դեր ունեն մեծ ժայռաբեկորների կյանքում:

Հայկական հարցի լուծումը, բայց ոչ երբեք՝ լուծման պատրանքը, ագուցող հանգույցի դեր կունենա ողջ Միջին արևելքի համար, հետևաբար էապես կնպաստի տարածաշրջանային կայունությանը:

*10 հունվարի, 2010թ.*

## Հ. Կարսի պայմանագրի (չ)վավերացման և հարակից հարցերի շուրջ

Ընդամենը 2 միջազգային համաձայնագիր կա գոյություն ունեցող սահմանների ճանաչման վերաբերյալ՝ Մոսկվայի և Կարսի պայմանագրերը:

*Ահմեդ Դավութօղլու, Թուրքիայի ԱԳ նախարար,*

Թուրքիայի ազգային մեծ ժողով, 21 հոկտեմբերի, 2009թ.,

Այսօր արդեն ակնհայտ է՝ Հայաստան-Թուրքիա զույգ չարաբաստիկ արձանագրությունների վավերացման գործընթացն ինչ ելք էլ ունենա, այլևս նախկին իրավիճակին վերադարձ չի լինի: Որոշ անհեռատես մարդիկ ջինը բաց են թողել քաղաքական սրվակից և այսօր դժվար է կանխատեսել, թե ինչ վարքագիծ կունենա այդ, մեզանից արդեն որևէ կախվածություն չունեցող, քաղաքական արարածը: Հետևաբար, մենք դեռ երեկվանից պիտի սկսեինք պատրաստվել բազմաթիվ քաղաքական և հատկապես իրավական հարցերի մոտալուտ վերարծարծմանը և վերարժեվորմանը: Հաշվի առնելով Թուրքիայի դիրքորոշումը՝ այդ հարցերի մեջ առանձնակի կարևորություն ունի Կարսի պայմանագրի իրավական կարգավիճակի հարցը: Չնայած հայ ժողովրդի նորագույն պատմության մեջ նշյալ փաստաթղթի ունեցած հույժ կարևոր դերակատարությանը՝ առ այսօր Կարսի պայմանագիրը քննության չի ենթարկվել միջազգային իրավունքի տեսանկյունից: Եղած հրապարակումներն առավելապես գաղափարախոսական բնույթի են և վերլուծում են պայմանագրի քաղաքական հետևանքները, առանց անդրադառնալու բուն պայմանագրի իրավական էությանը: Քանի որ Կարսի պայմանագրի իրավական կարգավիճակին վերաբերող հարցերը բազմաթիվ են ու բազմազան, ուստի, մեր ուժերի ներածին չափով, մի քանի հոդվածով կփորձենք լուսաբանել որոշ հարցեր:

Կարսի պայմանագիրը (13 հոկտեմբերի, 1921թ.)[1] երկկողմ պայմանագիր է: Այն ստորագրել են, ինչպես գրված է պայմանագրի նախաբանում, *«Հայաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետության, Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Հանրապետության և Վրաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետության կառավարությունները մի կողմից և Թուրքիայի ազգային մեծ ժողովի կառավարությունը, մյուս կողմից Ռուսաստանի Սովետական Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետության մասնակցու-*

*թյամբ» (при участии, with the participation)*: Վերոշարադրյալից ակնհայտ է, որ ՌՍՖՍՀ-ն Կարսի պայմանագրի կողմ չէ, այլ զուտ մասնակից, այսինքն՝ նա չի ստանձնում պայմանագրով նախատեսված իրավունքներն ու պարտավորություններն ամբողջությամբ, այլ նրան վերապահված է միայն որոշակի գործառույթ: Անշուշտ, այդ գործառույթը քաղաքական վերակացուի դերն էր, քանի որ բոլշևիկները դեռևս Մոսկվայի պայմանագրի (16 մարտի, 1921թ.) 15-րդ հոդվածով պարտավորվել էին հետևյալը. *«Ռուսաստանը ստանձնում է Անդրկովկասյան հանրապետությունների նկատմամբ իրականացնել անհրաժեշտ քայլեր, որպեսզի ապահովի վերջիններիս կողմից Թուրքիայի հետ կնքվելիք համաձայնագրում սույն պայմանագրի այն հոդվածների ճանաչումը, որոնք ուղղակիորեն վերաբերում են իրենց»*:[2]

**Կարսի պայմանագրի վավերացման հարցը.** Լայնորեն հայտնի փաստ է, որ Կարսի պայմանագրի վավերաթղթերի փոխանակումը տեղի է ունեցել 1922թ. սեպտեմբերի 11-ին Երևանում:[3] Կողմերից մեկը՝ քեմալականները, նշյալ պայմանագիրը վավերացրել է 1922թ. մարտի 16-ին (Թուրքիայի Ազգային մեծ ժողովի օրենք #207)[4] [առայժմ մի կողմ ենք թողնում այդ կառույցի լիազորությունների հարցը]: Սակայն Կարսի պայմանագիրը չի վավերացվել երկրորդ կողմ հանդիսացող, այսպես կոչված, երկրներից և ոչ մեկի՝ Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի, կողմից [առայժմ մի կողմ ենք թողնում նաև սրանց լիազորությունների հարցը]: Կարսի պայմանագիրը թուրքերի հետ նույն օրը՝ 16.03.1922թ. (Մոսկվայի /16.03.21/ պայմանագրի առաջին տարեդարձի օրը) վավերացրել է Համառուսաստանյան կենտրոնական գործադիր հանձնաժողովը (ВЦИК – Всероссийский Центральный Исполнительный Комитет):

Ըստ այդմ, այս վավերացումը երբեք չի կարող դիտարկվել օրինական, հետևաբար իրավական հետևանք ստեղծող, քանի որ ռուսաստանյան այդ կառույցը ոչ ներքին, ոչ միջազգային օրենքի տեսանկյունից նման լիազորություն չուներ և չէր կարող ունենալ: Չի կարող մի երկրի կառույց վավերացնել մեկ այլ երկրի կամ երկրների ստորագրած պայմանագիրը: Հարավային Կովկասի երկրների ռազմակալումից հետո (Ադրբեջան՝ 1920թ. ապրիլ, Հայաստան՝ 1920թ. դեկտեմբեր, Վրաստան՝ 1921թ. փետրվար) մինչև 1922թ. դեկտեմբերի 30-ը, այսինքն՝ մինչև ԽՍՀՄ ձևավորումը, վերոհիշյալ երեք երկրները, գոնե ձևականորեն, անկախ էին: Այսինքն, գոնե պաշտոնապես առանձին էին և մաս չէին կազմում Ռուսաստանին:

Օրինակ, Հայաստանի պարագայում դա ամրագրված էր Հայաստանի Հանրապետության և ՌՍՖՍՀ ներկայացուցչի միջև 1920թ. դեկտեմբերի 2-ին ստորագրած իշխանության փոխանցման հայտարարագրի առաջին կետում, որով Հայասատանը հռչակվում էր *«անկախ սովետական սոցիալիստական հանրապետություն»*:[5]

Այստեղ անհրաժեշտ է ընդգծել, որ քեմալականների և բոլշևիկների կողմից Կարսի պայմանագրի, այսպես կոչված, վավերացման պահին (16.03.1922թ.) արդեն գոյություն չուներ նշյալ պայմանագրի կողմերից մեկը: Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի ՍՍՀ-ները դադարել էին գոյություն ունենալ, քանի որ դրանից 4 օր առաջ՝ 1922թ. մարտի 12-ին, ձևավորել էին նոր միավոր՝ Անդրկովկասի ՍՍՀ-ների Դաշնային Միությունը (Федеративный Союз Социалистических Советских Республик Закавказья – Закфедерация).

Ի դեպ այն, որ նորաստեղծ միավորն իրեն չէր դիտարկում ՌՍՖՍՀ կազմում կամ նրա ենթակայության տակ, ամրագրված է Դաշնային Միություն ստեղծելու մասին պայմանագրի (Союзный договор об образовании Федеративного союза социалистических советских республик Закавказья, 12.03.22) 13-րդ հոդվածում. *«Հանրապետությունների միությունը ՌՍՖՍՀ-ի հետ հարաբերությունները հաստատում է միութենական պայմանագրի հիման վրա»*:[6]

**Եզրակացություն.** Կարսի պայմանագիրը չի վավերացվել Հարավային Կովկասի և ոչ մի երկրի կողմից՝ այդ թվում նաև Հայաստանի ՍՍՀ միավորի կողմից, հետևաբար նշյալ, այսպես կոչված, պայմանագիրը, իրավական հետևանքներ չի ստեղծում նրանց համար:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Договор о дружбе между Армянской ССР, Азербайджанской ССР н Грузинской ССР, с одной стороны, и Турцией – с другой, заключенный при участии ՌՍՖՍՀ в Карсе . [Документы внешней политики СССР, т. 4, М., 1960, ст. 420-429.].
2. Soviet Treaty Series, v. I (1917-28) (compl. & ed. by Shapiro L.), Washington, 1950, p. 101.
3. Soviet Treaty Series, Ibid, p. 136; Документы внешней политики СССР, т. 4, Москва, 1960, ст. 429; Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում, Երևան, 1972, էջ 527:
4. Gunduz Okcun. A Guide to Turkish Treaties (1920-1964), Ankara, 1966, p. 4.
5. Международная политика новейшего времени в договорах, нотах и декларациях. Ч. 3. От снятия блокады с Советской России до десятилетия Октябрской революции. Вып. 1. Акты Советской дипломатии / Сост. и ред. Ю.В. Ключников, А.В. Сабанин, М., ХКИД, 1928. ст. 75-76.
6. Образование СССР, Сборник документов, М., 1972. ст. 259.


*07 փետրվարի, 2010թ.*

## ՀԱ. Ասում էինք չէ՝ Թուրքիան չի փոխվել

Թուրքիայում ապրում է 170հազ. հայ, որոնցից 100հազ. անօրինական են և Թուրքիայի քաղաքացիներ չեն: Վաղը, եթե պետք լինի, կարտաքսենք նրանց մեր երկրից:
*Ռեջեփ Թայիփ Էրդողան, Թուրքիայի վարչապետ, 16 մարտի, 2010թ.*

Թուրքիայում բնակվող հարյուր հազար ապօրինի հայաստանցիների մասին պնդումներն անհիմն են: Այսօր առավելագույնը կարելի է խոսել Թուրքիայում բնակվող 12-14 հազ. հայաստանցիների մասին, որոնցից մի զգալի մասն օրինական է այդ երկրում: Սակայն հիմա խոսքը նրանց մասին չէ, այլ Թուրքիայի՝ նրանց նկատմամբ վերաբերմունքի և, հատկապես, աշխարհի արձագանքի: Ավելի ճիշտ, այդ արձագանքի բացակայության մասին:

Երբ Նիդերլանդների Ազատության կուսակցության ղեկավար, ընդամենը կուսակցության ղեկավար և պատգամավոր, Գեերթ Վիլդերսը (Geert Wilders) հայտարարեց, որ պետք է երկրից արտաքսել բոլոր անօրինական ներգաղթյալներին, աշխարհը ծառս եղավ. ինչպե՞ս կարելի է, ո՞ւր մնացին մարդու իրավունքները: Միանգամայն ճիշտ արձագանք: Իսկ ինչո՞ւ է այսօր նույն աշխարհն անարձագանք թողնում Թուրքիայի գործադիր իշխանության ղեկավարի՝ վարչապետ Էրդողանի նույնաբնույթ հայտարարությունը հայերի դեմ: Ի՞նչ է, վախենո՞ւմ եք Թուրքիայի դեմ խոսել: Բա ու՞ր մնացին ձեր սկզբունքներն ու մարդու իրավունքները:

Ներկայումս ԱՄՆ-ում ապրում է 10-12 մլն անօրինական ներգաղթյալ լատինամերիկյան երկրներից: Սրանք ոչ միայն անօրինական են գտնվում այդ երկրում, այլև մեծ մասամբ անօրինական են մուտք գործել Ամերիկա: Այսուհանդերձ, ի տարբերություն Թուրքիայում բնակվող հայաստանցիների, նրանց երեխաներն իրավունք ունեն դպրոց հաճախել, և նրանք պետության կողմից ստանում են զգալի սոցիալական աջակցություն: ԵՄ երկրներում, ուր այդքան ջանասիրաբար ձգտում է Թուրքիան, անօրինական ներգաղթյալների թիվը 8-10 մլն է: Նրանց մեջ կա մի քանի հարյուր հազար գաղթական Թուրքիայից: Սրանց մի մասը, ի տարբերություն Թուրքիայում բնակվող հայաստանցիների, ապրում է տեղացի հարկատուների հաշվին: Զանազան տվյալներով այսօր ԱՄՆ-ում ապրում է 1.5-3 մլն արաբ՝ ծագումով կամ քաղաքացիությամբ: Տվյալներն անհստակ են ու էապես տարբեր, քանի որ նրանց մի զգալի մասն անօրինական է գտնվում այդ երկրում: Երբ 2001թ. սեպտեմբերի 11-ին ԱՄՆ ռազմական հարձակման ենթարկվեց

արաբների կողմից, ամերիկյան որևէ պաշտոնյա չխոսեց ԱՄՆ-ում անօրինական բնակվող արաբներին արտաքսելու մասին: Ամերիկյան հասարակությունը գալարվում էր ցավի, վիրավորանքի ու վրդովմունքի ճիրաններում, սակայն որևէ մեկի մտքով իսկ չանցավ հարձակումը կազմակերպած ու իրականացրած արաբների պատճառով վտարել երկրում անօրինական բնակվող արաբներին:

Հիմա պատկերացնենք աշխարհի արձագանքը, եթե Բուշը հանկարծ որոշեր ի պատասխան իր երկրի վրա հարձակման ԱՄՆ-ից արտաքսել անօրինական ամերիկաբնակ արաբներին: Վստահաբար *«ողջ առաջադեմ մարդկությունը»* կմիանար հակաամերիկյան ցույցերի, բողոքների ու ճառերի մեջ: Եւ ճիշտ էլ կաներ: Ամեն մեկը պատասխանատու է իր արարքի համար: Խմբակային պատիժների ժամանակներն անցել են:

Էրդողանի սպառնալիքի անհեթեթությունը պատկերացնելու համար եկեք քննենք մեր իրավիճակը: Հայաստանը չի հարձակվել Թուրքիայի վրա: Հայերն օդանավ չեն քշել Կապույտ մզկիթի կամ Աթաթուրքի դամբարանի վրա: Հայերը 3500 թուրք չեն սպանել Ստամբուլի կենտրոնում, ինչպես ոմանք՝ Նյու-Յորքի կենտրոնում: Պարզապես ԱՄՆ-ի և Շվեդիայի մի խումբ քաղաքացիներ, որոնց մեծ մասը տվյալ դեպքում ծագումով հայ է, օրինական և քաղաքակիրթ ճանապարհով հասել է նրան, որ ԱՄՆ և Շվեդիայի խորհրդարանները տարբեր մակարդակներով բանաձևեր են ընդունել: Ես չեմ էլ անդրադառնում անգամ այդ բանաձևերի բովանդակությանը և բնույթին:

Դրանք տվյալ դեպքում էական էլ չեն: Կարևորը Թուրքիայի արձագանքն է և այդ արձագանքը դատապարտող եվրոպական և ամերիկյան արձագանքի բացակայությունը: Հայաստանը, ցավոք սրտի, որևէ մասնակցություն չի էլ ունեցել այդ բանաձևերի ընդունման գործում, սակայն Թուրքիան ատամներ է կրճտացնում Հայաստանի դեմ: Եթե թուրքերը վերոհիշյալ բանաձևերից նեղված են, թեև անմտություն է նեղվել ճշմարտության վերահաստատումից, թող Թուրքիայից արտաքսեն ամերիկացիներին և շվեդներին: Ի՞նչ է, ատամը չի բռնում, թե միայն մեր դեմ հոխորտալ գիտեն: Եւ այս մտածողությամբ թուրքերն ուզում են Եվրոմիություն մտնե՞լ, ուզում են գերմանացիների հետ նույն տան մեջ ապրե՞լ: Էրդողանի խոսքերից միջնադարի ու հաշվեհարդարի հոտ է գալիս:

**Ասում էինք չէ՝ Թուրքիան չի փոխվել:**

*17 մարտի, 2010թ.*

## ՀԲ. Ինչն Էրդողանի լեզվին է, նույնը թուրքական հասարակության սրտում է

Թուրքիայի վարչապետ Էրդողանը հայտարարում է, որ իրեն սխալ են հասկացել: Ինքը խոսել է Թուրքիայից ոչ թե ընդհանրապես հայերին, այլ երկրում ապօրինի գտնվող հայերին արտաքսելու մասին: Մենք իրեն ճիշտ էլ հասկացել ենք: Թուրքիայի վարչապետը խոսում է օրենքի խտրական կիրառման մասին՝ պայմանավորված մարդկանց էթնիկ ծագումով: Եթե Թուրքիայի իշխանություններն հայտարարեին, որ որոշել են երկրից վտարել բոլոր ապօրինի գտնվողներին, հասկանալի կլիներ: Թեև ընդունելի չէր լինի, այնուամենայնիվ հասկանալի կլիներ: Սակայն վարչապետը խոսում է միայն հայերին վտարելու մասին: Այսինքն, Թուրքիայում ապօրինի գտնվող վրացին, կովկասցի թաթարը (որոնց այսօր ադրբեջանցի են կոչում), արաբն ու ռուսն իրավունք պիտի ունենան շարունակել օրենքը խախտել, իսկ հայերը՝ ոչ: Իսկ ինչպե՞ս պիտի վարվեն թուրքերը Վրաստանի կամ Ռուսաստանի քաղաքացի էթնիկ հայերի հետ: Վրաստանի քաղաքացի հայերին պիտի վտարեն, իսկ Վրաստանի քաղաքացի կովկասյան թաթարներին ու վրացիներին՝ ո՞չ: Հետաքրքիր կլիներ տեսնել Վրաստանի արձագանքը:

21-րդ դարում, Եվրոմիություն ձգտող պետության գործադիր իշխանության բարձրագույն պաշտոնյայի բերանից, հնչում են խոսքեր, որոնք կոչ են անում մարդկանց նկատմամբ օրենքը կիրառել ոչ թե ըստ նրանց արածի, այլ ըստ էթնիկ ծագման: Սա արդեն լուրջ բան է: Սա Մարդու իրավունքների համընդհանուր հռչակագրի (1948) 1-ին, 7-րդ և 16 (1)-ին հոդվածների կոպիտ ոտնահարում է:

Գրեթե վստահ եմ, որ ներկայումս Թուրքիան պետականորեն չի սկսի հայերի նկատմամբ խտրական նոր հալածանքները: Դա հիմա չի բխում Թուրքիայի շահերից: Առանց այդ էլ Թուրքիայում ազգային և կրոնական փոքրամասնություններն էական զրկանքների և չարդարացված սահմանափակումների մեջ են: Այսուհանդերձ, սա մտահոգիչ երևույթ է, քանի որ Էրդողանի ասածը թուրքական հասարակության շատ լուրջ և խորքային հիվանդության դրսևորումն է:

**Ինչն Էրդողանի լեզվին է, նույնը թուրքական հասարակության սրտում է:**

*19 մարտի, 2010թ.*

## ՀԳ. Ջավախքի հայերն էլ մարդ են և ունեն մարդու բոլոր իրավունքները

*կամ*

## Բաց նամակ Lragir.am-ի խմբագրությանը

Lragir.am-ի 20.03.2010թ.-ի *«Հոնքը սարքելու փոխարեն»* հոդվածի անհայտ հեղինակն անում է հետևյալ միանշանակ պնդումը. *«…աշխարհի որևէ քիչ թե շատ կայացած երկիր թույլ չի տա էթնիկ հիմքով քաղաքական կուսակցության գոյությունը»*: Միանգամայն անհիմն և իրականությանը չհամապատասխանող պնդում:

Օրինակ, Իսպանիայի խորհրդարանում ներկայացված 10 կուսակցություններից և բլոկներից 6-ն էթնիկ/տարածաշրջանային կուսակցություններ են: Դրանք հետևյալներն են. Միասնության և միության կուսակցությունը [Կատալոնիա] (*Convergència i Unió Partido de Catalunya*)՝ ներկայացված Իսպանիայի 50 նահանգներից միայն 4-ում և խորհրդարանում ունի 6 տեղ; Բասկերի ազգայնական կուսակցությունը (*Partido Nacionalista Vasco*)՝ ներկայացված 3 նահանգում և ունի 6 տեղ; Կատալոնիայի ձախ հանրապետականները (*Esquerra Republicana de Catalunya*)՝ 4 նահանգում և 3 տեղ, Կանարյան կոալիցիան (*Coalición Canaria*)՝ 2 նահանգում և 2 տեղ, Գալիցիայի ազգայնական բլոկը (*Bloque Nacionalista Galego*)՝ 3 նահանգում և 2 տեղ, Նավարրային՝ այո բլոկը (*Nafarroa Bai*)՝ 4 նահանգում և 1 տեղ: Ի դեպ վերջին երկու բլոկների մեջ մտնում է համապատասխանաբար 6 և 4 կուսակցություն: Բացի վերոհիշյալներից Իսպանիայում գործում են նաև մի քանի տասնյակ այլ էթնիկ/տարածաշրջանային կուսակցություններ, որոնք ներկայացված չեն դաշնային խորհրդարանում: Ուզում եմ հատուկ շեշտել, որ այս կուսակցություններից շատերը հանդես են գալիս ոչ այնքան ինքնավարության պահանջով (քանի որ այդ շրջաններից շատերն արդեն ինքնավար են), որքան առավելաբար պահանջում են ***լիակատար քաղաքական անկախություն***: Սակայն դրանից նրանք հանցագործ չեն դառնում կամ համարվում: Անկախության պահանջը, առավել ևս՝ ինքնավարության պահանջը, ինքնին հանցագործություն չէ: Դա իրավունք է: Դա մարդու ազատ ընտրության բաղադրիչներից է:

Կանադայի խորհրդարանում ներկայացված (51 տեղ) *Քեբեկցիների կուսակցությունն (Bloc Québécois)* ունի էթնիկ բնույթ և գործում է

Կանադայի 13 նահանգներից և տարածքներից միայն մեկում՝ Քեբեկում, բայց դրանից այդ կուսակցությունը չի դառնում հանգագործ: Այդ կուսակցության վերջնական նպատակն է անկախ պետականության ստեղծումը: Նրա նախաձեռնությամբ Քեբեկում մի քանի անգամ անկախության հանրաքվե է անցկացվել, սակայն միշտ էլ 2-3% չի բավականացրել 50% սահմանագիծն անցնելու համար: Վստահաբար կարող եմ ասել՝ եթե Քեբեկի բնակիչների մեծամասնությունը մի օր քվեարկի անկախության օգտին, կենտրոնական իշխանությունը բանակը չի ուղարկի՝ ճնշելու քեբեկցի *«անջատողականներին»*: Ի վերջո անջատվելու կամ միանալու իրավունքը մարդու անօտարելի իրավունքներից մեկն է: Նշեմ, որ Կանադայից անկախության ձգտող կուսակցությունը նույն Կանադայի կենտրոնական իշխանությունից դրամական աջակցություն է ստանում իր կուսակցական գործունեության համար, քանի որ դա է օրենքի պանաջը: Քեբեկցիների կուսակցությունը Կանադայի ամենամեծ էթնիկ/տարածաշրջանային կուսակցությունն է, սակայն յուրաքանչյուր նահանգում կա մի քանի էթնիկ/տարածաշրջանային կուսակցություն: Կանադայում համապետական վերջին ընտրություններին (2006թ.) մասնակցում էր *Կանադայի փեղաբնիկ ժողովուրդների ազգային կուսակցությունը (The First People National Party of Canada)*, սակայն այն տեղ չգրավեց խորհրդարանում, քանի որ հավաքեց ընդամենը 1201 քվե: Դա 7.6 անգամ քիչ էր, քան *Կանադայի Մարիխուանայի կուսակցությունը (The Marijuana Party of Canada)*: Ի դեպ Կանադայում գրանցված է նաև *Ռնգեղջյուրի կուսակցություն (Rhinoceros Party)*:

Ֆրանսիայում գործող էթնիկ/տարածաշրջանային կուսակցություններից հիշատակելի են բասկերի *Բասկերի երկիր (Abertzaleen Batasuna) կուսակցությունը*, էլզասցիների (գերմանացիների) *Նախ Էլզասը (Alsace d'abord) կուսակցությունը*, բրետոնցիների *Բրետոնի ժողովրդավարական միություն (Union Democratique Bretonne) կուսակցությունը*, *Սավոյցիների լիգա (Ligue Savoisienne) կուսակցությունը* և կորսիկացիների *Ազգային միություն (Unione Naziunale) կուսակցությունը*: Սրանք բոլորն էլ իրենց էթնիկ տարածաշրջանների համար ավելի *լայն ինքնավարություն պահանջող կամ անկախության ձգտող կուսակցություններ են*:

Միացյալ թագավորության խորհրդարանի համայնքների պալատում *Շոտլանդական ազգային կուսակցությունն (Scottish National*

*Party)* ունի 7 տեղ և 2 տեղ Եվրոպայի խորհրդարանում, իռլանդական *Շին ֆեյն (Sinn Fein) [Մենք ինքներս] կուսակցությունը*՝ համապատասխանաբար 5 տեղ և 1 տեղ, ուելսցիների *Փլեյդ Քըմրը (Plaid Cumru, Ուելսի կուսակցություն)*՝ 3 տեղ և 1 տեղ, *Ալսթըրի միութենական կուսակցությունը (Ulster Unionist Party)*՝ 1-ական տեղ: Հատկանշական է, որ սրանք բոլորը, բացի վերջինից, անկախական/անջատողական կուսակցություններ են, այսինքն՝ պայքարում են հանուն իրենց ազգային-տարածքային միավորների *լիակատար անկախության*: Այսուհանդերձ, այդ կուսակցությունները ոչ միայն չեն փակվում, և նրանց անդամները չեն ձերբակալվում ու հալածվում, այլև իրենց ներկայացուցիչներն ունեն Եվրոխորհրդարանում:

Ռումինիայի քաղաքական դաշտում գնչուները ներկայացված են երկու միավորով՝ *Գնչուների կուսակցությամբ (Partija Roma)*, որը ներկայացված է նաև խորհրդարանում և արտախորհրդարանական *«Ռոմա» [գնչու] քաղաքացիական միություն կուսակցությամբ (Civil Union "Roma")*: Նույն երկրի հունգարացիները խորհրդարանում ներկայացված են *Ռումինիայի հունգարացիների ժողովրդավարական միություն կուսակցությամբ (Democratic Union of Hungarians in Romania)*, որը 22 տեղ ունի պատգամավորական պալատում, 9 տեղ՝ սենատում, 3 տեղ՝ Երվրոխորհրդարանում: Ռումինական գերմանացիների *Ռումինիայի գերմանացիների դեմոկրատական ֆորում կուսակցությունը (Demokratisches Forum der Deutschen in Rumanien, DFDR)* խորհրդարանի պատգամավորական պալատում ունի 1 տեղ:

Տասնամյակներ շարունակ Միացյալ Նահանգներում ընտրական պայքարն ընթանում է Հանրապետական և Դեմոկրատական կուսակցությունների միջև: Այսուհանդերձ, կան բազմաթիվ, այդ թվում նաև տարածաշրջանային/նահանգային ընդգրկման, կուսակցություններ: Նշեմ 2 ամենահետաքրքիրները՝ *Բոստոնի թեյախմության կուսակցությունը (Boston Tea Party)* և *Միացյալ Նահանգների մարիխուանայի կուսակցությունը (United States Marijuana Party)*: ԱՄՆ-ում չկան էթնիկ կուսակցություններ, որովհետև երկրում չկան հոծ բնակեցված էթնիկ շրջաններ: Փոխարենը ներկայումս գործում են բազմաթիվ տարածաշրջանային/նահանգային կուսակցություններ, այդ թվում՝ *Օրեգոնի անկախ կուսակցությունը (Independent Party of Oregon)* կամ *Հարավի անկախության կուսակցությունը [Թեքսաս] (Southern Independence Party, [Texas])*:

Ակնհայտ է, որ այսօր Ջավախքի հայերը չունեն անկախության ձգտում: Նրանք անգամ վարչական լայն և լիակատար ինքնավարության ձգտում չունեն: Ես անգամ չգիտեմ՝ դա լավ է, թե վատ, բայց դա փաստ է: Նրանց ուզածը միայն *որոշ հարցերում սահմանափակ ինքնավարությունն է*: Պարզ ասած՝ ուզում են, որ իրենց էլ մարդու տեղ դնեն, որ իրենք իրենց հողի վրա որպես հայ արժանապատիվ ապրելու անսակարկ իրավունք ունենան:

Ջավախքի հայերն էլ մարդ են և ունեն մարդու բոլոր իրավունքները: Այդ թվում նաև իրենց կամքն ազատորեն՝ սեփական քաղաքական և ոչ քաղաքական կառույցների միջոցով, արտահայտելու իրավունք: Հետևաբար, հանուն տարածաշրջանի կայունության ջավախահայերը պիտի կարողանան կենսագործել իրենց իրավունքները, օրինակ՝ գոնե այն մակարդակով, ինչ գնչուները Ռումինիայում: Թե չէ մի օր Ջավախքը կհոգնի Հայաստանի և Ղարաբաղի մատաղացու գառը լինելուց:

*20 մարտի, 2010թ.*

## ՀԴ. Պայքարի շեշտադրումները փոխելու անհրաժեշտություն
*/Հայոց ցեղասպանության 95-ամյակին ընդառաջ/*

Հայոց ցեղասպանության ճանաչումը նպատակ է, թե՝ միջոց: Վստահաբար մեծամասնությունն անվարան կպատասխանի՝ միջոց: Հետևաբար, քանի որ ցեղասպանության ճանաչումն ինքնանպատակ չէ, ուստի ցանկացած ցեղասպանության ժխտման հակառակը ցեղասպանության պարզ ճանաչումը չէ, այլ ճանաչման միջոցով հանցագործի պատիժը (մեր դեպքում՝ թեկուզև բարոյական) և զոհի իրավունքների (այդ թվում նաև գույքային) հնարավորինս վերականգնումը: Կարո՞ղ է արդյոք ցեղասպանության ճանաչումը վերահաստատել արդարությունը, քանի դեռ հանցագործը կամ նրա սերունդները շարունակելու են վայելել հանցագործության պտուղները: Ընդ որում, հանցագործության պտուղները վայելող սերունդները ոչ թե հանցագործների պարզ հետնորդներ են, այլև հանցակիցները: Այսու, անհրաժեշտություն է առաջանում անդրադառնալ որոշ հարցերի.

**1.** *Արդյո՞ք Հայաստանի Հանրապետության տարածքային և հայերի գույքային իրավունքները, ինչպես նաև բարոյական կորուստները, կարող են վերկանգնվել միայն Հայոց ցեղասպանության ճանաչման ճանապարհով, թե՞ կա այլ ուղի ևս:*

**2.** *Ի՞նչ ծավալի իրավունքների և գույքի մասին է խոսքը:*

**1.** Ցեղասպանությունը մարդկայնության դեմ ուղղված հանցագործության (*crime against humanity, преступление против человечности*) տարատեսակ է: Թերևս ամենածանր տարատեսակն է, բայցևայնպես, պատասխանատվության առումով այն համարժեք է նմանաբնույթ մյուս հանցագործություններին: Միջազգային իրավունքը հստակորեն ամրագրել է, որ *«բնաջնջումը, ստրկացումը, **աքսորը**, և որևէ քաղաքացիական բնակչության դեմ իրականացված այլ անմարդկային արարքները **պատերազմից առաջ կամ ընթացքում**»* հանդիսանում են հանցագործություններ մարդկայնության դեմ:[1]

Անվիճելի իրողություն է. թուրքերը, ժխտելով Հայոց ցեղասպանությունը, ընդունում են, որ իրենց նախնիներն Օսմանյան կայսրության հայազգի քաղաքացիական բնակչությանն աքսորել են:

Պահպանվել է Օսմանյան կայսրության այն օրենքը (*Tehcir Law*), որի հիման վրա իրականացվել է հայերի աքսորը: Օրենքն ընդունվել է

Օսմանյան խորհրդարանի կողմից 1915թ. մայիսի 27-ին և ուժի մեջ է մտել *Թաքվիմ-ի վեքայի* պաշտոնաթերթում 1915թ. հունիսի 1-ին տպագրվելուց հետո: Օրենքի ամբողջական անվանումն է. *«Պատերազմական իրավիճակի և հրատապ քաղաքական անհրաժեշտության պատճառով այլ վայրեր աքսորվող հայերի փարաբնակեցման կարգ»:*

Այստեղ անհրաժեշտ է ընդգծել, որ որևէ պատճառաբանություն կամ պատրվակ աքսորն իրականացրած պետությանը, որը գործել է հանցագործ իշխանության միջոցով, չի ազատում պատասխանատվությունից և տուժողներին համարժեք հատուցում տալու պարտավորությունից:

Հայերի պարագայում թուրքական պետության հանցանքը բարդանում է նաև նրանով, որ աքսորի ժամանակ պետությունը հստակ քաղաքականություն է իրականացրել աքսորյալների մեջ մահացու ելքերը շատացնելու համար:

**2.** Հայության իրավունքների և սեփականության հարցն ունի 3 մակարդակ. ազգային կամ պետական, համայնքային կամ կազմակերպված խմբերի, անհատական կամ մասնավոր: Առաջին դեպքում ամեն ինչ հստակ է. կա կատարման համար պարտադիր միջազգային վճիռ, որով հստակեցված է Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի սահմանը: Հայաստանի Հանրապետության հողային իրավունքների մասին, որոնք խարսխված են առաջին հերթին ԱՄՆ նախագահ Վիլսոնի 1920թ. նոյեմբերի 22-ի իրավարար վճռի վրա, առիթներ ունեցել եմ հանդես գալու, ուստի դրան այսօր չեմ անդրադառնա: Առանց ժխտելու Հայոց ցեղասպանության հնարավորինս լայն ճանաչման քաղաքական անհրաժեշտությունը, հարկ է նշել, որ իրավական տեսանկյունից ՀՀ տիտղոսի, այն է՝ հողային իրավունքների վերականգնման, տեսանկյունից Հայոց ցեղասպանության ճանաչման հարցը բնավ նախապայման չէ: ՀՀ տարածքային իրավունքները ճանաչված են ցեղասպանության իրողությունից անկախաբար: Հայության համայնքային և անհատական գույքային իրավունքների վերականգնման համար ցեղասպանության ճանաչման հարցը նույնպես բնավ նախապայման չէ: Այս հարցի կապակցությամբ անհրաժեշտ է անել մի հստակեցում. հայերից *ապօրինի բռնագրավված գույքի* հարցում չի գործում որևէ ժամանակային սահմանափակում, քանի որ *օրինախախտումն ունի շարունակական բնույթ*: Բոլոր այն դեպքերում, երբ գույքը բռնագրավվել է առանց համարժեք հատուցման, այսինքն՝

օրինախախտմամբ, ապա ներկա տնօրինումը չի կարող օրինական իրավատիրության հիմք հանդիսանալ:

Հայերից ապօրինի բռնագրավված գույքի գնահատման հարցը բարդ խնդիր է: Չնայած կատարված որոշակի աշխատանքին, մեր պատկերացումները տվյալ հարցի վերաբերյալ դեռևս խիստ հատվածական են: Օրինակ, միայն 1916թ. Բեռլինի Ռեյսխբանկին Օսմանյան կայսրությունից փոխանցած 33 տ ոսկու (ներկա գներով ավելի քան 1 մլրդ ԱՄՆ դոլար) մեծ մասը, թերևս ամբողջությամբ, ապօրինի բռնագրավվել էր հայերից:[2] Առ այսօր Թուրքիան չի բացահայտել Օսմանյան կայսրության զանազան բանկերում, ինչպես նաև օտարերկրյա բանկերի թուրքական մասնաճյուղերում, պահվող հայկական հաշիվների անվանացանկերը և գումարների չափը:

Որքան այսօր դժվար է փաստել սեփականության իրավունքը, հստակեցնել անհատական գույքի գինը և հետամտել կորուստը, նույնքան էլ դյուրին է դա անել համայնքային սեփականության հարցում: Քանի որ Օսմանյան կայսրությունը կառուցված էր ազգային/կրոնական սկզբունքով և լուսավորչական հայերը ներառված էին մեկ՝ էրմենի մլիեթի մեջ, ապա նրանց եկեղեցիները, վանքերն ու դպրոցները հաշվառված էին Կ.Պոլսի հայոց պատրիարքարանում: Մինչ այժմ կան տարբեր հաշվարկներ, ներառյալ 1919թ. Փարիզի վեհաժողովին հայկական պատվիրակությունների ներկայացրած տեղեկանքները: Թերևս ամենաամբողջականը Ռայմոն Գևորգյանի և Փոլ Փապուճեանի[3] հաշվարկներն են, քանի որ դրանք հիմնված են պատրիարքարանի չհրատարակված արխիվների վրա: Ըստ այդ հաշվարկների 1913-14թթ. առաքելական հայերն ունեին 2538 գործող եկեղեցի, 451 վանք և գրեթե 2000 դպրոց: Այս հաշվարկի մեջ չեն մտնում Օսմանյան կայսրության հայ կաթոլիկե համայնքի և հայ ավետարանականների հոգևոր հաստատություններն ու դպրոցները, ինչպես նաև Ռուսական կայսրության Կարսի, Սուրմալուի և Բաթումի վարչական միավորների հայապատկան գույքը:

Ամփոփելով վերոշարադրյալը՝ կարելի է անել հետևյալ եզրակացությունները.

Հայոց իրավունքներին տեր կանգնելու համար բնավ պարտադիր չէ, որ Հայոց ցեղասպանության ճանաչումը լինի համընդհանուր: Հայազգի քաղաքացիական բնակչության աքսորը նույնքան պատասխանատվություն է դնում թուրքական պետության վրա և

պարտավորեցնում հատուցել աքսորյալների կամ նրանց ժառանգների կորուստները, որքան ցեղասպանության փաստը:

Օսմանյան կայսրության հայ համայնքի իրավունքները ամրագրված են եղել ըստ երկրի գործող օրենսդրության, և թուրքական պետության կողմից հետագա բոլոր անօրինական զավթումները չեն զրկում նրան իր իրավունքից: Անօրինական բռնագրավումները սեփականության իրավունքի փոխանցման օրինական հիմք չեն կարող հանդիսանալ: Թուրքիայի Հանրապետության 1926-27թթ. օրենքներն ու հրամանագրերը, ուղղված կրոնական փոքրամասնությունների գույքի բռնագրավմանը, չեն կարող օրինական հիմք հանդիսանալ, քանի որ հակասում են Թուրքիայի Հանրապետության ստանձնած միջազգային պարտավորություններին՝ Լոզանի պայմանագրի 38-45 հոդվածներին: Նշյալ պարտավորությունները ենթակա չէին և ենթակա չեն փոփոխության կամ անտեսման, քանի որ դրանց, ըստ նույն պայմանագրի 37-րդ հոդվածի, տրված է հիմնական օրենքի (սահմանադրության) կարգավիճակ:

Եթե Թուրքիան իր ապագան տեսնում է ԵՄ կազմում, ինչպես բազմիցս է հայտարարել, ապա պիտի ընդունի ԵՄ արժեքները: Ի շարս այլ բաների, պիտի պատրաստ լինի պատասխանատվություն կրել սեփական պետության և նրա իրավանախորդի արարքների համար: Պիտի օրինական տերերին վերադարձնի ապօրինի բռնագրավված գույքը, պիտի դադարեցնի այլ պետությունների տարածքների բռնազավթումը, պիտի դադարի խոսել ուժի դիրքերից և սպառնալիքի լեզվով:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Article 6 (c) of the Charter of the International Military Tribunal, [Nurnberg Tribunal] annexed to Agreement for the Prosecution and Punishment of the Major War Criminals of the European Axis ("London Agreement"), 8 August 1945.
2. Shavarch Toriguian, The Armenian Question and International Law, Beirut, 1973, pp. 107-8.
3. Kevorkian R., Paboujian P. Les Arméniens dans L'Empire Ottoman á la veille du Genocide, Paris, 1992.


*5 ապրիլի, 2010թ.*

## ՀԵ. **Մի կոծկած դրվագ Աթաթուրքի կյանքից**

*Եւ ծանիջիք զճշմարտութիւնն, եւ ճշմարտութիւնն ազատեսցէ զձեզ:*
Աւետարան ըստ Յովհաննու, գլուխ Ը (32)

Հայ-թուրքական չարաբաստիկ արձանագրությունները հայ հասարակության մեջ էապես մեծացրել են հետաքրքրությունը մեր հարևան Թուրքիայի նկատմամբ ընդհանրապես և նրա նորագույն պատմության նկատմամբ՝ մասնավորապես: Հաշվի առնելով, որ ներկայիս Թուրքիայի հասարակական-քաղաքական կյանքում Մուստաֆա Քեմալի (Աթաթուրք) դերը նույնքան է, որքան անձի պաշտամունքի տարիներին Լենինի և Ստալինի դերը միասին վերցրած, ապա նրա կյանքին վերաբերող ցանկացած դրվագ և այդ դրվագի մեկնաբանումը կամ կոծկումը ձեռք է բերում առանձնակի կարևորություն:

Թեև Աթաթուրքի մասին գրված են հարյուրավոր գրքեր և հազարավոր հոդվածներ, սակայն նրա կյանքի ոչ բոլոր փաստերն են արտացոլված դրանցում: Սա միանգամայն հասկանալի է, քանի որ Քեմալի կյանքի որոշ դրվագների բացահայտումը կարող է քրեական պատասխանատվության հանգեցնել Թուրքիայում:

Այդպիսի դրվագներից է Մուստաֆա Քեմալի խայտառակ գերեվարումը բրիտանացիների կողմից և նրա ինքնասպանության փորձը (1918թ. հոկտեմբեր-նոյեմբեր): Այս պատմությունը վկայված է ԱՄՆ քաղաքացի Էլիզաբեթ Հարրիսի (Elizabeth Harris) կողմից և հրապարակվել է Նյու Յորք թայմս *[The New York Times]* հանդեսի կողմից տպագրվող Քարընթ հիսթըրի [*Current History*, Ժամանակակից պատմություն] հանդեսի 1922թ. նոյեմբերի համարում՝ «Ինչպես Մուստաֆա Քեմալը ձևավորեց իր բանակը» *[How Mustapha Kemal Formed His Army]* հոդվածի մեջ:

Էլիզաբեթ Հարրիսը 1919թ. փետրվարից 18 ամիս անց է կացրել Կիլիկիայում: Այդ ժամանակ Կիլիկիայում էին գտնվում (մինչև 1919թ. նոյեմբերը) բրիտանական զորամիավորումները: Սրանք հենց այն զորամիավորումներն էին, որ գեներալ Ալլընբիի (Allenby) գլխավորությամբ 1918թ. ազատագրել էին Պաղեստինն ու Սիրիան: Հենց այս զորամիավորումների սպաներից էլ Հարրիսը առաջին անգամ լսել է Մուստաֆա Քեմալի մասին, որոնց մեծ մասը անձնապես է ճանաչել նրան, քանի որ գեներալ Քեմալը, մինչև զինադադարի հաստատումը (Մուդրոսի զինադադար, 30.10.1918թ.) եղել է նրանց ռազմագերին:

Ահա բառացիորեն ինչ է գրում Էլիզաբեթ Հարրիսը. «Հենց այս սպաներից էլ մենք լսեցինք Մուստաֆա Քեմալի կողմից Հալեպի հանձնման պատմությունը: Երուսաղեմի անկումից հետո, Բրիտանական բանակի հյուսիս շարժվելու հետ, քաղաքը քաղաքի ետևից ընկնում էր բրիտանացիների ձեռքը: Դեպի հյուսիս նրանց ռազմերթի պատմությունը նման է Հին կտակարանի պատմության: Երուսաղեմն ընկավ, հետո Դամասկոսը, Համսը և Համման; և բրիտանացիները հասան Հալեպի դարպասներին, որը պահում էր Քեմալ փաշան 8000 հոգանոց բանակով: Երբ բրիտանական բանակն առաջացավ այդքան հյուսիս, այն այնքան էր հյուծված հիվանդության պատճառած մահերից, որ միայն մոտ 1500 մարդ էր մնացել, որոնք էլ տառապում էին ճահճատենդից (մալարիա), արնալուծից (դիզենտերիա) և այլ հիվանդություններից, որոնք սովորական են եվրոպացիների համար արևելյան երկրներում: Բանակն, իհրավի, այնպիսի խեղճ վիճակում էր, որ հրամանատարը վախենում էր հարձակման անցնել, և բանակը ճամբար խփեց քաղաքից մի քանի մղոնի վրա: Այսուհանդերձ, Մուստաֆա Քեմալը չգիտեր նրանց տկարության մասին; նա գիտեր միայն այն հաղթական բանակը, որը մինչ քաղաքի դարպասներին հասնելը, սրբել-տարել էր իր առջև կանգնած ամեն ինչ, և նա հանձնվեց առանց մի կրակոցի: Երբ նա բացահայտեց իրական վիճակը, այնքան էր նվաստացած, որ նա ինքնասպանության փորձ արեց, սակայն դա կանխվեց: Հենց որ բրիտանական զինվորական իշխանությունների կողմից նա ազատ արձակվեց, իսկույն ձեռնամուխ եղավ «անհավատներին» Թուրքիայից քշելու իր շարժմանը»:

Կարծում եմ, որ որպես հարևան երկիր, մեր պարտքն է օգնել Թուրքիային բացահայտելու իր ճշմարիտ պատմությունը: Այն պատմությունը, որ սարքովի չէ և հարմարեցված չէ որոշ քաղաքական խմբերի իշխանության պահպանմանը:

*11 ապրիլի, 2010թ.*

## ՀԶ. Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի միջև սահմանը որոշող ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի Իրավարար վճռի ներկա կարգավիճակը

*/հայցադիմումի (compromis) իրավական կարգավիճակի լույսի ներքո/*

Ապրիլի 12-ին, ժամը 11.00-ին, ՀՀ նախագահ Սերժ Սարգսյանը, որը Վաշինգտոն է ժամանելու Միջուկային անվտանգության գագաթաժողովին մասնակցելու համար, կայցելի Վաշինգտոնի Մայր տաճար և ծաղկեպսակ կդնի ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի շիրիմին:

*The Armenian Weekly, 11 ապրիլի, 2010թ.*

Վերջին մի քանի տարվա ընթացքում հարյուրավոր ելույթներ եմ ունեցել Հայոց պահանջատիրության իրավական հիմունքների մասին, բնականաբար անդրադարձել դրա առանցքը կազմող Վուդրո Վիլսոնի Իրավարար վճռին (Arbitral award): Այս ելույթներն ինձ հնարավորություն են տվել ոչ միայն հասարակությանն իրազեկել նշյալ հույժ կարևոր հարցի մասին, այլև տրված հարցերի միջոցով վեր հանել հիմնական առարկությունները:

Հաճախ հնչող հարցերից մեկն հետևյալն է. *«Ինչպե՞ս կարող է Վիլսոնի իրավարար վճիռը (22.11.1920թ.) իրավազոր (legal) լինել, եթե Սևրի պայմանագիրը (10.08.1920թ.) չի վավերացվել»*:

Հարցին պատասխանեմ մի շարք առարկություններով:

**1.** Միանգամայն սխալ է Իրավարար վճիռը կապել Սևրի պայմանագրի վավերացված կամ չվավերացված լինելու հետ: Նախագահ Վիլսոնը ստանձնել է իրավարարի պարտականությունը ոչ թե Սևրի պայմանագրի հիման վրա, այլ ի պատասխան Փարիզի վեհաժողովի (1919-20թթ.) Սան Ռեմոյի նիստի (23-27 ապրիլի, 1920թ.) հայցադիմումի (compromis): Նշյալ հայցադիմումը կատարվել է 1920թ. ապրիլի 26-ին, բոլոր Դաշնակից ուժերի անունից հանդես եկող Մեծ եռյակի կողմից (Մեծ Բրիտանիա, Ֆրանսիա, Իտալիա): Դեռևս Սևրի պայմանագրի ստորագրումից մոտ 3 ամիս առաջ՝ 1920թ. մայիսի 17-ին, նախագահ Վիլսոնը տվել է իր դրական պատասխանը և պաշտոնապես ստանձնել է ՀՀ և Թուրքիայի միջև սահմանը որոշող իրավարարի (arbitrator) պարտականություններն ու լիազորությունը:

Սևրի պայմանագրի և Իրավարար վճռի առանձին և անկախ փաստաթղթեր լինելու մասին դեռևս 1926թ. միանշանակորեն գրել է Գերմանիայում ԱՄՆ նախկին դեսպան (1913-1917թթ.), իրավագետ Ջեյմս Վաթսոն Ջերարդը (James Watson Gerard). *«Ընդսմին, ինչ վերաբերում է*

*Ամերիկյան և Դաշնակից ուժերին, ապա Սևրի պայմանագրից հրաժարումը կամ նրա չեղյալ հայտարարումը չի կարող ազդեցություն ունենալ Վիլսոնի վճռի վրա, որովհետև նախագահի իրավարար որոշումը խարսխված է ոչ թե 1920թ. օգոս. 10-ի Սևրի պայմանագրի, այլ Դաշնակիցների Գերագույն խորհրդի 1920թ. ապրիլի հայցի վրա: Խորհրդի հայցը և Սևրի պայմանագիրն իրար հետ կապ չունեն և իրարից անկախ են: Նախագահին հղված հայցը չի ունեցել որևէ նախապայման»*:[1]

**2.** Այն, որ Վիլսոնի Իրավարար վճիռը և Սևրի պայմանագիրը առանձին փաստաթղթեր են և վճռի գործադրումը բնավ կապ չունի Սևրի պայմանագրի վավերացման հետ, միանշանակորեն ամրագրված է նույն Սևրի պայմանագրի # 89 և # 90 հոդվածներում:

Պայմանագրի 89-րդ հոդվածն ամրագրում է. *«Թուրքիան և Հայաստանը, ինչպես նաև այլ Բարձր պայմանավորվող կողմերը, համաձայն են ԱՄՆ նախագահի իրավարարությանը ներկայացնել Էրզրումի, Տրապիզոնի, Վանի և Բիթլիսի վիլայեթներում Թուրքիայի և Հայաստանի միջև սահմանի որոշման հարցը, և ընդունել նրա որոշումն անմիջապես, ինչպես այն պայմանները, որոնք նա կարող է հանձնարարել՝ ապահովելու համար Հայաստանի ելքը դեպի ծով, այնպես էլ նշյալ սահմանին հարակից թուրքական տարածքի ցանկացած մասի ապառազմականացումը»*:

Այս հոդվածից ակնհայտ է, որ Սևրի պայմանագրի կողմերը, այդ թվում նաև Թուրքիան, պարտավորվում են *«ընդունել նրա [Վիլսոնի] որոշումն անմիջապես»*: Այսինքն, պայմանագրի նշյալ հոդվածով ամրագրված պարտավորությունների գործադրման ելակետ է որոշված ոչ թե պայմանագրի վավերացումը, այլ իրավարար վճռի կայացումը՝ հետևաբար գործածված է *«անմիջապես»* բառը: Միջազգային հարաբերություններում բազմաթիվ են այնպիսի պայմանագրերը, որոնց մի մասի գործադրման համար, ի տարբերություն ողջ պայմանագրի, այլ ժամանակային կամ նախապայմանային ելակետ է որոշվում: Օրինակ, տխրահռչակ Կարսի պայմանագրի (13.10.1921թ.) 20 հոդվածից 5-ն (# # 6; 14; 16; 18 և 19) ուժի մեջ պիտի մտնեին *«անմիջապես պայմանագրի ստորագումից հետո»*, ի տարբերություն պայմանագրի մնացած 15 հոդվածի, որոնք ուժի մեջ էին մտնելու *«վավերագրերի փոխանակման պահից»*:[2]

Ավելին, Թուրքիան Սևրի պայմանագրի առանձին հոդվածով լրացուցիչ պարտավորություն է ստանձնում՝ Հայաստանին փոխանց-

վող *«տարածքի նկատմամբ իր բոլոր իրավունքներից և տիտղոսից»* հրաժարվել *«<u>նշյալ [իրավարար] որոշման օրից</u>»*:

Սևրի պայմանագրի 90-րդ հոդվածը միանշանակորեն և անվերապահորեն ամրագրում է. *«Այն պարագայում, երբ ըստ 89-րդ հոդվածի սահմանը որոշելիս նշյալ վիլայեթների տարածքն ամբողջությամբ կամ մասամբ կփոխանցվի Հայաստանին, ապա Թուրքիան սրանով իսկ <u>նշյալ որոշման օրից</u> հրաժարվում է փոխանցվող տարածքի նկատմամբ իր բոլոր իրավունքներից և տիտղոսից»*:

Ըստ այսմ, Սևրի պայմանագիրը ստորագրած բոլոր պետությունները, ներառյալ Թուրքիան, Վիլսոնի Իրավարար վճիռը ճանաչել են *«անմիջապես»* և, ի լրումն դրա, Թուրքիան Իրավարար վճռով Հայաստանին հատկացված տարածքի նկատմամբ *«բոլոր իրավունքներից և տիտղոսից»* հրաժարվել է Իրավարար վճռի կատարման իսկ օրից, այն է՝ 1920թ. նոյեմբերի 22-ից:

**3.** Իրավարարության հայցադիմումները (compromis) բնավ կարիք չունեն վավերացման: Հայցադիմումի վավերական լինելու համար բավարար է միայն պետության լիազոր ներկայացուցչի ստորագրությունը: Վերջին 200 տարվա ընթացքում կատարված հարյուրավոր միջպետական իրավարարությունները ասածիս անհերքելի վկայություններն են: Այդպես է եղել նաև Թուրքիայի պարագայում: Օրինակ, Օսմանյան և Ռուսական կայսրությունների միջև առաջացած վեճը լուծող 1910թ. իրավարարության հայցի վավերականության համար միանգամայն բավարար են եղել Թուրքիայի արտգործնախարար Ռիֆֆաթ փաշայի (Riffat Pasha) և Կ.Պոլսում Ռուսական կայսրության դեսպան Նիկոլայ Չարիկովի[3] (Чарыков) ստորագրությունները:[4]

**4.** Պետք է հիշել, որ հատուկ խմբի աշխատանքներից հետո (ղեկավար՝ Վիլյամ Վեստերման, William Westerman) Իրավարար վճիռը քննության է ենթարկվել և հավանության է արժանացել ԱՄՆ պետքարտուղարության, ՊՆ և նախագահի վարչակազմի կողմից: Այս կառույցների փորձագետներից և ոչ մեկն իրավացիորեն երբևէ չի նշել, որ հարկ է սպասել Սևրի պայմանագրի վավերացմանը:

**5.** Վուդրո Վիլսոնն ինքն իրավաբան էր, իրավագիտության դոկտոր: Մինչև քաղաքականության մեջ մտնելը գրեթե երեք տասնամյակ (1883-1911թթ.) իրավագիտություն է ուսումնասիրել և դասավանդել ԱՄՆ լավագույն համալսարաններում: Որպես բարձրակարգ մասնագետ վստահաբար նա շատերից լավ գիտեր Սևրի պայմանագրի և իրեն հղված հայցադիմումի իրավական փոխա-

ռաբերությունները: Եթե նա առանց Սևրի պայմանագրի վավերացման կատարել է Իրավարար վճիռը, ապա և այն ստորագրել և ԱՄՆ Մեծ կնիքով (The Great Seal of the USA) կնքել է տվել պետքարտուղար Բեյնբրիջ Քոլբիին (Bainbridge Colby), ուրեմն կասկածի նշույլ իսկ չի եղել, որ վերոհիշյալ փաստաթղթերն իրարից անկախ են

**6.** 1926-27թթ. փորձ էր արվում ԱՄՆ Սենատում հավանության արժանացնել 1923թ. օգոստոսի 6-ի ԱՄՆ-Թուրքիա պայմանագիրը: Պայմանագրի վավերացման դեմ հիմնական խոչընդոտը Վիլսոնի Իրավարար վճիռն էր, ավելի ճիշտ՝ նրա ոտնահարումը Թուրքիայի կողմից: Թեև Սենատում նշյալ պայմանագիրը բազմաթիվ կողմնակիցներ ուներ, սակայն նրանցից որևէ մեկը երբեք կասկածի տակ չդրեց Իրավարար վճռի վավերականությունը կամ այդ վճռի հայցադիմումի օրինականությունը:

Եզրափակելով վերոշարադրյալը՝ կարելի է անել հետևյալ ամփոփումը.

1. ՀՀ և Թուրքիայի միջև սահմանը որոշող ԱՄՆ նախագահի Վիլսոնի Իրավարար վճիռը և Սևրի պայմանագրի վավերացումն իրար հետ կապ չունեցող 2 տարբեր հարցեր են:
2. Սևրի պայմանագիրը ստորագրած երկրները Իրավարար վճռի գործադրաման համար սահմանել են նշյալ պայմանագրի վավերացումից անկախ ելակետային ժամկետ:
3. Հայցադիմումի վավերականության համար բավարար է միայն պետությունների լիազոր ներկայացուցիչների ստորագրությունը:
4. Վիլսոնի Իրավարար վճռի վավերականության հարցը, նրա գոյության 90 տարվա ընթացքում, երբևէ չի վիճարկվել և հարցականի տակ չի դրվել:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. James W. Gerard. Armenia, Russia and the Lausanne Treaty, p. 166. In the book: The Lausanne Treaty, Turkey and Armenia, NY, 1926.
2. Soviet Treaty Series, v. I (1917-28) (compl. & ed. by Shapiro L.), Washington, 1950, p. 137. Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում (1928-1923թթ.). [խմբ. Ջ. Կիրակոսյան], Երևան, 1972, էջ 523:
3. Չարիկով Նիկոլայ Վալերևիչ (Чарыков Николай Валерьевич), Ռուսաստանի կայսրության արտակարգ և լիազոր դեսպան Կ.Պոլսում (25 մայիսի, 1909 – 26 փետրվարի, 1912).
4. Arbitration Agreement between the Imperial Russian Government and the Imperial Ottoman Government, signed at Constantinople July 22/ August 4, 1910, American Journal of International Law, vol. 7, No. 1, Supplement: Official Documents (Jan., 1913), pp. 62-67.


*12 ապրիլի, 2010թ.*

## ՀԷ. Նոր գինու և հին տիկերի մասին

Սարգսյանի և Էրդողանի Վաշինգտոն այցից հետ (12-13 ապրիլի, 2010թ.) վերջնականապես պարզ դարձավ, որ թուրք-հայկական արձանագրությունները մեռած են: Մենք՝ հայերս, մի լավ խոսք ունենք. *մեռած ա, թաղած չի*: Հենց այս բառերով էլ կարելի է բնութագրել չարաբաստիկ արձանագրությունների վիճակը: Այսուհանդերձ, եթե մեկն ասի, որ այդ արձանագրություններն ի սկզբանե մեռելածին էին, ես չեմ առարկի:

Բա հիմա ի՞նչ անենք: Ես կարծում եմ, որ կարիք կա ոչ միայն արմատապես փոխելու մեր արտաքին քաղաքականությունը, այլև կենսական անհրաժեշտություն է վերարժևորելու դրա հիմքերը. ինքնին գործողության քաղաքականությունը պիտի փոխարինվի վերջնարդյունքի քաղաքականությամբ: Ի՞նչ է սա նշանակում իրական քաղաքականության մեջ: Սա նշանակում է ՀՀ անվտանգության և բարօրության համար բավարար կարելիությունների ստեղծում: Այսինքն, Հայաստանի և հայերի նկատմամբ իրականացված բոլոր սխալների շտկում: Ուրիշ այլընտրանք չունենք: Սա է այն միակ ուղին, որով մենք մեր տեղը կարող ենք ապահովել գլխապատառ առաջ ընթացող աշխարհում: Մենք այլևս կիսատ-պռատ գործեր անելու ժամանակի ճոխությունը չունենք:

Ճիշտ ուղղությամբ առաջին քայլն արված է: Նախագահ Սարգսյանի այցն ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի դամբարանին մեծ խորհուրդ ունի: Թեև դեռևս բազում են անորոշությունները, սակայն արդեն մի բան պարզից էլ պարզ է. այլևս հնարավոր չէ հայ-թուրքական հարաբերություններում ունենալ այն կիսաքուն վիճակը, որ ունեինք մինչև արձանագրությունները: Ներկայումս մենք ունենք էապես տարբեր իրավիճակ և որակապես նոր մարտահրավերներ: Հետևաբար մենք պետք է գործենք ըստ այդմ: Մենք միանգամայն նոր արտաքին քաղաքականության կարիքն ունենք: Չէ՞ որ ասված է. *«Եվ ոչ ոք արկանէ գինի նոր ի տիկս հինս» (Ավետարան ըստ Մարկոսի, 2.22)*:

**Հայկական հարցի լուծումն է հայոց պետականության հզորացման եզակի հնարավորությունը և հայ ժողովրդի հարատևման միակ ուղին:**

*13 ապրիլի, 2010թ.*

## ՀԸ. Թուրքական հերթական նկրտումների մասին

*Թուրքիայի ԱԳ նախարար Ահմեդ Դավութօղլուն Նախիջևանի Մեջլիսի նախագահի հետ հանդիպմանը հայտարարել է, թե Թուրքիան միշտ հետաքրքրվել է Նախիջևանով: Նա ասել է, թե <u>Կարսի պայմանագիրը մնում է ուժի մեջ, որով Թուրքիան համարվում է Նախիջևանի անվտանգության երաշխավորը</u>: Նախիջևանի անվտանգությունը Թուրքիայի անվտանգությունն է, հայտարարել է Դավութօղլուն:*

Lragir.am 28.04.2010

Սա առաջին դեպքը չէ, երբ մեր հարևան երկրի ԱԳ նախարարն աչքի է ընկնում բացառիկ երևակայությամբ: Նա հաճախ բաներ է տեսնում, որոնք իրականության մեջ չկան: Պնդումը, որ *«Կարսի պայմանագիրը մնում է ուժի մեջ, որով Թուրքիան համարվում է Նախիջևանի երաշխավորը»* դրանց թվից է: Քանի որ Կարսի պայմանագրի (չ)վավերականության և (ան)օրինականության հարցին առիթներ ունեցել եմ անդրադառնալու, այստեղ անդրադառնամ միայն պնդման 2-րդ մասին. *«...Թուրքիան համարվում է Նախիջևանի երաշխավորը»*:

Կարսի, այսպես կոչված, պայմանագրի նման մեկնությունը միանգամայն հիմնազուրկ է: Նախ տեսնենք՝ ինչ է ասված Կարսի, այսպես կոչված, պայմանագրի մեջ: Գրում եմ *«այսպես կոչված»*, քանզի այն ընդհանրապես պայմանագիր չէ, որովհետև չի կնքվել միջազգային իրավունքի սուբյեկտների միջև, այլ գործարք է 2 հրացանավոր-հանցավոր քաղաքական ուժերի՝ բոլշևիզմի և քեմալիզմի, միջև: Իշխանությունն ապօրինաբար բռնազավթած և իշխանության բռնազավթմանը ձգտող ուժերի Կարսի գործարքն ամրագրող փաստաթղթի 5-րդ հոդվածում գրված է.

*«Թուրքիայի կառավարությունը և Սովետական Հայաստանի ու Ադրբեջանի կառավարությունները համաձայն են, որ սույն պայմանագրի III հավելվածում նշված սահմաններում Նախիջևանի մարզը կազմի <u>ինքնավար տերիտորիա՝ Ադրբեջանի խնամակալության ներքո</u>»*:[1]

Մինչև բուն հարցին անցնելն ուզում եմ ուշադրություն հրավիրել այն հույժ կարևոր հանգամանքի վրա, որ անգամ Կարսի գործարքով Նախիջևանի շրջանը չի հանդիսանում կամ համարվում Ադրբեջանի մաս, այլ միայն գտնվում է Ադրբեջանի *«խնամակալության ներքո» (under the protection; под покровительством)*: Ընդհանրապես, ըստ միջազգային իրավունքի, *«պրոտեկտորատը իրավական հարաբերություն է <u>երկու պետությունների միջև</u>»*:[2] Այսինքն, դրանք

2 առանձին միավորներ են և միևնույն երկրի 2 մասերը չեն:[3] Ինչպես, օրինակ, Թունիսը և Մարոկոն Ֆրանսիայի պրոտեկտորատներն էին, սակայն նրա մասը չէին, կամ Եգիպտոսը բրիտանական պրոտեկտորատ էր, սակայն Մեծ Բրիտանիայի մասը չէր:




*Նախիջևանի ԻՍՍՀ դրոշը, որի վրայի հայերեն մակագրությունը վկայում է այդ վարչական միավորի հայկական էության մասին*

Ակնհայտ է, որ Կարսի, այսպես կոչված, պայմանագրի 5-րդ հոդվածը կողմերից որևէ մեկին չի տվել երաշխավորի (guarantor) կարգավիճակ: Այդ հոդվածին մաս հանդիսացող 3 կողմերից երկուսը (*«Թուրքիայի կառավարությունը և Սովետական Հայաստանի… կառավարությունը»*) ունեն իրավահավասար կարգավիճակ: Հիշյալ հոդվածի մեջ ընդհանրապես չկա որևէ հանձնառություն, այլ միայն առկա է 3 կողմերի միջև համաձայնություն Նախիջևանի մարզի կարգավիճակի մասին: Այսինքն, սույն հոդվածն ամրագրում է կայացած, ավարտված պայմանավորվածություն, այլ ոչ թե՝ ապառնի պարտավորություն: ***Երաշխավորող պայմանագրի էությունը՝ երաշխավորվող հանձնառությունն է***:[4] Երաշխավորվող հանձնառության բացակայությունը զրկում է, անգամ մեծ ցանկության դեպքում, Կարսի, այսպես կոչված, պայմանագիրը դիտարկել որպես երաշխավորող պայմանագիր: Ընդսմին, երաշխավորող պայմանագրի մեջ պետք է հստակ լինի, թե ով ինչ է երաշխավորում: Օրինակ, Ազգերի լիգայի Կանոնակարգի (The Covenant of the League of Nations) 10-րդ հոդվածով կազմակերպությունը երաշխավորում էր իր անդամների *«պարածքային ամբողջականությունն ու գոյություն ունեցող քաղաքական անկախությունը»*: Մեր քննարկման հերոս Թուրքիան, Հունաստանի և Մեծ Բրիտանիայի հետ միասին եռակողմ պայմանագրով (1959թ.) [հ-ծ 2]. *«…երաշխավորում է[ր] Կիպրոսի Հանրապետության անկախությունը, պարածքային ամբողջականությունն ու անվտանգությունը»*:

Բերենք օրինակներ նաև մեր ժողովրդի պատմությունից:

Հիշո՞ւմ եք Սևակի անմահ տողերը **Անլռելի զանգակատուն**-ից.

*Մեր արցունքի դեմ մի կում ջուր փվին,*
*16-ն այսպես մի կերպ շուռ փվին:*
*Աչքդ լույս լինի, դու օգտվեցիր թվաբանություն.*
*Աճեց քո 16-ը՝ դարձավ 61:*

Այստեղ հիշատակված են 2 հայտնի պայմանագրերի՝ Սան-Ստեֆանոյի նախնական հաշտության պայմանագրի (03.03.1878) և Բեռլինի պայմանագրի (13.07.1878) հայերին վերաբերող հայտնի #16 և #61 հոդվածները, որոնք, ըստ էության, երաշխիքային պարտավորություններ էին՝ հանձնառություններ բարեփոխումների համար: Սան-Ստեֆանոյի պայմանագիրը երաշխավորում էր Թուրքիայի ստանձնած պարտավորությունների կատարումը, այն է. *«անհապաղ կենսագործել հայաբնակ մարզերի տեղական կարիքներից բխող բարելավումներ և բարեփոխումներ»*: Ի դեպ, ուշադրություն դարձրեք *«անհապաղ»* բառին, արդյո՞ք դա Ձեզ չի հիշեցնում *«ողջամիտ ժամանակահատվածում»* բառակապակցությունը: Բեռլինի պայմանագիրը գրեթե նույնպիսի երաշխիքներ է տալիս, սակայն այս անգամ երաշխավոր (guarantor) էին հանդես գալիս արդեն պայմանագիրը կնքած բոլոր պետությունները. *«առանց հետագա հապաղման իրագործել հայաբնակ մարզերի տեղական կարիքներից բխող բարելավումներ և բարեփոխումներ … իսկ տերությունները կհսկեն դրանց կիրառումը»*: Այսինքն, վերոհիշյալ պայմանագրերում առկա էր ցանկացած երաշխավորող պայմանագրի (guarantee treaty) առանցքային հարցը՝ երաշխավորման առարկան:

Ամփոփելով՝ կարելի է անել հետևյալ եզրակացությունները.

1. Թուրքիան չի կարող հանդես գալ որպես Նախիջևանի վարչական միավորի երաշխավոր, քանի որ բացակայում է դրա իրավական հիմքը: Կարսի, այսպես կոչված, պայմանագիրը նման իրավասությամբ չի օժտում Թուրքիային: Այնտեղ, ընդհանրապես, որևէ ամրագրված պարտավորություն չկա:
2. Կարսի, այսպես կոչված, պայմանագրով Հայաստանն ու Թուրքիան Նախիջևանի նկատմամբ ունեն նույնական իրավունքներ և պարտավորություններ:
3. Կարսի, այսպես կոչված, պայմանագիրը խոսում է Նախիջևանի պրոտեկտորատի մասին, որը 1923թ. ի վեր գոյություն չունի: Ըստ այդմ, եթե մինչևիսկ Թուրքիան իրեն Կարսի բոլշևիկ-քեմալական գործարքով համարում է Նախիջևանի պրոտեկտորատի երաշխավորը, կրկնում ենք՝ առանց հիմքի, ապա Նախիջևանի պրոտեկտորատի լուծարումով, այսինքն Նախիջևանի Ինքնավար ՍՍՀ ստեղծումով և ԽՍՀՄ կազմում պարզ ինքնավարություն դառնալով, ի չիք է դարձել նաև այդ հիմքը:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում (1828-1923), խմբ. Ջ. Կիրակոսյան, Երևան, 1972, էջ 520:
2. Jankovic B.M. Public International Law, NY, 1984, p. 90.
3. Ավելի հանգամանալից տե՛ս. Kamanda A. A Study of the Legal Status of Protectorates in Public International Law, Geneva, 1961.
4. Georg Ress, Guarantee Treaties, Encyclopaedia of Public International Law, v II, North Holland, 1995, p. 634.

*29 ապրիլի, 2010թ.*

## ՀԹ. Հայերենը մատաղացու չէ

Գնացե՛ք Եռաբլուր: Այնտեղ մեր միջի լավագույններն են թաղված: Գուցե նրանցից շատերը մեզանից քիչ գիտեին, գուցե նրանց ռուսերենը կաղում էր, անգլերեն էլ չգիտեին: Սակայն հայ էին: *Հայ էին, որովհետև հայերեն էին մտածում:* Լեզուն առաջին հերթին մտածողություն է, հետո միայն՝ խոսք: Եռաբլուրի տապանաքարերից վերցրեք պատահական հարյուր անուն և ապա ստուգեք, թե քանիսը հայկական կրթություն ունեին, քանիսը՝ օտար: Թվերը չեն խաբում:

Ամաչում եմ, որ նման տարրական բաներ պիտի գրեմ: Կարդացեք Լյուդվիգ Վիտգենշտեյնի լեզվի փիլիսոփայությանը նվիրված աշխատությունները և ամեն ինչ պարզ կլինի: Միթե՞ առանց Վիտգենշտեյնի էլ հասկանալի չէ, որ հայերեն «հաց» և ռուսերեն «хлеб» բառերը նույն նշանակությունն ունեն, սակայն էապես տարբեր ընդգրկումներ: Միթե՞ պարզ չէ, որ Պուշկինի հեքիաթներով մեծացած հայ մանուկը և Թումանյանի հեքիաթներով մեծացած մարդը տարբեր հայեր են: Կեղծ են այն պնդումները՝ իբր միայն օտար լեզվով է կարելի բարձրորակ կրթություն ստանալ: Սովորողը սովորում է, չսովորողը պատճառ է ման գալիս իր անկրթությունը հիմնավորելու համար: Եթե գիտելիքը վտարված է, օրինակ, խորհրդարանից, աշակերտն ինչո՞ւ պիտի ընդհանրապես սովորի: Ճիշտ ասած, զարմանում եմ, որ դեռ այսքան էլ սովորում են: Ապահովեք գիտելիքի արդար մրցակցություն աշխատանքի շուկայում և ամեն հայ առնվազն 3 օտար լեզու կիմանա: Պետք չէ կրթական համակարգի թերությունները և նրա ղեկավարի ապիկարությունը կոծկել՝ Հայկական աշխարհում (սույն արտահայտության հեղինակային իրավունքը վարչապետինն է) հայերենին տնվորի կարգավիճակ տալով: Իհարկե օտար և խուճուճ բառերով միշտ էլ ավելի դյուրին է սեփական տգիտությունը շղարշել: Ես հայկական կրթություն ունեմ, սակայն աշխատանքս սկսել եմ մի օտար լեզվից մեկ այլ օտար լեզու թարգմանություններ անելով: Դա իմ կյանքի այդ հատվածի պահանջն էր:

*Հայաստանն առաջին հերթին հայերենն է:* Առանց հայերենի չկա Հայաստան: Պետք չէ ուրանալ սեփական Հայրենիքը, պարզապես պետք է բոլոր դպրոցներում բարելավել օտար լեզուների դասավանդումը: Հասկանում եմ, որ դա անելն ավելի դժվար է, քան հայերենը մատաղացու դարձնելը:

*13 մայիսի, 2010թ.*

## Չ. Սասունցի Դավիթն անպարտ է *կամ* Նորից Հայաստանում օտարալեզու դպրոցների մասին

Վերջին շրջանում հասարակության բուռն քննարկման առարկա է դարձել Լեզվի մասին օրենքում կառավարության կողմից առաջարկվող փոփոխությունները: Բնական է և լավ է, որ հասարակությունը միակարծիք չէ: Սա նշանակում է՝ մենք աստիճանաբար հաղթահարում ենք ոչ վաղ անցյալի ժառանգությունը: Սակայն ցավալին այն է, որ օրենքի փոփոխությունների կողմնակիցները ոչ թե հիմնավոր առարկություններ են բերում իրենց ընդդիմախոսների քաղաքական, իրավական, տնտեսական, հոգեբանական, մշակութային փաստարկների դեմ, այլ պարզապես նենգափոխում են հարցի բուն էությունը և փորձ են անում հարցը ներկայացնել իբր այլատյացության դրսևորում և ինքնամեկուսացման ջատագովություն:

Նախ իմ նկատառումները հայտնեմ քննարկումների ժամանակ հնչած որոշ մտքերի վերաբերյալ, ապա կանդրադառնամ անձամբ իմ հասցեին հնչած մեղադրանքներին, հատկապես Новое время-յում Отдел политики-ի կողմից 2010թ. մայիսի 22-ին տպագրված «Язык твой - враг мой?» հոդվածին:

Օտարալեզու հանրակրթության կողմնակիցների հիմնական կռվանն այն է, որ դա կնպաստի Հայաստանի մրցունակության աճին ժամանակակից աշխարհում, կնպաստի մեր երկրի տնտեսական զարգացմանը: Միանգամայն անհիմն պնդումներ: Անդրսահարյան Աֆրիկայի երկրների մեծ մասում կրթության լեզուն՝ առաջին դասարանից մինչև համալսարան ու Ph.D., անգլերենն է կամ ֆրանսերենը: Ֆինլանդիայում, Ճապոնիայում և Նիդեռլանդներում համապատասխանաբար՝ ֆիններենը, ճապոներենն ու հոլանդերենը: Հիմա ազնվորեն ասացեք, ո՞ր երկրներն են ավելի մրցունակ և զարգացած: Ուրեմն խնդիրն ուսուցման լեզուն չէ, այլ կրթության բնույթն ու որակը: Ուրեմն, շեշտը պիտի դրվի ընդհանուր կրթական համակարգի բարելավման, մասնավորապես օտար լեզուների ուսուցման արդիականացման վրա: Ես հասկանում եմ, որ դա մեծ միջոցներ է պահանջում: Սակայն, եթե մենք կարող ենք 500 մլն դոլար պարտք վերցնել անավարտ շինարարություններն ավարտելու համար, ինչո՞ւ նույնը չենք կարող անել անկատար կրթական համակարգն արմատապես բարեփոխելու համար: Ի վերջո, կրթության ոլորտում ցանկացած ներդրում ապագայում կհատուցվի տասնապատիկ:

Այսուհանդերձ, պետք է շեշտել, որ մինչևիսկ լավագույն կրթական համակարգը չի կարող նպաստել երկրի զարգացմանը, քանի դեռ աշխատանքի շուկայում չկա գիտելիքի ազատ ու արդար մրցակցություն: Ո՞վ կարող է հայաստանցի երեք մեծահարուստի կամ երեք մեծապաշտոնի անուն տալ, որոնք հաջողության են հասել իրենց խելքի ու գիտելիքի շնորհիվ:

Օտարալեզու հանրակրթության կողմնակիցների մյուս կռվանն այն է, որ լեզվի ընտրությունը մարդու իրավունքների հարց է և ծնողն իրավունք պիտի ունենա ինքը որոշելու, թե ո՞ր լեզվով պիտի ուսուցում ստանա իր զավակը: Նախ, կուզեի իմանալ այդ ո՞ր օրվանից եք այդքան մտածում մարդու իրավունքների մասին: Հետո, մարդու իրավունքները Կանադայից ավելի հարգողը չլինենք: Կանադայում, ինչպես գիտեք, կա երկու պետական լեզու՝ անգլերեն և ֆրանսերեն: Սակայն ծնողները մինչևիսկ ազատ չեն երկու հավասարազոր պետական լեզուների միջև ընտրություն կատարելու հարցում: Օրինակ, 1974թ. Քեբեկում ընդունված Պետական լեզվի ակտով բոլորը պարտավոր են իրենց երեխաներին տանել ֆրանսալեզու դպրոց: Բացառություն է արված միայն հինգը խմբերի՝ հիմնականում բնիկ անգլալեզուների և օտարահպատակների համար: Չխորանալով իրավական նրբությունների մեջ՝ ասեմ, որ եթե քեբեքցի եք և ապրում եք Քեբեքում (մեր պարագայում հայ եք և ապրում եք Հայաստանում), չեք կարող ձեր երեխային տալ անգլալեզու դպրոց: Որևէ հիմնավորում, որ անգլիական կրթությունը ձեր երեխային ավելի մրցունակ կդարձնի Միացյալ Նահանգներում կամ Կանադայում աշխատանք գտնելու հարցում, չի անցնում: Քեբեքում հանրակրթական դպրոցն ընկալվում է որպես ֆրանսախոս ինքնության պահպանման հիմնասյուն և ոչ թե աշխատանքի տեղավորման գրասենյակ: Մասնագիտական գիտելիքի համար կան համալսարաններ:

Հիմա անցնենք Новое время-ի վերոհիշյալ հոդվածին: Отдел политики-ն իմ կողմից այն փաստի վկայակոչումը, որ Եռաբլուրում թաղվածների անհամամասնորեն մեծ մասն ունի հայկական կրթություն, համարել է “очень бестактно”: Հիմա զարմանալու հերթն իմն է. Իմ արտահայտած միտքը պարզապես առկա իրողության բարձրաձայնում է: Արդյո՞ք դուք կնեղվեք այն մտքից, եթե մեկն ասի, որ ցերեկը լույս է, իսկ գիշերը՝ մութ: Դա փաստ է, իսկ փաստից չեն նեղվում: Փաստերը կարելի է միայն հերքել: Եթե իմ ասածի նման Եռաբլուրից 100 պատահական անուն վերցնեք և փաստեք իմ ասածի

հակառակը, ես պատրաստ կլինեմ հենց ձեր թերթում ներողություն խնդրել: Մինչ այդ ես պնդում եմ իմ ասածը: Թվերը չեն խաբում:

Նվիրվածությունը սեփական երկրին և ժողովրդին ոչ միայն և ոչ այնքան գիտակցված վարքագիծ է, որքան ենթագիտակցական ընտրություն, որը խարսխված է լեզվամշակութային ընկալումների վրա: Այսուհանդերձ, ես երբեք չեմ պնդել և չեմ պնդում, որ առանձին անհատներ, առանց մայրենի լեզվի կամ հայրենի մշակույթի իմացության կամ խորը իմացության չեն կարող իրագործել հայրենանվեր գործեր: Ես, մամուլում հիշատակված Կոմանդոսի (Արկադի Տեր-Թադևոսյան), Քրիստափոր Իվանյանի և Մոնթե Մելքոնյանի անուններին, կուզեի ավելացնել առնվազն 2 անուն՝ Նորատ Տեր-Գրիգորյանցի և Անատոլի Զինևիչի անունները: Երկու մեծ զինվորական անհատականություն, զուտ ռուսախոս, որոնց անուններն այսօր քիչ են հիշվում, սակայն որոնց դերն անուրանալի է հայոց հայրենիքի արևելյան հատվածի մի մասի ազատագրման գործում: Ես գլուխ եմ խոնարհում բոլոր զոհվածների հիշատակի և բոլոր ողջերի առջև: Սակայն ակնհայտ է, որ հենց այս անունների առանձնանշումը ցույց է տալիս, որ նրանք բացառություններ են, որ հաստատում են լեզվամշակութային կապի անհրաժեշտությունը: 1989թ., ԽՍՀՄ զինված ուժերում ավելի քան 6 հազար հայազգի սպա էր ծառայում, ճնշող մեծամասնությունը՝ զուտ ռուսախոս: Քանի՞սն եկան իրենց մասնագիտությունն ի սպաս դնելու սեփական հայրենիքին: Չե՞ք կարծում, որ եթե նրանք լեզվամշակութային ընկալումներով ավելի կապված լինեին սեփական հայրենիքին, ավելի մեծ թվով կգային: Չե՞ք կարծում, որ ԱՄՆ-ում ապրող ավելի քան 1 միլիոն հայությունից, որոնց զգալի մասն այսօր կորցրել է իր հայախոսությունը, շատ ավելի մեծ թվով հայեր անմիջական մասնակցությունը կբերեին մեր հայրենիքի ազատագրմանը, եթե հայախոս լինեին: Համեմատեք, նշյալ փաստերը տասն անգամ ավելի փոքրաթիվ Լիբանանի կամ Իրանի հայախոս համայնքների հետ և ասածները լրացուցիչ փաստերի կարիք չեն ունենա: Նույն Միացյալ Նահանգների համար նշեմ, որ երբ ԱՄՆ մտավ Առաջին աշխարհամարտի մեջ (1917թ.), այդ ժամանակվա փոքրաթիվ ամերիկահայ համայնքից իրենց հայրենիքի ազատագրմանը որպես կամավորներ անդամագրվեցին հազարավոր ամերիկահայեր: Չե՞ք կարծում, որ դա պայմանավորված էր նրանց հայախոսությամբ: Կրկնում եմ, բացառություններ միշտ կան և կլինեն, սակայն մեծ պատկերը հստակ է՝ լեզվամտածողությունը զգալապես պայմանավորում է ազգային վարքագիծը:

Մեկ այլ հանգամանք: Հոդվածագիրը հարց է տալիս. ես ի՞նչ լեզվով եմ կարդացել Լյուդվիգ Վիտգենշտեյնի աշխատությունները: Ասեմ՝ ռուսերեն: Եթե ես՝ հայկական դպրոցի շրջանավարտս, ի վիճակի եմ եղել ռուսերեն կարդալ փիլիսոփայական աշխատություններ, ապա դա ինչո՞ւ չեն կարող անել ուրիշները: Եթե իմ հայախոս ընկերները և ես ի վիճակի էինք ԽՍՀՄ միութենական ուսանողա-գիտական մրցույթներում մրցանակներ շահել լեզվաբանության, փիլիսոփայության, քաղաքագիտության և պատմության ոլորտներում, ինչո՞ւ հիմա դա չեն կարող անել ուրիշները, երբ լեզու սովորելու հնարավորություններն անհամեմատ ավելի շատ են: Նորից եկանք նրան, որ դպրոցական կրթության լեզուն կապ չունի, կապ ունի կրթության որակը և դպրոցներում լեզուների դասավանդման մակարդակը: Եթե լեզուների դասավանդումը չի բարելավվում հանրակրթական դպրոցներում, ուրեմն չկա դրա հասարակական պահանջը: Իսկ չկա, քանի որ գիտությանը մեր երկրում տրված է պետական վարչակազմի աղախնի կարգավիճակը: Ի դեպ, քանի որ խոսքը գնաց իմ մասին բերեմ մի օրինակ ևս: Երբ ես ընդունվեցի ԵՊՀ արևելագիտության ֆակուլտետ, ոչ մի բառ չգիտեի պարսկերեն: Սակայն 3 տարի անց արդեն աշխատում էի որպես ռուսերենից-պարսկերեն և պարսկերենից-ռուսերեն թարգմանիչ: Ուզում եմ շեշտել, որ ես բացառություն չէի, ինձանից ավելի լավ լեզու իմացողներ էլ կային: Այսինքն, ճիշտ դասավանդման և ցանկության դեպքում միայն համալսարանական տարիներն էլ բավարար են օտար լեզուներ սովորելու համար:

Եվս մի հանգամանք և առայժմ սրանով սահմանափակվենք: Ես երբեք դեմ չեմ եղել և չեմ <u>օտար լեզուների ուսուցմանը</u> Հայաստանում, ես դեմ եմ <u>օտար լեզվով ուսուցմանը</u> Հայաստանում՝ հանրակրթական դպրոցում և հայաստանցի հարկատուների հաշվին: Սա է եղել իմ մշտական դիրքորոշումը: Ես լավ հիշում եմ մեր բոլորիս ոգևորությունը 1980-ականներին, երբ բացվեց պարսկերենի ուսուցման առաջին դպրոցը Հայաստանում: Ես կողմ եմ եղել և կողմ եմ մինչևիսկ թուրքերենի ուսուցմանը մի քանի դպրոցում, քանի որ կա դրա քաղաքական, տնտեսական, ռազմական և մշակութային անհրաժեշտությունը:

Ես ավարտել եմ Երևանի թիվ 114 հայկական դպրոցը (ներկայումս՝ Խաչիկ Դաշտենցի անվան): Բացի հայերենից մենք անցնում էինք 2 օտար լեզու՝ ռուսերեն և անգլերեն: Ամեն օր ունեինք մեկական դասաժամ անգլերեն, իսկ որոշակի տարիքից հետո, յուրաքանչյուր

տարի՝ նաև շաբաթական մեկական ժամ անգլերենով պատմություն, աշխարհագրություն, քերականագիտություն և տեխնիկական թարգմանություն: Այսինքն, Հայաստանում կա դպրոցում երկու օտար լեզվի լավ դասավանդման փորձը, ուրեմն այն կարելի է ընդհանրացնել: Ուրիշ բան, որ դա շատ աշխատատար է և թանկ, միաժամանակ պահանջում է գործի իմացություն ու նվիրում հայրենիքին, որոնք կարծես չունեն Լեզվի մասին օրենքում փոփոխություններ մտցնել ցանկացողները: Նրանք գնում են դյուրին ճանապարհով, սակայն դյուրինը միշտ չէ, որ ճիշտ ճանապարհն է:

Մեր դյուցազներգության հերոսը՝ Սասունցի Դավիթը, անպարտ էր: Անպարտ էր քանի դեռ պարտություն չկրեց սեփական զարմից: Միթե՞ մենք այնքան անհեռատես պիտի լինենք, որ պարտություն կրենք ինքներս մեզնից:

*22 մայիսի, 2010թ.*

## ՁԱ. Ինքնորոշում և, այսպես կոչված, «տարածքային ամբողջականություն» սկզբունքները հանրային միջազգային իրավունքի մեջ

*/Լեռնային Ղարաբաղի օրինակը/*

Մենք չենք պատրաստվում սակարկել Արցախի ժողովրդի ինքնորոշման իրավունքը:
*Սերժ Սարգսյան, ՀՀ նախագահ, 1 հունիսի, 2010թ.*

Ժողովուրդն է տարածքի բախտը որոշողը և ոչ թե տարածքը՝ ժողովրդի:
*Հարդի Դիլարդ (Hardy Dillard), Միջազգային արդարության դատարանի դատավոր, 16 հոկտեմբերի, 1975թ.*

*«Ինքնորոշում»* և *«տարածքային ամբողջականություն»* հասկացությունները հաճախ են գործածվում Լեռնային Ղարաբաղի հակամարտության կապակցությամբ: Ցավոք, այս իրավական եզրերը, հիմնականում քաղաքական դրդապատճառներով, հաճախ սխալ են գործածվում: Հիշյալ հասկացությունների սխալ գործածության օրինակներից է դեսպանացու Մեթյու Բրայզայի հետևյալ պնդումը. *«Կա պետությունների տարածքային ամբողջականության իրավական սկզբունք, և կա ժողովուրդների ինքնորոշման քաղաքական սկզբունք»*: *(There's a legal principle of territorial integrity of states, there's a political principle of self-determination of peoples.)* Իրականության մեջ ճիշտ հակառակն է: **<u>Կա</u>** *ինքնորոշման* իրավական սկզբունք, և **<u>չկա</u>** *«տարածքային ամբողջականության»* սկզբունք: ՄԱԿ-ի Կանոնակարգի 2-րդ հոդվածի 4-րդ կետը հռչակում է միմիայն հետևյալը. *«[ՄԱԿ-ի] բոլոր անդամներն իրենց միջազգային հարաբերություններում պետք է ձեռնպահ մնան որևէ երկրի տարածքային ամբողջականության կամ քաղաքական անկախության դեմ ուղղված ուժի կիրառումից կամ սպառնալիքից, կամ այլ քայլերից, որոնք անհամատեղելի են Միավորված ազգերի նպատակների հետ»*: Այս հիմնադրույթը ոչ մի ընդհանուր բան չունի *«տարածքային ամբողջականության»* բացարձակության, այսինքն՝ պետության տարածքի անձեռնմխելիության հետ: Ըստ ԱՄՆ արտաքին հարաբերությունների օրենքի հեղինակավոր մեկնաբանության, այն պարզապես դրույթ է ներխուժման դեմ՝ *«ուժի գործադրման արգելք»* *(prohibition of use of force)*[1], և սոսկ կոչ է անում ձեռնպահ մնալ *«մի պետության կողմից ուժի գործադրման միջոցով մեկ այլ պետություն գրավելուց կամ նրա կառավարությունը փապալելուց»*:[2]

Արդի ժամանակաշրջանի միջազգային իրավունքում *«ինքնորոշման»* և, այսպես կոչված, *«տարածքային ամբողջականության»* սկզբունքների

կարգավիճակը, ընդգրկումն ու բովանդակությունը լիարժեք հասկանալու համար հարկ է առավել հանգամանալից անդրադառնալ այդ հարցերին:

**ԻՆՔՆՈՐՈՇՈՒՄ**

**Ինքնորոշման պատմական հենքը**

Ինքնորոշումը հնուց եկող քաղաքական իրավունք է, որը մշտապես արժևորվել է բոլորի կողմից: *«Ինքնորոշում» (self-determination, самоопределение)* բառը բխում է գերմաներեն *"selbstbestimmungsrecht"* բառից, որը հաճախ էր գործածվում գերմանացի արմատական փիլիսոփաների կողմից XIX դ. կեսերին: Ինքնորոշման հայեցակարգի քաղաքական ծագումը գալիս է ԱՄՆ անկախության հռչակագրից (04.07.1776թ.): Զուր չէ, որ Ամերիկյան հեղափոխությունը համարվում է *«ինքնորոշման բացառիկ օրինակ»*:[3] Ինքնորոշման սկզբունքը հետագա քաղաքական զարգացման ենթարկվեց Ֆրանսիական հեղափոխության առաջնորդների կողմից: XIX դարում և XX-ի դարասկզբին ինքնորոշման սկզբունքն ազգային շարժումների կողմից մեկնաբանվում էր որպես յուրաքանչյուր ազգի համար սեփական անկախ պետություն ստեղծելու իրավունք, և միայն ազգային առումով միատարր պետություններն էին համարվում օրինական:[4] Առաջին աշխարհամարտի տարիներին ԱՄՆ նախագահ Վիլսոնը հանդես եկավ ինքնորոշման ջատագովությամբ, որն էլ իր հստակ սահմանումը գտավ նրա *«Տասնչորս կետեր»* (08.01.1918թ.) ծրագրային փաստաթղթի մեջ և, ըստ այդմ, քննության առարկա դարձավ Ազգերի լիգայի սկզբնական օրերին: Ազգերի լիգայի կողմից ստեղծված մանդատային համակարգն, ըստ էության, փոխզիջումային միջանկյալ իրավիճակ էր ուղղակի գաղութատիրության և ինքնորոշման իրավունքի միջև:

Թեև *ինքնորոշումը* որպես քաղաքական իրավունք ու սկզբունք ունի երկարատև պատմություն, այնուամենայնիվ *ինքնորոշումը* որպես միջազգային իրավունքի սկզբունք համեմատաբար նոր ծագում ունի: Քանզի ներկայումս միջազգային իրավունքի դասագրումը (կոդիֆիկացիան) հիմնականում իրականացվում է դիվանագիտական համաժողովների, երբեմն ՄԱԿ-ի վեհաժողովի կամ նմանատիպ համաժողովների միջոցով՝ նախապես Միջազգային իրավունքի հանձնաժողովի կամ այլ փորձագիտական մարմնի կողմից ներկայացված նախագծի հիման վրա,[5] ապա առաջին հերթին պետք է քննության առնել խնդրո առարկա հասկացությունների զարգացման ընթացքը միջազգային փաստաթղթերի միջոցով: Միաժամանակ անհրաժեշտ է ընդգծել, որ

բոլոր այն հիմնադրույթները, որոնք հոդվածների ձևով ներառված են միջազգայնագրերի (conventions) մեջ և արտացոլում են գոյություն ունեցող միջազգային սովորութական (customary) իրավունքը, ապա դրանք պարտադիր են բոլոր պետությունների համար՝ անկախ դրանց տվյալ միաջազգայնագրերին միացած կամ չմիացած լինելուն:[6]

**Ինքնորոշման զարգացումը ՄԱԿ-ի հովանու ներքո**

1. Ընդգրկումը ՄԱԿ-ի կանոնակարգի մեջ

Ինքնորոշման իրավունքը բազմաթիվ անգամներ է քննության առարկա դարձել Երկրորդ աշխարհամարտի տարիներին: Այն վկայակոչվել է *Ատլանտյան դաշնաթղթի* (*Atlantic Charter*, 14.08.1941թ.) մեջ, ապա վերարծարծվել *Վաշինգտոնի 1942թ. հռչակագրի* (*Washington Declaration*) և *1943թ. Մոսկվայի հռչակագրի* (*Moscow Declaration*), ինչպես նաև ժամանակի այլ կարևոր փաստաթղթերի մեջ: Շնորհիվ հենց այս հռչակագրերի արդեն ՄԱԿ-ի ստեղծման օրերին *ինքնորոշում* հասկացությունը դիտարկվում էր որպես միջազգային իրավունքի սկզբունք: Ի վերջո *«իրավահավասարության և ժողովուրդների ինքնորոշման սկզբունքը»* ներառվեց ՄԱԿ-ի կանոնակարգի մեջ: Կանոնակարգը [հոդված 1(2)] հստակորեն սահմանեց ինքնորոշման սկզբունքը. *«Միավորված ազգերի նպատակներն են. ժողովուրդների միջև զարգացնել բարեկամական հարաբերություններ ազգերի միջև՝ հիմնվելով ժողովուրդների **իրավահավասարության** և **ինքնորոշման սկզբունքի** հարգանքի վրա»*, ինչպես նաև *ինքնորոշումը* համարվեց *«համընդհանուր խաղաղությունն ամրապնդելու»* հնարավոր միջոցներից մեկը:[7] ՄԱԿ-ի կանոնակարգի IX գլխի (*Միջազգային տնտեսական և հասարակական համագործակցության, International Economic and Social Co-operation*) 55-րդ հոդվածի մեջ թվարկված են այն նպատակները, որոնք պետք է խրախուսվեն նշյալ կազմակերպության կողմից. *«… իրավահավասարության և ժողովուրդների ինքնորոշման հարգանքի վրա կայունության ու բարօրության պայմանների ստեղծումն անհրաժեշտ է ազգերի միջև խաղաղ և բարեկամական հարաբերությունների համար …»*: Ըստ նույն կանոնակարգի 56-րդ հոդվածի. *«բոլոր անդամները պարտավորվում են կազմակերպության [ՄԱԿ-ի] հետ համատեղ և անջատ գործողություններ իրականացնել՝ նպատակ ունենալով հասնել 55-րդ հոդվածի մեջ առաջադրված նպատակներին»*:

Ինչպես բխում է ՄԱԿ-ի կանոնակարգի 55-րդ հոդվածից, ինքնորոշման սկզբունքը միջազգային խաղաղ և բարեկամական հարաբերությունների հիմքերից է: Այլ բառերով, առանց նշյալ սկզբունքի

պահպանման հնարավոր չեն նման հարաբերություններ: Նույն հոդվածը նշում է, որ ՄԱԿ-ի պարտականությունն է խրախուսել հարգանքը մարդու հիմնարար ազատությունների նկատմամբ (պար. c), ըստ այդմ՝ ազգերի ինքնորոշման իրավունքի նկատմամբ: Եւ քանի որ ժողովուրդների միջև բարեկամական հարաբերությունների հաստատումը և մարդու իրավունքների հարգանքի խրախուսումն ընդգրկված են ՄԱԿ կարևորագույն խնդիրների շարքում, ուստի ակներևաբար սույն կազմակերպությունը կոչված է առաջ մղելու ժողովուրդների ինքնորոշման հարցը:[8] ՄԱԿ-ի կանոնակարգը գերակա է բոլոր այլ միջազգային փաստաթղթերի նկատմամբ: Այս պայմանն ամրագրված է կանոնակարգի 103-րդ հոդվածում, հետևաբար ընդունված է բոլոր անդամների կողմից:

Ակնհայտ է, որ ՄԱԿ-ն ինքնորոշումը (այսինքն այդ իրավունքի կենսագործումը և ոչ թե՝ սոսկ իրավունքը) ոչ միայն իր հիմնարար սկզբունքներից է համարում, այլև՝ հիմք բարեկամական հարաբերությունների և համընդհանուր խաղաղության համար: Հետևապես, ինքնորոշման մերժումը խոչընդոտում է բարեկամությանը և համընդհանուր խաղաղությունը: Ավելին, ՄԱԿ-ի կանոնակարգի 24-րդ հոդվածի 2-րդ կետը հռչակում է. *«Սույն պարտավորություններն իրականացնելիս [միջազգային խաղաղության ու անվտանգության պահպանումը] Անվտանգության խորհուրդը պետք է գործի Միավորված ազգերի նպատակներին և սկզբունքներին համահունչ»*: Հետևաբար, քանի որ ինքնորոշումը ՄԱԿ-ի սկզբունքներից մեկն է, ուստի միջազգային խաղաղության և անվտանգության պահպանման գործում Անվտանգության խորհուրդը պետք է առաջնորդվի ժողովուրդների ինքնորոշման իրավունքով:

2. Զարգացումը ՄԱԿ-ի պրակտիկայով

Ինքնորոշման հայեցակարգը հետագա զարգացում ապրեց Միավորված ազգերի պրակտիկայում: Իր բանաձևերի միջոցով ՄԱԿ-ը մեկնաբանեց և զարգացրեց ինքնորոշման սկզբունքը: 16.12.1952թ.-ի 637A(VII) բանաձևի մեջ ՄԱԿ-ի վեհաժողովը հայտարարեց. *«Ժողովուրդների և ազգերի ինքնորոշման իրավունքը նախադրյալ է մարդու բոլոր հիմնարար ազատությունները վայելելու համար»:* Վեհաժողովը նաև հորդորեց, որ *«Միավորված ազգերի անդամ երկրները պետք է աջակցեն բոլոր ժողովուրդների և ազգերի ինքնորոշման սկզբունքին»:*

ՄԱԿ-ի վեհաժողովը 1960թ. ընդունեց բանաձև [1514(XV)]՝ վերնագրված. *Գաղութային երկրներին և ժողովուրդներին անկախություն*

*շնորհելու մասին հռչակագիր*, որի 2-րդ պարբերությունը հռչակում է. *«Բոլոր ժողովուրդներն ունեն ինքնորոշման իրավունք; ըստ այդմ, նրանք են որոշում իրենց քաղաքական կարգավիճակը և ազատորեն հետամուտ են լինում իրենց տնտեսական, հասարակական և մշակութային զարգացմանը»:* Սույն հռչակագիրն ինքնորոշման սկզբունքը համարում է ՄԱԿ-ի կանոնակարգից ածանցվող հանձնառությունների մաս: Ընդ որում, նշյալ հռչակագիրը պարզ հորդոր չէ, այլ կանոնակարգի հեղինակավոր մեկնաբանություն:[9]

Հետագայում ինքնորոշման սկզբունքն իր արտացոլումը գտավ մի շարք միջազգային փաստաթղթերի մեջ: 1966թ. մարդու իրավունքների մասին 2 միջազգայնագիր (կոնվենցիա) մտան ուժի մեջ՝ *Քաղաքացիական և քաղաքական իրավունքների մասին միջազգային դաշնագիրը (International Covenant on Civil and Political Rights)* և *Տնտեսական, հասարակական և մշակութային իրավունքների մասին միջազգային դաշնագիրը (International Covenant on Economic, Social and Cultural Rights)*: Այս դաշնագրերն ունեն մի ընդհանուր հոդված՝ #1, որն ամրագրում է. *«Բոլոր ժողովուրդներն ունեն ինքնորոշման իրավունք: Այդ իրավունքով էլ նրանք ազատորեն որոշում են իրենց քաղաքական կարգավիճակը և հետամուտ են իրենց տնտեսական, հասարակական և մշակութային զարգացմանը»*:

Հետագա տարիներին ևս, *ըստ Միավորված ազգերի կանոնակարգի պետությունների միջև բարեկամական հարաբերություններին և համագործակցությանը վերաբերող միջազգային իրավունքի սկզբունքների հռչակագիրը (Declaration of Principles of International Law Concerning Friendly Relations and Co-operation among the States in accordance with the Charter of the United Nations)* [ՄԱԿ-ի վեհաժողով, բանաձև 2625 (XXV), 1970թ.] հաստատեց այն սկզբունքը, ըստ որի ինքնորոշումը բոլոր ժողովուրդներին վերաբերող իրավունք է, և նրա կենսագործումը պահանջվում է ՄԱԿ-ի կանոնակարգով. *«Ըստ իրավահավասարության և ժողովուրդների ինքնորոշման սկզբունքի, որը ներառված է Միավորված ազգերի կանոնակարգի մեջ, բոլոր ժողովուրդներն էլ իրավունք ունեն ազատորեն, առանց արտաքին միջամտության որոշել իրենց քաղաքական կարգավիճակը, հետամուտ լինել իրենց տնտեսական, հասարակական և մշակութային զարգացմանը, և ամեն պետություն, համաձայն կանոնակարգի դրույթների, պարտավոր է հարգել սույն իրավունքը»:*

Ինչպես իրավացիորեն նկատել է *Միջազգային հարաբերություններում ազգերի միջև բարեկամական հարաբերություններին և համագործակցությանը վերաբերող սկզբունքների հատուկ հանձնաժողովի (Special Committee on Principles of International Relations concerning Friendly Relations and Co-operation among the Nations)* զեկուցող Մ. Զահովիչը (M. Zahovic). *«Քննարկումներին մասնակցած գրեթե բոլոր ներկայացուցիչները շեշտեցին, որ [ինքնորոշման] սկզբունքն այլևս չի համարվում միայն բարոյական կամ քաղաքական հիմնադրույթ; այն ըստ ամենայնի միջազգային իրավունքի սկզբունք է: Սույն սկզբունքի լիակատար ընդունումը նախադրյալ է միջազգային խաղաղության և անվտանգության պահպանման, պետությունների միջև բարեկամական հարաբերությունների, համագործակցության զարգացման և ամբողջ աշխարհում տնտեսական, հասարակական ու մշակութային առաջընթացի խրախուսման համար»*:[10]

**Ինքնորոշման սկզբունքը և մարդու իրավունքները**

Ինքնորոշման սկզբունքը, միջազգային հարաբերություններում փիլիսոփայական հայեցակարգից վերափոխվելով քաղաքական հայեցակարգի, հիմա վերաճել է միջազգային իրավունքի հիմնարար սկզբունքի: Վերջին ժամանակներս զարգանալով՝ այն դարձել է մարդու իրավունքների հարց, որը վերաբերում է որոշակի խմբի, այլ ոչ թե մի անհատի[11] և, ինչպես նշել էինք, իրավացիորեն ներառված է մարդու իրավունքների զույգ դաշնագրերի մեջ:

25.06.1993թ.-ին 171 երկրների ներկայացուցիչներ համախոհությամբ (by consensus) ընդունեցին *Մարդու իրավունքների համաշխարհային համաժողովի Վիեննայի հռչակագիրը և գործողությունների ծրագիրը (Vienna Declaration and Programme of Action of the World Conference on Human Rights)*: Վիեննայում համաձայնեցված եզրափակիչ փաստաթուղթը, որն արժանացել է ՄԱԿ-ի վեհաժողովի 48-րդ նստաշրջանի հավանությանը (բանաձև 48/121, 1993), վերահաստատեց այն սկզբունքները, որոնք զարգացել են վերջին 45 տարվա ընթացքում և առավել ամրապնդել են մարդու իրավունքների հիմքերը: Նշյալ փաստաթուղթը ճանաչում է ժողովրդավարության, զարգացման և մարդու իրավունքների, ներառյալ ինքնորոշման իրավունքի, փոխկապակցվածությունը: Եզրափակիչ փաստաթուղթը շեշտում է, որ համաժողովը ինքնորոշման իրավունքի մերժումը համարում է մարդու իրավունքների ոտնահարում և ընդգծում է տվյալ իրավունքի արդյունավետ կենսագործման կարևորությունը[12] [պարբ. 2]. *«Մարդու իրա-*

*վունքների համաշխարհային համաժողովը ինքնորոշման իրավունքի մերժումը համարում է մարդու իրավունքների ոտնահարում և ընդգծում է սույն իրավունքի լիարժեք կենսագործման կարևորությունը»:*[13] Հայաստանը, Ադրբեջանը, Թուրքիան, ինչպես նաև ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահները՝ ՌԴ, ԱՄՆ և Ֆրանսիան, սույն փաստաթղթին մասնակից երկրներ են: Մարդու իրավունքների և համաշխարհային խաղաղության հարցերով մտահոգ կազմակերպությունները լիակատար ճանաչում են տվել այն փաստին, որ ինքնորոշման նկատմամբ հարգանքը համաշխարհային խաղաղության նախապայման է: Մարդու հիմնարար իրավունքներն իմաստ ունեն այն դեպքում, երբ ժողովուրդը վայելում է ինքնորոշման պտուղները:[14]

Ինքնորոշման սկզբունքի բուն իմաստն այն է, որ բոլոր ժողովուրդները, անկախ իրենց ցեղախմբից, կրոնից կամ սեռից, ներքին և արտաքին գերիշխանությունից, օրենքի շրջանակում ազատորեն վայելեն ժողովրդավարության իրավունքները: Այն ձգտում է ապահովել հնարավորություններ ժողովուրդների քաղաքական, հասարակական և մշակութային զարգացման համար: Ինքնորոշման սկզբունքի հիմնական նպատակն է երաշխավորել, որ բոլոր ժողովուրդները սեփական հայեցողության համաձայն ունենան կառավարություն, որը կհամապատասխանի նրանց քաղաքական, տնտեսական և մշակութային պահանջներին:[15] Այսպիսով, ինքնորոշման իրավունքի մերժումը մարդու իրավունքների ոտնահարում է և, ըստ այդմ, միջազգային իրավունքի խախտում:

**Ինքնորոշման սկզբունքի զարգացումն այլ կազմակերպությունների միջոցով**

*Միջազգային արդարության դատարանին (International Court of Justice) առընթեր Իրավագետների միջազգային հանձնաժողովը (International Commission of Jurists)* բազմաթիվ համաժողովներ է հրավիրել օրենքի գերիշխանության հարցերով և փորձել է տալ օրենքի իշխանության հստակ ու ընդգրկուն սահմանումը, ինչպես նաև մարդու իրավունքների պաշտպանության համատեքստում դրանց լավագույն կենսագործման միջոցները: Նրանց առաջին քննաժողովը գումարվել է Աթենքում 1955թ., որի մասնակիցներն ընդունեցին *Աթենքի ակտը (Act of Athens)*, որն ամրագրում է. *«(9) Ինքնորոշման իրավունքի ճանաչումը մեր դարաշրջանի մեծագույն նվաճումներից է և միջազգային իրավունքի հիմնարար սկզբունքներից, դրա չգործադրումը միանշանակորեն դատապարտվում է: (10) Արդարությունը պա-*

*հանջում է, որ ժողովրդը, էթնիկ կամ քաղաքական փոքրամասնությունը չզրկվի իր բնական իրավունքից, հատկապես մարդու և քաղաքացու հիմնարար իրավունքներից, կամ իրավահավասար վերաբերմունքից՝ անկախ ցեղախմբից, գույնից, դասակարգից, քաղաքական համոզմունքից, կասպայից կամ դավանանքից:»*[16]

*Օրենքի միջոցով համաշխարհային խաղաղություն* [հաստատելու] *Իրավաբանների համաշխարհային առաջին համաժողովը (The First World Conference of Lawyers on World Peace through Law)* իր *Օրենքի համաշխարհային տիրապետության գլխավոր սկզբունքների հռչակագրի (Declaration of General Principles for a World Rule of Law)* (Աթենք, 06.07.1963թ.), մեջ հռչակեց հետևյալը. *«Որպեսզի օրենքի գերիշխանության ներքո հաստատվի իրավական արդյունավետ համակարգ, որը կբացառի ուժի գործադրումը, մենք հայտարարում ենք, որ … (6) ինչպես հռչակված է ՄԱԿ-ի կանոնակարգի մեջ, աշխարհի ժողովուրդների ինքնորոշման իրավունքն օրենքի գերիշխանության հիմնարար սկզբունք է»*:[17]

**Ինքնորոշման սկզբունքի զարգացումն Արդարության միջազգային դատարանի միջոցով**

Ինքնորոշման իրավունքը վերահաստատվել է միջազգային դատարանի վճիռներով: Օրինակ, *Հարավ-արևմտյան Աֆրիկային (South-West Africa Cases)* վերաբերող դատական գործերում (*26 դեկտեմբերի, 1961թ.* և *18 հուլիսի, 1966թ.*) դատավոր Ներվոն (Nervo), իրավահավասարության և ազատության հայեցակարգի վերաբերյալ իր համոզումն է արտահայտել հետևյալ կերպ. *«քանի դեռ ամբողջ աշխարհի ժողովուրդները չեն հասել ինքնորոշման և անկախության իրենց նպատակին, մենք պիտի ոգեշնչենք ժողովուրդների երազանքն ու վարքն այդ ուղղությամբ»*:[18]

Միջազգային դատարանն իր *Արևմտյան Սահարային վերաբերող (Western Sahara Case)* (16 հոկտեմբերի, 1975թ.) խորհրդատվական կարծիքի մեջ վերահաստատել է *«ինքնորոշման իրավունքի վավերականությունը»* միջազգային իրավունքի մեջ:[19]

Ինչպես նաև, Միջազգային դատարանի *Արևելյան Թիմորին վերաբերող (Պորտուգալիան ընդդեմ Ավստրալիայի)* 1995թ. հունիսի 30-ի որոշումը [պարբ. 29] վերահաստատել է ՄԱԿ-ի կանոնակարգով և նույն դատարանի իրավական փաստաթղթերով ճանաչված ժողովուրդների ինքնորոշման իրավունքը՝ որպես *«ժամանակակից միջազգային իրավունքի էական սկզբուքներից մեկը»*:[20]

**Ինքնորոշման կարգավիճակը, ընդգրկումը և բովանդակությունը ժամանակակից միջազգային իրավունքի մեջ**

Ըստ Միավորված ազգերի փաստաթղթերի, ինչպես նաև իրավագետ հեղինակների մեծ մասի կարծիքի, ինքնորոշումը արդի միջազգային իրավունքի մաս է: 1945թ. ի վեր ՄԱԿ-ում տեղի ունեցած զարգացումների շնորհիվ, իրավագետները ներկայումս մեծ մասամբ ընդունում են, որ ինքնորոշումն իրավական սկզբունք է:[21] Սույն սկզբունքը հաստատվել, զարգացել և ավելի շոշափելի կերպավորում է ստացել պետությունների պրակտիկայի ամբողջության մեջ և ի շարս *«միջազգային իրավունքի հիմնարար սկզբունքների» տեղ է գտել Բարեկամական հարաբերությունների բանաձևերի (Friendly Relations Resolutions)* մեջ:[22] Ինքնորոշման սկզբունքի ընհանրականությունը և քաղաքական բովանդակությունը չի զրկում նրան իր իրավական էությունից:[23] Ավելին, որևէ կասկած չունենալով, որ ինքնորոշման սկզբունքն իրավական սկզբունք է, ներկայումս շատ իրավագետներ ինքնորոշումը համարում են *jus cogens*, այսինքն՝ միջազգային իրավունքի անբեկանելի նորմ:[24] Հետևաբար, որևէ շեղում ինքնորոշման իրավունքից ընդունելի չէ ոչ պայմանագրերի և ոչ էլ միջազգային այլ գործարքների միջոցով:[25]

Անհրաժեշտ է ընդգծել, որ ինքնորոշման իրավունքն իրավունք է ընտրելու քաղաքական կազմակերպվածությունը և փոխհարաբերությունն այլ խմբերի հետ: Ընտրությունը կարող է լինել ինչպես պետական անկախության, դաշնային պետության մեջ այլ խմբերի հետ գոյակցության կամ ինքնավարության, այնպես էլ միակազմ պետության մեջ լիակատար տարրալուծման տեսքով:[26] Երբ որևէ իրավիճակում ի հայտ է գալիս ինքնորոշման խնդիր, ապա ներպետական օրենսդրության վկայակոչումով հնարավոր չէ այն մերժել: Միջազգային ավանդութային իրավունքը, պետությունների դիրքորոշումներից անկախ, պարտադիր է բոլոր պետությունների համար: Անկախ սրանից, պետությունները ՄԱԿ-ի կանոնակարգին մաս կազմելով, ինքնորոշման սկզբունքը պարտադիր են դարձրել իրենց համար:[27] Որոշ պետությունների պնդումները, որ ինքնորոշման սկզբունքի կենսագործումը խախտում է իրենց իրավունքները կամ հակոտնյա է իրենց *«սահմանադրական գործընթացներին»* չի կարող պատրվակ հանդիսանալ ուրիշ ժողովուրդներին ինքնորոշման իրավունքից զրկելու համար:[28] Ներկայումս ինքնորոշումը որպես սկզբունք համընդանուր ընդգրկման է:[29] Այն նաև անվերապահ է,

հետևաբար ՄԱԿ-ի անդամ-երկրները ինքորոշման կենսագործումը չպիտի կապեն այլ հարցերի հետ։[30]

Այս բոլոր նկատառումներն ի մի են բերված Լիխտենշտեյնի կառավարության ղեկավար և արտաքին գործերի նախարար Հանս Բռունհարտի (Hans Brunhart) ՄԱԿ-ի վեհաժողովի 47-րդ նստաշրջանի ժամանակ (23.09.1992թ.) ունեցած ելույթի մեջ (UNDocA/47/PV.9) [պարբ. 6]. *«Ինքնորոշման իրավունքը որպես սկզբունք ներկայումս համընդհանուր ճանաչում ունի։ Ես ուզում եմ հիշեցնել, որ ինքնորոշումը ոչ միայն ՄԱԿ-ի կանոնակարգի հիմնադրույթներից է, այլև այս վեհաժողովում ներկայացված պետությունների մեծ մասը, ի հետևանք 1966թ. մարդու իրավունքների զույգ միջազգայնագրերի առաջին հոդվածի, արդեն իսկ գտնվում են հստակ իրավական հանձնառությունների ներքո։ Այդ հոդվածով երկրները պաշտոնապես և որպես իրավական պարտավորություն ընդունել են, որ. «Բոլոր ժողովրդներն ունեն ինքնորոշման իրավունք»։ Հենց այդ իրավունքի շնորհիվ նրանք իրավասու են ազատորեն որոշել իրենց քաղաքական կարգավիճակը և ազատորեն հետամուտ լինել իրենց տնտեսական, հասարակական և մշակութային զարգացմանը»*։[31]

Որոշ ակնառու բացառություններով հանդերձ, ինքնորոշման սկզբունքի գործնական և խաղաղ գործադրումը հաճախ է անտեսվում։ Այլոց վրա տիրապետություն հաստատած ուժեր, չնայած ՄԱԿ-ի կանոնակարգով ստանձնած պարտավորություններին, շարունակաբար խոչընդոտում են ճնշված ժողովուրդներին՝ իրագործելու իրենց ինքնորոշման իրավունքը։ Հետևապես, ինչպե՞ս է հնարավոր որոշել, թե ժողովուրդն ի՞նչ ձևով է ուզում տնօրինել իր ճակատագիրը։

Զանազան ուղիներ կան որոշելու ինքնորոշման ձգտող ժողովրդի կամքը։ Ժողովրդի կամքը կարող է հստակեցվել հանրահարցման (plebiscite) միջոցով։ Հանրահարցումը կամ գրեթե նույն բանն հանդիսացող հանրաքվեն (referendum), ըստ էության սեփական տարածքի քաղաքական և իրավական կարգավիճակը որոշելու բնակչության մեծամասնության իրավունքի ճանաչումն է։[32] Ժողովրդի կամքը կարող է արտահայտվել խորհրդարանի կամ ինքնորոշվող ժողովրդի կողմից ընտրված ցանկացած այլ ներկայացուցչական կառույցի միջոցով։[33]

Ընդհանրապես, խնդրո առարկայի վերաբերյալ տարածված են հանրահարցումներ առանց ուղղակի հանրային քվեարկության։ Այս դեպքերում ինքնորոշվող տարածքի բնակչությունն ընտրում է ներկայացուցչական մարմին, որն էլ իր հերթին արտահայտում է ժողովրդի

կամքը: Եթե այդ մարմնի ընտրություններն ու այդ մարմնի մեջ քվեարկությունը կայացել են ժողովրդավարական եղանակով, ապա ժողովրդի կամարտահայտման այս ձևը միանգամայն օրինական է:[34] Սա հենց այն վիճակն է, որ մենք վերջերս (23.05.2010թ.) ունեցել ենք ԼՂՀ խորհրդարանական ընտրությունների ժամանակ:

Ժողովրդի կամքը կարող է նաև արտահայտվել զանգվածային բողոքի միջոցով՝ քաղաքացիական անհնազանդություն, ցույցեր, հավաքներ, լրագրային հոդվածներ և այլն: Ի վերջո այն կարող է նաև իր դրսևորումը ստանալ զինված պայքարի և ազգային-ազատագրական պատերազմի ձևով: Վերջինս դրսևորման ծայրահեղ միջոց է և մարդիկ դրան միայն հարկադրաբար են դիմում: Ըստ վերջին տարիներին միջազգային իրավունքի մեջ կայացած ավանդույթի, ինքնորոշման սկզբունքը ներառում է նաև անկախության իրավունք: Նույն հիմքով օրինականացվել է երրորդ կողմի միջամտությունը ազգային-ազատագրական պատերազմին՝ հօգուտ անջատողական շարժման:[35] Ինքնորոշման հասնելու համար ուժի գործադրումը և ազգային-ազատագրական շարժումներին օժանդակելը վերջին տարիներին սկսել է հաճախ կերպով համարվել օրինական: Դա հիմնավորվում է այն հանգամանքով, որ այդ ձևով խրախուսվում է ՄԱԿ-ի կանոնակարգի սկզբունքների իրագործումը:[36]

Միջազգային իրավունքի մեջ չկա անջատողականությունն արգելող որևէ օրենք, իսկ ՄԱԿ-ի կանոնակարգը հստակորեն հանդես է գալիս ինքնորոշմանը պաշտպանությամբ: Ինքնորոշումը կարող է ընթանալ ոչ ժողովրդական կառավարությունը տապալել ձգտող ապստամբության, հակագաղութային ապստամբության, անջատողական շարժման և անկախ երկիր ստեղծելու ճանապարհով:[37] Պետք է հատկապես շեշտել, որ ցանկացած ճանապարհի ընտրության դեպքում ոչ մի *«կենտրոնական իշխանություն»* կամ ուրիշ ժողովուրդ չի կարող լուծել ինքնորոշվող ժողովրդի խնդիրը, քանի որ դա դեմ կլինի բուն ինքնորոշման սկզբունքին:[38]

Ինքնորոշման ընդգրկման հարցը քննելիս անհրաժեշտ է պատասխանել մի կարևոր հարցի. Արդյո՞ք ժողովուրդները և ազգերը, որոնք արդեն իրագործել են իրենց ինքնորոշման իրավունքը, շարունակում են պահպանել ինքնորոշման իրավունքը: Պատասխանն է՝ այո, քանի որ ՄԱԿ-ի կանոնակարգը ճանաչում է բոլոր ժողովուրդների ու ազգերի ինքնորոշման իրավունքը, առանց խտրականություն դնելու պետականություն ունեցող կամ չունեցողների միջև:

Հարցը նույնպիսի պատասխան է ստացել նաև ՄԱԿ-ի վեհաժողովի բանաձևի մեջ, որը վերաբերում է Մարդու իրավունքների դաշնաթղթերի մեջ մարդու իրավունքներին վերաբերող դրույթի ընդգրկման հարցին:[39] Անվիճելի է նաև, որ դրսի միջամտությամբ և առանց բնակչության հստակ համաձայնության պետությունների միջև բաժանված ազգերը շարունակում են պահպանել ինքնորոշման ժառանգված իրավունքը՝ ներառյալ վերամիավորման իրավունքը:[40]

Ավելին, ինքնորոշման իրավունքի խախտումը որպես պատճառ է օգտագործվել *Եվրոպական համայնքի կողմից՝ մերժելու համար անկախության ձգտող միավորին որպես պետություն ճանաչելը: Եվրոպական համայնքի Արևելյան Եվրոպայի և Սովետական Միության տարածքի նոր պետությունների ճանաչման մասին ուղենիշների հռչակագրի մեջ (EC Declaration on the Guidelines on the Recognition of New States in Eastern Europe and in the Soviet Union)* (16 դեկտեմբերի, 1991թ.) հետևյալ պահանջը կա. ճանաչվելիք պետությունները մինչև ճանաչվելը և ճանաչվելու համար ժողովրդավարության և էթնիկ ու ազգային խմբերի ու փոքրամասնությունների իրավունքների հարգման սահմանադրական երաշխիքներ պիտի տրամադրեն: Ավելին, միջազգային իրավունքի նոր հիմնադրույթը հռչակում է, որ այն պետությունը, որը հիմնվել է ինքնորոշման իրավունքի ոտնահարումով առ ոչինչ է միջազգային իրավունքի մեջ:[41]

Ժողովուրդների ինքնորոշման առնչությամբ կա մի հարց ևս. Արդյո՞ք ինքնորոշման իրավունքը կարող է վերաբերել ոչ գաղութային միավորներին: Անշուշտ, ինքնորոշման իրավունքի հիմնական նպատակը գաղութատիրությանը հնարավորինս արագ վերջ տալն էր: Այսուհանդերձ, սկսած ՄԱԿ-ի կանոնակարգի մեջ այդ սկզբունքի դասագրումից (codification), չկա ինքնորոշմանը վերաբերող որևէ միջազգային փաստաթուղթ, որն ինքնորոշման իրավունքը սահմանափակի միայն գաղութային երկրներով: Օրինակ, արդեն բազմիցս հիշատակված Մարդու իրավունքներին վերաբերող 1966թ. զույգ դաշնաթղթերի ընդհանուր #1 հոդվածը ինքնորոշման իրավունքը վերապահում է *«բոլոր ժողովուրդներին»* առանց սահմանափակումների: Հելսինկիի վեհաժողովի եզրափակիչ ակտի (1975թ.) ութերորդ սկզբունքը հռչակում է. *«Ժողովուրդների իրավահավասարության և ինքնորոշման սկզբունքի հիման վրա բոլոր ժողովուրդների իրավունքն է՝ լիովին ազատ, ցանկացած պահի, առանց արտաքին միջամտության, որոշել իրենց ներքին և արտաքին քաղաքական կարգավիճակը, և ըստ*

*իրենց հայեցողության հետամտել իրենց քաղաքական, տնտեսական և մշակութային զարգացումը»*: Միջպետական պրակտիկան նույնպես աջակցում է ինքնորոշման իրավունքի ընդլայնված՝ գաղութային շրջանակից դուրս, գործադրումը: Իսկապես, *Իրավագետների միջազգային հանձնաժողովը (International Commission of Jurists)* Բանգլադեշի անջատման մասին իր զեկույցի մեջ նշում է. *«եթե պետության մաս հանդիսացող ժողովուրդներից մեկը զրկվում է իրավահավասարությունից և խտրականության է ենթարկվում, ապա նրա ինքնորոշման ամբողջական իրավունքը կյանքի է կոչվում»*:[42]

ՄԱԿ Անվտանգության խորհրդի 5 անդամներից 4-ի կողմից ստորագրված *Գերմանիայի վերջնական կարգավիճակի մասին պայմանագիրը (Treaty on the Final Settlement with Respect to Germany)*, (12.09.1990թ.) հստակորեն նշում է. *«Գերմանացի ժողովուրդը, ազատորեն կենսագործելով ինքնորոշման իր իրավունքը, արտահայտել է իր կամքը՝ միավորել Գերմանիան որպես մեկ պետություն»*, [նախաբան, պարբ. 11]: Սա այն դեպքում, երբ ոչ Արևելյան և ոչ Արևմտյան Գերմանիաները գաղութ չէին: Այս դիտարկումը նաև վերաբերում է այն պետություններին, որոնք առաջացել են ԽՍՀՄ և Հարավսլավիայի տրոհումներից հետո:[43]

## «ՏԱՐԱԾՔԱՅԻՆ ԱՄԲՈՂՋԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ» ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՆԿԱԽՈՒԹՅՈՒՆԸ

### «Տարածքային ամբողջականություն». զարգացումը և բովանդականությունը

*«Տարածքային ամբողջականություն»* հասկացությունը, խիստ սահմանափակ ըմբռնմամբ, միջազգային փաստաթղթերում գործածվել է միայն 3 անգամ: Մնացած դեպքերում դրանք հղումներ են այդ փաստաթղթերին: Տարածքային ամբողջականության և քաղաքական անկախության հայեցակարգերը ի հայտ են եկել Առաջին աշխարհամարտից անմիջապես հետո: Ազգերի լիգայի 10-րդ հոդվածը հռչակում է. *«Ազգերի լիգայի անդամները պարտավորվում են հարգել և պահպանել Ազգերի լիգայի բոլոր անդամների տարածքային ամբողջականությունն արտաքին ներխուժումից»*:[44] *«Տարածքային ամբողջականության»* նույն ըմբռնումն է վերահաստատված ՄԱԿ-ի կանոնակարգի մեջ. *2(4). «*[ՄԱԿ-ի] *Բոլոր անդամներն իրենց միջազգային հարաբերություններում պետք է ձեռնպահ մնան որևէ պետության տարածքային ամբողջականության կամ քաղաքական անկախության դեմ ուղղված ուժի սպառնալիքից կամ գործադրումից»*: Մյուս կարևոր միջազ-

գային փաստաթուղթը, որն այս առումով հաճախ է վկայակոչվում, *Հելսինկիի եզրափակիչ ակտն է* (01.08.1975թ.) որը պահանջում է. *«Մասնակից երկրներն իրենց երկկողմ, ինչպես նաև ընդհանրապես միջազգային հարաբերություններում, ձեռնպահ կմնան որևէ պետության տարածքային ամբողջականության կամ քաղաքական անկախության դեմ ուժի սպառնալիքից կամ կիրառումից»*:

Ակնհայտ է, որ Հելսինկիի եզրափակիչ ակտը, ինչպես ՄԱԿ-ի կանոնակարգը և Ազգերի լիգայի դաշնաթուղթը, դատապարտում են լոկ ուժի կիրառումը պետության տարածքային ամբողջականության դեմ և ոչ թե անվերապահորեն հանդես են գալիս տարածքային ամբողջականության բացարձակ պահպանման օգտին: Այն հստակեցնում է, որ արտաքին ուժի կամ ուժի սպառնալիքի կիրառումը տարածքային ամբողջականության և քաղաքական անկախության դեմ անընդունելի է: Միաժամանակ Հելսինկիի եզրափակիչ ակտը (գլուխ 1) առանձնանշում է. *«սահմանները կարող են փոփոխվել, համաձայն միջազգային իրավունքի, խաղաղ միջոցներով և համաձայնությամբ»*:

Ակնհայտ է, որ այն ժամանակներից ի վեր, երբ *«տարածքային ամբողջականություն»* հասկացությունն ի հայտ եկավ միջազգային իրավունքի մեջ, այն սերտորեն միահյուսված է արտաքին ուժի գործադրման հետ: Այլ խոսքով, *«տարածքային ամբողջականությունը»* ավանդաբար կապված է սպառնալիքի կամ ուժի կիրառման հիմնարար սկզբունքի հետ[45] և ոչ թե պետության տարածքի անվերապահ պահպանման հետ: Ինչպես նշել էինք վերը, այս դրույթը միայն *«ուժի գործադրման արգելք»* է[46] և հրաժարում է *«մի պետության կողմից ուժի գործադրման միջոցով մեկ այլ պետություն գրավելուց կամ նրա կառավարությունը փապալելուց»*:[47]

**«Տարածքային ամբողջականություն». ըմբռնումը, սահմանափակումը և կարգավիճակը՝ ըստ միջազգային իրավունքի**

Արդի քաղաքական կյանքում շարունակաբար սխալ փորձեր են արվում *«տարածքային ամբողջականությունը»* ներկայացնել որպես ինքնորոշման իրավունքի ընդհանուր սահմանափակում: Նման սահմանափակման հիմքը միանգամայն կեղծ է: Այն պետությունը, որի կառավարությունը անխտիր չի ներկայացնում տարածքի ամբողջ ժողովրդին, չի կարող նաև տարածքային ամբողջականությունը չխախտելու պատրվակով սահմանափակել ինքնորոշման իրավունքը:[48]

Ընդսմին, միջպետական պրակտիկան ցույց է տալիս, որ տարածքային ամբողջականության պահպանման հիման վրա ինքնո-

րոշման իրավունքի սահմանափակումը հաճախ է անտեսվել: Ինչպես, օրինակ, եղել է Բանգլադեշի (անկախություն Պակիստանից) Սինգապուրի (Մալայզիայից) և Բելիզի (*«չնայած Գվատեմալայի պահանջներին»*) ճանաչումների դեպքում:[49] Ի լրումն, միջազգային համայնքի կողմից ԽՍՀՄ և Հարավսլավիայի տրոհումների, Արևելյան Թիմորի և Էրիթրեայի ճանաչումներից, Կոսովոյի, Աբխազիայի և Հարավային Օսիայի մասնակի ճանաչումներից հետո, ստեղծվել է իրավիճակ, երբ որոշակի տարածքի ժողովրդին ճնշման ենթարկող կառավարությունը այլևս չի կարող ապավինել տարածքային ամբողջականության պահպանման ընդհանուր շահագրգռությանը, որպես ինքնորոշման իրավունքի սահմանափակում:

Ըստ այդմ, կա հստակ ըմբռնում. միայն այն պետության կառավարությունը, որն անխտիր բոլոր ժողովուրդներին է թույլ տալիս ազատորեն որոշելու իրենց քաղաքական կարգավիճակը և տնտեսական, հասարակական ու մշակութային զարգացումը, կարող է, միայն կարող է, փորձ անել սահմանափակել ինքնորոշման իրավունքը: Այսու, տարածքային ամբողջականությունը, որպես ինքնորոշման իրավունքի սահմանափակում, կարող է միայն վերապահվել այն պետություններին, որոնց կառավարությունները ներկայացնում են ողջ բնակչությունը, թույլատրելով վերջիններիս ազատորեն և առանց սահմանափակումների գործադրել ներքին ինքնորոշումը:[50]

Ակնհայտ հայեցակարգային կապ կա ժողովրդավարության և ինքնորոշման միջև: Ժողովրդավարությունը հաճախ դիտարկվում է որպես ներքին ինքնորոշում, իսկ անջատումը՝ որպես արտաքին ինքնորոշում, այսիքն ինքն իրեն կառավարելու և ոչ թե այլ ժողովուրդների կողմից կառավարվելու իրավունք:[51]

Ավելին, ակնհայտ է, որ նրանք, ովքեր զրկված են ինքնորոշման իրավունքից, կարող են փնտրել միջազգային ուժային աջակցություն՝ սատարելու համար իրենց ինքնորոշման իրավունքը, սակայն ինքնորոշման դեմ պայքարող պետությունը չի կարող օգտագործել դրսի ուժն ինքնորոշվող հանրությունների դեմ: Ինչպես նշվել էր վերը, *Միջազգային իրավունքի սկզբունքների վերաբերյալ հռչակագիրը (Declaration on Principles of International Law)* ամրագրում է. *«յուրաքանչյուր պետություն պարտավորություն ունի ձեռնպահ մնալ որևէ ուժային գործողությունից, որը ժողովրդին զրկում է ինքնորոշման, ազատության և անկախության իր իրավունքից»*: Վերջին շրջանում նկատելի է միջազգային համայնքի այնպիսի գործողությունների աճը, որոնք կարող են

որակվել որպես մարդասիրական միջամտություններ: Այդպես եղավ Սոմալիում և Իրաքի հյուսիսային մասում՝ 36 զուգահեռականից հյուսիս, երբ իրականացվեց *«ապահով երկինք»* ծրագիրը[52] (1991-2003): Ներկայումս միջազգային համայնքի կողմից պակաս կարևորություն է տրվում այն երկրների տարածքային ամբողջականությանը, որտեղ մարդու իրավունքները, ներառյալ ինքնորոշման իրավունքը, կոպտորեն և շարունակաբար ոտնահարվում են:[53] Ինքնորոշման իրավունքը վերաբերում է բոլոր այն դեպքերին, երբ ժողովուրդներն ուրիշների կողմից հպատակեցման, գերիշխանության հաստատման և շահագործման միջոցներով ենթարկվում են ճնշումների: Սա վերաբերում է բոլոր տարածքներին՝ գաղութային, թե ոչ, և բոլոր ժողովուրդներին:[54] Պետք է ընդունել, որ ինքնորոշման բազում շարժումներ առաջ են եկել, երբ պետությունն իրականացրել է անարդար, խտրական քաղաքականություն, իսկ միջազգային իրավակարգը համապատասխանաբար չի արձագանքել ժողովուրդների օրինական ձգտումներին:

**Ինքնորոշում. մարդու իրավունքներն ու անջատվելու իրավունքը**

Ինքնորոշման ենթադրյալ վտանգներից է համարվում, որ այն կարող է խրախուսել անջատողականությունը: Նախ, միջազգային իրավունքի մեջ չկա որևէ օրենք, որը դատապարտի ամեն անջատում բոլոր պայմաններում: Ինքնորոշման իրավունքը ներառում է անջատվելու իրավունք:[55] Այն դեպքերում, երբ տարածքային իրավունքի սկզբունքն անհամատեղելի է ինքնորոշման իրավունքի հետ, ապա առաջինը, համաձայն արդի միջազգային իրավունքի, պետք է իր տեղը զիջի վերջինին:[56] Օրինակ, երբ մեծամասնությունը կամ փոքրամասնությունը շարունակում է այնպիսի միջազգային հանցանքը, ինչպիսին օրինակ ցեղասպանությունն է, կամ միտումնավոր քաղաքականությամբ բնակչության մյուս հատվածին լիովին զրկում է մարդու իրավունքներից, ապա ընդունելի է, որ ճնշված հատվածը, լինի փոքրամասնություն, թե մեծամասնություն, դիմի ինքնորոշման՝ ընդհուպ մինչև անջատում:[57]

Քանի որ Ադրբեջանը Լեռնային Ղարաբաղի ժողովրդի կամքի ազատ և խաղաղ դրսևորմանը (ցույցեր, հանրահավաքներ, հայցադիմումներ, կոչեր և այլն) հակադրեց բռնի ուժը խաղաղ բնակչության դեմ, ներքին զորքերի օգտագործմամբ ձեռնարկեց ոչ համարժեք պատժիչ գործողություններ, պետականորեն կազմակերպեց Ադրբեջանի հայ քաղաքացիների ջարդեր (Սումգայիթ, Բաքու, Կիրովաբադ և այլն), իր քաղաքացիների նկատմամբ վարձկանների օգնությամբ

(ուկրաինացիներ, աֆղաններ, ռուսներ և այլն) սանձազերծեց անողոք պատերազմ և խայտառակ պարտություն կրեց, չի կարող ակնկալել, որ Արցախի ժողովուրդը հրաժարվի իր օրինական իրավունքից և չիրականցնի ինքնորոշման իր իրավունքը:

Խորքի մեջ, միջազգային համայնքը գտնվում է իրավական և բարոյական պարտավորության ներքո՝ ճանաչելու Լեռնային Ղարաբաղի ժողովրդի քաղաքական ինքնորոշումը, այսինքն Լեռնային Ղարաբաղի Հանրապետությունը: Երբ տեղի է ունեցել *de facto* պետության բյուրեղացում, ապա դրա ճանաչման մերժումը կարող է հավասարազոր լինել ինքնորոշման մերժումի: Բացի այդ, միջազգային իրավունքի մեջ կա հստակ ըմբռնում. այն բանից հետո, երբ կռվող կողմին տրվել է *«պատերազմող կողմի» (belligerency)* կարգավիճակ, ինչպես տեղի է ունեցել Լեռնային Ղարաբաղի հետ *Բիշկեկի արձանագրությամբ (Bishkek Protocol)* (05.05.1994թ.), և *Հրադադարի համաձայնագրով (Ceasefire Agreement)* (12.05.1994թ.), ապա դրանից բխում է ամբողջական ճանաչման պարտավորություն և ճանաչման մերժումը հավասարազոր է քաղաքական ինքնորոշման մերժման, ինչն անօրինական է:[58] Այս պարտավորությունն ածանցվում է այն ըմբռնումից, որ ինքնորոշման սկզբունքն ու իրավունքը *erga omnes* են, այսինքն՝ պատկանում են միջազգային իրավունքի իրավական այն պարտավորությունների թվին, որոնք երկկողմ կամ փոխադարձ չեն, այլ վերաբերում են միջազգային համայնքի բոլոր անդամներին:[59]

Մարդու իրավունքների եվրոպական դատարանի *Լոիզիդուն ընդդեմ Թուրքիայի (Loizidou vs Turkey)* 1996թ. դատավճռի մեջ դատավոր Վիլդհաբերը (Wildhaber) երևան է հանում աճող համախոհությունն (consensus) առ այն, որ ինքնորոշման իրավունքը, մասնավորապես անջատումը, պետք է մեկնաբանվի որպես միջոց մարդու իրավունքների որոշակի ոտնահարումների դեմ. *«Մինչև վերջերս միջազգային պրակտիկայում ինքնորոշման իրավունքը գործնականորեն սահմանափակվում էր և ըստ էության նույնացվում էր ապագաղութացման հետ: Վերջին տարիներին թվում է՝ համախոհություն է ի հայտ գալիս, երբ ժողովուրդները, որոնց մարդկային իրավունքները մշտապես և կոպտորեն ոտնահարվում են կամ նրանք որևէ ներկայացուցիչ չունեն կամ նրանց ներկայացվածությունը զանգվածաբար խախտվում է ոչ ժողովրդավարական և խտրական միջոցներով, նույնպես կարող են կենսագործել ինքնորոշումը: Եթե նման խտրականություն իրականում կա, ապա ինքնորոշման իրավունքն այն գործիքն է, որը կարող է գոր-*

*ծածվել վերահաստատելու համար մարդու իրավունքների և ժողովրդավարության միջազգային ստանդարտները»*:[60] Ինչպես վկայում է դատավոր Վիլդհաբերը, իրավագետ մասնագետների մեջ կա հարաճուն համաձայնություն առ այն, որ ինքնորոշումն է այն միջոցը, որով պետք է շտկվի պետության կողմից որևէ խմբի շարունակաբար և կոպտորեն ոտնահարվող իրավունքը:[61] Անկասկած Արցախի ժողովրդի ինքնորոշումը պետք է գնահատվի նաև որպես ուղղիչ արդարադատություն (corrective justice):

Այսու, փոքրամասնության ինքնորոշման իրավունքը պետք է դիտարկել մարդու իրավունքների շրջանակում: Ըստ այդմ, կարելի է սահմանել, որ ինքնորոշումը որոշակի տարածքում հաստատված ժողովրդի սեփական քաղաքական ճակատագիրը ժողովրդավարական ճանապարհով որոշելու իրավունքն է:[62]

Անհեթեթություն է ենթադրել, որ ինքնորոշումը պետք է կենսագործվի նախկին վարչական սահմաններում, առանց հաշվի առնելու տարածքի ժողովրդի մշակութային, լեզվական կամ էթնիկ ինքնությունը: ԽՍՀՄ-ի մեջ ներքին սահմանները հաճախ գծվում էին այն ձևով, երբ տիտղոսային մի ազգի շատ ներկայացուցիչներ հայտնվում էին իրենց տիտղոսային հանրապետությունից դուրս, ինչպես Լեռնային Ղարաբաղի դեպքում էր:[63] Եթե որոշակի տարածքում որևէ առանձնախումբ քաղաքականապես իրավազուրկ է, ապա այդ խումբն ունի անկախության իրավունք,[64] անկախ այն բանից կազմակերպված են նրանք որևէ վարչական միավորի մեջ, թե՝ ոչ: Անտարակույս, քանի որ Արցախի ժողովուրդը (և ոչ միայն ԼՂԻՄ-ի ժողովուրդը) Ադրբեջանում ենթարկվել են ծայրահեղ խտրականության, ապա իրավունք ունի ինքն ընտրելու ինքնորոշման ձևը:

**Ամփոփում**

- Ինքնորոշումը հնուց եկող քաղաքական իրավունք է: Այն միջազգային հանրային իրավունքում լիովին հաստատված սկզբունք է: Այս սկզբունքը հաստատվել, զարգացել և շոշափելի ձև է ստացել միջպետական հարաբերություններում և ներառված է բազում միջազգային փաստաթղթերում:
- Ինքնորոշման սկզբունքը զարգացում է ապրել Արդարության միջազգային դատարանի վճիռներում [International Court of Justice]:
- Ինքնորոշման նկատմամբ հարգանքը նախապայման է համաշխարհային խաղաղության համար: Ինքնորոշման իրավունքից զրկվածները կարող են դիմել միջազգային ուժային աջակցության:

- Ինքնորոշումը որպես միջազգային իրավունքի սկզբունք համընդհանուր է իր ընդգրկումով:
- Ինքնորոշումը վերաբերում է բոլոր այն իրավիճակներին, երբ ժողովուրդները այլոց կողմից ենթակվում են հպատակեցման և շահագործման: Բոլոր ժողովուրդներն ու ազգերն անխտիր և առանց սահմանափակումների ունեն ինքնորոշման իրավունք:
- Ինքնորոշման իրավունքի մերժումը մարդու իրավունքի ոտնահարում է, հետևաբար՝ միջազգային իրավունքի խախտում:
- Ինքնորոշումը սեփական քաղաքական կազմակերպվածության ձևը և այլ խմբերի հետ հարաբերությունները որոշելու իրավունքն է:
- Ժողովուրդների և ազգերի ինքնորոշման իրավունքը նախադրյալ է մարդու մյուս բոլոր իրավունքները վայելելու համար: Ըստ այդմ, ՄԱԿ-ի վեհաժողովը հորդորել է բոլոր անդամ երկրներին՝ աջակցել ժողովուրդների և ազգերի ինքորոշման իրավունքին:
- ՄԱԿ-ի կանոնակարգի 2(4) հոդվածը որևէ ընդհանուր բան չունի «տարածքային ամբողջականության» բացարձակ պահպանման հետ: Այն «ուժի կիրառման արգելք» է և կոչ է անում մերժել «մի պետության կողմից մեկ այլ պետության տարածքի զավթումը և տարածքի տապալումը»:
- Ինքնորոշումը ներառում է նաև անկախանալու իրավունք: Լեռնային Ղարաբաղի ժողովուրդը (և ոչ միայն ԼՂԻՄ-ի) իրավասու է անկախությունն ընտրել որպես ինքնորոշման դրսևորում:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Restatement of the Law (3rd). The Foreign Relations Law of the United States, The American Law Institute, Washington, 1987;2,§905(7), p. 389.
2. Ibid, p. 383.
3. Umozurike O.U. Self-Determination in International Law, 1972, Connecticut, p. 8.
4. Thurer D. Self-Determination. In R. Bernhardt (ed.), Encyclopaedia of Public International Law, vol. IV, Amsterdam, 2000, p. 364.
5. Rosenne S. Codification of International Law, Encyclopaedia of Public International Law, in. R. Bernhardt (ed.), v. I, Amsterdam, 1992, p. 633.
6. Ibid.
7. Thurer D. op.cit., p. 365.
8. Starushenko G. The Principle of Self-determination in Soviet Foreign Policy, Moscow, 1963, p. 221.
9. Recueil des cours de l'Academie de droit international, Hague, 1962, II, p. 33; Annual Report of the Secretary-General , 1960, 2. Chief Judge Moreno Quintana, International Court of Justice Reports, 1960, pp. 95-96.
10. Umozurike O.U. op.cit., p. 192.
11. Ibid, p. 271.
12. Hillier T. Sourcebook on Public International Law, London-Sydney, 1998, p. 192.
13. Documents, UN General Assembly, A/CONF.157/23; 12 July 1993.
14. Umozurike O.U. op.cit., p. 188.
15. Ibid, p. 273.
16. Ibid, p. 185.
17. Declaration of General Principles for a World Rule of Law. Am J Int Law 1964;58:138-151.
18. International Court of Justice, Reports, 1966, v. IV, p. 465.

19. ICJ Reports 975 12 at 31-33. See also the Namibia Opinion, Ibid (1971), 16 at 31; Geog K. v. Ministry of Interior, ILR 71, 284; and the Case Concerning East Timor, ICJ Reports (1995) 102.
20. Thurer D. op.cit., p. 370.
21. Brownlie I. Principles of Public International Law. Oxford, 5th ed., 2001, p. 600; Wright Q. 98 Hague Recueil (1959, III), 193.
22. Thurer D. op.cit., p. 366.
23. Brownlie I. op.cit., p. 600.
24. Hillier T. op.cit., p. 191. Supporters of the view that the right of self-determination is part of jus cogens include: I. Brownlie, Principles of Public International Law (4th ed., 1991), p. 513. A Cassese, International Law in a Divided World (1986), p. 136; J. Craword, "The Rights of Peoples: Some Conclusions", in Crawford, (ed.), The Rights of Peoples (1988), p. 159 at p. 166; H.Gros Espiell, The Right to Self-Determination, Implementation of United Nations Resolutions (1978), para. 85; and the UK's and Argentina's statements in the context of the Falklands/Malvinas dispute (1982) 53 British yearbook of International Law, pp. 366-379.
25. Cassese A. Self-determination of Peoples, Cambridge, 1995, p. 134-35.
26. Brownlie I. op.cit., p. 599.
27. Umozurike O.U. op.cit., p. 196.
28. Starushenko G. op.cit., p. 209.
29. Thurer D. op. cit., p. 369.
30. Starushenko G. op.cit., p. 210.
31. Self-Determination and Self-Administration, A Sourcebook, (ed. Wolfgang Danspeckgruber and Arthur Watts), London, 1997, Appendix 2, The Liechtenstein Initiative at the UN, p. 405.
32. Starushenko G. op.cit., p. 214.
33. Ibid, p. 213.
34. Ibid, p. 215-6.
35. Thurer D. op.cit., p. 368.
36. Hillier T. op.cit., p. 612.
37. Self-determination, Digest of International Law (ed. M. Whiteman), v. 5, § 4, p. 39.
38. Starushenko G. op.cit., p. 214.
39. Resolution 545 (VI) of February 5, 1952.
40. Thurer D. op. cit, p. 368.
41. Ibid, p. 369.
42. Report on Events in East Pakistan (1971), Geneva, p. 69.
43. McCorquodale R. Self-Determination: Human Rights Approach, The International and Comparative Law Quarterly, vol. 43, # 4 (Oct. 1994), p. 861.
44. Rozakis Ch. Territorial Integrity and Political Independence, in R. Bernhardt(ed.), Encyclopaedia of Public International Law, v. IV, Amsterdam, 2000, p. 813.
45. Ibid, p. 812-3.
46. Restatement of the Law (Third), op.cit., p. 389.
47. Ibid, p. 383.
48. McCorquodale R. op.cit., p. 880.
49. Maguie J. "The Decolonization of Belize: Self-Determination v. Territorial Integrity" (1982) 22 Virginia Journal of International Law, p. 849.
50. McCorquodale R. op.cit., p. 880.
51. Moore M. National Self-Determination, Oxford, 1998, 10.
52. Security Council Resolution 688 (April 5 1991).
53. McCorquodale R. op.cit., p. 882.
54. Ibid, p. 883.
55. Moore M. op.cit., p. 23.
56. Umozurike O.U. op.cit., p. 187.
57. Ibid, p. 199.
58. Thomas A.V.W., Thomas A.J. Non-Intervention: the law and its import in the Americas, Dallas, 1956, p. 220.
59. Cassese A.op.cit., p. 134.
60. Loizidou vs Turkey (Merits), European Court of Human Rights, 18 December, 1996, (1997) 18 Human Rights Law Journal 50 at p. 59.
61. Knop K. Diversity and Self-Determination in International law, Cambridge, 2002, p. 74.
62. Ibid, p. 85.
63. Moore M. op.cit., p. 140.
64. Frank T.M. The Power of Legitimacy among the Nations, NY, 1990, p. 171.

*1-7 հունիսի, 2010թ.*

## ՁԲ. Վուդրո Վիլսոն կենտրոնը ոտնահարեց նախագահ Վիլսոնի ժառանգությունն ու ամերիկյան արժանապատվությունը

They [Turks] had exhibited complete absence of common sense and a total misunderstanding of the West. They had imagined that the [Paris Peace] Conference knew no history and was ready to swallow enormous falsehoods.

*President Woodrow Wilson, June 26, 1919, Paris*

Նրանք [թուրքերը] ի հայտ բերեցին բանականության կատարյալ բացակայություն և Արևմուտքի լիակատար թյուրըմբռնում: Նրանք երևակայում էին, որ [Փարիզի խաղաղության] վեհաժողովը պատմություն չգիտի և պատրաստ է կուլ տալու [իրենց] հրեշավոր կեղծիքները:

*ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոն, 26 հունիսի 1919թ., Փարիզ*

Չնայած բազմաթիվ բողոքներին և դժգոհություններին՝ Թուրքիայի ԱԳ նախարար Ահմեդ Դավութօղլուն, այնուամենայնիվ, արժանացավ Վաշինգտոնի Վուդրո Վիլսոն հետազոտական կենտրոնի (think-tank) մրցանակին: Եթե այս իրադարձությունը հայերիս համար կարելի է գնահատել որպես միջադեպ՝ ցավալի ու անցանկալի, սակայն այնուամենայնիվ միջադեպ, ապա այն լուրջ հարված է ամերիկյան վերլուծական կենտրոնների վարկին: Ցանկացած վերլուծական կենտրոնի հիմնական արժանիքը նրա ինքնուրույնությունն է, այսինքն՝ անկախ վերլուծություններ և անաչառ կանխատեսումներ անելու ունակությունը: Ծախված լինելն ամենավատ բնութագրականն է որևէ վերլուծական կենտրոնի համար: Մրցանակ շնորհելով Դավութօղլուին Վուդրո Վիլսոն կենտրոնն ընդունեց, որ պարզապես աճուրդով վաճառել է մրցանակը, կամ ինչպես իրենք էին փաթեթավորել գեղեցիկ բառերով՝ *«մրցանակի հանձնումը մաս է կազմում իրենց դրամահավաքի ջանքերին»*: *("The Wilson Center said in an e-mailed statement that the award is part of its fund-raising effort.")*

Իհարկե Վուդրո Վիլսոն կենտրոնը իրավականորեն որևէ պարտավորություն չունի Միացյալ Նահանգների 28-րդ նախագահի հայացքներն ու քաղաքական մոտեցումներն արժևորելու առումով: Այսուհանդերձ, այդ անունը որոշակի բարոյական պատասխանատվություն է դնում կենտրոնի վրա: Վիլսոնն առաջինն էր պետության ղեկավարներից, ով համաշխարհային մակարդակով բարձրացրեց ժողովուրդների ինքնորոշման հարցը: Ինչպե՞ս կարելի մրցանակ տալ մի երկրի ԱԳ նախարարին, որն արդեն տասնամյակներ արյան

մեջ խեղդում է քրդերի ինքնորոշման իրավունքը: Թուրքիան, տրորելով քրդերի ինքնորոշման իրավունքը, ոտնահարում է Վիլսոնի քաղաքական ժառանգությունը: Ցավոք, Վուդրո Վիլսոնի ժառանգության և ամերիկյան արժանապատվության ոտնահարման գործին մասնակից դարձավ նաև Միացյալ Նահանգների արդարամիտ նախագահի Վուդրո Վիլսոնի անունը կրող վերլուծական կենտրոնը:

*18 հունիսի, 2010թ.*

## ՁԳ. Արցախում պատերազմի հնարավորության մասին

Ես համաձայն եմ բազմիցս արտահայտված այն տեսակետին, որ Արցախի հարցում Իլհամ Ալիևի քաղաքականությունն առավելապես պայմանավորված է ներքին գործոններով: Իլհամը, ինչպես իր հայրը, պատկանում է քաղաքական այն գործիչների թվին, որոնց համար միակ սրբությունն իշխանությունն է՝ այդ կարգավիճակից ածանցվող հսկայական գումարներ գրպանելու հնարավորությամբ: Հետևաբար, այդ տեսանկյունից էլ պետք է քննենք Արցախի ճակատում Ալիևի կողմից պատերազմ սանձազերծելու հնարավորությունը:

Ամեն պատերազմ լուրջ և անկանխատեսելի հետևանքներ է պարունակում ցանկացած իշխանության համար: Ալիևը, կարծում եմ, չի մոռացել, որ Ադրբեջանում իշխանափոխությունները միշտ էլ տեղի են ունեցել Արցախում կրած ռազմական պարտությունների պատճառով: Արդյո՞ք ներկայումս Իլհամն ունի պատերազմում հայկական կողմին ջախջախիչ պարտության մատնելու երաշխիք: Համոզված եմ՝ ո՛չ: Ավելին, հավանականությունը, որ պատերազմի դեպքում Ադրբեջանը տարածքային նոր կորուստներ կունենա, շատ ավելի մեծ է:

Փորձենք նաև հասկանալ՝ ի՞նչ գին է վճարելու Ադրբեջանը Արցախի ճակատում ենթադրյալ հաղթանակի դեպքում: Եթե մինչևիսկ պատկերացնենք անհնարինը՝ ասենք ադրբեջանական զինուժին հաջողվի ոչնչացնել հայկական բանակը (անհնարին մի բան պաշտպանական դիրքերում գտնվող բանակի դեպքում) և տեղահանել արցախաբնակ ողջ հայությանը (իրողություն է, որ այս պատերազմը ոչ միայն բանակների միջև է, այլև ժողովուրդների), ի՞նչ վիճակում է հայտնվելու Ադրբեջանը: Ի լրումն տասնյակ հազարավոր նոր զոհերին, Ադրբեջանը հայտնվելու է տնտեսական բացարձակ կործանման եզրին: Ադրբեջանը որպես պետություն այսօր գոյատևում է զուտ նավթի և գազի արտահանման շնորհիվ: Դրանց գումարներով է, որ այսօր Ադրբեջանը զինվում է և պարբերաբար հոխորտում է Արցախի և Հայաստանի դեմ: Այսինքն, նավթահանքերը, նավթամուղերը, գազատարները և նման այլ ենթակառույցները, ռազմական նշանակության օբյեկտներ են, հետևաբար՝ միանգամայն օրինական թիրախներ: Միթե՞ պարզ չէ, որ պատերազմի առաջին իսկ ժամերի ընթացքում դրանցից միայն ծխացող մետաղակույտեր կմնան: Պետք է նաև ընդգծել, որ Ադրբեջանը չի կարող ձեռնարկել համարժեք քայլեր, քանի որ Հայաստանի տնտեսությունն իր բոլոր թերություններով հան-

դերձ, անհամեմատ պակաս խոցելի է, քանի որ մենք չունենք 2-3 օբյեկտ, որոնց ոչնչացումը կհանգեցնի արտահանության, հետևաբար բուն եկամուտի, 90%-ի ոչնչացմանը: Բացի այդ, Ալիևը ոչ միայն սեփական ժողովրդի, այլև արտասահմանյան այն բոլոր ընկերությունների առջև է պատասխանատվություն կրում, որոնք հսկայական ներդրումներ են կատարել վերոնշյալ ոլորտում և որոնցից շատերը դեռևս հետ չեն բերել իրենց ներդրած գումարները: Ալիևի ինչի՞ն է պետք պատերազմը: Բաքվի էմիրն իր համար նստած կթում է մի ողջ երկրի ընդերքը և նույն երկրի ժողովրդի մեծ մասին, որն է այդ երկրի հսկայական հարստության իրավական սեփականատերը, պահում է հետին աղքատության մեջ: Մոլագար հայատյացությունը Ալիևին պետք է գողացած իշխանությունը պահելու և գողոնը պահպանելու համար:

Քանի որ Ալիևը գող է, որովհետև իշխանության գողն էլ գողն է, ապա նրա սիրտը միշտ էլ դող է: Հետևաբար, պատերազմը խիստ անհավանական համարելով հանդերձ, լիովին այն չեմ բացառում: Լարված իրավիճակում պատերազմները կարող են ծագել նաև ինքնաբերաբար: Սակայն որպես մտածված քաղաքականություն կարծում եմ, որ Ալիևը միայն մի դեպքում կգնա արկածախնդրության (ուրիշ բառով դա հնարավոր չէ կոչել), երբ Ալիևի դիրքերն Ադրբեջանում այնքան թուլացած լինեն, որ կասկածի տակ դրվի կեղծիքի և խաբեության ճանապարհով հերթական անգամ իշխանությունը զավթելու Ալիևի հնարավորությունը: Այսինքն, Բաքվի էմիրությունում բոլոր քաղաքական զարգացումները պետք է դիտարկել Ալիևների հարստությունը (այս բառի երկու իմաստով) պահպանելու տեսանկյունից:

Երբ պատերազմն Իլհամ Ալիևի համար դառնա իշխանությունը պահելու միակ ճանապարհը, նա կգնա դրան: Սակայն, քանի որ ներկայումս Ադրբեջանում գրեթե իսպառ բացակայում է որևէ ընդդիմություն, ապա չեմ կարծում, որ էմիրը որևէ մեկից դյուզն իսկ վտանգ է զգում: Այսօր Իլհամ Ալիևն ինքը շահագրգռված չէ ադրբեջանական բանակի ո՛չ հաղթանակով և ո՛չ էլ պարտությամբ: Արևելքում չեն ներում պարտված էմիրներին, միևնույն ժամանակ Արևելքում ոչինչ այնքան վտանգավոր չէ բռնակալի համար, որքան հաղթանակ տեսած բանակի զինվորն ու զորավարը:

*21 հունիսի, 2010թ.*

## ՁԴ. Երախտագիտությունը պետության հիմքերն ամրապնդող արժեք է

> Պետության ղեկավարը [Բակո Սահակյանը] թանկարժեք նվերներ և դրամական պարգևավճարներ հանձնեց կառավարությանն առընթեր ոստիկանության և ազգային անվտանգության ղեկավարներին և մի խումբ աշխատակիցների:
>
> *Armenia Today, 23.06.2010*

Անհասկանալի է: Նախ անհասկանալի է, թե ինչո՞ւ են մարդիկ *«թանկարժեք նվերներ և դրամական պարգևավճարներ»* ստանում իրենց ծառայողական պարտականությունները կատարելու համար: Դրա համար նրանք աշխատավարձ են ստանում: Հետո, եթե ինչ-որ մեկը պիտի դրամական պարգևավճար ստանար, ապա դա սահմանամերձ գյուղում ապրող գյուղացին պիտի լիներ, քանզի նախ նա՛ դրա կարիքն ունի, հետո նրա նվիրումն ու վաստակն անհամեմատելի են քաղաքաբնակ պաշտոնյայի արածի հետ:

Սակայն իմ բուն խոսքը դրա մասին չէ: Եթե այս օրերին Արցախի նախագահի կողմից ինչ-որ մարդիկ պիտի պարգևատրվեին, ապա դրանք Արցախի պաշտպանության ժամանակ զոհված 4 և վիրավորված ևս 4 զինվորականները պիտի լինեին: Ես առաջին հերթին նկատի ունեմ մարտական շքանշաններով պարգևատրելը, քանի որ, ինչպես գրել էր ԼՂ պաշտպանության նախարարությունը, նրանք զոհվել են մարտի ժամանակ: Անկախ այն բանից, թե ի՞նչ կբացահայտի հետագա անաչառ քննությունը (հուսանք, որ այդպիսինը կլինի) պարզելու համար, թե ինչպե՞ս եղավ, որ հակառակորդը մեր դիրքերը հանկարծակիի բերեց, միևնույն է այս մարդիկ տվել են իրենց կյանքը կամ արյունը, հետևաբար նրանք արժանի են Արցախի երախտագիտությանը:

Առանց երախտագիտության չի կարող լինել լիասիրտ նվիրում: Երախտագիտությունը մեծ խորհուրդ ունի իր մեջ, որ ավելի շատ ողջերին և ապագա մարտիկներին է պետք: Երախտագիտությունը պետության հիմքերն ամրապնդող արժեք է:

*23 հունիսի, 2010թ.*

## ՁԵ. Ի՞նչ օկուպացիայի մասին է խոսքը

Բաքվի թաթարները և նրանց տերերը՝ Ստամբուլի թուրքերը, պարբերաբար խոսում են Հայաստանի Հանրապետության կողմից Ադրբեջանական Հանրապետության տարածքի մի մասի, իբր, ռազմակալման (բռնազավթման, occupation) մասին: Միանգամայն հիմնազուրկ պնդում: Նման պնդման համար հիմքեր են պետք: Հիմքերից մեկը խնդրո առարկա տարածքի միջազգային իրավունքով ամրագրված տիտղոսի առկայությունն է: Այսինքն, որպեսզի Ադրբեջանի տարածքի որևէ մաս համարվի որևէ մեկի կողմից ռազմակալված, անհրաժեշտ է, որ Ադրբեջանն ունենա և վկայակոչի այն միջազգային փաստաթուղթը, որով, այսպես կոչված, ռազմակալված տարածքի վրա ճանաչված է եղել Ադրբեջանական Հանրապետության տիտղոսը: Սա միջազգային իրավունքի հիմնարար դրույթ է, քանի որ միջազգային օրենքը հստակ է. ցանկացած տարածքի պատկանելությունը որևէ պետության պայմանավորված է միջազգային օրինական փաստաթղթով ամրագրված տիտղոսով և տվյալ տարածքի վրա հաստատված գերիշխանությամբ (sovereignty):

Համառոտակի անդրադառնանք վերջին մի քանի հարյուր տարվա ընթացքում Լեռնային Ղարաբաղի տարածքի տիտղոսին: *Ամասիայի թուրք-պարսկական պայմանագրով 1555թ.-ից* Լեռնային Ղարաբաղի տարածքի վրա միջազգայնորեն ամրագրված է եղել Պարսկաստանի տիտղոսը: XIX դ. սկզբին Հարավային Կովկասի արևելյան հատվածն անցավ Ռուսաստանի կայսրությանը, ըստ այդմ, *1813թ. Գյուլիստանի պայմանագրով* Ռուսաստանի տիտղոսն ամրագրվեց Լեռնային Ղարաբաղի վրա: Անվիճելի է, որ 1813-1918թթ. Ղարաբաղի վրա (նկատի ունեմ և՛ Լեռնային, և՛ Դաշտային Ղարաբաղը) անվերապահորեն հաստատված է եղել Ռուսաստանի կայսրության տիտղոսն ու գերիշխանությունը: Բոլշևիկյան հեղաշրջման պատճառով (1917թ.) Ռուսաստանի կայսրության կործանման հետևանքով Հարավային Կովկասում թեև առաջացավ քաղաքական անհստակ վիճակ, միջազգային իրավունքի և տարածքի տիտղոսի տեսանկյունից մինչև 1920թ. հունվարը ամեն ինչ հստակ մնաց, քանի որ մինչև 1920թ. հունվարը միջազգային հանրությունը մերժել է ճանաչել հարավային Կովկասի 3 նորաստեղծ պետությունները, հետևաբար շարունակել ճանաչել Ռուսաստանի կայսրության տիտղոսը: Միայն 1920թ. հունվարից Փարիզի խաղաղության վեհաժողովը, հանձինս Գերագույն

խորհրդի (Supreme Council of the Paris Peace Conference) երկրներ Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի և Իտալիայի, ճանաչեց Հարավային Կովկասի երկրների անկախությունը: Ըստ էության մինչ այդ՝ 1918թ. մայիսից մինչև 1920թ. հունվարը, Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի հանրապետությունները, ժամանակակից լեզվով ասած, միայն ինքնահռչակ հանրապետություններ էին: Կարևոր է ընդգծել, որ Փարիզի վեհաժողովի ճանաչումը հստակ նախապայման ուներ՝ Հարավային Կովկասի երկրների սահմանները հետագայում որոշվելու էին Փարիզի վեհաժողովի կողմից: Այստեղ անհրաժեշտ է շեշտել, որ Հայաստանի և Ադրբեջանի հանրապետությունների հռչակումից (1918թ. մայիս) մինչև դրանց ճանաչման սկիզբը (1920թ. հունվար) ոչ միայն Ադրբեջանի Հանրապետության տիտղոսը ճանաչված չի եղել Լեռնային Ղարաբաղի վրա, այլև Ադրբեջանի Հանրապետությունը երբևէ Լեռնային Ղարաբաղի վրա չի իրականացրել լիակատար վերահսկում (effective control): Ավելին, Ղարաբաղը շատ ավելի արդյունավետ վերահսկվում էր տեղում ձևավորված հայկական իշխանությունների և ուժերի կողմից:

Փարիզի վեհաժողովի ճանաչումից արդեն մեկ ամիս հետո՝ 1920թ. փետրվարի 24-ին, նույն վեհաժողովի Հայաստանի սահմանները որոշող հանձնաժողովը (Commission for the Delimitation of the Boundaries of Armenia) Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և Ճապոնիայի ներկայացուցիչների մասնակցությամբ, արդեն Ազգերի լիգայի խորհրդի անունից, համատեղ զեկույցով հստակեցրեց Հարավային Կովկասում սահմանազատման (delimitation) սկզբունքը: Այն է՝ Հայաստանի և Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի սահմանները պիտի գծվեին՝ ***«հաշվի առնելով, որպես սկզբունք, ազգագրական փվյալները»*** *(taking into account, in principle, ethnographical data)*:[16] Ի դեպ, Շուշիի 1920թ. մարտի ջարդերը մեծապես պայմանավորված էին այս որոշումով՝ Կովկասի թաթարները փորձ արեցին թուրքավարի փոխել Լեռնային Ղարաբաղի ժողովրդագրական պատկերը: Սակայն այս որոշմանը վիճակված չէր իրականություն դառնալ, քանի որ արդեն 1920թ. ապրիլից Ադրբեջանը, իսկ 1920թ. դեկտեմբերից Հայաստանն օկուպացվեց (բռնազավթվեց, ռազմակալվեց) բոլշևիկյան 11-րդ բանակի կողմից, և նշյալ պետությունները դադարեցին

[16] United States National Archives, Records of the Department of State Relating to Political Relations between Armenia and other States, 1910-1929, 760J.6715/60-760J.90C/7.

գոյություն ունենալուց: Հետագան ավելի է հայտնի՝ նորահաստատ սովետական իշխանությունները կուսակցական որոշումով վարչական վերաբաշխումներ արեցին, և հայաբնակ զգալի տարածքներ, որոնք Փարիզի վեհաժողովի սկզբունքի կիրառման դեպքում անվիճելիորեն հայաստանյան պիտի լինեին, դրեցին Բաքվի վարչական ենթակայության ներքո: Բնական է, որ խոսք լինել չի կարող միջազգայնորեն ամրագրված տիտղոսի մասին: Որևէ կուսակցական որոշում չի կարող իրավական հետևանք ստեղծել միջազգային իրավունքի մեջ և ամրագրել որևէ տարածքի վրա որևէ տիտղոս: Նախկին անկախ Վրաստանը, Հայաստանը և Ադրբեջանն իրենք 1920/21թթ.-ից մինչև 1924թ. ունեին ռազմակալված երկրների կարգավիճակ: Հետագայում, (1924թ. փետրվարից), ԽՍՀՄ ճանաչման հետևանքով ճանաչվեց այդ երկրների բռնակցումը (annexation): Ըստ այդմ, 1924թ.-ից ողջ Հարավային Կովկասի վրա, ներառյալ Լեռնային Ղարաբաղը, անվերապահորեն ճանաչվեց ԽՍՀՄ տիտղոսն ու գերիշխանությունը:

1991թ.-ին, երբ Ադրբեջանն իրեն անկախ հռչակեց ԽՍՀՄ-ից, Լեռնային Ղարաբաղն արդեն փաստացի անկախ էր: Այսինքն, իր վերանկախացումից ի վեր Ադրբեջանական Հանրապետությունը Լեռնային Ղարաբաղի Հանրապետության տարածքի վրա 1 օր իսկ չի իրականացրել լիակատար վերահսկում (effective control): Ավելին, 1991թ. հոկտեմբերի 18-ին *Պետական անկախության վերականգնման սահմանադրական ակտով* նորանկախ Ադրբեջանն, իրեն հայտարարելով Ադրբեջանի 1-ին հանրապետության (1918-20թթ.) ուղղակի իրավահաջորդը, ըստ էության, նաև փաստաթղթային ձևակերպմամբ չեղյալ հայտարարեց մինչևիսկ այն վարչական կապը, որը գոյություն էր ունեցել Ադրբեջանական ԽՍՀ և Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի միջև:

Այսինքն, եթե ԽՍՀՄ տրոհումից հետո նախկին սովետական սոցիալիստական հանրապետությունների մեծ մասի տարածքում առաջացան մեկական անկախ երկիր, ապա «Ադրբեջանի ԽՍՀ» կոչված ԽՍՀՄ-ի վարչական միավորի տարածքում առաջացան 2 պետություն՝ Ադրբեջանական Հանրապետությունը և Լեռնային Ղարաբաղի Հանրապետությունը: Ադրբեջանական Հանրապետությունը, ոտնահարելով ՄԱԿ-ի կանոնադրությամբ ստանձնած ինքնորոշման սկզբունքը հարգելու պարտավորությունը, անողոք պատերազմ սանձազերծեց իր նորանկախ հարևանի դեմ և խայտառակ պարտություն կրեց:

Ի դեպ, 1991թ. դեկտեմբերի 16-ին Բրյուսելում Եվրոպական համայնքի (ներկայումս՝ Եվրոպական Միություն) երկրների ԱԳ նախարարները *«Արևելյան Եվրոպայում և Խորհրդային Միության [տարածքում] նոր պետությունների ճանաչման ուղենիշների»* վերաբերյալ հռչակագրում *«բոլոր սահմանների անձեռնմխելիության»* նկատմամբ հարգանքը պայմանավորեց *«օրենքի իշխանության, ժողովրդավարության և մարդկային իրավունքների»* հարգանքով, ինչպես նաև *«էթնիկ, ազգային խմբերի և փոքրամասնությունների իրավունքների երաշխավորմամբ»*: Մի բան, որոնցից և ոչ մեկը չի իրականացվել ադրբեջանական պետության կողմից:

Հետևաբար, երբ մեր հարևանները խոսում են *«օկուպացիայի»* մասին, թող բարի լինեն նշել՝ պատմության ո՞ր ժամանակահատվածում է Ադրբեջանական Հանրապետությունը Լեռնային Ղարաբաղի վրա իրականացրել լիակատար վերահսկում (effective control), և ո՞ր միջազգային փաստաթղթով է Լեռնային Ղարաբաղի վրա ճանաչված եղել Ադրբեջանական Հանրապետության տիտղոսը: Եթե չի եղել այդպիսի վիճակ, և չկա այդպիսի փաստաթուղթ, իսկ այդպիսիք անկիայտորեն չկան, ապա ի՞նչ *«օկուպացիայի»* մասին է խոսքը:

*24 հունիսի, 2010թ.*

## ՁՋ. Ցանկալին՝ իրականի տեղ

Հայաստանի Հանրապետության արտաքին գործերի նախարարը, վկայակոչելով Մինսկի խմբի համանախագահ երկրների ղեկավարների Արցախի հակամարտության կարգավորման հայտարարությունը, ասել է հետևյալը. *«Ղարաբաղի վերջնական կարգավիճակը պետք է որոշվի իրավական պարտադիր ուժ ունեցող Լեռնային Ղարաբաղի ժողովրդի կամքի արտահայտությամբ»*: (www.lragir.am, 27.06.2010թ.)

Բուն հայտարարության մեջ նման բան չկա: Հայտարարությունը չի հստակեցնում կամարտահայտողների շրջանակը՝ դա նախկին Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի բնակչությունն է, ներկա Լեռնային Ղարաբաղի Հանրապետության, թե՞ Ադրբեջանի Հանրապետության բնակչությունը: Ընդհանրապես հստակեցված չէ՝ ո՞վ է կամարտահայտողը, գուցե Բաքվի իշխանավորներն են, գուցե իրենց Լեռնային Ղարաբաղի օրինական ներկայացուցիչներ հայտարարած և Բաքվում ծվարած ինչ-որ մարդկանց գոյություն ունեցող կամ վաղը ստեղծվելիք խումբ: Կարծում եմ, որ նախարարին շփոթության մեջ է գցել ռուսերեն (զուտ աշխատանքային) տարբերակը. *“определение будущего, окончательного правового статуса Нагорного Карабаха путем имеющего обязательную юридическую силу волеизъявления его населения.”* Այս պարբերության անգլերեն պաշտոնական տեքստը հետևյալն է *“final status of Nagorno-Karabakh to be determined in the future by a legally-binding expression of will.”* Անգլերեն պաշտոնական տարբերակում բացակայում են *его населения (նրա բնակչության)* բառերը: Այս պարբերության պաշտոնական և ռուսերեն տարբերակների միջև կա ևս մեկ կարևոր տարբերություն: Ռուսերենը խոսում է իրավական կարգավիճակի մասին *(определение ... правового статуса)*, մինչդեռ պաշտոնական տեքստում չկա *իրավական (legal)* բառը:

Տրամաբանորեն և միջազգային իրավունքի տեսանկյունից, իհարկե, ցանկացած տարածքի ճակատագիրը պետք է որոշվի տվյալ տարածքի բնակչության կողմից: Դա է ինքնորոշման բուն էությունը: Եթե ուրիշը պիտի որոշի քո ճակատագիրը, էլ ի՞նչ ինքնորոշում: Սակայն արդյո՞ք շատ տրամաբանություն ենք տեսնում Ադրբեջանի ղեկավարության և, որ ավելի ցավալի է, եռանախագահների քայլերի մեջ:

**Հ.Գ.** Մանրամասների այս վերլուծումը բնավ չի նշանակում, որ ես ընդունում եմ Արցախի հարցի լուծման ներկայացվող տրամաբանությունը, երբ *a priori*, առանց իրավական հիմքի, Լեռնային Ղարաբաղը դիտարկվում է Ադրբեջանի մաս և փորձ է արվում այդ շրջանակում ինչ-որ լուծումներ գտնել: Երբ երեխա էի, որպեսզի մեր տարածաշրջանում, որն այն ժամանակ մեր բակն էր, խաղաղություն հաստատվի, մեծերն ասում էին. *«Քարի մեջ արյուն կա»*: Հիմա մենք մեր «մեծերին» (այսօր ստիպված ենք ընդունել, որ եռանախագահներն այդ կարգավիճակն ունեն) պիտի ասենք. *«Ձեր առաջարկների մեջ արյուն կա»*:

*27 հունիսի, 2010թ.*

## ՁԷ. Նորից ռազմակալման (օկուպացիայի) չարչրկված հարցի շուրջ

Ո՛չ նախագահական «Օբամա, Սարկոզի, Մեդվեդև» եռյակը, ո՛չ հարևան և մեր հանրապետությունների պաշտոնյաները լիազորված չեն միջազգային իրավունքի հարցերում որոշումներ ընդունելու կամ վճիռներ կայացնելու: Նրանք միմիայն գոյություն ունեցող միջազգային իրավունքի դաշտում քաղաքական գործունեություն ծավալած պաշտոնյաներ են: Իհարկե, պաշտոնյաները կարող են սեփական տեսակետներն արտահայտել և դատողություններ անել, սակայն միջազգային իրավունքի հարցերի մեկնաբանությունը, ոչ իրենց երկրների օրենսդրությամբ և ոչ էլ միջազգային իրավունքով, բնավ վերապահված չէ իրենց:

Քանի որ այսօր Արցախի շուրջ հակամարտությունը հարաճուն կերպով սկսել է դիտարկվել միջազգային իրավունքի դաշտում, ապա հակամարտության կողմերը և միջնորդները, դատողություններ անելու փոխարեն և իրավական գնահատականներ ստանալու համար, պիտի դիմեն համապատասխան լիազոր մարմնին: Ներկա միջազգային համակարգում միակ կառույցը, որն իրավասու է վճիռներ կայացնել միջազգային իրավունքի հարցերի վերաբերյալ և որոշել միջազգային իրավունքի ոտնահարման առկայությունը, ՄԱԿ-ի Արդարության միջազգային դատարանն է (International Court of Justice): Արդարության դատարանի կանոնադրության (Statute of the International Law) 36-րդ հոդվածի 2-րդ մասն ամրագրել է նման լիազորություններ: Քանի որ, ըստ ՄԱԿ-ի Կանոնակարգի 92-րդ հոդվածի Արդարության միջազգային դատարանը ՄԱԿ-ի հիմնական դատական մարմինն է (The International Court of Justice shall be the principle judicial organ of the United Nations), ապա ՄԱԿ-ի անդամ բոլոր երկրները, *ipso facto*, ճանաչել են նշյալ դատարանի վերոհիշյալ լիազորությունները:

Արդեն առիթ ունեցել եմ գրելու (24.06.2010թ.)՝ որպեսզի որևէ իրավիճակ որակվի որպես ռազմակալում (օկուպացիա, occupation), ապա տվյալ իրավիճակը պիտի համապատասխանի մի շարք հատկանիշների: Այսպես կոչված, տուժող կողմը պիտի փաստի, որ մինչև տվյալ իրավիճակի առաջանալը խնդրո առարկա տարածքի վրա անվիճելիորեն առկա է եղել իր պետության տիտղոսը և ինքն է իրականացրել տվյալ տարածքի լիակատար վերահսկումը (effective control):

Մեր դեպքում, մինչև մեղադրանք հնչեցնելը, Ադրբեջանը պիտի դատական կարգով հաստատի, որ ներկայումս ԼՂՀ վերահսկողության ներքո գտնվող տարածքի վրա, մինչև գոյություն ունեցող վիճակի առաջանալը, աներկբայորեն առկա է եղել Ադրբեջանական Հանրապետության տիտղոսը, և Ադրբեջանը խնդրո առարկա տարածքի վրա իրականացրել է լիակատար վերահսկում: Հակառակ դեպքում, առանց այս 2 փաստերի առկայության հաստատման, մերկապարանոց ու անհիմն են Արցախի տարածքի՝ Ադրբեջանական Հանրապետությանը պատկանած լինելու բոլոր պնդումները, ըստ այդմ օկուպացիայի փաստի առկայությունը:

Կարծում եմ, որ եռանախագահողների նախագահները պարզամիտ հայտարարություններ անելու փոխարեն ներկայումս պիտի հորդորեն Հայաստանի Հանրապետության և Ադրբեջանական Հանրապետության ղեկավարություններին՝ ՄԱԿ-ի Արդարության դատարանից պատասխան հայցելու հետևյալ հարցին.

**Արդյո՞ք, ըստ միջազգային իրավունքի, Ադրբեջանական Հանրապետության տիտղոսն առկա է ներկայումս ԼՂՀ վերահսկողության ներքո գտնվող տարածքի վրա:**

Կողմերից մեկի հրաժարվելու դեպքում եռանախագահող երկրները, Արդարության միջազգային դատարանի կանոնադրության 65-րդ հոդվածի հիման վրա, կարող են ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի անունից դիմել նշյալ դատարանին՝ հայցելով խորհրդատվական կարծիք (advisory opinion):

Առանց վերոհիշյալ հարցի պատասխանի հիմնազուրկ են բոլոր բայաթիները օկուպացված տարածքի և նման բաների մասին: Առանց իրավասու մարմնի համապատասխան դատական վճռի Ադրբեջանական Հանրապետությունը չի կարող որևէ մեկին մեղադրել օկուպացիայի մեջ: Ես էլ Ադրբեջանին եմ մեղադրում, որ բոլշևիկյան 11-րդ բանակի օգնությամբ 1920թ. ապրիլ-դեկտեմբեր ամիսներին օկուպացրել է ՀՀ տարածքները և դրանց մի մասն էլ դեռևս շարունակում է օկուպացված պահել: Թե՞ ոմանք կարծում են, որ Լենին-Ստալինի հետագա գործունեությունը օրինականացրել է կամ կարող էր օրինականացնել, Հայաստանի Հանրապետության տարածքների բոլշևիկյան օկուպացիան: Եթե այո, ապա ճանապարհները բացեք՝ ռուսական զորքերը գալիս են կանգնելու Գերմանիայի սրտում:

*30 հունիսի, 2010թ.*

## ՁԸ. Հարցազրույց 7or.am-ին

**– Ինչո՞վ էր պայմանավորված հունիսի 18-ին ղարաբաղ-ադրբեջանական շփման գծում արձանագրված ադրբեջանական սադրանքը:**

– Դիվանագիտությունը միայն բանակցային գործընթացը չէ, այլև բոլոր հնարավոր ճնշման լծակների կիրառումը հակառակորդ կողմի վրա: Այս տեսանկյունից Ադրբեջանը ներկայումս զինված բախումներն ընկալում է որպես հայկական կողմի վրա լրացուցիչ ճնշման լծակ: Իսկ ինչո՞ւ է հիմա Արդրբեջանը գնում նման քայլերի: Որովհետև կա իրավիճակի որակական փոփոխություն: Առաջինը՝ արտաքին քաղաքական՝ դա Թուրքիայի հարաճուն ներգրավվածությունն է Հարավային Կովկասում: Սա տխրահռչակ հայ-թուրքական արձանագրությունների հետևանքներից մեկն է, որի մասին շատերս զգուշացնում էինք: Երկրորդը՝ ներքաղաքական, բայց դարձյալ արտաքին քաղաքական դրսևորմամբ: Քանի որ Հայաստանի իշխանությունները ժողովրդային հենարան չունեն, բնական է, որ շատ խոցելի են արտաքին ուժերի համար: Իհարկե, Հայաստանը երբեք էլ չի փայլել ժողովրդավարությամբ, անգամ այն ժամանակահատվածում, որը ոմանք անվանում են *«ժողովրդավարության կղզյակ»* լինելու տարիներ: Ժողովրդավարության բացակայությունը քաղաքական հիվանդություն է: Հիվանդության նման էլ այն սովորական իրավիճակում կարող է քեզ չնեղել, սակայն լարված իրավիճակներում ի հայտ է գալիս:

**– Համամի՞տ եք, որ ՀՀ նախագահի Սերժ Սարգսյանի վարած նախաձեռնողական «ֆուտբոլային» դիվանագիտության հետևանքով Թուրքիան ակտիվորեն ներգրավվեց և իր կամքն է թելադրում ԼՂ-ի խնդրի կարգավորման գործընթացում:**

– Այսօրվա պայթյունավտանգ իրականությունը հենց այդ անհեռատես, քաղաքականապես չհիմնավորված և օրիորդորեն միամիտ նախաձեռնության արդյունքն է: Դեռևս տարիներ առաջ ես Հայաստանի բարձրագույն իշխանությանը ծրագիր էի ներկայացրել, որի բուն նպատակը, Թուրքիայի դեմ զանազան իրավական և քաղաքական խնդիրներ հարուցելով, Թուրքիային հնարավորինս մեր տարածաշրջանից մեկուսացված պահելն էր, քանի որ համոզված եմ. *ՀՀ և ԼՂՀ միասնական անվտանգությունը պայմանավորված է հայ-թուրքական և ոչ թե հայ-ադրբեջանական հարաբերություններով*: Այսօր, ցավով եմ արձանագրում, իրականացվում է լրիվ հակառակ

քաղաքականությունը: Չմոռանանք, որ նախագահ Սարգսյանն ինքն է Երևանում անձամբ խնդրել նախագահ Գյուլին Թուրքիայի մասնակցությունը բերել Ղարաբաղի հարցի լուծմանը:

**– Ինչպե՞ս կգնահատեք Մեծ ությակի գագաթնաժողովի շրջանակներում արված Սարկոզի-Մեդվեդև-Օբամա հայտարարությունը՝ կապված ԼՂ-ի խնդրի կարգավորման հետ: Համարժե՞ք էր, արդյոք, ՀՀ ԱԳ նախարարի արձագանքն այդ հայտարարությանը:**

– Մի հին անեկդոտ կա: Բժիշկը մեկին բուժում-բուժում է, սակայն վերջինս մահանում է: Բժիշկը հիվանդի հարազատներից հարցնում է. «Իսկ մեռնելուց առաջ քրտնե՞ց»: Պատասխանում են. «Այո՛»: «Դե լավ է, լավ է», – ասում է բժիշկը: Հիմա մեր ԱԳ նախարարի մեկնաբանությունն է: Էլ սրանից ավելի վատ ի՞նչ պիտի լիներ, որ չողջունեինք: Առաջին կետից հետո մյուս կետերը կարելի է չկարդալ, որովհետև, եթե իրականացվի առաջին կետը, ապա բանը մյուս կետերին չի հասնի: Մեծ եոյակն իր հարցերն է լուծում: Իրենք իրենց առնելիքն ու տալիքն ունեն: Իրենք իրենց շահերով են առաջնորդվում, ըստ այդմ առաջարկներ անում: Սա չի նշանակում, որ մենք պարտավոր ենք ընդունել միջնորդների առաջարկները: Որոշողն առաջին հերթին Լեռնային Ղարաբաղի, հետո ՀՀ ժողովուրդն է: Սակայն որպեսզի ժողովուրդն իսկապես դառնա հարց որոշող, ապա նրան պետք է վերադարձնել նրա բոլոր քաղաքացիական իրավունքները: Եթե ժողովուրդը չի կարողանում Երևանի կենտրոնում իր շահերը պաշտպանել, ինչպե՞ս կարելի է ակնկալել, որ նույն ժողովուրդը հարց լուծող պիտի լինի սահմանի վրա:

**– ԼՂ-ի հարցում ինչպիսի՞ տեղաշարժ եք ակնկալում տարածաշրջան ԱՄՆ պետքարտուղար Հիլարի Քլինթոնի այցից:**

– Քլինթոնը մի խնդիր ունի՝ վերակենդանացնել հայ-թուրքական մեռած արձանագրությունները, որպեսզի նախագահ Օբաման առանց խոստմնազանցի պիտակի կարողանա մոռացության տալ իր ընտրողներին տված խոստումը: Քանի որ հայ-թուրքական արձանագրությունների վավերացման գործընթացում տեղապտույտը թուրքական կողմն այսօր բացատրում է ԼՂ հարցում առաջընթացի բացակայությամբ, ուստի Քլինթոնը պիտի ապահովի այդ «առաջընթացը», որպեսզի Թուրքիային զրկի այդ պատրվակից: Հուսամ, որ մեր իշխանությունները տեղի չեն տա Քլինթոնի ճնշումներին կամ չեն

ենթարկվի զանազան գայթակղիչ առաջարկների:
Ներկա իրավիճակից Հայաստանը դուրս բերելու համար նախագահ Սարգսյանն ունի մի ելք: Նա պիտի լուծարի խորհրդարանը, ապահովի իսկապես արդար խորհրդարանական ընտրություններ, ապա 6 ամսվա ընթացքում հայտարարի նախագահական ընտրություններ: Միմիայն այդ ձևով քաղաքական որոշումներ կայացնելու գործընթացի մեջ կարելի կլինի ներգրավել ողջ ժողովրդին: Հետևաբար՝ ապահովել այդ ժողովրդի անմնացորդ և անձնազոհ նվիրումը հայրենիքին: Գուցե այլ պետություններ, որոնք իսկական հումքային պաշարներ ունեն, կարողանան ապրել և զարգանալ նաև բռնատիրության պայմաններում, սակայն Հայաստանում, բնականաբար Լեռնային Ղարաբաղն էլ հետը, ժողովրդավարության այլընտրանքը չկա:

*04 հուլիսի, 2010թ.*

## ՁԹ. **Թուրքիան կրակի հետ է խաղ անում**

Վերջին շրջանում որոշ վերլուծաբաններ հայտարարեցին, որ Իսրայելի հետ հարաբերությունների լարումը նպաստավոր է Թուրքիայի համար, քանի որ դա կուժեղացնի Թուրքիայի դիրքերը Միջին արևելքում: Թերևս Միջին արևելքում, ավելի ճիշտ՝ արաբական աշխարհում, ուժեղացնի, սակայն համաշխարհային առումով կթուլացնի: Իսկ ինչպես ասում են Օդեսայում, դրանք երկու էապես տարբեր բաներ են: Այն, ինչ արաբական աշխարհին ընդհանրապես ի վիճակի է տալու Թուրքիային, այսօր էլ է տալիս. դա նավթն է և շուկան: Իհարկե, ավելի շատ թուրքական դրոշներ կերևան արաբական քաղաքներում, Էրդողանը որոշ կազմակերպությունների կողմից կընտրվի տարվա մարդ, հայկական համայնքներին ավելի քիչ կարտոնեն խոսել Հայոց ցեղասպանության մասին և նման բաներ: Սակայն այդ տեսակի դրսևորումները չեն կարող փոխակերպվել լուրջ և շոշափելի քաղաքական, առավել ևս ռազմական, արդյունքի:

Այն, ինչ Իսրայելն էր տալիս և դեռևս մասամբ տալիս է Թուրքիային, չտալու դեպքում, ոչ ոք դա չի կարող փոխարինել: Առաջին հերթին դա գերժամանակակից զինատեսակներն են, հետախուզական սարքերը և հենց հետախուզական տեղեկությունները, ինչպես նաև ամերիկյան հանրության և մամուլի բարեհաճ վերաբերմունքը: Սրանք կորցնելու դեպքում Թուրքիան չի կարող փոխարինող աղբյուրներ ճարել: Իհարկե, արաբական հանրության վերաբերմունքը կարևոր է, սակայն համաշխարհային քաղաքական գործընթացների վրա իր ազդեցությամբ այն որակապես զիջում է արևմտյան հանրային կարծիքի կարևորությանը: Վճռորոշ է՝ ինչ են մտածում ամերիկացիներն ու եվրոպացիները և ոչ թե արաբներն ու հայերը: Սա, միգուցե, արդար չէ, սակայն իրողություն է:

Կա Թուրքիայի համար մի վտանգավոր զարգացում ևս: Եթե Իսրայելը վերջնականապես կորցնի Թուրքիային, ապա նա Միջին Արևելքում (բացառությամբ թերևս Ադրբեջանի, որը փոքր խաղացող է) դաշնակից չի ունենա: Հետևաբար, Իսրայելը պարզապես հարկադրված է լինելու ձեռնամուխ լինել նոր դաշնակցի ստեղծմանը: Ստեղծվելիք դաշնակիցն անկախ Քուրդիստանն է լինելու, որի միջուկը դրված է Հյուսիսային Իրաքում, սակայն սահմանները կամ, ավելի ճիշտ, հավակնությունները չեն սահմանափակվելու միայն նշյալ

տարածքով: Այսօր թուրքական օդուժն, առանց համաշխարհային տեղեկատվական համակարգի և հետևաբար հանրային կարծիքի հակադարձության, ռմբակոծում է հարևան անկախ երկիրը՝ Իրաքը: Բոլորը դա չտեսնելու են տալիս: Շուտով կարող է այդպես չլինել: Շուտով շատերի քաղաքական տեսողությունը, ինչպես նաև քաղաքական հիշողությունը, կարող է էապես լավանալ:

*05 հուլիսի, 2010թ.*

## Դ. Միջազգային իրավունքն աճուրդի չի դրվում

Այն, որ ՄԱԿ-ի բարձրագույն դատական ատյանը՝ Արդարության միջազգային դատարանը 2010թ. հուլիսի 22-ին հայտարարեց, որ *«Կոսովոյի անկախության միակողմանի հռչակումը չի ոտնահարում միջազգային իրավունքը»*, միանգամայն օրինաչափ է: Նախ օրինաչափ է, քանի որ սեփական քաղաքական ճակատագիրը տնօրինելու իրավունքը՝ ինքնորոշման տեսքով, որպես տվյալ կազմակերպության հիմնական նպատակներից մեկը ներառված է ՄԱԿ-ի Կանոնադրության մեջ [Հոդված 1(2)]: Հետո, օրինաչափ է, քանի որ միջազգային իրավունքի մեջ չկա անկախության հռչակման որևէ սահմանափակում: Այսինքն, միջազգային իրավունքի մեջ չկա մի չափորոշիչ, որով անկախանալու իրավունքը վերապահված է, ասենք, սերբերին, վրացիներին կամ Կովկասի թաթարներին, իսկ նույն իրավունքը մերժվում է ալբանացիներին, մենգրելներին կամ թալիշներին:

Բնական է, որ անկախության հռչակումը միշտ էլ միակողմանի է լինում: Երբ, օրինակ, ԱՄՆ ու ՌԴ-ն իրենց անկախությունը հռչակեցին համապատասխանաբար Բրիտանական Կայսրությունից կամ ԽՍՀՄ-ից, նրանք դա արեցին առանց, այսպես կոչված, «կենտրոնական իշխանության» թույլտվության: Ուրիշ բան, որ «կենտրոնական իշխանությունը» կարող է այդ փաստն ընդունել հանգիստ, առանց ավելորդ ռազմական ջղաձգումների, կամ կարող է փորձել արյան մեջ խեղդել ուրիշների ձգտումը: Գնահատելի է ՄԱԿ-ի Արդարության միջազգային դատարանի վերոհիշյալ որոշումը միջազգային իրավունքի ժողովրդավարացման ուղղությամբ զարգացման տեսանկյունից: Որոշումը ցույց տվեց, որ XXI դարի մտածողությանն անհարիր է ժողովուրդների բաժանումն արտոնյալների և մերժյալների:

Հիշյալ որոշումը գնահատելի է նաև Արցախի հակամարտության ժողովրդավարական լուծման տեսանկյունից: Այսինքն, ինչպես ժողովրդավարական հասարակության մեջ որևէ մեկն իրավունք չունի անհատի փոխարեն որոշումներ կայացնելու, այնպես էլ ներկա միջազգային հարաբերություններում որևէ մեկն իրավունք չունի որոշումներ կայացնելու այդ անհատների կազմակերպված հանրության փոխարեն: XXI դարում միջազգային իրավունքը չի կարող աճուրդի դրվել: Միջազգային իրավունքը նավթի աշտարակ չէ:

*23 հուլիսի, 2010թ.*

## ԴԱ. **Մեր իրավունքը չի կարող մեզ որպես պարգև տրվել**

Ցանկացած գործողություն ճիշտ հասկանալու համար անհրաժեշտ է նկատի ունենալ մի շարք գործոններ: Ամենակարևոր գործոններից մեկը տվյալ գործողության շարժառիթն է, դրդապատճառը: Երբ այդ տեսանկյունից ենք նայում Աղթամարի սբ. Խաչ եկեղեցում սեպտեմբերին նախատեսված պատարագի մատուցումը և հարակից աղմուկը, ակնհայտ է դառնում դրանց, մեղմ ասած, ոչ պատշաճ հիմնառիթը: Միանշանակ է, որ այդ պատարագը և ողջ ձեռնարկը բնավ կապ չունեն աստծո փառաբանության հետ: Այն թուրքական հատուկ ծառայությունների կողմից հղացած խաբեպատիր միջոցառում է, որի միակ նպատակը, քաղաքագիտական խրթին բառերով ասած, դրական պատկերի հեռացղլում է (positive image projection):

Թուրքերը լավ են անում, որ հերթական անգամ խաբում են աշխարհին: Դա նրանց բնույթն ու իրավունքն է: Սակայն ես չեմ հասկանում այս խաղին հայերի հրճվալից մասնակցության իմաստը: Իբր, աշխարհը կիմանա, որ Աղթամարը հայկական եկեղեցի է: Նախ նա, ով պիտի իմանա, արդեն գիտի: Նա, ով չի ուզում իմանալ, չի իմանա: Սակայն վստահեցնում եմ ձեզ՝ դա չի լինելու աշխարհի մեծագույն լրատվականների հիմնական ուղերձը: Հիմնական միտքը թուրքերի հանդուրժողականության գովքն է լինելու: Թույլ մի տվեք, որ թուրքերը մեզ հերթական անգամ ստորացնեն: Ցյուրիխում ստորագրված արձանագրությունների ստորացումը մեզ մի քանի տասնամյակ հերիք է: Ինչո՞ւ եք ուզում նորից աղ ցանել մեր վերքերին:

Միանգամայն անընդունելի է այն տեսակետը, որ *«այդ վայրերում այդքան մարդ չունենք, ի՞նչ պիտի անենք եկեղեցիները: Տարին մեկ անգամ պատարագն էլ բավարար է»*: Նախ թող պատասխանեն՝ ի՞նչ եղան այդ եկեղեցիները կառուցած հայերը: Հետո, խոսքը պատարագ մատուցելու մասին չէ, խոսքը իրավունքի՝ պատարագ մատուցելու իրավունքի մասին է: Գուցե հայերը 5 տարին մեկ այդ եկեղեցիներում պատարագ մատուցեն, գուցե տասը, այսուհանդերձ նրանք իրավունք պիտի ունենան ցանկացած, եկեղեցական կարգով նախատեսված պահի, պատարագ մատուցելու: Թուրքերը մեր իրավունքը մեզ որպես պարգևական են տալիս, իսկ մենք դրանով ուրախանում ենք: Մենք նման ենք այն մանուկին, որի հարազատներին կոտորել են,

հայրենական ողջ կալվածքը խլել են, ապա մի փայլփլուն խաղալիք են շպրտել նրա առաջ և նա խելակորույս հրճվում է դրանով: 1912թ. թուրքական պաշտոնական տվյալներով Օսմանյան կայսրության տարածքում ավելի քան 2000 հայկական գործող, կրկնում եմ՝ գործող, վանք ու եկեղեցի կար: Դրանք ապօրինի բռնագրավվել են Թուրքիայի Հանրապետության կողմից: Նախ թող օրինական տիրոջը վերադարձնեն եկեղեցապատկան, այն է՝ համայնքապատկան, այսինքն մեզ բոլորիս պատկանող, գույքը կամ հատուցեն դրա դիմաց:

Հետո, թող հավատարմորեն կատարեն իրենց իսկ ստանձնած միջազգային պարտավորությունները: Թուրքիան վերահսկող քեմալական շարժման հետ հարաբերությունների հաստատումը խարսխված է եղել որոշակի նախապայմանների վրա, որոնք ամրագրված են Լոզանի պայմանագրի (24 հուլիսի, 1923թ.) մեջ: Լոզանի պայմանագրի 38-րդ հոդվածի 2-րդ մասով *Թուրքիայի բոլոր բնակիչներին, մասնավոր կամ հանրային կյանքում, փրվում է հավափքի, կրոնի կամ դավանանքի ազափություն*: Իսկ պայմանագրի 40-րդ հոդվածով նրանց տրվում է կրոնական հաստատություններ հիմնելու, գործածելու և վերահսկելու իրավունք:

Ավելին, Լոզանի պայմանագրի 42-րդ հոդվածի 3-րդ մասով *«Թուրքական կառավարությունը պարփավորվում է լիակափար պահպանության փակ առնել եկեղեցիները, սինագոգները, գերեզմաններն ու նշյալ փոքրամասնությունների այլ կրոնական հասփափությունները»*: Բնականաբար *«լիակափար պահպանությունն»* իր մեջ ներառում է ոչ միայն եկեղեցիները չքանդելն ու չավիրելը, այլև դրանց ամրացումն ու նորոգումը:

Հետևաբար, սբ. Խաչ եկեղեցու շենքի մասնակի նորոգումը և դրանում տարին մեկ անգամ պատարագ մատուցելու իրավունքը, ոչ թե *«բարի կամքի դրսևորում»* է, այլ Թուրքիայի կողմից հիմնական օրենքի կարգավիճակով ստանձնած միջազգային պարտավորությունների խիստ թերի և ուշացած կատարում՝ որոշակի քաղաքական շահարկման նկատառումով: Ըստ այդմ, բնավ մեր շահերից չի բխում այդ շահարկումների առջև լայն հնարավորություններ բացելը:

*14 օգոստոսի, 2010թ.*

## ՂԲ. Հարցազրույց 7or.am բլոգին

**Արփի Բեգլարյան (Ա.Բ.) –** *ՀԱԿ համակարգող Լևոն Զուրաբյանը հայտարարել է, թե հաշվի առնելով արտաքին ոլորտում և հատկապես միջազգային կազմակերպություններում ՀՀ իշխանությունների ոչ համարժեք քայլերը՝ ՀԱԿ-ը բանաձև է նախագծել, որը ՀՀ ԱԳՆ-ն կարող է ներկայացնել միջազգային ատյաններում (www.7or.am/hy/news/2010-09-14/17573/): Ինչպե՞ս կմեկնաբանեք ՀԱԿ այս առաջարկը և որքանո՞վ եք հավանական համարում, որ իշխանությունները կսեղմեն Կոնգրեսի «մեկնած ձեռքը»:*

**Ա.Պ. –** Ես ձեռնպահ կմնամ ՀԱԿ-ի ներկայացրած բանաձևի բուն նախագծի քննարկումից, թեկուզև այն պատճառով, որ դրա մանրամասներին ծանոթ չեմ: Սակայն ներկայացման ձևը և հիմնավորումները *(«Տեսնելով արտաքին գերատեսչության անգործությունը, իշխանությունների անգրագիտությունն ու ոչ կոմպետենտությունը՝ ՀԱԿ-ը ստիպված այդ ֆունկցիաները վերցնում է իր վրա»)*, ակնհայտորեն իշխանություններին այդ նախագիծն ընդունելու որևէ հնարավորություն չեն թողնում: Ավելին, եթե իշխանությունները թերևս մտածում էին հակաբանաձևերի մասին, ապա ՀԱԿ-ի նման քայլից հետո նրանց գործունեության դաշտը խիստ նեղանում է, քանի որ իշխանությունները երբեք չեն ուզի, որ իրենց որևէ քայլ մեկնաբանվի որպես թելադրանքի արդյունք:

**Ա.Բ. –** *Ինչպե՞ս եք գնահատում Հայաստանի արտաքին քաղաքականությունը միջազգային ամբիոններում:*

**Ա.Պ. –** Այնպես, ինչպես որևէ այլ ոլորտում՝ կրթության, առողջապահության, բնապահպանության, բանակաշինության, սոցիալական արդարության և այլն: Ինչո՞ւ եք կարծում, որ արտաքին քաղաքականությունը կարելի է մեկուսացնել հասարակական այլ ոլորտներից: Քանի դեռ քաղաքական որոշումները անձնավորված են լինելու, այսինքն՝ բխելու են մեկ անձից և ծառայելու են մի խումբ մարդկանց անձնական շահերին, միջազգային ամբիոններում մենք հաջողություններ չենք ունենալու: Ես ինքս բազմաթիվ անգամներ հանդես եմ եկել միջազգային ատյաններում, մասնավորապես Արդարության միջազգային դատարանում (International Court of Justice), որի վճիռները, ի տարբերություն ՄԱԿ-ի վեհաժողովի բանաձևերի, կատարման համար պարտադիր են, հարցերը բարձրացնելու օգտին: Մանսավոր-

րապես ՄԱԿ-ի որևէ կառույցի միջոցով մենք կարող ենք հանդես գալ հարցումով՝ արդյոք Արբեջանական Հանրապետության տիտղոսը երբևէ ամրագրված եղե՞լ է և է՞ ԼՂՀ տարածքի վրա:

**Ա.Բ.** – *Վտանգներ տեսնո՞ւմ եք այդ ոլորտում և հապկապես ներկայացված բանաձևերում:*

**Ա.Պ.** – Ինքնին ՄԱԿ-ի վեհաժողովի մեկ բանաձևը վտանգավոր չէ: Սակայն այդ և նման բանաձևերը արագ բազմանալու հատկություն ունեն և դրանով իսկ հասարակական վերաբերմունքի հենք ու քաղաքական մոտեցումների հիմք են ստեղծում: Ցանկացած նման բանաձև պետք է հնարավորինս կանխվի կամ հակակշռվի այլ բանաձևով:

**Ա.Բ.** – *ԵԱՀԿ համանախագահների վերջին այցն ինչպե՞ս եք գնահատում:*

**Ա.Փ.** – ԵԱՀԿ համանախագահներն իրենց հացն են վաստակում: Իրենք ունեն որոշակի լիազորություններ և պարտականություններ, դրա համար ստանում են համապատասխան աշխատավարձ, հետևաբար պիտի աշխատեն: Աշխատանքի ամենաերևացող կողմը այցերն են, հետևաբար դրանք պարբերաբար կրկնվում են: Սակայն պետք է ուշադրություն դարձնել առնվազն մի հանգամանքի՝ համանախագահները հարց լուծող չեն, նրանք նման լիազորություններ չունեն, նրանք ընդամենը միջնորդներ են, այսինքն՝ խոսք տանող-բերող են: Որպես միջազգային կառույցի ներկայացուցիչներ՝ նրանք պարտավոր են, կրկնում եմ, պարտավոր են առաջնորդվել միջազգային օրենքով: Այսինքն, պիտի հասնեն միջազգային օրենքով Արևելյան Կովկասի հայությանը վերապահված իրավունքի՝ ինքնորոշման կենսագործմանը: Ցավոք, նրանք ավելի շատ առաջնորդվում են քաղաքական շահերով ու նավթի հոտով և հաճախ են անում իրենց լիազորությունները գերազանցող ու միջազգային իրավունքին հակասող հայտարարություններ:

**Ա.Բ.** – *Մինչև փարեվերջ արցախյան հարցում նոր զարգացումներ ակնկալո՞ւմ եք, թե՝ ոչ:*

**Ա.Պ.** – Ո՛չ, չեմ ակնկալում: Ադրբեջանը չի գնա մեծ պատերազմի մի շարք պատճառերով: Նախկին պատճառներին ներկայումս կարելի է ավելացնել Ադրբեջանի ներսում զանազան էթնիկ խմբերի աշխուժացումը: Լեզգինները, թալիշները, թաթերը և այլք

լավ են հասկանում, որ նոր պատերազմի դեպքում ղարաբաղյան ճակատում իրենք շատ ավելի զոհ կտան, քան ադրբեջանական լծից ազատվելու համար մղվելիք ազգային-ազատագրական պայքարի ժամանակ: Ադրբեջանն ի վիճակի չի լինի 2 ճակատով պատերազմ մղելու: Հայաստանի իշխանություններն էլ չեն գնա տարածքների զիջման, քանի որ դրա հասարակական աջակցությունը և իրականացման լծակները չունեն: Նման քայլի փորձն անգամ կբերի առնավազն իշխանության կորստի: Ընկնող իշխանությունը վերցնելու համար այսօր մի մեծ հերթ է գոյացել, հետևաբար իշխանություններն ամեն ինչ կանեն խուսափելու համար կտրուկ շարժումներից:

*14 սեպտեմբերի, 2010թ.*

## ՂԳ. Վերք Հայաստանի
*կամ*
## Ինչո՞ւ է պետք լուծել Հայկական հարցը

Միջազգային իրավունքը, խոսելով պետությունների մասին, հաճախ է նրանց անձնավորում: Իրավունքի տեսանկյունից պետության հիմնական հատկանիշը նրա միջազգային իրավական ինքնությունն է *(international legal personality)*,[1] այսինքն՝ միջազգային քաղաքական դաշտում անհատականացված հարաբերությունների մեջ մտնելու ունակությունը: Ըստ այդմ, միջպետական հարաբերությունները շատ բանով նման են միջանձնային հարաբերություններին, քանզի ընդհանուր առմամբ պետության՝ կարգին պետության, շահն ածանցվում է նրա անհատ քաղաքացիների հավաքական շահից:

Անձնավորելով պետությանը՝ միջազգային իրավունքը քաղաքական և իրավական բազում երևույթներ նկարագրելիս օգտագործում է անձին վերաբերող բառապաշար: Օրինակ, միջազգային իրավունքի մեջ կա *խոցված, վերք ստացած, վիրավորված պետություն (injured state)* հասկացությունը: Եղեռնազարկ բանաստեղծ Դանիել Վարուժանն այդ երկրներին կկոչեր *կարեվեր երկրներ*: Հիշո՞ւմ եք նրա *«Յիսուսի պես կարեվէր, Արշալոյսի մը երկունքէն բռնուած»*: Քանի որ *կարեվեր [կարեվէր]* բառը բաղկացած է *կարի = ուժեղ, խորը և վէր(ք) [ստացած]* բառերից և միանգամայն արտահայտում է *injured state-ի* ընդգրկուն քաղաքական իմաստը, ուստի հայոց քաղաքական բառապաշարը հարստացնենք ևս մի դարձվածքով և այդ խոցված երկրները բնութագրենք որպես ***կարեվեր պետություններ***:

Միջազգային իրավունքը հստակ տալիս է *կարեվեր պետության* սահմանումը. *«Կարեվեր պետությունն այն պետությունն է, որի իրավունքը խախտվել է մեկ այլ պետության կողմից՝ սեփական պարտավորությունների ոտնահարումից առաջացած միջազգայնորեն սխալ գործողության հետևանքով»*:[2]

Երբ նայում ենք մեր ոչ վաղ անցյալին, ապա ակնհայտ է դառնում, որ 1920-1921թթ. բոլշևիկ-քեմալական խարդավանքների հետևանքով Հայաստանի պետականության մարմնին հասցվել է խորը վերք. Թուրքիան, ոտնահարելով իր ստանձնած միջազգային պարտավորությունները, բոլշևիկների աջակցությամբ և Արևմուտքի թողտվությամբ, խախտել է մեր իրավունքները և մեր պետությանը զրկել է պե-

տականության կենսապահովման նվազագույն պաշարից: Այսինքն, մեր պետականությանը հասցված վերքը հանգեցրել է պետության կենսունակության որակական անկման: Պետք է հստակ տարբերակել պարզապես տարածքային կորուստը կենսունակության կորստից: Օրինակ, Թուրքիայի կողմից Կիպրոսի հյուսիսային մասի բռնազավթումը տարածքի և հարստության կորուստ է, սակայն որակի կորուստ չէ: Կիպրոսը, կորցնելով իր տարածքի 37%-ը, չի կորցրել աշխարհի հետ ազատորեն հաղորդակցվելու ունակությունը, ուստի պահպանել է զարգացման հնարավորությունը: Հայաստանի Հանրապետությունը, կորցնելով Կարսի մարզը (դեռ չեմ խոսում Վիլսոնի իրավարար վճռով ՀՀ-ին հատկացված տարածքների մասին), առնվազն կորցրել է աշխարհի հետ ազատորեն հարաբերվելու ունակությունը, սեփական մայրաքաղաքի պաշտպանունակությունը և Վրաստանի վրա համարժեք ազդեցության լծակը: Այս վիճակից ելքեր գտնելու համար պետք է սթափ նայել իրականությանը՝ ներկա սահմաններով, նման աշխարհաքաղաքական դիրքում և նման հարևանների առկայությամբ ՀՀ-ն ապագա չունի: Մեր պետականության մարմնին հասցված վերքերն անհամատեղելի են մեր պետության կյանքի հետ: Քանի դեռ այդ վերքերը չեն ապաքինվել, առավելագույնն ուշմիջնադարյան ռոմանտիզմ է հույս փայփայել, թե կարելի կլինի կառուցել ապահով և բարգավաճ երկիր: Եթե բանաստեղծ լինեի կգրեի. «Մեր ափերի մեջ դեռ մղկտում են մեխի տեղերը և մեր վերքերը դեռ շարունակում են արնահոսել»:

Այստեղ ուզում եմ անել մի հույժ կարևոր շեշտադրում՝ Հայաստանում ժողովրդավարության հաստատմանը և օրենքի գերակայությանն այլընտրանք չկա: Ավելին, ժամանակային առումով ես դրանք ամենաառաջնահերթն եմ համարում: Առանց դրանց ոչինչ հնարավոր չէ անել, ընդհանրապես ոչինչ: Մեր պետականության ինքնին գոյության համար ժողովրդավարությունն ու օրենքի գերակայությունը կենսականորեն անհրաժեշտ պայմաններ են: Սակայն բուն խնդիրն այն է, որ դրանք անհրաժեշտ, բայց ոչ բավարար պայմաններ են: Հայաստանին պետք է կենսունակության նվազագույն պաշար, այսինքն՝ այն, ինչ դարերով միջազգային հանրությունն անվանել է Հայկական հարցի լուծում: Ի վերջո ի՞նչ էր Հայկական հարցը. դա հայ ժողովրդի արժանապատիվ գոյության համար նվազագույն կենսապայմանների ապահովում էր: Ներկա փուլում Հայկական հարցի լուծման դրսևորումը փոխվել է: Ներկայումս այն միջազգային իրավուն-

քով Հայաստանի Հանրապետությանը հատկացված կամ վերապահված տարածքային, նյութական և բարոյական իրավունքների վերականգնումն է: Փոխվել է դրսևորումը, սակայն չի փոխվել էությունը. Հայաստանի Հանրապետության գոյության համար անհրաժեշտ է կենսապահովման նվազագույն պաշար, որին հնարավոր է հասնել միմիայն Հայկական հարցի լուծման ճանապարհով:

Մենք դա պետք է գիտակցենք, որպեսզի հստակորեն պատկերացնենք մեր անելիքը և խուսափենք հերթական սխալներն անելուց: Ի վերջո հայ-թուրքական հայրենակործան արձանագրությունները դեռ կախված են մեր գլխին:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Ավելի հանգամանալից տե՛ս. Boczek B.A. The A to Z of International Law. Toronto, 2010, p. 37-144 [Ch. II. International Legal Personality, States: Recognition, Jurisdiction, Responsibility, Succession].
2. Նույն տեղում, էջ 70:

*09 նոյեմբերի, 2010թ.*

## ՂԴ. Ազգային հանդուրժողականության և ադրբեջանական ֆիլմերի մասին

Ես մեկն եմ այն մարդկանցից, որ Facebook-ի վրա միացել է ադրբեջանական ֆիլմերի ցուցադրությանն ընդդիմացող նախաձեռնությանը: Արդյո՞ք այնքան նեղմիտ ազգայնական եմ, որ դեմ եմ մշակութային շփումներին: Բնավ՝ ոչ: Դեռևս 2-3 տարի առաջ, երբ հայ քաղաքական և հասարակական գործիչների շրջանում, ինչպես միշտ օտարերկրյա ֆինանսավորմամբ, հարցախույզ էր անցկացվում հայ-թուրքական և հայ-ադրբեջանական հարաբերությունների ապագայի շուրջ, ես ինքս եմ առաջարկել նախաձեռնել, ապա ընդլայնել փոխադարձ մշակութային կապերը: Հիմա ի՞նչ է փոխվել, որ դեմ եմ: Փոխվել է շատ կարևոր բան: Ոտնահարվել է արդարությունը, այսինքն՝ խախտվել է փոխադարձության սկզբունքը: Եթե Երևանում, կարծես այս անգամ ԱՄՆ-ի ֆինանսավորմամբ, նպատակ կա անցկացնել ադրբեջանական ֆիլմերի դիտում, ապա Բաքվում էլ պիտի կազմակերպվի համարժեք միջոցառում, այսինքն՝ պիտի կազմակերպվի հայկական ֆիլմերի ցուցադրություն: Եթե սա չի արվում, ապա ամբողջ աշխարհին սխալ ուղերձ է հղվում՝ մարդիկ մտածում են, որ միայն հայերի մեջ հանդուրժողականություն սերմանելու կարիք կա:

Ես չեմ կարող պնդել, որ մենք արևմտյան չափանիշներով հանդուրժող հասարակություն ենք: Անտարակույս մենք հանդուրժողականության պակաս ունենք մեր իսկ հասարակության որոշ փոքրամասնությունների նկատմամբ: Այս առումով մենք դեռ ճանապարհ ունենք անցնելու: Սակայն հայ հասարակության հանդուրժողականության մակարդակը մի քանի գլուխ բարձր է ադրբեջանական հասարակության հանդուրժողականությունից: Եւ սա վերաբերում է ոչ միայն ազգամիջյան հարաբերություններին:

Փոխադարձության սկզբունքը կարևորագույն սկզբունք է միջպետական հարաբերություններում: Այն անշեղորեն պետք է պահպանել: Միջպետական հարաբերություններում որևէ չարդարացված զիջում մեր տարածաշրջանում ընկալվում է որպես թուլության նշան և հղի է խիստ վտանգավոր հետևանքներով: Պետք չէ մոռանալ, որ մեր հասարակության տեսած վերջին ադրբեջանական ֆիլմը ՀՀ քաղաքացի Մանվել Սարիբեկյանի մասնակցությամբ էր:

*12 նոյեմբերի, 2010թ.*

## ԴԵ. Հայոց իրավունքների ավետարանը

*կամ*

## Հայաստանի Հանրապետության բարեկեցիկ ու ապահով ապագան կերտելու միակ հնարավորությունը

*/Վուդրո Վիլսոնի Իրավարար վճռի 90-ամյակին ընդառաջ/*

> Հասել է պահը, երբ իր որդիների արյունով օծված Հայաստանը հատուցում պահանջի իր պատմական ուղու ամբողջ ընթացքում կրած տառապանքների ու փորձությունների դիմաց, դառնա իր սեփական ճակատագրի տերը:
>
> *Նիկողայոս Ադոնց, 1919թ.*

Բնաբանի այս խոսքերից գրեթե մեկ դար հետո, հայ ժողովրդի ճակատագրի նավը դեռևս խարիսխ չի նետել հատուցման նավահանգստում: Մեր բոլորի միասնական ջանքերի, դարավոր զոհողությունների ու տասնամյակների աննկուն պայքարի գնով մեր ճակատագրի նավը 90 տարի առաջ մի պահ մոտեցավ հատուցման եզերքին, մի պահ մեզ թվաց, թե հատուցման հանգրվանը հասանելի է, սակայն վերջին պահին քաղաքական քամիները կտրուկ փոխեցին իրենց ուղղությունը և մեզ կրկին նետեցին քեմալաբոլշևիկյան քիրվայության հորձանուտը:

Եվ առ այսօր մեր ճակատագրի նավը դեռևս դեգերում է քաղաքական խռովահույզ ծովի մեջ: Ծով, ուր շատ են տեսանելի ու անտես խութերը, ուր վխտում են ծովահենները, ուր մեր նավը դեգերում է աննպատակ, քանզի նավապետը մեր նավը երանելի հանգրվան ուղղելու փոխարեն, ավազակների հափշտակածը օրինականացնելու ճանապարհով փորձում է լեզու գտնել ծովահենների հետ: Միանգամայն սխալ և անհեռանկար գործ:

Ժողովուրդների կյանքում բախտորոշ ժամանակաշրջաններ կան, որ որոշում են տվյալ ժողովրդի հետագա ողջ ճակատագիրը: Հիմա մենք՝ հայերս, այդպիսի մի շրջանի մեջ ենք: Հայ-թուրքական զույգ տխրահռչակ արձանագրությունները խռովել են ողջ հայության հասարակական-քաղաքական կյանքը, ծայրահեղորեն սրել են ազգային կորստի հուշը և ամրապնդել դրանց դեմ համազգային ընդդիմություն ձևավորելու ձգտումը: Այսօր պայքարի վճռորոշ փուլի մեջ ենք, քանզի արձանագրություններն անընդունելի են, անընդունելի են մեր ժողովրդի գերագույն և մնայուն շահերի

տեսանկյունից: Չի կարելի ժամանակավոր ու խմբակային շահերի համար զոհաբերել ժողովրդի անցյալը, ազգի անվտանգությունը և պետության ապագան:

90 տարի առաջ, հենց այս օրերին՝ 1920թ. նոյեմբերի 22-ին, ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնը կայացրեց իր Իրավարար վճիռը: Վիլսոնյան իրավարար վճիռը (*Arbitral Award*), ինչպես առիթներ ունեցել եմ գրելու և խոսելու, մեր իրավունքների ավետարանն է, մեր պահանջատիրության հիմքը, ՀՀ բարեկեցիկ ու ապահով ապագան կերտելու միակ հնարավորությունը:

Լոկ համառոտակի անդրադառնամ այդ հույժ կարևոր փաստաթղթին և առանձնանշեմ միայն մի շարք հիմնադրույթներ: Քանի որ Իրավարար վճիռը կայացվել է Դաշնակից երկրների Սան Ռեմոյի 1920թ. ապրիլի 26-ի, ինչպես նաև Սևրի պայմանագրի (10 օգոստոսի, 1920թ.) մեջ ներառված հայցադիմումների (compromis) հիման վրա և ուժի մեջ է մտել ստորագրման պահից, այսինքն 1920թ. նոյեմբերի 22-ից, ուստի հիշյալ վճիռը պարտադիր, անբեկանելի ու անժամանցելի որոշում է Առաջին համաշխարհային պատերազմի բոլոր Դաշնակից երկրների (Allied Powers) [ներկայումս ավելի քան 100 երկիր] և Սևրի պայմանագիրը ստորագրած պետությունների համար [ներկայումս ավելի քան 20 երկիր]: Այն պարտադիր, անբեկանելի ու անժամանցելի է նաև ԱՄՆ համար, որովհետև Իրավարար վճիռը կրում է Ամերիկայի Միացյալ Նահանգներ պետության Մեծ կնիքը, ստորագրված է ԱՄՆ-ի նախագահի և ենթաստորագրված՝ ԱՄՆ-ի պետքարտուղարի կողմից: Ըստ նախապես տված գրավոր հանձնառության, Վիլսոնի իրավարար վճիռը պարտադիր է նաև առաջին աշխարհամարտում պարտված երկրների համար:

Համաձայն միջազգային իրավունքի հիմնարար սկզբունքի, որն ամրագրված է Հաագայի խորհրդաժողովի (1899թ. և 1907թ.) համապատասխան փաստաթղթերում, Իրավարար վճռի ի կատար ածումն այդ փաստաթղթին կողմ հանդիսացող, այսինքն՝ հայցադիմումը ստորագրած, բոլոր երկրների անսակարկ պարտավորություն է, նրանց անօտարելի հանձնառությունը: Ըստ այդմ, մեր համազգային խնդիրը պետք է լինի յուրաքանչյուր տարի նոյեմբերի 22-ին այդ երկրներից պահանջել, որպեսզի նրանք տեր կանգնեն միջազգային իրավունքից բխող իրենց պարտավորությանը և դա անեն ոչ թե որպես բարեհաճություն, այլ որպես մոռացված, մասամբ ուրացված, սակայն անխաթար ու անբեկանելի միջազգային պարտավորություն:

Արդեն մի քանի տասնամյակ է, ինչ ապրիլի 24-ը հանդիսանում է հայ ժողովրդի նվիրական օրերից մեկը՝ հայոց միասնական քաղաքական վարքի թերևս ամենավառ դրսևորման օրը: Հայ իրականության մեջ այդ օրը մտավ նախ որպես հոգեհանգստի ու հիշատակի խնկարկման օր, ապա աստիճանաբար վերաճեց և դարձավ ոգեկոչման ու Հայոց ցեղասպանությունը ճանաչելու պահանջի օր: Այսուհանդերձ, այդ օրը կորստի օր է, առավելագույնը՝ կորուստը ճանաչել տալու օր:

Սակայն որպես ազգ և որպես արդարությանը հետամուտ հանրություն մենք կարիք ունենք հաղթանակի ու հատուցման, արդարության կայացման ու իրավունքի հաստատման օրվա: Մեր իրականության մեջ կա՛ այդ օրը. հաղթանակի անթեղված կրակը պահող այդ օրը նոյեմբերի 22-ն է՝ ԱՄՆ նախագահ Վիլսոնի կողմից Հայաստանի և Թուրքիայի սահմանը որոշող Իրավարար վճռի կայացման օրը: Այդ օրն իրավարար վճռով Հայաստանի Հանրապետությանը հատկացվեց մեր բնօրրան-հայրենիքի մի մասը՝ նրա հյուսիս-արևելյան հատվածը: Այդ օրը միջազգային իրավունքի հիման վրա կայացվեց և մեկընդմիշտ ուժի մեջ մտավ մի վճիռ, որը կատարման համար պարտադիր է, իրավական տեսանկյունից անբեկանելի ու իրավունքների գոյության առումով անժամանցելի:

**ՆՈՅԵՄԲԵՐԻ 22-ը պետք է դառնա ոտնահարված արդարության վերականգնման, ազգային պահանջատիրության և մեզանից խլված իրավունքների վերահաստատման օր, մեկ բառով՝ ՀԱՅՐԵՆԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՕՐ:**

Կոչ եմ անում ամեն տարի նոյեմբերի 22-ին ըստ արժանվույն՝ ցույցերով, երթերով, հավաքներով, գիտաժողովներով, հրապարակումներով, ելույթներով նշել **ՀԱՅՐԵՆԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՕՐԸ**, քանզի միայն Հայրենատիրության ճանապարհով է հնարավոր կերտել վաղվա Հայաստանը:

*19 նոյեմբերի, 2010թ.*

## ՂՋ. **Իննսունամյա մոլորություն** *կամ* **Ինչպե՞ս եղավ, որ այսպես եղավ – 1**

*/Ալեքսանդրապոլի պայմանագրի 90-ամյա փարելիցին ընդառաջ/*

Պատմության, մասնավորապես միջազգային հարաբերությունների պատմության ուսումնասիրությունն ինքնանպատակ չէ: Ուսումնասիրելով պատմությունը՝ մարդիկ փորձում են անցյալից դասեր քաղել, որպեսզի նույն սխալները չկրկնեն ապագայում: Այս առումով թվում է, որ մենք հետևողականորեն մերժում ենք պատմության դասերը և առաջնորդվում ենք ցանկալին իրականի տեղ դնելու մոլորությամբ: Եթե այդպես չլիներ, ապա մենք Ցյուրիխում չէինք ստորագրի հայ-թուրքական խայտառակ արձանագրությունները: Արձանագրություններ, որոնք բերեցին կարճաժամկետ թվացյալ թեթևության զգացողություն, սակայն մնացին անպտուղ ու ամուլ՝ ըստ այդմ դառնալով քաղաքական օնանիզմի կատարյալ նմուշներ:

Իննսուն տարի առաջ այս օրերին տարաբախտ Ալեքսանդրապոլ (Գյումրի) քաղաքում հայերի ու թուրքերի միջև բանակցություններ էին ընթանում, մեր կարճատև քաղաքական պատմության թերևս դժվարագույն բանակցությունները: Այդ բանակցությունները 03.12.1920թ. ավարտվեցին Ալեքսանդրապոլի ծանրագույն պայմանագրի ստորագրումով: Բանակցությունների ընթացքի, բուն պայմանագրի իրավական կարգավիճակին և բովանդակության համեմատական վերլուծությանը կանդրադառնամ հաջորդ հոդվածով, հիմա մի քանի խոսք պայմանագրի նախընթացի մասին:

Իհարկե, Ալեքսանդրապոլի պայմանագրի ստորագրումը մեկուսի երևույթ չէր: Այն հետևանք էր հատկապես 1920թ. Մայիսյան հայրենակործան ապստամբությունից հետո Հայաստանում առաջացած ռազմաքաղաքական իրավիճակի, օրեցօր սերտացող բոլշևիկ-քեմալական համագործակցության, ինչպես նաև ՀՀ իշխանությունների ու ժողովրդի միջև առաջացած հսկայական վիհի: Քանի որ Հայաստանում ներկա իրավիճակը շատ առումներով կրկնում է 1920թ. մայիս-նոյեմբեր իրավիճակը, ուստի օգտակար եմ համարում որոշ հարցերի քննությունը:

Ինձ, վստահ եմ նաև շատերին, մշտապես մի հարց է կեղեքել: Ինչպե՞ս եղավ, որ բանակի գրեթե բացակայության պայմաններում հայ ժողովուրդը 1918թ. մայիսին բաց դաշտում պարտության մատնեց կամ գոնե արժանի հակահարված տվեց Օսմանյան բանակին, իսկ ընդամենը 2.5 տարի հետո՝ 1920թ. սեպտեմբեր-նոյեմբերին, 1918թ. համե-

մատ ունենալով ավելի շատ զենք, զինամթերք ու զինվոր, նույն Օսմանյան բանակի մնացորդներից Կարսի ամրակուռ ամրոցում կատարյալ պարտություն կրեց: Երբ ուսումնասիրում ես ժամանակի փաստաթղթերը, մամուլն ու հուշագրությունները, ապա մի բան ակնհայտ է դառնում՝ պարտության արմատներն ավելի շատ հոգեբանական էին, քան ռազմաքաղաքական: Իհարկե պաշտպանության կազմակերպման հարցում ահավոր սխալներ են թույլ տրվել, իհարկե եղել են բազմաթիվ ոչ նպաստավոր հանգամանքներ, մինչևիսկ պատահականություններ: Իսկ ի՞նչ է, 1918թ. մայիսին դրանք չկային: Իհարկե կային: Սակայն 1918թ. մայիսին հայ մարդը և զինվորը վստահ էր, որ Օսմանյան բանակը Հարավային Կովկաս է գալիս ավարտին հասցնելու համար Հայոց ցեղասպանության անավարտ գործը: Ուստի դիմադրությունն ու պայքարը այլընտրանք չունեին, կռվելու պատրաստակամությունը համաժողովրդական էր: Ի դեպ, Ղարաբաղի առաջին պատերազմի հաղթանակի բուն պատճառը ևս նրա ազգային-ազատագրական բնույթը և համաժողովրդական էությունն էր: Իսկ երբ նայում ես 1920թ. սեպտեմբեր-նոյեմբերի իրավիճակին, ապա ակնհայտ է դառնում, որ հայ զինվորը պարզապես հրաժարվել է կռվելուց, իսկ հայ մարդն՝ ընդհանրապես դիմադրություն ցույց տալուց: Դրա ամենավառ վկայությունը թուրքերի կորուստների թիվն է: Ըստ քեմալականների Արևելյան ճակատի հրամանատար Քյազիմ Կարաբեքիրի հաշվետվության, 3 օրվա մարտերի ընթացքում (31.10–02.11.1920թ.), ներառյալ նաև Կարսի գրավումը, թուրքերը տվել են ընդամենը 9 զոհ և 42 վիրավոր:[1] Սա բոլշևիկյան *«ժամանակները փոխվել են»*, *«սրանք ուրիշ թուրքեր են»* կարգախոսների մարմնավորում էր իրական կյանքում: Իսկ *«նոր և նորացված թուրքերի»* հեռանալուց հետո, տեղական իշխանությունները 1921թ. մայիսին ստիպված էին միայն Շիրակի 3 գյուղերում (հին անվանումներով՝ Ղալթաղչի, Աղբուլաղ և Բարափոլ) հողին հանձնել 4386 դիակ, որոնց 90%-ը կանայք և երեխաներ էին:[2] Սա ևս *«նոր և նորացված»* թուրքերի հետ եղբայրություն անելու քաղաքականության դրսևորումներից էր: Ցավոք, հիմա էլ նույն քարոզն է, նույն հին երգը: Պարզապես դրսից աջակցություն ստացող բոլշևիկներին հիմա փոխարինում են զանազան գրանտակեր կազմակերպություններ և, այսպես կոչված, քաղաքագետներ: Քանի որ բոլշևիկները վստահ չէին, թե միայն հայերին մոլորության մեջ գցելով և կոտրելով նրանց դիմադրական ոգին, հնարավոր կլինի *«ոչնչացնել իմպերիալիստական Հայաստանը»*, ապա քարոզչությունը զուգակցում էին այլ

քայլերի հետ: Սկսած 1919 մայիս-հունիսից, երբ Սեմյոն Բուդյոնին հանդիպեց Մուստաֆա Քեմալին, բոլշևիկները, տարված համաշխարհային հեղափոխության մարմաջով, իսկայական ռազմական և նյութական օգնություն էին ցուցաբերում քեմալականներին: Սակայն այդ հարաբերությունները հատկապես սերտացան, երբ 24.08.1920թ. կնքվեց քեմալաբոլշևիկյան համագործակցության գաղտնի համաձայնագիրը: Ի դեպ թուրքական կողմից համաձայնագիրը ստորագրողների թվում էր նաև պատերազմի հանցագործ, Օսմանյան կայսրության ռազմական նախկին նախարար Էնվեր փաշան: Փաստ, որը վկայում է հետևյալը. թեև Քեմալն ու Էնվերը տարիներ ի վեր ատում էին իրար, հայերի դեմ իրենց պայքարում բոլոր թուրքերը միակամ են: Գաղտնի համաձայնագրից անմիջապես հետո բոլշևիկները քեմալականներին հատկացրեցին 200,6կգ ոսկի[3] և իսկայական քանակությամբ զենք-զինամթերք: Ռազմական օգնության հատկացումների փաստերը համեմատաբար հայտնի փաստեր են, սակայն քչերը գիտեն, որ բոլշևիկները քեմալականներին օգնել են նաև ուղղակիորեն նրանց շարքերում *«հայ իմպերիալիստների»* դեմ կռվելով: 1920թ. օգոստոսի վերջին բոլշևիկյան առաջին զորախումբը՝ 7.000 հոգի, ժամանեց Էրզրում: Քիչ ավելի ուշ քեմալականներին օգնության եկավ մեկ այլ զորախումբ՝ 10.000 հոգի:[4] Եթե առաջին զորախմբի պարտականությունն էր մասնակցել ՀՀ դեմ ռազմական գործողություններին, ապա 2-րդ զորախմբի խնդիրն էր պահել Միջագետքի ճակատը, որպեսզի այնտեղ տեղակայված բրիտանական ուժերը չկարողանան թիկունքից հարվածել քեմալականներին և այդ ձևով օգնեն Հայաստանին:

Ահա այս վիճակում՝ լքված դաշնակից Բրիտանիայի և Ֆրանսիայի կողմից, դավաճանված դաշնակից Ռուսաստանի կողմից, ներքնապես տկարացած և ռազմականապես ջախջախված, ՀՀ պատվիրակությունը 1920թ. նոյեմբերի 24-ին ժամանեց Ալեքսանդրապոլ (Գյումրի) սկսելու բանակցությունները իբր նոր, իրեն հեղափոխական հորջորջող Թուրքիայի հետ:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Harb Tarihi Vesikalari Dergisi (Ռազմական պատմության փաստաթղթերի հանդես) սեպ. 1964, փաստաթուղթ №1146.
2. Hovannisian R. The Republic of Armenia. v. IV, Berkeley, 1996, p. 286.
3. Посольство Российской Федерации в Турции, www.turkey.mid.ru/20-30gg.html
4. Somakian M Empires in Conflict: Armenia & the Great Powers, 1895-1920. London, 1995, 229.


*28 նոյեմբերի, 2010թ.*

## ԴԷ. Փոքր, բայց կարևոր ճշտում *կամ* Ե՞րբ է ստորագրվել Ալեքսանդրապոլի պայմանագիրը

*/Ալեքսանդրապոլի պայմանագրի 90-ամյա փարելիցին ընդառաջ/*

Ալեքսանդրապոլի պայմանագրի ստորագրման ճշգրիտ օրն ու ժամը հույժ կարևոր նշանակություն ունի, որովհետև այն անմիջականորեն շաղկապված է Ալեքսանդրապոլում գտնվող հայկական պատվիրակության լիազորությունների (full powers), ըստ այդմ նաև նշյալ պայմանագրի իրավական կարգավիճակի հետ: Քանի որ ցանկացած գործողություն, այդ թվում նաև միջազգային փաստաթղթի ստորագրում, որը կատարվել է պետության ներկայացուցչի կողմից նրա լիազորությունների շրջանակից կամ ժամանակահատվածից դուրս՝ *ultra vires* գործողություն է և որպես այդպիսին որևէ պարտավորեցնող հետևանք չի ստեղծում տվյալ պետության համար,[1] ուստի Ալեքսանդրապոլի պայմանագրի ստորագրման ճշգրիտ ամսաթվի զուտ պատմական փաստը տվյալ դեպքում վերաճել է իրավական կարևորության փաստի:

Այսինքն, տվյալ դեպքում հարցերի հարցը հետևյալն է. Ալեքսանդրապոլի պայմանագիրը ստորագրելու պահին արդյո՞ք հայկական պատվիրակությունն ունեցել է նման լիազորություններ, թե՝ ոչ: Անհրաժեշտ եմ համարում ընդգծել, որ սույն հարցի բացասական պատասխանը Ալեքսանդրապոլի պայմանագրի անվավերության (invalidity) հիմքերից միայն մեկն է: Ալեքսանդրապոլի պայմանագիրն անվավեր է նաև մի շարք այլ պատճառներով, այդ թվում վավերացված և ուժի մեջ մտած չլինելու, ինչպես նաև թուրքական պետության բարձրագույն իշխանավորի, այսինքն սուլթան Մոհամմեդ 6-ի, կողմից քեմալականներին համապատասխան լիազորություններ տված չլինելու պատճառով: Հարկ է ընդգծել, որ առնվազն մինչև 1922թ. նոյեմբերի 1-ը ոչ ոք, ոչ միջազգային համայնքը և ոչ էլ քեմալականները, կասկածի տակ չեն դրել սուլթանի *de jure* իշխանությունը, նրա սահմանադրական բացառիկ լիազորությունները և նրա իրավական գերակայությունը:[2]

Հայաստանում 1920թ. իշխանափոխությունը փաստագրված իրողություն է, հետևաբար նրա օրն ու ժամը՝ անվիճելի փաստ: Իշխանափոխությունը Հայաստանում տեղի է ունեցել ՀՀ իշխանությունների և ՌՍՖՍՀ ներկայացուցիչ Բորիս Լեգրանի միջև համապատասխան համաձայնագրի ստորագրումով: Նշյալ համաձայ-

նագիրը ստորագրվել է 1920թ. դեկտեմբերի 2-ին, կեսօրից առաջ և ուժի մեջ է մտել նույն օրը երեկոյան ժամը 6-ին:[3]

Քանի որ իշխանափոխության հարցը միանշանակորեն հստակ է, մնում է պարզել՝ ե՞րբ է ստորագրվել Ալեքսանդրապոլի պայմանագիրը՝ մինչև իշխանափոխությունը, թե իշխանափոխությունից հետո:

Առավելաբար և ավանդաբար որպես Ալեքսանդրապոլի պայմանագրի ստորագրման ամսաթիվ նշվում է 1920թ. դեկտեմբերի 2-ը: Սա սխալ թվագրում է, քանի որ փաստերն այլ բան են վկայում: Կարծում եմ նշյալ սխալը տարածում է գտել, քանի որ թեև պայմանագիրը ստորագրվել է դեկտեմբերի 3-ին, պայմանագրի վրա մնացել է *«2 դեկտեմբերի, 1920թ.» (2 Aralik 1336)* թվագրումը:

Նախ տեսնենք՝ ի՞նչ են վկայում Ալեքսանդրապոլի պայմանագրի ստորագրման անմիջական և ոչ անմիջական մասնակիցները: ՀՀ պատվիրակության ղեկավար Ալեքսանդր Խատիսյանը իր հուշերում գրում է հետևյալը. *«Երեկոյեան ժամը 8-ին կայացաւ խաղաղութեան խորհրդաժողովի չորրորդ և վերջին նիստը: (…) <u>Գիշերւայ ժամը 2-ին (դեկ. 2-էն լոյս 3-ը) դաշնագիրը ստորագրւեցաւ</u> երկու պատւիրակութիւններու կողմէն»*:[4] Թուրք ազգայնականների ղեկավար, հետագայում Թուրքիայի նախագահ, Մուստաֆա Քեմալն իր 1927թ. հայտնի ճառում, խոսելով Ալեքսանդրապոլի պայմանագրի մասին, ասում է հետևյալը. *«Խաղաղության բանակցությունները սկսվեցին նոյեմբերի 26-ին և ավարտվեցին դեկտեմբերի 2-ին; այդ <u>գիշերվա ընթացքում պայմանագիրը ստորագրվեց</u> Գյումրիում»*: (*Peace negotiations began on the 26th November and ended on the 2nd December; <u>during that night the treaty was signed</u> at Gumru.*)[5]

Բազմաթիվ են այն աղբյուրներն ու ուսումնասիրությունները, որտեղ Ալեքսանդրապոլի պայմանագրի ստորագրման ամսաթիվն իրավացիորեն նշված է 1920թ. դեկտեմբերի 3-ը:[6] Հաշվի առնելով հոդվածի բնույթը՝ ես ընթերցողին չեմ ծանրաբեռնի հղումներով: Կվկայակոչեմ միայն ժամանակի թերևս ամենաիրազեկ մարդու՝ Կ.Պոլսում Մեծ Բրիտանիայի Գերագույն հանձնակատար Հորես Ռամբոլդի (Horace Rumbold) կողմից արտգործնախարար Ջորջ Քերզոնին (George Curzon) հղված (16 դեկտեմբերի, 1920թ.) հետախուզական ամփոփագիրը. *«Թուրքերի և հայերի միջև խաղաղությունն իրականում Ալեքսանդրապոլում <u>ստորագրվել է դեկտեմբերի 3-ին</u>»* (*Peace between the Turks and Armenians had actually <u>signed at Alexandropol on the 3rd December</u>.*)[7]

Ամփոփելով՝ կարելի է անել հետևյալ եզրակացությունը. Ալեքսանդրապոլի պայմանագրի ոչ վավերական (invalid) լինելն ունի բազմաթիվ հիմքեր, որոնցից մեկը պատվիրակությունների համապատասխան լիազորությունների բացակայությունն է: Ալեքսանդրապոլի պայմանագրի ստորագրման պահին՝ 1920թ. դեկտեմբերի 3-ին, պատվիրակություններից և ոչ մեկը լիազորված չէր հանդես գալու իր երկրի անունից. հայկական պատվիրակությունն <u>արդեն</u> չէր ներկայացնում երկրի իշխանությունը, իսկ թուրքական (քեմալական) պատվիրակությունը <u>դեռևս</u> չէր ներկայացնում երկրի իշխանությունը:


*Հղումներ և ծանոթագրություն*

1. Luzius Wildhaber. Treaty Making Power and Constitution. Basel-Stuttgart, 1971, p. 150.
2. Modern Turkey, (by Eliot G. Mears), NY, 1924, p. 604.
3. Hovannisian R. The Republic of Armenia. v. IV, Berkeley, 1996, p. 387.
4. Խատիսեան Ա. Հայաստանի Հանրապետութեան ծագումն ու զարգացումը. Աթէնք, 1930, էջ 271:
5. Mustafa Kemal Ataturk. A Speech delivered by Musrafa Kemal Ataturk 1927. Istanbul, 1963, p. 418.
6. McCarthy J. The Ottoman Turks: An Introductory History to 1923. London, 1997, p. 381.; Lenczowski G. Middle East in World Affairs. N.Y., 1952, p. 105.; Jaschke v. G., Pritsch E. Die Tiirkei seit dem Weltkriege, Geschichtskalender 1918-1928, Die Welt des Islams. Bd. 10, p. 42.; Modern Turkey, (by Eliot G. Mears), N.Y., 1924, p. 600.; The New York Times, December 10, 1920, p. 1.
7. Summary of Intelligence Reports issued by S.I.S. (Constantinople Branch) for week ending December 16, 1920. British Documents on Ataturk (1919-1938). v. 2, April-December 1920, Ankara, 1975, p. 515.


*30 նոյեմբերի, 2010թ.*

## ՂԸ. Կոմունիստական բարոյականության և աստվածաշնչյան ճշմարտության մասին

Օրական Երևանի փողոցներից հավաքվում էր 65 դիակ, համանման վիճակ էր երկրի բոլոր մասերում: Խայտառակ պատերազմի և անկախության մատուցման, Բաթումի և Ալեքսանդրապոլի ազգակործան պայմանագրեր, որոնցով Հայաստանը ստանում էր ընդամենը 9 հազար քառակուսի կիլոմետր ամայացած տարածք:

*Հատված ընկեր Թովմասյանի ՀԿԿ 38-րդ համագումարում արտասանած բոցաշունչ ճառից, (Առավոտ, 1 դեկտեմբերի, 2010թ.)*

Ես հարց չեմ տա ընկեր Թովմասյանին՝ օրական սովից քանի՞ մարդ էր մահանում կումունիստական երանելի իշխանության, այն է Հոլոդոմորի տարիներին, քանի որ այդ հարցով ինքս չեմ զբաղվել և չեմ կարող բանավիճել մասնագիտական մակարդակով: Ես կանդրադառնամ միայն մի հարցի, որով մասնագիտության և հասարակական պահանջի բերումով զբաղվում եմ տարիներ ի վեր: Դա Հայաստանի Հանրապետության տարածքի հարցն է:

Որևէ երկրի տարածքի չափի մասին կարելի է խոսել, եթե գոնե ընդհանուր գծերով հստակեցված են այդ երկրի բոլոր սահմանները: Ալեքսանդրապոլի պայմանագիրը (հոդված 2) հստակեցնում է միայն հայ-թուրքական սահմանը (այստեղ բաց եմ թողնում պայմանագրի իրավական կարգավիճակի հարցը): Բնականաբար պայմանագրում անդրադարձ չկա Հայաստանի Հանրապետության մնացած 3՝ հայ-պարսկական, հայ-ադրբեջանական, հայ-վրացական սահմաններին: Բնականաբար, որովհետև երկու երկիր, առանց 3-րդ երկրի մասնակցության, չեն կարող որոշել վերջինիս սահմանները: Իհարկե, այդպիսի բան իրենց միայն բոլշևիկները կարող էին թույլ տալ, ինչպես արեցին Մոսկվայի պայմանագրով (16 մարտի, 1921թ.): Եթե վերոհիշյալ 3 սահմաններից առաջինի՝ հայ-պարսականի, շուրջ տարակարծություն չկար, ապա հայ-վրացական և հայ-ադրբեջանական սահմանների երկայնքով կային, մեր չափանիշներով, հսկայական վիճելի տարածքներ:

Ավելին, Ալեքսանդրապոլի պայմանագրով անգամ Նախիջևանի տարածքի վերջնական կարգավիճակը ճշտված չէր: Այն պիտի որոշվեր հետագայում՝ հանրաքվեով (հոդված 2), ի տարբերություն Կարսի պայմանագրի (13 հոկտեմբերի, 1921թ.), որով ընկեր Թով-

մասյանի գովերգած կոմունիստները Նախիջևանն անսակարկ հանձնեցին Ադրբեջանի տնօրինմանը:

Ի դեպ, եթե Ալեքսանդրապոլի պայմանագիրն անգամ Կարսի մարզի վերջնական կարգավիճակի համար նախատեսում էր հանրաքվեի անցկացման հնարավորություն (հոդված 3), ապա քեմալականների հետ կոմունիստների կնքած Կարսի պայմանագիրը դա էլ չէր նախատեսում:

Խոսքս ուզում եմ վերջացնել կոմունիստների չսիրած գրքերից մեկի՝ Աստվածաշնչի, խոսքով. *«Զի՞ տեսանես զշիղ յական եղբօր քո, եւ ի քում ական զգերանդ ոչ տեսանես» (Աւետարան ըստ Մատթէոսի, Է:3)*:

*01 դեկտեմբերի, 2010թ.*

## ՂԹ. Իննսունամյա մոլորություն *կամ* Ինչպե՞ս եղավ, որ այսպես եղավ – 2

*/Ալեքսանդրապոլի պայմանագրի 90-ամյա պարելիցին ընդառաջ/*

1920թ. նոյեմբերի 24-ին ՀՀ պատվիրակությունը ժամանեց Ալեքսանդրապոլ: Հաջորդ օրը պաշտոնապես սկսվեցին խաղաղության բանակցությունները քեմալականների և հայոց պատվիրակության միջև: Հայաստանի պատվիրակության ղեկավարն էր նախկին վարչապետ Ալեքսանդր Խատիսյանը: Պատվիրակության լիազոր անդամներն էին նաև ֆինանսների նախկին նախարար Աբրահամ Գյուլխանդանյանը, Կարսի նախկին նահանգապետ Ստեփան Ղորղանյանը: Պատվիրակության ընդհանուր կազմում կար 16 հոգի:

Ալեքսանդրապոլի պայմանագրի ստորագրման պահին (3 դեկտեմբերի, 1920թ.) ՀՀ պատվիրակության լիազորությունների կամ ավելի ճիշտ լիազորությունների բացակայության մասին ես արդեն գրել եմ: Հիմա հարկ է անդրադառնալ Թուրքիայի անունից հանդես եկողների կարգավիճակին և տեսնել արդյո՞ք այդ պատվիրակությունը միջազգային իրավունքի և թուրքական պետության սահմանադրության տեսանկյունից լիազորված էր վարելու որևէ բանակցություն ու ստորագրելու որևէ պայմանագիր, թե՝ ոչ:

Մինչ, այսպես կոչված, թուրքական պատվիրակությանն անդրադառնալը մի հստակեցում. անհրաժեշտ է ընդգծել, որ թուրքական բառն այստեղ գործածվում է զուտ էթնիկ և ոչ քաղաքական իմաստով, քանի որ մինչնիսկ այդ պատվիրակության անդամներն իրենք իրավացիորեն իրենց չէին համարում Թուրքիայի պետության ներկայացուցիչներ: Պայմանագրի նախաբանում խնդրո առարկա պատվիրակությունն անվանված է ոչ թե Օսմանյան կայսրության կամ Թուրքիայի կամ դրանց կառավարության պատվիրակություն, այլ ընդամենը *Թուրքիայի ազգային մեծ ժողովի կառավարություն (Türkiye Büyük Millet Meclisi Hükümeti,* ինչպես պայմանագրի թուրքերեն օրինակում է, կամ *Le Gouvernement de la Grande Assemblée Nationale de Turquie,* ինչպես ֆրանսերեն օրինակում է): Սա մի կազմակերպություն էր, որ ստեղծվել էր Թուրքիայի ռազմական հետախուզության կողմից (որի ղեկավարը 1912-1914թթ. հենց նույն Քյազիմ Կարաբեքիրն էր) ստեղծված *Կարակոլ (Karakol)* կազմակերպության և նույն կառույցի հրահրումով և աջակցությամբ ստեղծված, այսպես կոչված, *Ազգային պաշտպանության (Mudafaa-i Milliye) [The National Defense Group]*[1] զանազան

խմբերի միավորումով՝ 1920թ. ապրիլի 23-ին, Անկարայում: Բնական է, որ Կարակոլի, ինչպես նաև նշյալ խմբերի, գործունեության օրինականության *(legitimacy)* մասին խոսք լինել չի կարող, քանի որ, ըստ միջազգային օրենքի, զինադադարի կնքումից հետո որևէ գործողություն, որն ուղղված է զինադադարի նպատակը՝ այն է խաղաղությունը, խաթարելուն անօրինական է և դատապարտելի: Քեմալականների գործունեությունը նաև Թուրքիայի սահմանադրության կոպտագույն խախտում էր, ուստի Թուրքիայի օրինական իշխանությունները դեռևս 1920թ. ապրիլ-մայիսին քեմալականների նկատմամբ մի շարք մահավճիռներ էին կայացրել: Այսպես, օրինակ, դեռևս 1920թ. ապրիլի 11-ին կայսրության բարձրագույն կրոնավորի՝ շեյխ-ուլ-իսլամի, ֆեթվայով (կոնդակով) խռովարարները հայտարարվել էին օրենքից դուրս և նրանց սպանելը՝ աստվածահաճո գործ:[2] Խռովարարների պարագլուխը՝ Մուստաֆա Քեմալը, դեռևս 1919թ. հուլիսի 11-ին էր զրկվել իր բոլոր կոչումներից և պաշտոններից, իսկ 1920թ. մայիսի 11-ին ի լրումն կրոնական որոշման նրա նկատմամբ մահապատժի վճիռ էր կայացրել թուրքական ռազմական դատարանը: Այդ դատավճիռը 1920թ. մայիսի 24-ին հաստատվել էր սուլթանի կողմից: Այնպես որ 1920թ. նոյեմբեր-դեկտեմբերին Ալեքսանդրապոլ բանակցությունների եկած պատվիրակությունը ոչ թե Թուրքիա պետությունն էր ներկայացնում, այլ փախուստի մեջ գտնվող, այդ թվում նաև պատերազմական հանցագործությունների համար մահվան դատապարտված, քրեական հանցագործների մի կազմակերպություն: Քանի որ, այսպես կոչված, քեմալականները (ներառյալ Մուստաֆա Քեմալը) գրեթե բոլորը նախկին երիտթուրքեր էին՝ Միություն և առաջադիմություն կուսակցության անդամներ և ունեին միևնույն ծայրահեղ ազգայնական գաղափարախոսությունը, ապա բրիտանացիներն իրավացիորեն նրանց համարում էին նույնն ու նույնական *(one and the same)*:[3] Այո, քեմալական կազմակերպությունները ռազմականապես ուժեղ էին, քանի որ իրենց տրամադրության տակ ունեին Օսմանյան կայսրության 15-րդ բանակային կորպուսը (մոտ 30 հազ. հոգի),[4] որը համալրված էր այլ ուժերով (2-րդ, 6-րդ և 9-րդ բանակային կորպուսների ուժերով) և ուժեղացած էր բոլշևիկյան աջակցությամբ, սակայն միևնույն է՝ դա չի փոխում նրանց իրավական կարգավիճակը: Պայմանագրերի օրինականության համար ոչ թե զինվորների թիվն է կարևոր, այլ պատվիրակության լիազորությունների օրինականությունը: Ցանկացած միջազգային պայմանագրի օրինականության համար միջազգային իրավունքն ունի

իստակ պահանջներ: Այդ պահանջների մի մասը կարելի է սահմանել հետևյալ երրորդության մեջ – որևէ պայմանագիր կարող է համարվել օրինական, եթե այն ստորագրվել է ճանաչված պետության օրինական իշխանության լիազոր ներկայացուցիչ(ներ)ի կողմից:

Ակնհայտ է, որ քեմալականների պատվիրակությունը լիազորված չէր և չէր ներկայացնում ճանաչված պետության օրինական իշխանություն: Նրա լիազորություններն ածանցված էին միայն *Ազգային մեծ ժողով (Buyuk Millet Meclisi)* կոչվող կազմակերպության կարգավիճակից: Իսկ ի՞նչ էր իրենից ներկայացնում և ի՞նչ իրավական կարգավիճակ ուներ տվյալ կազմակերպությունը 1920-21թթ.: Սա կարևոր հարց է նաև Մոսկվայի (16 մարտի, 1921թ.) և Կարսի (13 հոկտեմբերի, 1921թ.) պայմանագրերի վավերության *(validity)* համար, քանզի նշյալ երկու, այսպես կոչված, պայմանագրերն էլ ստորագրվել են միևնույն կազմակերպության ներկայացուցիչների կողմից:

*Ազգային մեծ ժողով* կազմակերպությունը, չնայած լայնորեն տարածում գտած թյուր կարծիքի, 1920-23թթ. բնավ էլ Թուրքիայի խորհրդարանը չէր: Նա այդպիսին չէր և չէր կարող լինել միջազգային իրավունքի, ինչպես նաև երկրի գործող սահմանադրության տեսանկյուններից: Կապիտուլյացիայի ենթարկված երկրում, ռազմակալման ողջ ժամանակահատվածում, դադարում են գործել տվյալ երկրի օրենսդիր և գործադիր իշխանության մարմինները: Գերակա իշխանությունն անցնում է հաղթող երկրներին և այդ իրավական կարգավիճակը մնում է մինչև խաղաղության պայմանագրի կնքումն ու ուժի մեջ մտնելը: Այդ կարգավիճակը և իրավիճակը միանշանակորեն ամրագրված են միջազգային իրավունքի մեջ, և ամրապնդված բազում օրինակներով:[5] Թուրքիայի պարագայում 1918թ. հոկտեմբերի 30-ից (Մուդրոսի զինադադարի ստորագրումից) գոնե մինչև 1923թ. հուլիսի 24-ը (Լոզանի պայմանագրի ստորագրումը) Թուրքիայում, միջազգային իրավունքի համաձայն, իշխանությունը պատկանում էր հաղթած *Դաշնակից երկրների Գերագույն խորհրդին (Supreme Council of the Allied Powers)*: Այդ խորհուրդը, որի կազմում էին Բրիտանիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և ԱՄՆ բարձրագույն պաշտոնյաները, իր իշխանությունը Թուրքիայում իրականացնում էր նախ պարզ ներկայացուցիչների (1918թ. նոյեմբեր – 1919թ. մարտ), ապաև Գերագույն հանձնակատարների *(High Commissioners)* միջոցով (1919թ. մարտ–1923թ. սեպտեմբեր):[6] Վերջիններիս միավորող կառույցը, որն իրականացնում էր բարձրագույն իշխանությունը նախկին Օսմանյան

կայսրության տարածքում, կոչվում էր Վերահսկման և կազմակերպման միջդաշնակցային հանձնախմբեր *(Inter-Allied Commissions of Control and Organization)* և ուներ զանազան ենթահանձնախմբեր:[7]

Լոզանի պայմանագիրը հաստատում է ասածներս: Այդ պայմանագրի ուշադիր ընթերցողը կնկատի, որ այն ոչ թե հստակեցնում է Թուրքիայից անջատվող տարածքները, այլ նշում է նախկին Օսմանյան կայսրության այն տարածքները, որոնց վրա վերականգնվում է թուրքական ինքնիշխանությունը *(sovereignty)*:

*Ազգային մեծ ժողով կազմակերպության* առաջին նիստը գումարվել է 1920թ. ապրիլի 23-ին: Այդ ժողովն ունեցել է 327 մասնակից, որոնցից առավելագույնը միայն 92 էին (մեկ երրորդից էլ պակաս) նախկին օսմանյան խորհրդարանի նախկին անդամներ: Նրանք կրկնակի նախկին էին, քանի որ խարհրդարանի վերջին օրինական ընտրությունները տեղի էին ունեցել 1912թ. և այդ տարի ընտրվածների լիազորությունների ժամկետը, համաձայն գործող սահմանադրության 70-րդ հոդվածի, ավարտվել էր 1916թ.: Պատմագիտական գրականության մեջ հիշատակվող 1919թ. վերջին ամիսների, այսպես կոչված, ընտրությունները և դրա հետևանքով 1920թ. հունվար-ապրիլին կայացած ժողովները, անգամ մեծ ցանկության դեպքում, չեն կարող համարվել ընտրություններ և դիտարկվել որպես խորհրդարանական նիստեր, քանզի դրանք տեղի են ունեցել թուրքական ինքնիշխանության բացակայության պայմաններում և չեն իրականացվել երկրի սահմանադրության և օրենսդրության պահանջներին համապատասխան: Մասնավորապես, խախտվել են սահմանադրության №№ 7, 17, 41, 42, 43, 45, 46, 60, 72, 77, 120 հոդվածները, քվեարկելու իրավունքից ապօրինաբար զրկված են եղել բոլոր ոչ թուրքերը: Հետևաբար, այդ ժամանակ Թուրքիայի միակ ճանաչված իշխանավորը՝ սուլթանը, համաձայն սահմանադրությամբ իրեն վերապահված իրավունքի (հ-ծ 7), 1920թ. ապրիլի 12-ին դադարեցրել էր այդ ոչ օրինական ժողովահավաքների գործունեությունը:[8] Ահա այս մասին է խոսքը, երբ ասում են *«նախկին խորհրդարանի պատգամավորներ»*: Եթե մինչևիսկ վերոհիշյալ 92-ի լիազորությունները համարենք օրինական, որն ինչպես տեսանք խիստ կասկածելի է, միևնույն է այդ թիվը խորհրդարան գումարելու համար քվորում չէր կարող ապահովել: Մնացած 232-ը ներկայացնում էին երկրում ապօրինի գործող, այսպես կոչված, Իրավունքների պաշտպանության շարժման տարբեր մասնաճյուղերը:[9] Օսմանյան կայրության պարտությունից հետո՝ 1918 դեկտեմբերից

մինչև 1920 հոկտեմբեր, ձևավորվել է այդպիսի Իրավունքների պաշտպանության 28 մասնաճյուղ, որոնցում առավելաբար ներկայացված էին *«Միություն և առաջադիմություն»* հանցագործ և օրենքից դուրս հայտարարված կուսակցության տեղական մարմինների ներկայացուցիչները, մուֆթիներ (իսլամական կրոնավորներ), մուսուլման հողատերեր ու ոչ քրիստոնյա առևտրականներ:[10] Այդ կազմակերպությունները հավաք գումարեցին Էրզրումում (23.07–17.08.1919թ.), որտեղ էլ ձևավորեցին միացյալ ղեկավար մարմին՝ Ներկայացուցիչների հանձնաժողով *(Heyet-I Temsiliye) [Representative Committee]*՝ Մուստաֆա Քեմալի գլխավորությամբ: Նրանց հաջորդ հավաքը կայացավ Սեբաստիայում, 04-11.09.1919թ.: Թեև մասնակցում էին գավառային կառույցների ընդամենը 31 ներկայացուցիչ, հավաքն իրեն տվեց ինչեղ անուն՝ *Անատոլիայի և Ռումելիայի ազգային շահերի պաշտպանության ընկերակցություն (Anadolu ve Rumeli Müdafaa-i Hukuk Cemiyeti) [Association for the Defense of the Rights of Anatolia and Rumelia]*:[11] Այս կազմակերպությունը 27.12.1919թ. փոխադրվեց Անկարա, որտեղ էլ 1920թ. ապրիլին, իր շարքերն ընդունելով արդարադատությունից փախչող նախկին պատգամավորների և պաշտոնյաների, իրեն տվեց էլ ավելի ինչեղ անուն: Այն վերանվանվեց *Թուրքիայի ազգային մեծ ժողով*, իսկ նրա ղեկավար մարմին Ներկայացուցիչների հանձնաժողովը՝ *Թուրքիայի ազգային մեծ ժողովի կառավարություն*: Այսինքն, 1919թ. սեպտեմբերին ստեղծված կազմակերպությունը և նրա գործադիր մարմինը 1920թ. ապրիլին վերակազմավորվեց և վերանվանվեց,[12] սակայն նրա իրավական կարգավիճակը դրանից չփոխվեց:

Ահա այս կազմակերպության գործադիր մարմնի՝ կառավարության, անունից էր հանդես գալիս Ալեքսանդրապոլում բանակցող թուրքական պատվիրակությունը: Բնական է, որ կազմակերպության անվանումը չէ, որ որոշում է տվյալ կառույցի լիազորությունները, այլ այն իրավական և օրենսդրական հիմքը, որի վրա ձևավորվել և որի շրջանակներում կայացել է նշյալ կառույցը: Ինքնին կազմակերպության անվանումը չի սահմանում տվյալ կազմակերպության իրավասությունների շրջանակը, առավել ևս դառնում հիմք՝ միջպետական իրավական փաստաթուղթ ստորագրելու լիազորություն տալու համար:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Criss N.B. Istanbul under Allied Occupation, 1918-1923. Leiden, 1999, p. 5.
2. Zurcher E.J. Turkey, The Modern History. London-New York, 1998, p. 158.
3. Criss N.B. Ibid, p. 5.

4. Zurcher E.J. Ibid, p. 155.
5. Paenson I. Manual of the Terminology of the Law of Armed Conflicts and International Humanitarian Law. Brussels, 1989, p. 46.
6. Criss N.B. Ibid, p. 61:
7. Նույն տեղում, էջ 158:
8. Mears E.G. Modern Turkey. NY, 1924, p. 598.
9. Zurcher E.J. Ibid, p. 158.
10. Նույն տեղում, էջ 154:
11. Նույն տեղում, էջ 157:
12. Smith E.D. Turkey: Origins of the Kemalist Movement (1919-1923). Washington, 1959, p. 9.

*04 դեկտեմբերի, 2010թ.*

## Հ. Wikileaks Wikileaks-ից առաջ

*կամ*

## Բրիտանական հետախույզի բացահայտումները Աթաթուրքի մասին

Թուրք մեկնաբանները չեն կարողանում հասկանալ, թե ինչու է մեղադրական գործերով լցված դարակներից մեկում դրված Աթաթուրքի լուսանկարը: Որոշները կարծում են, որ դա կապված է հայերի և հույների ցեղասպանություններին նրա առնչության հետ:

*03 դեկտեմբերի, 2010թ., www.news.am*

Այս օրերին աշխարհը խոսում է Wikileaks-ի մասին, քանզի Wikileaks-ն է խոսում աշխարհի մասին: Բազմաթիվ հաղորդագրությունների մեջ եղավ հետևյալը. Wikileaks-ի տեղեկատվական պահոցներից մեկում, դարակի վրա դրված է Քեմալ Աթաթուրքի լուսանկարը: Կարծիքներ հնչեցին, որ լուսանկարն ակնարկ է առ այն, որ Wikileaks-ն իր տրամադրության տակ ունի Աթաթուրքի մասին վարկաբեկիչ նյութեր և պատրաստվում է դրանք հրապարակել: Ոմանք շտապեցին հայտարարել, որ այդ նյութերը կարող են վերաբերել հայերի և հույների ջարդերին Մուստաֆա Քեմալի առնչությանը: Միգուցե, սակայն դա վաղուց արդեն գաղտնիք չէ, պարզապես մոռացված է կամ ավելի ճիշտ՝ քաղաքական ու տնտեսական շահերով պայմանավորված ուրացում: Առաջ այսպես չէր:

Ի տարբերություն ներկայի, առաջ լրագրողներն ավելի անկախ էին, իսկ դիվանագետներն՝ ավելի ազնիվ: Ժամանակի մամուլն ու դիվանագիտական զեկուցագրերը լեցուն են քեմալականների կողմից ՀՀ տարածքում (1920թ. սեպտեմբեր – 1921թ. ապրիլ) և Կիլիկիայում (1920թ. փետրվար) հայկական քաղաքացիական բնակչության ջարդերի, ինչպես նաև Զմյուռնիայում (1922թ. սեպտեմբեր) հույների և հայերի կոտորածի մասին տեղեկություններով: Իզուր չէ, որ 1921թ. քեմալականների գլխամասային կառույցը՝ Թուրքիայի ազգային մեծ ժողովը, Մուստաֆա Քեմալին շնորհել է *ղազի՝ անհավատներին ոչնչացնող (Destroyer of Infidels),*[1] *կամ քրիստոնյաներին ոչնչացնող (The Destroyer of Christians)*[2] մականունը: Իհարկե, այդ նույն օրերին նա և նրա կողմնակիցները Եվրոպայում հայտնի էին բոլորովին այլ մականուններով: Ահա թե ինչ է գրում Մուստաֆա Քեմալի մասին 1936թ. ամերիկյան հայտնի լրագրող և բազմաթիվ արժեքավոր գրքե-

րի հեղինակ Ջոն Գյունտերը [John Gunter]. *«Աթաթուրքը բռնակալների միջի ամենաբիրին է: Նրա կողքին Հիտլերը փափկասուն է, Մուսոլինին՝ բուրումնախեղդ թիթիզ»*: *(Ataturk is the roughneck of dictators. Beside him, Hitler is a milksop, Mussolini a perfumed dandy.*[3] *John Gunter, Inside Europe, 1936.)* Իսկ Բրիտանական կայսրության նախարարական 4 կաբինետների (1916-1930թթ.) փոխքարտուղար *«Եվրոպայի կարևորագույն վեցը մարդկանցից մեկը» ("one of the six most important men in Europe")*[4] Թոմաս Ջոնսը (Thomas Jones, Deputy Secretary to the Cabinet), երբ իր խղճի հետ միայնակ էր մնում, ապա քեմալականներին անվանում էր *«Անկարայի մսագործներ» ("Angora butchers")*:[5] Այսուհանդերձ, չեմ կարծում, որ եթե Wikileaks-ն ինչ-որ բան հրապարակի Աթաթուրքի մասին, ապա դա կվերաբերի նրա՝ քրիստոնյաների նկատմամբ վարած քաղաքականությանը:

Wikileaks-ի տեղեկատվական արտահոսքը ոչ առաջինն էր և ոչ էլ վերջինն է լինելու: Պարզապես, եթե առաջ այդ բանն արվում էր տպագիր մամուլի միջոցով, այսինքն դանդաղ էր մատչելի դառնում հազարավորների, գուցեև տասնյակ հազարավորների, համար, ապա այսօր ինտերնետը ցանկացած տեղեկություն անմիջապես հասանելի է դարձնում տասնյակ միլիոնավորների համար: Ժամանակին, երբ Թուրքիան կարողություն չուներ փակելու ուրիշների բերանը և եվրոպացիներն ազատ էին իրենց տանը իրենց մտքերն արտահայտելու հարցում, եվրոպացի դիվանագետները, այսօրվա բառապաշարով ասած, պարբերաբար տեղեկատվական արտահոսք էին կազմակերպում: Դա դրսևորվում էր իրենց աշխատած երկրների և նրանց ղեկավարների մասին անկեղծ հոդվածներ և գրքեր գրելով: Այդ ժամանակ կեղծ բարեպաշտությունը դեռևս պետական քաղաքականության մակարդակի չէր բարձրացված:

Մեզ հետաքրքրող հարցի, այն է Քեմալ Աթաթուրքի մասին, թերևս ամենահետաքրքիր և ամենահավաստի տեղեկությունների հեղինակը Հարըլդ Արմսթրոնգն (Harold Armstrong) է: Արմսթրոնգն առաջին աշխարհամարտից հետո՝ 1919թ. ապրիլից[6] մինչև 1922թ. հունիս,[7] եղել է Կ.Պոլսում Բրիտանիայի Գերագույն հանձնակատարի ռազմական կցորդի պաշտոնակատարը,[8] Բրիտանական կայսրության պաշտպանության նախարարությունում հատուկ ծառայությունների սպա և թուրքական ժանդարմերիայի վերահսկիչը: (Acting Military Attach to the High Commissioner, Constantinople; Special Service Officer in War Office and Supervisor of Turkish Gendarmerie).[9] Այսինքն մեկը, որն անմիջա-

կանորեն վերահսկելով Թուրքիայի ներսում գործող գործակալական ցանցը, իրազեկ է դարձել բազմաթիվ քաղաքական գործիչների կյանքի մանրամասներին: Դրա համար նա ուներ լիազորություններ և կարողություններ, ինչպես նաև կատարելապես տիրապետում էր թուրքերենին: Ավելի քան 3 տարի Թուրքիայում պաշտոնավարելուց հետո Հարըլդ Արմսթրոնգը, օգտագործելով տարիների իր հավաքած տեղեկությունները, Թուրքիայի մասին 2 սկզբնաղբյուրային նշանակություն ունեցող գիրք է գրում. Harold Armstrong. *Turkey in Travail, The Birth of a New Nation*. London, 1925 [Թուրքիան երկունքի ցավերի մեջ, մի նոր ազգի ծնունդ]; և H.C. Armstrong. *Gray Wolf, Mustafa Kemal – An Intimate Study of a Dictator*, New York, 1933 [Գորշ գայլը՝ Մուստաֆա Քեմալ – մի բռնակալի անձնականի ուսումնասիրություն]: Հատկապես բացառիկորեն արժեքավոր է նրա երկրորդ գիրքը:

Առ այսօր Քեմալ Աթաթուրքի մասին հարյուրավոր գրքեր են գրվել: Սակայն դրանք ավելի շատ հիշեցնում են Ստալինի ժամանակ Ստալինի մասին գրված գրքերը, քան լուրջ գիտական ուսումնասիրություններ են: Դրա համար մի շարք պատճառներ կան: Պատճառներից մեկն այն է, որ Թուրքիայի Հանրապետության քրեական օրենսգիրքը (հոդվածներ 301; 305; 306) հնարավորություն է տալիս հետապնդել Աթաթուրքի մասին ցանկացած հրապարակման հեղինակի, որի բովանդակությունն իշխանությունները կհամարեն վիրավորանք, թեև իրականում այդպիսին կարող է և չլինել: Քանի որ բրիտանացի դիվանագետ և հետախույզ Հարըլդ Արմսթրոնգը վաղուց է մահացել, ուստի մտահոգություն չունենք նրա համար: Պարզապես հատվածաբար մեջբերումներ անենք նրա գրքից՝ լուսաբանելու համար Մուստաֆա Քեմալի (հետագայում Աթաթուրք) կյանքի պակաս հայտնի կողմերը:

Ամենայն հավանականությամբ Wiikileaks-ի ունեցած նյութերը վերաբերում են Աթաթուրքի անձնական կյանքի ծածուկ կողմերին: Իսկ որ այդպիսի նյութեր շատ կան դա փաստ է: Ես ինքս եմ տարբեր արխիվներում կարդացել 1920-30-ականների զանազան դիվանագիտական զեկուցագրեր Աթաթուրքի մասին, որոնք արժանի են տպագրվելու Playboy-ի կամ Instinct-ի էջերում: Հարկ եմ համարում ընդգծել, որ քաղաքական գործիչների անձնական կյանքի մանրամասներն արդեն անձնական չեն իրենց բուն էությամբ: Անձնականը զգալապես պայմանավորում է մարդկային մտածողությունը, որն էլ իր հերթին որոշումներ կայացնելու հիմքն է: Որոշումներ, որոնցից հազարավոր մարդկային կյանքեր և պատմական շրջադարձեր են կախված: Անձ-

նականի գործոնը քաղաքական գործչի դեպքում միշտ հասարակական հնչեղություն և հեռագնա ազդեցություն ունի: Քաղաքական գործիչը չունի և չի կարող ունենալ անձնական կյանք: Քաղաքական գործչի կենսաձևը կամավոր ընտրություն է, որն ամեն անհատ անում է գիտակցված: Սեռական կյանքը մարդու անձնական կյանքի կարևորագույն կողմերից է: Հետևաբար, սեռական վարքագիծը շատ բան կարող է վկայել մարդու մասին, իսկական նյութ տալ՝ հասկանալու համար նրա ներաշխարհը և մտածողությունը:

Մուստաֆայի սկզբնական սեռական հարաբերությունների և կողմնորոշման մասին Արմսթրոնգի առաջին տեղեկությունը վերաբերում է *Սալոնիկի կադետական դպրոցի (Military Cadet School in Salonika)* 2-րդ տարուն (1894թ.): Այստեղ է, որ Մուստաֆայի թվաբանության ուսուցիչը՝ նրա անվանակից կապիտան Մուստաֆան, իր "հովանու" տակ է վերցնում 13-14-ամյա պատանուն. *«Նրա [Մուստաֆա Քեմալի] ուսման երկրորդ տարում ուսուցիչներից մեկի, ոմն կապիտան Մուստաֆայի, <u>սիրտը կպավ նրան</u>» (In his second year one of the masters, a Captain Mustafa, <u>took a fancy to him</u>.)*[10] Հետաքրքրական է to take fancy (= to have a fancy, to fancy) դարձվածքի գործածումը Արմսթրոնգի կողմից: Անգլերենում այն մի շարք իմաստներ ունի՝ սիրել, դուր գալ, տարվել,[11] մեկի հետ կապված զգալ, հատկապես սեքսուալ կապով (to feel attached to, especially in sexual way):[12] Ի դեպ, հենց այս կապիտան Մուստաֆան էլ կապուտաչյա դեռատի Մուստաֆային տալիս է Քեմալ՝ *կատարյալ, գեղեցիկ, սիրունիկ,* մականունը:[13] Իր հետագա վկայություններում Արմսթրոնգն ավելի է հստակեցնում իր միտքը. *«Կապիտան Մուստաֆայի ընկերությունն ու խնամքը նրան որևէ լավ բան չտվեց: Ընկերությունն անառողջ էր: Նա հասունացավ չափազանց արագ: Նախքան տասնչորս տարեկան դառնալը նա արդեն անցել էր կույսության ասփիճանը. խարխափումները սեքսի հետևից. մանր կեղտոտություններ. նաև սկսել էր հարաբերություններ ունենալ հարևանի աղջկա հետ»*:[14]

Ուսումը շարունակելու համար Մուստաֆա Քեմալը նախ Սալոնիկից փոխադրվում է Մոնաստիր (Monastir, 1895թ.), ապա Կ.Պոլիս (1899թ.): Կ.Պոլսում երիտասարդ Մուստաֆա Քեմալը գլխովին խրվում է մեծ քաղաքի գիշերային կյանքի մեջ.

*«Նա միանգամից հախուռն ընկղմվեց մեծ քաղաք Կ.Պոլիս կյանքի մեջ: Գիշերը գիշերի հետևից նա սրճարաններում և ռեստորաններում ղումար էր խաղում և խմում: Կանանց հարցում նա բծախնդիր*

*չէր: Մարմնի մի ուրվագիծ, մի կիսադեմ, մի ծիծաղ կարող էր նրա մեջ կրակ բորբոքել և մղել նրան ունենալու այդ կնոջը, ինչպիսինն էլ նա լիներ: Երբեմն դրանք կարող էին լինել Ղալաթիո [կամրջի] գարշահոտ փողոցների բոզանոցների հույն կամ հայ պոռնիկները, ուր գալիս էին կավատներն ու հոմոսեքսուալները հագուրդ տալու իրենց բոլոր անառակություններին. հետո մի կամ երկու շաբաթ [կարող էր լինել] մի լևանտյան* [15] *փիկին նրա Փանգալդիում գտնվող տանը; կամ որևէ թուրք աղջիկ Փերայի կամ Ստամբուլի ժամադրատներում, ով ոտփիկանության ահից գալիս էր քողածածկ և հետևի դռնից: Նա ոչ մեկին չսիրահարվեց: Նա երբեք չեղավ սենտիմենտալ կամ ռոմանտիկ: Առանց խղճի խայթի նա անցնում էր մի կնոջից մյուսին: Նա բավարարում էր իր ախորժակը և վերջ: Նա իր մտածողության մեջ ամբողջապես արևելքցի էր. կանայք որևէ տեղ չունեին նրա կյանքում, բացի նրա սեքսուալ պահանջները բավարարելուց: Նա մինչև հատակը խրվեց քաղաքի վավաշոտ կյանքի մեջ:»*[16]

Արմսթրոնգի հաջորդ վկայությունը Մուստաֆա Քեմալի անձնական կյանքի մասին վերաբերում է այն ժամանակահատվածին, երբ վերջինս Օսմանյան կայսրության ռազմական կցորդն էր Սոֆիայում (27 հոկտեմբերի, 1913թ. – 2 փետրվարի, 1915թ.).

*«Նա հետևողականորեն սենեկային պարեր սովորեց պարուսույցի հետ և հետո պարում էր, երբ կար դրա հնարավորությունը, սակայն միշտ այնպես՝ կարծես ռազմական շքերթում լիներ: Նա սկսեց հաճախ այցելել հյուրասենյակներ և ջանում էր հասարակության վրա թողնել նրբագեղ տպավորություն, սեր էր անում Սոֆիայի տիկնանց հետ, բայց տիկնայք գտնում էին, որ նա չափազանց անճարակ է:»*[17]

Սոֆիայում Մուստաֆա Քեմալը սիրահարվում է Բուլղարիայի պաշտպանության նախկին նախարար, գեներալ Ստիլիան Կովաչևի (Stiliyan Kovachev) դստերը՝ Դիմիտրինային (Dimitrina), սակայն մերժում է ստանում:[18] *«Եվ Մուստաֆա Քեմալը՝ նեղացկոտ ու զգայուն, քան երբևէ դարձավ ավելի միայնացած ու ինքնամփոփ: Նա սկսեց ատել հասարակությունը»: (And Mustafa Kemal, touchy and sensitive, became more lofty and aloof then ever. He began to hate the society.)*[19]

Խուսափելով բարձրաշխարհիկ հասարակությունից՝ Մուստաֆա Քեմալն ավելի ու ավելի էր ձգտում այլ միջավայրի.

*«Մուստաֆա Քեմալն իրեն շատ ավելի հանգիստ էր զգում մայրաքաղաքի տղամարդկանց, հատկապես հաճոյակատար, տղամարդկանց և թեթևաբարո կանանց հետ: Սրանց հետ՝ սրճարաններում և բորդելներում, խմում էր և գիշերներ լուսացնում: Նա ժամեր շարունակ դումար և զառ էր խաղում յուրաքանչյուրի հետ, ով կնստեր իր դիմաց: Նա տրվում էր բոլոր շվայտություններին և աղլեցուն էր դրանցով: Նա փորձեց բոլոր զեխությունները, որի համար հատուցեց՝ վարակվեց վեներական հիվանդությամբ և քայքայեց առողջությունը: Այս պատճառով կորցրեց կանանց նկատմամբ ունեցած հավատը և միաժամանակ հմայվեց սեփական սեռով:»*[20]

1914թ. սկսվեց առաջին աշխարհամարտը: 28.10.1914թ.-ին թուրքական նավերն ուխտադրժորեն ռմբակոծեցին Սև ծովի ռուսական նավահանգիստները, որի հետևանքով նոյեմբերի 3-ին Ռուսաստանը, իսկ նոյեմբերի 5-ին Ֆրանսիան և Բրիտանիան պատերազմ հայտարարեցին Թուրքիային: Թուրքիան կրկին պատերազմի մեջ էր:

Մուստաֆա Քեմալի պատերազմի տարիների անձնական կյանքի մասին ընդհանրապես քիչ բան է հայտնի և Արմսթրոնգն էլ իր հերթին քիչ բան է հաղորդում: Ակնհայտ է մի բան՝ այդ տարիներին ոգելից խմիչքներն այն աստիճան են քայքայում նրա առողջությունը, որ նա 1918թ. ապրիլ-օգոստոսին՝[21] պատերազմի ամենաթեժ պահին, ստիպված բուժման նպատակով մեկնում է Կարլսբադ (Carlsbad, Karlovy Vary) [ներկայումս Չեխիա]: Նա, ինչպես վկայում է Արմսթրոնգը, այցելում է ավստրիացի հայտնի բժիշկ Օտտո Զուքերքանդլին (Zuckerkandl), որն էլ նրան զգուշացնում է, որ. *«Եթե չդադարեցնի խմելը, ապա կմահանա մեկ տարվա ընթացքում» (If he did not stop drinking he would die in a year)*:[22] Հարկ է ընդգծել, որ ավստրիացի բժիշկը սխալվեց. թեև Քեմալը թեև շարունակեց խմել առաջվանից ոչ քիչ, այնուամենայնիվ ապրեց ևս քսան տարի՝ մինչև 1938թ.:

Օսմանյան կայսրության պարտությունից և Մուդրոսի զինադադարի ստորագրումից հետո (30 հոկտեմբերի, 1918թ.) Քեմալը Սիրիական ռազմաճակատից վերադառնում է Կ.Պոլիս: Չնայած բազում ջանքերին՝ Քեմալը դարձյալ որևէ պաշտոն չի ստանում նոր կառավարության մեջ: Ավելին, անգործ մնալով, մի փոքր տուն է վարձում Կ.Պոլսի արվարձան Շիշլիում և տրվում կյանքի վայելքներին: Այդ ընթացքում նրա միակ ընկերը գնդապետ Արիֆն (Arif) էր.

*«Նա քիչ ընկերներ ուներ, և միակ մտերիմը գնդապետ Արիֆն էր:* [23] *Արիֆը Գերմանիայում կրթություն ստացած շտաբային ունակ սպա*

*էր: Նա Մուսթաֆա Քեմալից երիտասարդ էր:* [24] *Նրանք իրար գիտեին դեռևս Սալոնիկի և Մոնաստիրի օրերից; նրանք միասին ծառայել էին Սիրիայում, Բալկաններում և Գալիպոլիում: Զինադադարից հետո նրանք հաստատեցին սերտ ընկերություն: Նրանք միանման ճաշակ ունեին; երկուսն էլ կլանված էին բոլոր ռազմական հարցերով; երկուսն էլ հաճույք էին ստանում նույն անբռնազբոս խոսակցությունից, շատ խմելուց և կանանց հետ անցկացրած խենթ գիշերներից: Մուսթաֆա Քեմալի թշնամիներն ասում էին, որ նրանք սիրեկաններ են, քանի որ Արիֆը միակ մարդն էր, ում նկատմամբ Մուսթաֆան բացահայտ սեթևեթանք էր ցուցաբերում, գրկելով նրա վիզը՝ փաղաքշական անուններ էր տալիս:»*[25]

Հետագա տարիներին ևս Քեմալը պահպանում է իր հախուռն և ոչ խտրական սեռական կյանքը: 1921-1922թթ. Աթաթուրքի անձնական կյանքի մասին Արմսթրոնգը գրում է հետևյալը.

*«Քանի դեռ աշխատանք կար, դա խլում էր Մուսթաֆա Քեմալի յուրաքանչյուր րոպեն. ոչինչ չէր կարող նրան շեղել: Երբ գործը թեթևանում էր, նա դառնում էր դյուրագրգիռ և իր տեղը չէր գտնում ու սկսում էր բախումներ ունենալ իր ենթակաների հետ: Այդ ժամանակ էր, որ Արիֆի և մեկ-երկու այլ տղամարդու հետ խրվում էր թունդ խմելու մեջ, որը զուգորդվում էր մինչև լույս թղթախաղով; կամ բոզության էր գնում քաղաքի էժանագին բորդելների ներկված կանանց մոտ:»*[26]

Բնական է, որ նման կյանքն իր բացասական ազդեցությունն էր թողնում Մուստաֆա Քեմալի առողջության վրա: Բժիշկը նրան խորհուրդ է տալիս *«աշխատել և խմել քիչ, կանոնավոր կյանք վարել մեկի հետ, ով կհոգա նրա մասին» (work and drink less, and lead a regular life with someone to look after him)*:[27] Այդ ժամանակ էլ նրա կյանքում հայտնվում է Ֆիքրիյե Հանըմը [Fikriye Hanum].

*«Կործանումից նրան փրկեց Ֆիքրիյե Հանըմը: Նա (Քեմալի) հեռավոր բարեկամն էր Ստամբուլից,*[28] *ով բանակին կամավորագրվել էր որպես բուժքույր և եկել Անկարա: Հենց որ Քեմալը տեսավ նրան, իսկույն վերցրեց իր տուն:»*[29]

Արմսթրոնգն այստեղ սխալվում է. Ֆիքրիյեն (1887-1924) Քեմալի հեռավոր բարեկամը չէր, այլ հարազատ մորեղբոր աղջիկը, որոնց տանը մանկության տարիներին 2 տարի ապրել էլ Մուստաֆան: Ֆիքրիյեն ժամանակին ամուսնացած էր եղել մի հարուստ եգիպտացի արաբի հետ, սակայն վաղուց բաժանվել էր:[30]

*«Նա (Ֆիքրիյեն) հոգ էր տանում նրա (Քեմալի) բոլոր կարիքները. երբ հիվանդ էր լինում, խնամում էր նրան: Նա նրա (Քեմալի) սիրուհին էր և բացարձակ սփրուկը, որովհետև թուրք էր և արևելցի: (…) Աոժամանակ Մուստաֆա Քեմալը տարված էր նրանով: Բայց շուտով հոգնեց: Ավելի ու ավելի հաճախ սկսեց գնալ իր ներկված կանանց, իր հարբեցողության և թղթախաղի ընկերների մոտ:»*[31]

Մուստաֆա Քեմալի 1922-24թթ. կյանքը սիրային դասական եռանկյունի է հիշեցնում: 1922թ. սեպտեմբերին Քեմալը Զմյուռնիայում հանդիպում է Լաթիֆային [Latifa Usakligil (1898-1975թթ.)]: Հանդիպումն առժամանակ փոխում է նրա կյանքը: Ֆիքրիյեն դառնում է միանգամայն ավելորդ, դառնում է բեռ: Քեմալը նրան 1922թ. վերջին “բուժման” է ուղարկում Մյունխեն: 1923թ. հունվարի 14-ին մահանում է Քեմալի միակ ամենամոտ մարդը, մայրը՝ Զուբեյդան [Zubeida]: Նրա մահից հազիվ 15 օր հետո Քեմալն ամուսնանում է Լաթիֆայի հետ, որի հետ ապրում է երկուսուկես տարի:[32] 1924թ. Մյունխենից վերադառնում է Ֆիքրիյեն, հանդիպում և փորձում է Քեմալից պարզաբանումներ ստանալ իր հետագայի մասին: Հանդիպման հաջորդ օրը Ֆիքրիյեին սպանված են գտնում Մուստաֆա Քեմալի տան հետևի փոսերից մեկում:[33] Ինքնասպանության առաջ քաշված վարկածն առ այսօր լուրջ կասկածների տեղիք է տալիս:[34]

*Ուրիշ ի՞նչ: Ոչինչ: Խնդալու կամ լալու կարծեմ պատճառ չիք:*

Սպասենք Wikileaks-ի հետագա բացահայտումներին: Եթե նոր բան չլինի, ապա նախկին wikileaks-երը կան ու կան:

Ի վերջո նորը լավ մոռացված հինն է:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Gunter J. Procession. NY, 1965, p. 95.
2. Armstrong H. Gray Wolf, Mustafa Kemal – An Intimate Study of a Dictator. NY, 1933, p. 152.
3. Gunter J. Ibid, p. 96.
4. http://en.wikipedia.org/wiki/Thomas_Jones_(T._J.)
5. Middlemas K., Jones T. Whitehall Diary. London, 1971, v. III, p. 55.
6. Armstrong H. Turkey in Travail. The Birth of a New Nation. London, 1925, p. 66.
7. Նույն տեղում, էջ 230:
8. Մինչև 1923թ., այսինքն՝ մինչև Թուրքիայի ինքնիշխանության վերականգնումը, Թուրքիայի հետ չէին կարող լինել հավասարազոր իրավական հարաբերություններ, ուստի դեսպանների փոխարեն Թուրքիայում Գերագույն հանձնակատարներ էին, իսկ ռազմական կցորդների փոխարեն՝ պաշտոնակատարներ:
9. Armstrong H. Ibid, p. iii, 75.
10. Armstrong H.C. Gray Wolf... Ibid, p. 7.
11. Ասմանգուլյան Հ.Ա., Հովհաննիսյան Մ.Ի. Անգլերեն-հայերեն բառարան. Երևան, 1984, էջ 331-2:

12. Collins Cobuild on CD. 4th edition, 2003.
13. Armstrong H.C. Gray Wolf... Ibid, p. 7.
14. Նույն տեղում:
15. Արևելամիջերկրածովյան ժողովուրդների ընդհանուր անվանումը:
16. Armstrong H.C. Gray Wolf... Ibid, p. 11.
17. Armstrong H.C. Gray Wolf... Ibid, p. 43.
18. Նույն տեղում:
19. Նույն տեղում, էջ 44:
20. Նույն տեղում:
21. Zurcher E.J. The Unionist Factor. Leiden, 1984, p. 60.
22. Gunter J. Ibid, p. 97.
23. Խոսքը Մեհմետ Արիֆ Այիչիի (արջ պարացնող) [Mehmet Arif Ayici] (1883-1926թթ.) մասին է, ում Քեմալը 1926թ. շինծու մեղադրանքով կախաղան բարձրացրեց:
24. Մուստաֆա Քեմալը ծնվել է 1880թ. կամ 1881թ.-ին:
25. Armstrong H.C. Gray Wolf... Ibid, p. 95.
26. Նույն տեղում, էջ 139:
27. Նույն տեղում, էջ 142:
28. Kinross P. Ataturk, The Rebirth of a Nation. London, 1998, p. 97.
29. Armstrong H.C. Gray Wolf... Ibid, p. 143.
30. Kinross p. Ibid, p. 141.
31. Armstrong H.C. Gray Wolf... Ibid, p. 143-4.
32. Քեմալը և Լաթիֆան պաշտոնապես բաժանվել են 1925թ. օգոստոսի 5-ին, թեև արդեն մինչ այդ 1 տարի առանձին են ապրել:
33. Armstrong H.C. Gray Wolf... Ibid, p. 212.
34. von Mikusch D. Mustapha Kemal (trans. from German). NY, 1931, p. 334.

*12 դեկտեմբերի, 2010թ.*

## ՃԱ. Հրեան, դյոնմեն և Մուստաֆա Քեմալը

Նախորդ հոդվածս, որը Մուստաֆա Քեմալի (Աթաթուրք) անձնական կյանքի մասին էր, մեծ հետաքրքրություն է առաջացրել: Շատ հարցեր եմ ստացել նրա ծագման մասին: Հետևաբար որոշել եմ անդրադառնալ այդ հարցին:

Աթաթուրքը դյոնմե էր՝ հավատափոխ, իսլամացած հրեա: Դեռևս 1920-ականներից մշտապես շրջանառվել է Աթաթուրքի դյոնմե լինելու վարկածը: Այս վարկածի օգտին խոսող անհերքելի փաստարկներ և բազմաթիվ փաստեր կան: Սակայն մինչև բուն նյութին անցնելն ուզում եմ երկու հստակեցում անել:

Առաջինը՝ անկախ *Միություն և առաջադիմություն կոմիտեի [Ittihad ve Terakki Cemiyeti, Committee of Union and Progress]* ղեկավարության և անդամներից շատերի, ներառյալ Աթաթուրքի, ծագումից, նրանք բոլորը թուրքական պետության պաշտոնյաներ էին և գործում ու հանցագործություններ էին անում այդ պետության անունից և համար: Հետևաբար, միակ պատասխանատուն եղել և այսօր էլ մնում է թուրքական պետությունը՝ ներկայումս Օսմանյան կայսրության իրավահաջորդ Թուրքիայի Հանրապետությունը: Բոլոր փորձերը հրեաներին դիտարկել որպես պատասխանատուներ Հայոց ցեղասպանության համար՝ լոկ այն պատճառով, որ հիշյալ կուսակցության ղեկավարության մի զգալի մասը դյոնմե է եղել ոչ միայն արդար չէ, այլև ճիշտ չէ: Նման մոտեցումը Թուրքիային հնարավորություն է տալիս հրեաներին ներկայացնել որպես Հայոց ցեղասպանության մտահղացողներ, իսկ քրդերին՝ կատարողներ: Ազգային կամ կրոնական ծագումը քաղաքականության մեջ որևէ դեր չունի: Բագրատունյաց փառքը չի դադարում հայկականը լինել զուտ այն պատճառով, որ Բագրատունիները ծագումով հրեա էին, կամ Աբդուլ Համիդ սուլթանը չի դառնում հայոց ազգային հերոսը, որովհետև նրա մայրը հայ էր:

Երկրորդ հստակեցումը վերաբերում է դյոնմե համայնքի իրավական կարգավիճակին և հասարակական ըմբռնմանը: Սխալ է դյոնմեի և հրեայի նույնականացումը: Դյոնմեն ծագումով հրեա է, սակայն արդեն հրեա չէ: Թուրքական պետությունների մեջ (Օսմանյան կայսրություն և Թուրքիայի Հանրապետություն) դյոնմեն թեև չի դիտարկվել որպես լիիրավ մուսուլման, այնուհանդերձ չի դիտարկվել նաև որպես հրեա: Դա ամրագրված է ոչ միայն սովո-

րույթի ուժով, այլև օրենսդրորեն: Օրինակ, երբ 1942թ. նոյեմբերի 11-ին Թուրքիայում ընդունվեց #4305 օրենքը, որն ավելի շատ հայտնի է Ունեցվածքի հարկման մասին օրենք *(Varlik Vergisi Kanunu)* անունով, ապա Թուրքիայում բնակվող բնակչությունը հարկման համար բաժանվեց 4 խմբի: Թուրքահպատակները բաժանվեցին 3 խմբի՝ «M» մուսուլմաններ, «G» ոչ մուսուլմաններ և «D» դյոնմեներ: Առանձին խումբ էին կազմում Թուրքիայում մշտապես բնակվող օտարահպատակները՝ «E»: Ոչ մուսուլմանները՝ ներառյալ նաև հրեաները, մուսուլմաններից 4 անգամ ավել հարկ էին վճարում, իսկ դյոնմեները՝ 2 անգամ: Սա ակնառու կերպով ցույց է տալիս, որ թուրքական իշխանությունները դյոնմեներին չէին դիտարկում որպես հրեա: Ի դեպ, թեև դյոնմեներն իրավական տեսանկյունից հրեաների և քրիստոնյաների նկատմամբ որոշ առավելություն ունեին, սակայն թուրք հասարակական գիտակցության մեջ նրանց նկատմամբ ատելությունը միշտ ավելի խորն է եղել և է: Ահա ինչպես է բացատրում այդ երևույթը Անկարայում Բրիտանիայի դեսպանի փոխանորդ Ջ.Ք. Ստերնդըլ Բեննեթը *(J.C. Sterndale Bennett)* իր 1942թ. դեկտեմբերի 12-ի գաղտնի զեկուցագրի մեջ. *«Նշանակալի է, որ վերջերս կայացած մասնավոր մի զրույցի ժամանակ երեք երևելի թուրք սասփիկ կերպով պախարակում էին դյոնմեներին և հատկապես Մ. Յալմանին. [ասում էին]. "Դյոնմեներն ավելի վատն են, քան հրեաները, քանի որ նրանք ձևացնում են, որ թուրք են և [այդպիսով] ուզում են ունենալ երկու աշխարհի լավագույնը"»*: Իհարկե, այս մտածողությունը նոր չէր թուրքական քաղաքական մշակույթի համար: Դեռևս 1923թ. Ռիզա Նուրը (Riza Nur)՝ Լոզանի կոնֆերանսում թուրքական պատվիրակության երկրորդ դեմքը, հայտարարում էր. *«Հույներն ու հայերն ավելի լավ են սրանցից, եթե այլ պատճառ էլ չլինի, գոնե մենք գիտենք, որ նրանք հույներ ու հայեր են: Այս օտար տարրը, այս մակաբույծը, թաքնվում է մեր արյան մեջ»*:

Շատ հետաքրքիր է դիտարկել թուրքական հասարակական գիտակցության մեջ վերաբերմունքի փոփոխությունը դյոնմեների նկատմամբ: Այլատյացությունը խորն արմատներ ունի թուրքական հասարակության մեջ: Թուրքերը մշտապես Օսմանյան կայսրության բոլոր հաջողությունների շնորհքն իրենց են վերագրում, իսկ բոլոր անհաջողությունների մեղքը բարդում են ուրիշների վրա: Երբ կային հայերն ու հույները, ապա բոլոր ձախողումները կարելի էր նրանց վրա բարդել, միաժամանակ նրանց թալանելն օգտագործել սեփական հարստաց-

ման համար: Դարեր շարունակ այս դերը վերապահված է եղել հայերին և հույներին: Մեղավորների բոլոր աթոռները զբաղեցված էին, ուստի թուրք հասարակությունն այս դերի համար դյոնմեների կարիքը չուներ: Ըստ այդմ, դեռևս 1920-ականների դյոնմեներն ավելի շատ մուսուլման էին համարվում, քան՝ հրեա: Օրինակ, երբ 23.01.1923թ. համաձայնագրի հիման վրա Հունաստանի և Թուրքիայի միջև սկսվեց բնակչության փոխանակումը, ապա դյոնմեները ներառված էին մուսուլմանների մեջ և ենթակա էին փոխանակման, թեև հրեաները զերծ էին փոխանակումից: 1940-ականներին, ինչպես վերը տեսանք, նրանք արդեն դիտարկվում էին, որպես միջանկյալ խումբ մուսուլմանների և ոչ-մուսուլմանների (հրեաների) միջև: Պատերազմի վտանգը հնարավորինս շատ դրամ շորթելու խնդիր էր առաջ բերել, իսկ դա կարելի էր ավելի հաջող անել, երբ հասարակությունը բաժանվում է մերոնքականների և ոչ մերոնքականների: ԽՍՀՄ փլուզումից հետո, այսինքն՝ արտաքին վտանգի բացակայության պայմաններում, Թուրքիան, ինչպես իրեն հարգող ամեն մի տոտալիտար երկիր, կարիք ունի նոր թշնամու: Արտաքին թշնամու տարազը միշտ էլ կարելի է հագցնել հայերին և հույներին: Սակայն ակնհայտ է, որ դա բավարար լինել չի կարող, քանզի այդ երկրները չեն կարող լուրջ վտանգ ներկայացնել Թուրքիայի համար: Ահա այստեղ օգնության է գալիս նենգ դյոնմեի՝ շուռ տված հրեայի, կերպարի կարիքը: Եւ քանի որ թուրքական մտածողության մեջ առ այսօր իշխում է տոհմացեղային մտածողությունը, այսինքն՝ ոչ թե անհատն է պատասխանատու իր արարքների համար, այլ նրա ողջ ցեղը, ապա Իսրայելի քաղաքականության համար պատասխանատու են ընկալվում բոլոր հրեաները, անգամ նրանք, ովքեր վաղուց հրեա չեն: Ի դեպ, այս իսկ պատճառով առ այսօր անգամ Թուրքիայի բարձրագույն իշխանավորները չեն կարողանում հասկանալ, որ Վանում ենթադրյալ ապստամբության համար, եթե մինչևիսկ այս հիմնազուրկ վարկածն ընդունենք, պատասխանատու էին միայն ապստամբները և ոչ թե նրանց ցեղակիցները Կեսարիայում, Սեբաստիայում, Խարբերդում կամ Տրապիզոնում:

Թշնամու կերպարի որոնման ճանապարհին և այդ իսկ պատճառով ներկայումս թուրք հասարակությունը ավելի շատ հակված է դյոնմեներին դիտարկել որպես հրեա: Հասարակական ընկալման այս փոփոխությունն իր արտացոլումն է գտնում նաև դատական որոշումներում: Օրինակ, 2001թ. Ստամբուլի 9-րդ շրջանի առաջին աստիճանի դատարանը, քննելով դյոնմե Իլգազ Զորլուի (Ilgaz Zorlu) հայցը՝

ինքնության փաստաթղթերում կրոնի տողում "իսլամ"-ի փոխարեն "հրեա" գրելու պահանջով, շատ արագ բավարարեց այն: Այսինքն, դատարանը հարցը չդիտարկեց որպես կրոնափոխության հարց, որն ընդհանրապես շատ երկար է տևում, այլ զուտ կրոնական պատկանելության ճակերպման հստակեցում: Ընդհանուր առմամբ դրական կամ չեզոք այս երևույթը, խորքի մեջ, թուրք հասարակության համար կարող է լուրջ խնդիրներ ստեղծել և ավելի խորացնել այդ հասարակության մեջ արդեն իսկ առկա ինքնության ճգնաժամը: Դյոնմեների հարցում հասարակական գիտակցության մեջ այս փոփոխությունը ոչ այնքան անհատի կողմից սեփական ինքնության որոնման արտացոլումն է, որքան հասարակական վարքի մեջ երևան եկած նոր դրսևորումների հետևանք: Ներկայումս ոչ այնքան դյոնմեն է որոնում իր ինքնությունը, որքան թուրք ազգային և կրոնական ծայրահեղականներն են սկսել դյոնմեների փնտրտուք: Կարծում եմ՝ դա պայմանավորված է Թուրքիայի քաղաքական կյանքում հայերի և հույների իսպառ բացակայությամբ: Այլևս նրանց չի կարելի մեղադրել երկրում առկա խնդիրների համար, որովհետև նրանք պարզապես չկան այդ կյանքի մեջ: Թուրքիայի քաղաքական կյանքում չկան նաև հրեաներ: Հետևաբար, այս իրավիճակում թուրք հասարակությունը կարիք ունի գտնելու նոր, արժանի մեղավորների: Այդ դերը ներկայումս վերապահվում է դյոնմեներին, երբ նրանց դարձնում են, ինչպես անվանել է հարցի լավագույն մասնագետ Ռիֆաթ Բալին (Rifat Bali), *«քավության նոխազ բոլոր պոների համար» (A Scapegoat for All Seasons)*: Դյոնմեների նկատմամբ նման ատելության պարագայում, իհարկե թուրքական հասարակության համար ցավագին պիտի լինի այն փաստի ընդունումը, որ իրենց նոր պետության հիմնադիրը և պատմության նոր փուլի աստված Աթաթուրքը՝ բոլոր թուրքերի հայրը, թուրք չէ: Ավելին, նա հրեաների շառավիղ հանդիսացող դյոնմե է: Նման պնդման համար կան բազում փաստեր ու փաստարկներ, որոնց մասին կխոսենք հաջորդ հոդվածում:

*17 դեկտեմբերի, 2010թ.*

## ՃԲ. Կրկին անգամ Հայոց պահանջատիրության պայքարի շեշտադրումները փոխելու անհրաժեշտության մասին

Տեղի ունեցավ այն, ինչ պիտի տեղի ունենար: Չնայած ամերիկահայ լոբբիստական կազմակերպությունների և ընդհանրապես ամերիկահայերի բացառիկ լավ աշխատանքին, ԱՄՆ Ներկայացուցիչների պալատը չանդրադարձավ Հայոց ցեղասպանության ճանաչման բանաձևին: Իհարկե չմերժեց, բայց նաև չընդունեց: Կարծում եմ սխալ է ամերիկահայ համայնքից ակնկալել գրեթե անհնարինը: Ներկա քաղաքական իրավիճակում ամերիկահայերի ջանքերը և ձայները չեն կարող ավելի ծանր կշռել, քան ամերիկյան միջինարևելյան շահերը: Միացյալ Նահանգներն այսօր այն երկիրը չէ, որ հանուն վսեմ գաղափարների զոհաբերի իր շոշափելի շահը: Ամերիկահայերը նեղվելու իրավունքն ունեն, քանի որ խորհրդարանականները չկատարեցին իրենց տված խոստումները: Իսկ ՀՀ իշխանությունները, կարծում եմ, խոսելու տեղ չունեն, քանի որ մի տարի առաջ հենց այդ նույն շահի համար ուրացան սեփական երկրի ոտնահարված իրավունքները, պատրաստ էին և այսօր էլ պատրաստ են, քանի որ արձանագրությունները դեռ առկախ են՝ թուրքերին տալու Հայաստանի Հանրապետության իրավականորեն ամրագրված տարածքի զգալի մասը: Կարծում եմ, որ նաև այդ պատճառով էր, որ երես չունեցան, իրենց թուրք գործընկերների օրինակով, որևէ գրավոր կամ բանավոր խոսքով դիմելու ԱՄՆ իշխանություններին: Ցավոք նույնը վերաբերում է, այսպես կոչված, ԱԺ-ին, որը հենց այդ օրերին զբաղված էր մայրենի լեզուն աճուրդի հանելով: Լռությունն ընդհանրապես քաղաքականություն չէ: Յուրաքանչյուր համապատասխան պաշտոնյա պարտավոր է կարևորագույն հարցերում պարզաբանել իր մոտեցումները: Մենք՝ այս երկրի հարկատուներս և քվեարկողներս, կարևորագույն հարցերում կարիք ունենք իմանալու բոլոր պատկան կառույցների և կուսակցությունների դիրքորոշումները, որպեսզի մեր եզրակացություններն անենք: Չէ որ կա *«ժամանակ ձգելոյ քարինս, և ժամանակ ժողովելոյ քարինս» (Ժողովող 3:5)*, և մի օր հաստատ քարերը նետելու ժամանակը գալու է:

Ինչևիցե: Այս հոդվածիս բուն նպատակը օրերս [22.12.2010թ.] տեղի ունեցածի քննարկումը չէ: Խորքի մեջ, ինչ տեղի ունեցավ՝

ընդամենը քաղաքական միջադեպ էր, ոչ ավելին: Ավելի կարևոր է քննարկել որոշ հիմնարար հարցեր. իսկ մեր ինչի՞ն է պետք ԱՄՆ-ի գործադիր և օրենսդիր իշխանությունների կողմից Հայոց ցեղասպանության ճանաչումը: Եթե դա ինքնանպատակ է, ապա իմաստ չունի: Եթե դա արվում է հատուցումներ ստանալու նպատակով, ապա պիտի տրվի մեկ այլ, ոչ պակաս կարևոր հարցի պատասխանը. ինչպե՞ս խորհրդարանական բանաձևը, որ իր բնույթով կատարման համար ոչ պարտադիր է և ընդամենը մեկ ազգային օրենսդիր մարմնի կողմից դիրքորոշման արտահայտում է, պիտի փոխակերպվի հատուցման: Արդյո՞ք, երբ Կանադայի և՛ օրենսդիր, և՛ գործադիր իշխանություններն ընդունեցին Հայոց ցեղասպանության փաստը, դրանից փոխվեց Կանադայի քաղաքականությունը Թուրքիայի նկատմամբ: Բնականաբար՝ ոչ: Ուրեմն, եթե մենք ուզում ենք արդար հատուցումների հասնել, իսկ դա ես համարում եմ միանգամայն օրինական ձգտում և իրականանալի նպատակ, ապա դա պիտի արվի մի մարմնի միջոցով, որի որոշումները. ա) բնույթով միջազգային են, այսինքն՝ գերակա են ճանաչվել նաև Թուրքիայի Հանրապետության կողմից; բ) կատարման համար պարտադիր են, այսինքն՝ ենթակա չեն Թուրքիայի ներպետական քննարկումների: Այսինքն, նման որոշումը ոչ միայն պարտադիր պիտի լինի, այլև իր մեջ պիտի նախանշի, թեկուզև զուտ տեսական առումով, լուծման հստակ ճանապարհը:

Արդի միջազգային հարաբերություններում այդպիսի կարգավիճակ և լիազորություններ ունեցող 2 մարմին կա, դա միևնույն մեկ կառույցի՝ ՄԱԿ-ի երկու բարձրագույն քաղաքական և իրավական մարմիններն են. Անվտանգության խորհուրդը (Security Council) և Արդարության միջազգային դատարանը (International Court of Justice): Առաջին մարմնի բուն պատասխանատվությունը (ՄԱԿ կանոնադրություն, հոդված 24; UN Charter, article 24) *«միջազգային խաղաղության և անվտանգության պահպանումն է»* (maintenance of international peace and security): Չեմ կարծում, որ որևէ մեկը կարծում է, որ Թուրքիայի կողմից ՀՀ իրավունքների և տարածքային ամբողջականության 90-ամյա ոտնահարումը այսօր Անվտանգության խորհրդի որևէ անդամ կգնահատի որպես լուրջ վտանգ *«միջազգային խաղաղությանն ու անվտանգությանը»*: Մեզ հուզող հարցերը հստակորեն տեղավորվում են նշածս երկրորդ մարմնի՝ Արդարության միջազգային դատարանի լիազորությունների շրջանակի մեջ: Նշյալ դատարանն իրավասու է

քննարկելու Հայոց ցեղասպանության հարցը, քանի որ ցեղասպանությունը զուտ պատմական իրադարձություն չէ, ինչպես փորձում են ներկայացնել մեր թուրք բարեկամները: Ցեղասպանությունը միջազգային հանցագործություն է, և որպես միջազգային իրավունքի և միջազգային իրավունքի ոտնահարման հարց, ենթակա է Արդարության միջազգային դատարանի իրավասությանը (Արդարության միջազգային դատարանի կանոնադրություն, հոդված 36.2 (բ, գ, դ,); Statute of the International Court of Justice, article 36.2(b, c, d)):

Ընդհանրապես մեր հարցերի փոխանցումը քաղաքական դաշտից իրավական դաշտ մեզ համար ավելի շահեկան է: Թեկուզ այն պատճառով, որ մենք ստիպված չենք լինելու դիմակայել մեզանից քաղաքականապես անհամեմատ ուժեղ թուրքական պետությանը, այլ գործելու ենք իրավահավասարության դաշտում: Հարկ եմ համարում ընդգծել՝ այս անցումը պիտի լինի անշտապ, աստիճանական, բայց հետևողական: Մենք պիտի պատրաստ լինենք դրա համար: Ցավոք չենք: Չինացուն հարցնում են՝ ե՞րբ է ծառ տնկելու հարմար ժամանակը: Չինացին պատասխանում է՝ դա 20 տարի առաջ էր: Մենք անկախացել ենք գրեթե 20 տարի առաջ: Եթե այն ժամանակներից սկսեինք մասնագետներ պատրաստել, հիմա մի ողջ սերունդ կունենայինք:

Պատմությունը վկայում է, որ իրավական դաշտում հաջողության հասնելու հավանականությունն ավելի մեծ է: Երբ ուսումնասիրում ենք իրավական դաշտում Հայկական հարցի մի բաղադրիչը հանդիսացող Հայոց ցեղասպանության քննարկումների ընթացքը, ապա միանգամայն ակնհայտ է դառնում իրավական դաշտում պայքարի շահեկանությունը: Չի եղել մի որևէ իրավական ատյան կամ Հայոց ցեղասպանությանը վերաբերող որևէ իրավական գնահատական, որտեղ կասկածի տակ դրվի Հայոց ցեղասպանության համապատասխանությունը ցեղասպանության որակմանը: Այդպես է եղել սկսած թուրքական ռազմական դատարանի դատավարություններից[1] (այդ ժամանակ թեև ցեղասպանություն եզրը դեռևս ստեղծված չէր, սակայն դատարանն իր վճիռների մեջ տվել է դրա նկարագրական մասը), վերջացրած Wikileaks-ի Ջուլիան Ասանջի դատապաշտպան *Ջեֆրի Ռոբերտսոնի (Geoffry Robertson)* իրավական վերլուծությամբ ու գնահատականով:[2] Ամերիկյան իրավագիտական միտքը նույնպես երբևէ կասկածի տակ չի դրել Հայոց ցեղասպանության համապատասխանությունը ցեղասպանության որակմանը: *Ցեղասպանություն հանցագործության կանխման և պատժի միջազգայնագրի /կոնվենցիայի/ [հետայսու՝*

*Ցեղասպանության կոնվենցիա] (Convention on the Prevention and Punishment of the Crime of Genocide, 1948)* ստեղծման, զարգացման և իրավական պարտավորությունների հարցերում ԱՄՆ-ի դերակատարության լավագույն մասնագետ *Լորենս Ջ. Լը Բլանը (Lawrence J. LeBlanc),* վերապահություն ունենալով զանգվածային սպանությունների շատ դեպքերի նկատմամբ, *«հրեաների և հայերի զանգվածային սպանությունները» (wholesale slaughtering of Jews and Armenians)* միանշանակորեն բնութագրում է որպես *«ցեղասպանության ակնառու օրինակներ» (prominent cases of genocide)*: [3]

Ինչքան հասկանում եմ՝ մենք ուզում ենք, որ ԱՄՆ Կոնգրեսը Հայոց ցեղասպանությունը ճանաչող բանաձև ընդունի որպեսզի Թուրքիան ևս հետևի նրա օրինակին: Համոզված չեմ այդ փոխկապվածության մեջ: ԱՄՆ-ում վաղուց արդեն չկա ռասայական խտրականություն, սակայն առ այսօր Թուրքիայում ազգային և կրոնական փոքրամասնությունները դիտարկվում են որպես ստորադաս արարածներ: Չեք հավատում՝ քրդերից և զազաներից հարցրեք: Անձամբ ինձ բնավ պետք չէ, որ Թուրքիան ճանաչի հայոց ցեղասպանությունը. ինձ պետք է, որ նա հատուցի: Դրանք երկու տարբեր բաներ են: Թուրքիան կարող է ճանաչել, բայց չհատուցել: ***Կարող է չճանաչել, բայց հատուցել: Ի վերջո մենք բարոյական, նյութական, հողային իրավունքներ ունենք ոչ թե այն պատճառով, որ ցեղասպանություն է եղել, այլ որովհետև մեր իրավունքներն ամրագրող համապատասխան միջազգային փաստաթղթեր կան***: Փաստաթղթերը, այսինքն՝ գործիքներն առկա են: Թե ինչքան արդյունավետ կօգտագործենք դրանք, արդեն մեզանից է կախված: Շախմատային նույն իրավիճակում մեկը կարող է հաղթել, իսկ մյուսը պարտվել, թեև երկուսի համար էլ խաղի կանոնները նույն են:

Հիմա նորից գանք Հայոց ցեղասպանության բանաձևի վերջին քննարկմանը: Մեկ անգամ էլ եմ ուզում հստակեցնել իմ դիրքորոշումը: Ես բնավ դեմ չեմ, որ ԱՄՆ-ի Կոնգրեսն իր երկու պալատներով, ինչպես նաև նախագահը, ճանաչեն Հայոց ցեղասպանությունը: Սակայն ամեն ինչ աշխարհում իր գինն ունի: Եթե այս գործընթացը, լինելով ավելի հուզական և երևացող, կլանում է մեր պայքարի ողջ ներուժը, հետևաբար անհնարին է դարձնում պայքարի այլ ուղիները, ես սկսում եմ կասկածել այդ ուղու արդյունավետության վրա: Երբեմն ինձ թվում է, որ թուրքերն ընդդիմանում են Հայոց ցեղասպանությունը ճանաչող բանաձևի ընդունմանը, ոչ թե այն պատճառով, որ իսկա-

պես լուրջ վտանգ են տեսնում դրանում, այլ ուզում են մեզ զբաղված պահել, որ իրենց համար ավելի վտանգավոր ուղիներով չգնանք:

Հիշենք նաև, որ Միացյալ Նահանգներն արդեն ճանաչել են հայերի ցեղասպանությունը: Ըստ էության, ԱՄՆ-ն առաջին պետությունն է, որ ճանաչել է հայոց ցեղասպանությունը: ԱՄՆ դա արել է Ուրուգվայից և Արգենտինայից դեռևս 14 տարի առաջ՝ 1951թ.-ին և Ցեղասպանության կոնվենցիայի ստորագրումից ընդամենը 3 տարի հետո: ԱՄՆ-ի կառավարությունը ՄԱԿ-ի Արդարության միջազգային դատարանին 1951թ. հունվարին հղած իր գրավոր հայտարարության մեջ բառացիորեն հավաստել է հետևյալը. *«Քրիստոնյաների հալածանքները հռոմեացիների կողմից, <u>հայերի ջարդերը թուրքերի կողմից</u>, միլիոնավոր հրեաների և լեհերի ոչնչացումը նացիստների կողմից, <u>ցեղասպանություն հանցագործության ակնհայտ օրինակներ են</u>: Այս հենքի վրա է Միավորված ազգերի Վեհաժողովը քննության առել ցեղասպանության հարցը:»* [4]

Վերոշարադրյալից հստակ է, որ *<u>հայերի ջարդերը թուրքերի կողմից</u>* ԱՄՆ կառավարությունը միանշանակորեն դիտարկել է որպես *<u>ցեղասպանություն հանցագործության ակնհայտ օրինակ</u>*: Ավելին, սույն հայտարարությունն անառարկելիորեն փաստում է, որ ՄԱԿ-ի Վեհաժողովը Ցեղասպանության կոնվենցիան ընդունելիս (09.12.1948թ.) ի մտի է ունեցել նաև հայոց ցեղասպանությունը:

Ցեղասպանության կոնվենցիան ԱՄՆ-ի կողմից վավերացվել է 1988թ. նոյեմբերի 25-ին: Ըստ այդմ, նշյալ փաստաթուղթը, համաձայն ԱՄՆ սահմանադրության 6-րդ հոդվածի 2-րդ կետի, դարձել է երկրի օրենսդրության բաղկացուցիչ մասը (supreme Law of the Land):

ԱՄՆ կառավարության վերոհիշյալ գրավոր հայտարարությունից ուղիղ 30 տարի հետո (1981թ.), նախագահ Ռոնալդ Ռեյգանը մեկ անգամ ևս վերահաստատել է իր երկրի դիրքորոշումը հայոց ցեղասպանության նկատմամբ. *«Ինչպես հայերի ցեղասպանությունը դրանից առաջ և կամբոջիացիների ցեղասպանությունը, որը հաջորդեց դրան, ինչպես նաև բազմաթիվ այլ ժողովուրդների նկատմամբ այդպիսի բազում հալածանքները, Հոլոքոստի դասերը երբեք չպետք է մոռացվեն»*: *(Like the genocide of the Armenians before it, and the genocide of the Cambodians which followed it – and like too many other such persecutions of too many other peoples – the lessons of the Holocaust must never be forgotten.)*[5]

Ակնհայտ է, որ ներկայումս ԱՄՆ օրենսդիր և գործադիր իշխանությունները պատրաստ չեն մեկ անգամ ևս *«թուրքերի կողմից*

*հայերի ջարդերը»* որակել որպես ցեղասպանություն: Անձամբ ես դրա կարիքը չեմ տեսնում: Ինձ համար նպատակը ոչ թե Հայոց ցեղասպանության ճանաչումն է, այլ այդ ցեղասպանության հետևանքների վերացումը: Այն է՝ հայոց բարոյական, նյութական և հողային իրավունքների վերականգնումը:

Այստեղ տեղին է հիշել հայոց մեծ բանաստեղծ Սևակի խոսքը.

*Խուսափանում եմ բաց ճակատով*
*զուր չխփվել հաստ պատերին:*
*Ինչի՞ համար. էլի պատը կմնա պատ,*
*կպակասի մի լավ ճակատ:*

Եթե պատը փակել է մեր ճանապարհը, ուրեմն այն շրջանցելու ուղիներ պետք է որոնել: Չի կարելի ողջ մարդկային և նյութական ներուժը ծախսել անհեռանկար պայքարի մեջ: Կարևորը նպատակին հասնելն է, իսկ ինչ ճանապարհով կգանք դրան՝ արդեն էական չէ:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Թուրքական ռազմական դատարանը, տարբեր լիազորություններով, գործել է 1918թ. դեկտեմբերի 16-ից մինչև 1921թ. հունվարի 13-ը: [Dadrian V. The History of Armenian Genocide. NY, 2008, p. 321 & 333.]

2. Robertson G. QC's Opinion. Was there an Armenian Genocide? Doughty Street Chambers, 9 Oct 2009.
3. LeBlanc L.J. The United States and the Genocide Convention. Durham-London, 1991, p. 87.
4. International Court of Justice: pleadings, oral arguments, documents; Reservations on the Convention on the Prevention and Punishment of the Crime of Genocide, p. 25.
5. Reigan R. Days of Remembrance of Victims of the Holocaust by the President of the USA. Proclamation 4838, 22 April 1981.


*23 դեկտեմբերի, 2010թ.*

## ՃԳ. Հայկական դիվանագիտություն. ներկա – բացակա

Հայաստանը դեռ չի հստակեցրել իր արտաքին քաղաքական առաջնահերթությունները: Գրեթե 20 տարվա պետություն ենք, բայց նոր ենք սկսել կոնկրետ հարցերի վերաբերյալ պետական դիրքորոշում ձևավորել: Վերջին ամենաակնհայտ խնդիրն առաջացավ հայ-թուրքական արձանագրությունների ժամանակ, երբ պարզորոշ երևաց, որ հստակ չգիտենք՝ ինչ ենք ուզում թուրքերից: Ըստ իս՝ առաջին հերթին պետք է հստակեցվի մեր պետության ռազմավարական ուղղությունը: Օրինակ՝ ներկայիս ղեկավարության համար առաջնային խնդիրը ղարաբաղյան հիմնահարցի լուծումն է: Բայց ես այդպես չեմ կարծում: Հարցի սրությամբ կարևորը ղարաբաղյան խնդիրն է, հարցի կարևորությամբ ու կենսական նշանակությամբ՝ հայ-թուրքական հարաբերությունների հարցը: Այս երկիրն ապագա չունի, քանի դեռ չենք լուծել մեր իրավունքների հողային ու գույքային հարցը՝ կապված թուրքերի հետ: Ցանկացած դեպքում առաջնայինը երկրի անվտանգությունն է, որի գնահատման 2 հիմնական չափորոշիչ կա.

1. պետություն, որն ունի Հայաստանին կործանիչ հարված հասցնելու կարողություն,
2. պետություն, որն ունի դա իրականացնելու քաղաքական կամք:

Ադրբեջանն ունի Հայաստանին պարտության մատնելու կամ ոչնչացնելու քաղաքական կամք, բայց չունի դա իրականացնելու կարողությունը, ինչքան էլ հոխորտա: Իրանն ունի այդ կարողությունը, բայց չունի ցանկություն. նրա շահերը դա չեն պահանջում: Վրաստանը ոչ կարողություն ունի, ոչ էլ՝ ցանկություն: Եւ միայն Թուրքիան է, որ և այդ կարողությունն ունի և քաղաքական կամքը: Հետևաբար մեզ համար որպես ամենամեծ սպառնալիք մնում է Թուրքիան: Այդ վտանգը չեզոքացնելու համար մենք պետք է ընտրենք իրավական ճանապարհը: Աշխարհը լսում է նրա ձայնը, ումն ավելի բարձր է: Երբ դու Թուրքիայի հետ մտնում ես քաղաքական պայքարի մեջ, ի սկզբանե պիտի հաշվարկես, որ քո ձայնն ավելի ցածր է լինելու: «Հայլուր»-ի ասածը դեռ ոչինչ չի նշանակում, այն դեպքում, երբ Թուրքիայում կա ողջ աշխարհում թուրքերեն ու անգլերեն լեզուներով հեռարձակվող «CNNTurk»: Դու ի՞նչ ունես դրան

հակադրելու: Մենք պետք է պայքարը տեղափոխենք իրավական դաշտ, այնտեղ, որտեղ ավելի ուժեղ ենք: Պայքարն ընթանում է 4 դաշտում՝ տնտեսական, քաղաքական, ռազմական և իրավական: Ակնհայտորեն առաջին երեքում թույլ ենք: Բայց երբ հարցը իրավական դաշտ տեղափոխվի, Թուրքիան արդեն ստիպված կլինի հակադրվել ոչ միայն Հայաստանին այլև միջազգային հանրությանը: Փաստորեն զինակից ձեռք բերելու իրական շանս կունենանք: Իրավական պայքար մղելու տարբերակները քիչ չեն:

Օրինակ՝ կարելի է ուշադրություն հրավիրել հետևյալին. Թուրքիայի կողմից Հայաստանի շրջափակումը միջազգային իրավունքի ոտնահարում է: Կա դեպի ծով ելք չունեցող երկրների վերաբերյալ միջազգային կոնվենցիա, ըստ որի, դեպի ծով ելք չունեցող պետության ծովափնյա հարևանը պարտավոր է ազատ տարանցիկության իրավունք տալ այդ երկրին և վերջինիցս գանձել ոչ ավել, քան սեփական երկրի բեռնափոխադրողից: Թուրքիան ու Վրաստանը միացած են այդ կոնվենցիային, իսկ մենք, որքան էլ տարօրինակ է՝ ոչ: Մինչդեռ կարելի է միանալ, այնուհետև Թուրքիայից պահանջել սահմանը բացել, իսկ Վրաստանին էլ ասել՝ եղբայր, դու մեզանից այդքան շատ մի գանձիր, միջազգային կոնվենցիա ես խախտում: Մերժու՞մ են մեզ, դիմում ենք միջազգային դատարան: Բնական է, որ եզրակացությունը պետք է միանշանակ լինի առ այն, որ Թուրքիան ոտնահարում է միջազգային օրենքը, որովհետև նա Հայաստանին պարտավոր է ելք տալ դեպի ծով: Կարող է հարց առաջանալ, թե դատարանի որոշումը թուրքերը կիրաժարվեն կատարել: Բայց այդ դեպքում Թուրքիայի վիճակը կբարդանա. խնդիրը հայ-թուրքական դիմակայությունից արդեն կտեղափոխվի Թուրքիա-միջազգային հանրություն դիմակայության տիրույթ: Բնականաբար դա մեր օգտին է:

Կա միջազգային իրավական փաստաթուղթ՝ ԱՄՆ նախագահ Վիլսոնի իրավարար որոշումը (1922թ.), ըստ որի, Օսմանյան կայսրության Վանի, Էրզրումի, Բիթլիսի և Տրապիզոնի նահանգի մի մասը տրվել է Հայաստանի Հանրապետությանը: Այդ որոշումն առ այսօր ուժի մեջ է: Հետևաբար միջազգային իրավունքի տեսանկյունից ստացվում է, որ նշված տարածքը Թուրքիայի կողմից օկուպացված ՀՀ-ի տարածքն է: Կա՞ միջազգային իրավունքի ոտնահարում, կա միջազգային դատարան: Պետք է դիմել և վերահաստատել տվյալ իրավարար վճռի վավերականությունը: Ապա դրանից հետո հարցը

տեղափոխել ՄԱԿ-ի Անվտանգության խորհուրդ և պահանջել, որ Թուրքիան ազատի ՀՀ-ի օկուպացված տարածքները: Եթե չի ազատում, միջնորդների օգնությամբ Թուրքիայի հետ մտնել երկկողմ բանակցությունների մեջ և ձևակերպել տարածքների վարձակալության պայմանագիր: Թուրքիան թող մեզ վճարի իր համախառն ներքին արտադրանքի (860 մլրդ) 1%-ը՝ տարեկան 8.6 մլրդ դոլար, մեզ այդ տարածքի վրա տա ազատ, անվճար տարանցիկության իրավունք և ապառազմականացնի այն: Մենք էլ այդ 8.6 մլրդը կծառայեցնենք Հայաստանի և Ղարաբաղի ծաղկմանը: Իսկ այդ տարանցիկությունն էլ կապահովի մեր ելքը դեպի ծով:

Հայերս Թուրքիայում ունենք 60-100 միլիարդի հասնող համայնքային սեփականություն. դպրոցներ, եկեղեցիներ, մշակութային օջախներ: Անկախ նրանից՝ եղել է ցեղասպանություն, թե ոչ, Վիլսոնի իրավարար վճիռ կա, թե չկա, դա հայկական գույք է, որն ապօրինաբար մեզանից բռնագրավվել է: Ամբողջ աշխարհը գնում և բռնագրավված գույքը ետ է ստանում: Օրինակ՝ Իսրայելը Լեհաստանից ստացավ գրեթե 4 մլրդ դոլար զուտ նրա պատճառով, որ գերմանացիների կողմից կոտորված հրեաների գույքը Լեհաստանը պետականացրել էր: Նմանապես և մեր դեպքում, տեղի է ունեցել մասնավոր գույքի անօրինական բռնագրավում, չի տրվել համարժեք փոխհատուցում: Կարելի համարժեք փոխհատուցման կարգով վարձակալում ձևակերպել: Հյուսիսային Կիպրոսում եղել են այդպիսի նախադեպեր: Պարզապես մասնագիտական նպատակամղված աշխատանքի կարիք կա: Ես լինեի պետության ղեկավար, կվարձեի այդ հարցով աշխարհի լավագույն մասնագետներից մի քանիսին կբերեի, գրասենյակ կհատկացնեի, կվճարեի ու կհանձնարարեի կազմակերպել այդ բռնագրավված գույքի փոխհատուցման կարգը: Հ1-ով էլ հայտարարություն կտայի, որ ովքեր ունեն գույքի սեփականության վերաբերյալ համապատասխան փաստաթղթեր, թող ներկայացնեն: Այդ կերպ հնարավոր կլիներ Թուրքիայից պահանջել ու ստանալ փոխհատուցում:

Ղարաբաղյան բանակցություններում չէի ասի, թե դիրքերը զիջում ենք, բայց էական առաջընթաց էլ չկա: Պասիվություն ենք դրսևորում Բաքվի ու Սումգայիթի դեպքերը բարձրաձայնելու գործում: Մենք երբևէ աշխարհի պետայրերին չենք փորձել բացատրել, որ երբ դուք գնում եք Բաքու և ծաղիկներ դնում շահիդների ծառուղում, փաստորեն հարգանքի տուրք եք մատուցում ջարդարարներին:

Քանի որ այդ շահիդները նրանք են, ովքեր սպանվեցին այն ժամանակ, երբ սովետական բանակը մտավ Բաքու հայերի սպանդը դադարեցնելու համար: Այսինքն դրանք եղել են ռասիստներ, ովքեր հայերին կոտորել են ազգային պատկանելության համար: Մենք էլ պիտի բարձրաձայնենք Բաքվի այդ պուրակի իրական դեմքի մասին: Դրա համար կա սովետական բարձրաստիճան ղեկավարների, զինվորականների թողած ստվարածավալ հուշագրական գրականություն, ըստ որի այդ ժամանակ եղել է մոտ 40 զոհ, իսկ շահիդների պուրակում կա ավելի քան 100 գերեզման: Մնացյալը դիահերձարաններից բերված դիակներ, մի մասն էլ նույնիսկ սպանված հայերի դիակներ են եղել, որ ներկայացվում են իբրև շահիդներ: Հարկ է գիտակցել, որ շատ ավելի հեշտ է թուլացնել քո հակառակորդին, քան ինքդ ուժեղանալ: Օրինակ՝ Ադրբեջանն ունի ազգային (թալիշներ, թաթեր, լեզգիներ), կրոնական լուրջ խնդիրներ ունի: Այդ խնդիրները պետք է կիսարթուն պահենք, դա կենսական նշանակություն ունի մեզ համար: Օրինակ՝ կարող ենք թալիշերեն լեզվով հեռուստահաղորդումներ հեռարձակել, գրականություն տպել, գիտաժողովներ հրավիրել, համացանցով նյութեր տարածել: Պետք է աշխարհին հասկացնել, որ Ղարաբաղը չի կարող լինել Ադրբեջանի կազմում, որ եթե վերջինս բռնաճնշում է մահմեդական փոքրամասնություններին, ապա շատ ավելի հավանական է, որ առավել սաստկորեն կճնշի քրիստոնյա հայերին:

*22 հունվարի, 2011թ.*

## ՃԴ. Պատերազմում հաղթեցինք, որովհետև ազատ էինք

*/հարցազրույց «Ա1+»-ին/*

**Ա1+ –** *«Էխո Մոսկվի» ռադիոկայանին տված հարցազրույցում Սերժ Սարգսյանը հայտարարել էր, որ 2007թ.-ին Հայաստանն ու Ադրբեջանը համաձայնեցին հիմնախնդիրը լուծել Մադրիդյան սկզբունքների հիման վրա: Ի՞նչ է սա նշանակում:*

**Ա.Պ. –** Այս հայտարարությունը որոշ հստակեցման կարիք ունի: Հայաստանը չի համաձայնել Մադրիդյան սկզբունքներին, Հայաստանը համաձայնել է Մադրիդյան սկզբունքներն ընդունել որպես բանակցությունների հիմք: Այսօր դեռ պարզ չէ, թե ինչ տեսք կունենան վերջնական համաձայնությունները: Մեզ համար այս սկզբունքներում կարևորը ռեֆերենդում/պլեբիսցիտի ամրագրումն է: Սակայն սա այնքան լղոզված ու հեղհեղուկ է, որ նշյալ փաստաթուղթն իր ամբողջության մեջ և ներկա ձևով անընդունելի է: Այն չի կարող երաշխավորել տևական խաղաղություն տարածաշրջանում: Հաշվի առնելով Ադրբեջանի հակվածությունն անգամ ակնհայտ փաստերին և միջազգային իրավունքին տալ կամայական մեկնաբանություններ՝ մանկամտություն կլինի ԼՂՀ տարածքները զիջել (գոնե նման ընթացք Մադրիդյան սկզբունքները նախատեսում են) թղթային երաշխիքների դիմաց:

**Ա1+ –** *Ինչպե՞ս կմեկնաբանեք տարածքների վերաբերյալ Ս.Սարգսյանի այն հայտարարությունը, թե «ոչ ոք չի հերքում, որ այո', կան տարածքներ, որոնք նախկինում Ադրբեջանի կազմում էին, տվյալ պահին գտնվում են ղարաբաղյան բանակի վերահսկողության տակ: Դրանք Ադրբեջանի մի քանի շրջաններն էին, որոնց վրա վերահսկողությունն իրականացվել է անվտանգության գոտի ստեղծելու նպատակով, որպեսզի ադրբեջանական բանակի այն ժամանակվա սպառազինությամբ հնարավոր չլիներ գնդակոծել բնակելի շրջանները»:*

**Ա.Պ. –** Եթե այսօր Ադրբեջանը չի կատարում հրադադարի իր պարտավորությունը, ի՞նչ երաշխիք, որ նա իր խոսքին հավատարիմ կմնա, երբ, պատկերացնենք անպատկերացնելին, ռազմական տեսանկյունից հայտնվի ավելի լավ դիրքերի մեջ: Զիջելու մեր կարողությունն ուղիղ համեմատական է

Հայաստանում, այն է՝ ՀՀ-ում և ԼՂՀ-ում, առկա քաղաքական և տնտեսական ազատություններին: Ինչքան ազատությունները շատ, այնքան դիմադրելու և պայքարի ունակությունը՝ բարձր: Չմոռանանք, որ մենք Ղարաբաղի պատերազմում հաղթեցինք, որովհետև ազատ ժողովուրդ էինք: Ներկայումս այդ բանը չեմ տեսնում: Սեփական շահերը պաշտպանել չկարողացող մարդը չի կարող, իսկ սեփական երկրի կառավարումից օտարվածը չի ուզենա երկիր պաշտպանել:

*27 հունվարի, 2011թ.*

## ՃԵ. Կա՞ արդյոք «տարածքային ամբողջականության պահպանման» սկզբունք միջազգային իրավունքի մեջ *կամ* Ինչպես միշտ՝ ի՞նչ անել

Միանգամից ասենք, որ «տարածքային ամբողջականության պահպանման» սկզբունք միջազգային իրավունքում չկա: ՄԱԿ-ի Կանոնակարգի 2-րդ հոդվածի 4-րդ կետը հռչակում է միմիայն հետևյալը. *«[ՄԱԿ-ի] բոլոր անդամներն իրենց միջազգային հարաբերություններում պետք է ձեռնպահ մնան որևէ <u>երկրի տարածքային ամբողջականության կամ քաղաքական անկախության դեմ ուղղված ուժի կիրառումից</u> կամ սպառնալիքից, կամ այլ քայլերից, որոնք անհամատեղելի են Միավորված ազգերի նպատակների հետ»:* *(All Members shall refrain in their international relations from the threat or use of force against the territorial integrity or political independence of any state, or in any other manner inconsistent with the Purposes of the United Nations.)* Այս հիմնադրույթը ոչ մի ընդհանուր բան չունի *«տարածքային ամբողջականության»* պահպանման, այսինքն՝ պետության տարածքի անձեռնմխելիության հետ: Ըստ ԱՄՆ արտաքին հարաբերությունների օրենքի հեղինակավոր մեկնաբանության, այն պարզապես դրույթ է ներխուժման դեմ՝ *«ուժի գործադրման արգելք» (prohibition of use of force)*,[1] և սոսկ կոչ է անում ձեռնպահ մնալ *«մի պետության կողմից ուժի գործադրման միջոցով մեկ այլ պետություն գրավելուց կամ նրա կառավարությունը տապալելուց» (the use of force by one state to conquer another state or overthrow its government)*:[2] *«Որևէ երկրի տարածքային ամբողջականության կամ քաղաքական անկախության դեմ» (against the territorial integrity or political independence of any state)* բառակապակցությունը ՄԱԿ Կանոնադրության մեջ է ներառվել որոշ փոքր երկրների խնդրանքով, որպես որոշակի երաշխիք, որ *«ուժ չի կարող կիրառվել ավելի ուժեղ երկրների կողմից ավելի թույլ երկրների "տարածքային ամբողջականության կամ քաղաքական անկախության" դեմ» (force could not be used by the more powerful states in violation of the "territorial integrity or political independence" of weaker states.)*[3] Ակնհայտ է, որ հիշյալ դրույթը հակասության մեջ չէ ժողովուրդների ինքնորոշման սկզբունքի հետ և բնավ կապ չունի մտացածին և միջազգային իրավունքի մեջ գոյություն չունեցող, սակայն քաղաքական նպատակներով շահարկվող «տարածքային ամբողջականության պահպանման», այսպես կոչված, սկզբունքի հետ:[4]

Այստեղ կարող է մի օրինավոր հարց առաջանալ՝ ի՞նչ անել: Ի՞նչ անել, երբ միջազգային իրավունքի որևէ հարցի կամ այդ հարցի մեկ-

նության շուրջ տարաձայնություններ են առաջանում: Պատասխանը պարզ է ու հստակ. պետք է դիմել այն մարմնին, որն ունի համապատասխան լիազորություններ և իմացություն տվյալ հարցը մեկնաբանելու և, առավել ևս, դրա վերաբերյալ վճիռ կայացնելու: Միջազգային հարաբերություններում այդ մարմինը Արդարության միջազգային դատարանն է, որն ըստ տվյալ կառույցի Կանոնադրության 36-րդ հոդվածի 2(b) կետի իրավասու է քննության առնելու և որոշումներ կայացնելու *«միջազգային իրավունքի ցանկացած հարցի»* վերաբերյալ:

Այսօր ակնհայտ է դարձել, որ Ղարաբաղյան հակամարտությանը վերաբերող *«ժողովուրդների ինքնորշման»* սկզբունքը, դրա դրսևորման ձևերն ու խորությունը, այսպես կոչված, *«տարածքային ամբողջականության պահպանման»* դրույթը, այս երկուսի միջև իբր գոյություն ունեցող հակասությունը դադարել են զուտ իրավագիտական հարցեր լինելուց: Սրանք հարցեր են, որ հազարավոր մարդկանց կյանքին ու մահվանն են առնչվում:

Առանց նույնականացնելու ըմբռնումները *«ժողովուրդների ինքնորոշում»* սկզբունքի նկատմամբ, հնարավոր չէ այն կենսագործել: Առանց հստակեցնելու, թե ի՞նչ է նշանակում *«տարածքային ամբողջականություն»* և ինչքանո՞վ ու ինչի՞ց է այն պահպանվում, հնարավոր չէ Ղարաբաղյան հակամարտությանը լուծում տալ:

Ըստ այդմ, Հայաստանի Հանրապետությունը և Ադրբեջանական Հանրապետությունը, որպես ՄԱԿ-ի անդամ երկրներ, պիտի միասնաբար դիմեն ՄԱԿ-ի դատարանին, որ է Արդարության միջազգային դատարանը, մոտավորապես հետևյալ հարցերով.

1. Արդյոք միջազգային իրավունքում կա՞ «ժողովուրդների ինքնորոշման սկզբունք»: Եթե այո, ապա արդյոք «ժողովուրդների ինքնորոշման սկզբունքը» տարածվո՞ւմ է արդեն պետականություն ունեցող ազգի տվյալ պետականությունից դուրս գտնվող հավաքականությունների վրա: Եթե այո, ապա արդյոք որևէ սահմանափակում կա՞ այդ ինքնորոշման վրա:
2. Արդյոք միջազգային իրավունքում կա՞ «տարածքային ամբողջականության պահպանման» սկզբունք: Եթե այո, ապա արդյոք այդ սկզբունքը սահմանափակո՞ւմ է «ժողովուրդների ինքնորոշման սկզբունքը»՝ զրկելով ինքնորոշվող հավաքականությանը քաղաքական ինքնորոշման իրավունքից:

Ե՛ւ հայկական կողմերը, և՛ ադրբեջանական կողմը բազմիցս են խրոխտ ձայնով արտահայտվել իրենց դիրքորոշման միջազգային

իրավունքի վրա խարսխված լինելու մասին: Սակայն իրենք չէ, որ պետք է որոշեն դա: Մինչևիսկ միջնորդները լիազորված չեն դրա վերաբերյալ որոշումներ կայացնելու: Միջազգային հարաբերություններում դրա համար կա համապատասխան մարմին:

Կարծում եմ՝ հասել է պահը, որ միջնորդները դիմեն կողմերին՝ Արդարության միջազգային դատարանին հասցեագրված համապատասխան հայցադիմումի նախագիծը ներկայացնելու խնդրանքով: Ապա դրանք պետք է միասնականացնել և համապատասխան ընթացակարգով դիմել վերոնշյալ դատարանին: Եթե կողմերից մեկը մերժի, ապա դա կնշանակի, որ նրա բոլոր խոսքերը, թե իր դիրքերը միջազգային իրավունքի վրա են խարսխված, լոկ դատարկ խոսակցություններ են: Ըստ այդմ, միջազգային համայնքը պետք է անի համապատասխան հետևություն: Այդ դեպքում միջնորդ երկրներն իրենք, Արդարության միջազգային դատարանի Կանոնադրության 65-րդ հոդվածի հիման վրա և Անվտանգության խորհրդի անունից, վերոշարադրյալ հարցերի հստակեցման հայցադիմումով և խորհրդատվական կարծիքի ակնկալիքով պետք է դիմեն ՄԱԿ-ի դատարանին:

Ինչքան էլ դժվար լինի Ղարաբաղյան հակամարտության լուծման վերաբերյալ որոշման կայացումը, անտարակույս կրկնակի դժվար է լինելու դրա կենսագործումը: Հետևաբար, Արդարության միջազգային դատարանի կողմից հակամարտությանն առնչվող էական հարցերի հստակեցումը և դրանց վերաբերյալ որոշումը օրինական (legal) և նպաստավոր հիմք կստեղծի հակամարտության լուծման համար, քանի որ ի չիք կդարձնի ներկայումս որոշ հիմնարար իրավական հարցերի շուրջ առկա կողմերի սկզբունքային տարաձայնությունները:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Restatement of the Law (3rd). The Foreign Relations Law of the United States, The American Law Institute, Washington, 1987; v. 2, § 905 (7), p. 389.
2. Ibid, p. 383.
3. Goodrich L.M., Hambro E. Charter of The United Nations, Commentary and Documents. Boston, 1949, [2nd rev. ed.], p. 103.
4. Ավելի հանգամանալից տե՛ս. Պապյան Ա. Ինքնորոշում և այսպես կոչված «տարածքային ամբողջականություն» սկզբունքները միջազգային հանրային իրավունքում (Լեռնային Ղարաբաղի օրինակով), 21-րդ դար, #2, 2010, Նորավանք հիմնադրամ; www.noravank.am/arm/jurnals/details.php?ELEMENT_ID=5189

*28 հունվարի, 2011թ.*

## ՃՋ. Որոշ փաստեր Մուստաֆա Քեմալ Աթաթուրքի ծագման մասին

Մուստաֆա Քեմալի *դյոնմե*[1] լինելու մասին տեղեկությունները միշտ էլ եղել են շրջանառության մեջ: Քեմալի մասին սկզբնական հրապարակումների մեջ այդ փաստը մշտապես հիշատակվել է: Օրինակ, Առաջին համաշխարհային պատերազմի մասին առաջին իսկ լուրջ աշխատությունը՝ բրիտանական հեղինակավոր *Թայմս [The Times]* օրաթերթի կողմից 1915-1922թթ. հրատարակված 22 հատորանոց *Պատերազմի պատմությունը (History of the War)* կոթողային երկասիրությունը զանց չի առել այդ փաստը: Այն մասնավորապես գրում է. *«Մուստաֆա Քեմալը, ինչպես արդեն հաղորդել են ոմանք, ծագումով սալոնիկցի հրեա է, ազգայնական շարժմանը բացահայտորեն միացել է միայն 1919թ. հունիսին»*: *(Mustafa Kemal, reported by some to be of Salonika Jewish descent, only joined the Nationalist movement openly in June, 1919.)*[2] Արևմտյան մեկ այլ հեղինակավոր հրատարակություն՝ այս անգամ ամերիկյան *Լիթերարի Դայջեսթը [The Literary Digest]* 1922թ.-ին Քեմալին բնութագրում է որպես *«ծագումով իսպանական հրեա, ծնունդով և դաստիարակությամբ ուղղափառ մուսուլման»: (“[a] Spanish Jew by ancestry, an orthodox Moslem by birth and breeding.”)*[3]

Ըստ էության, նշյալ աշխատությունները նոր բան չեն բացահայտել, այլ պարզապես արտացոլել են այդ տարիներին մամուլում բազմիցս տպագրված վկայությունները Մուստաֆա Քեմալի դյոնմե ծագման մասին: Բերենք այդ վկայություններից մեկ-երկուսը:

*Ասոշեյթըդ Փռես [The Associated Press]* տեղեկատվական գործակալությունը, վկայակոչելով Թուրքիայի մեծ վեզիրին, 1920թ. հուլիսի 3-ի իր հաղորդագրության մեջ գրում է. *«Մուստաֆա Քեմալը (թուրքական ազգայնական առաջնորդը), որին մեծ վեզիրը ներկայացնում է որպես հրեա, ծնվել է թուրք, և նրա ծնողները Սալոնիկից էին ու դյոնմե, այսինքն՝ հավատափոխներ էին, ինչպիսիք էին Թալեաթի*[4] *և Ջավիդի*[5] *ծնողները»: (Mustafa Kemal, (Turkish nationalist leader) whom the great vizier presents as a Jew, was born a Turk and his parents were from Saloniki and were Deonmes, that is converts, as were the parents of Talat and Djavid.)*

Մեկ այլ իրազեկ աղբյուր՝ օսմանյան բարձրաստիճան սպա (Pasha), իսկ հետագայում հայտնի արձակագիր Ախմեդ Աբդուլլան (Achmed Abdullah) և հայտնի գործարար Լեո Անավին (Leo Anavi)

(երկուսն էլ թուրքական հետախույզներ Բրիտանական բանակում, որոնք առիթներ էին ունեցել Քեմալին հանդիպելու և խիստ քեմալամետ էին) գրում էին, որ Քեմալի նախնիները իսպանական հրեաներ էին (Spanish-Jewish ancestry) և նա ծագումով, ինչպես իրենք էին գրում՝ *«նույնիսկ արյամբ օսմանցի [տվյալ դեպքում՝ թուրք] չէ» (Not even of Osmanli blood.)*[6]

Այս փաստն անցյալ դարի 20-ական թվականներին այնքան տարածված էր, որ երբևէ կասկածի տեղիք չի տվել: Պատահական չէ, որ 20-րդ դարի մեծագույն պատմաբաններից մեկը՝ Արնոլդ Թոյնբին (Arnold Toynbee), նույնպես կարծում էր, որ Մուստաֆա Քեմալը հրեական (դյոնմե) ծագում ունի:[7] Քեմալի դյոնմե ծագման մասին է վկայում նաև ծպտյալ հրեաների (crypto-Jews) կյանքի մի այնպիսի իրազեկ անձնավորություն, ինչպիսինն էր Ամերիկայի հրեական կոնգրեսի (American Jewish Congress) երկարամյա նախագահ (1958-66թթ.) Ջոակիմ Պրինցը (Joachim Prinz, 1902-1988): Ահա թե ինչ է նա գրում. *«Այն հեղափոխության առաջնորդների մեջ, որի արդյունքում Թուրքիայում ի հայտ եկավ ավելի ժամանակակից կառավարում, կային Ջավիդ բեյը և Մուստաֆա Քեմալը: Երկուսն էլ կարծրահավատ դյոնմե էին: Ջավիդ բեյը դարձավ ֆինանսների նախարար; Մուստաֆա Քեմալը դարձավ նոր վարչախմբի ղեկավարը և ընդունեց Աթաթուրք անունը: Նրա հակառակորդները, շահարկելով նրա դյոնմե լինելը, փորձում էին նրան պաշտոնանկ անել, բայց առանց հաջողության: Չափից ավելի շատ երիտթուրքեր կային նոր կազմավորված հեղափոխական Կաբինետի մեջ, որոնք աղոթում էին Ալլահին, սակայն որպես իրենց իսկական մարգարե ունեին Զմյուռնիայի մեսիա Շաբթայ Ցվիին»*:[8]

Այն, որ Քեմալը հրեական ծագում ունի, լայնորեն տարածված համոզում էր նաև Թուրքիայի բնակչության մեջ: Սալոնիկցի հրեաները միշտ էլ համոզված էին, որ Մուստաֆա Քեմալը դյոնմե է:[9] Առ այսօր հրեաներն այդ կարծիքին են: Մուստաֆա Քեմալի անունը կարելի է գտնել *Հրեական առցանց գրադարանի (Jewish Virtual Library)* ցանկերում, որտեղ ի մի են բերված տեղեկություններ հրեա կամ հրեական ծագումով հայտնի մարդկանց մասին:[10]

Նույն համոզումն ուներ և ունի նաև թուրք բնակչությունը: Պահպանվել է Անկարայում ԱՄՆ-ի դեսպանության 1933թ.-ի մի հետաքրքիր զեկուցագիր: Բնակչության հարցումները ցույց են տվել, որ հարցվածներից շատերը կարծել են, որ երկիրը պատուհասող

բնական աղետների պատճառը երկրի նախագահի հրեա լինելն է: Մասնավորապես մեկն ասել է. *«Սաղ էդ հրեան ա (նկատի ունի նախագահին), որ մեզ բրդում ա անդունդը»: (It is that Jew (meaning the President) who is pushing us into the abyss.)*[11] Ակնհայտ է, որ նման խոսակցությունները գնալով այնքան են շատացել Թուրքիայում, որ իշխանությունները # 5816 օրենքով (31 հուլիսի, 1951թ.) քրեական պատիժ են նախատեսել Աթաթուրքի հիշատակը հրապարակայնորեն անարգելու կամ նրան անպատվելու համար (Law # 5816 "Law on Crimes Committed Against Ataturk", July 31, 1951):[12] Ըստ այդմ, սույն *«հանցանքի»* համար նախատեսվել է 1-ից 3 տարի ազատազրկում, իսկ որոշ դեպքերում՝ մինչև 5 տարի:[13] Հիշենք, որ առ այսօր Թուրքիայում իշխում է ռասիստական մտայնություն. հայերն ու հրեաները համարվում են երկրորդ կարգի արարածներ: Այդ երկրում մարդիկ մինչևիսկ պատժվում են որևէ մեկին հայ կամ հրեա ասելու համար, քանի որ դա համարվում է անարգանք:

Վերոշարադրյալից կարելի է եզրակացնել, որ թուրքերի հոր՝ Աթաթուրքի, ոչ թուրք լինելու մասին տեղեկությունները միշտ էլ լայնորեն հայտնի են եղել, թեև մշտապես սքողվել են: Հիմա տեսնենք՝ ի՞նչ հիմքեր կան Քեմալին դյոնմե համարելու համար: Սկզբում փաստարկների, այսինքն՝ անուղղակի փաստերի մասին, որոնք հավանական են դարձնում Մուստաֆայի Քեմալի դյոնմե ծագումը:

Նախ բոլոր հետազոտողները ուշադրություն են դարձրել այն հանգամանքին, որ Մուստաֆան ծնվել և մեծացել է մի քաղաքում՝ Սալոնիկում, որի բնակչության ճնշող մեծամասնությունը XIX դարի կեսերին հրեա էր: Ըստ էության, Սալոնիկն այդ ժամանակ (և մինչև Թել-Ավիվի հիմնումը 1909թ.-ին) աշխարհի միակ քաղաքն էր բնակչության հրեա մեծամասնությամբ: Եթե հրեաներին գումարում ենք նաև քաղաքի դյոնմե բնակչությունը, որոնք ավանդաբար հաշվառվում էին մուսուլմանների խմբում, ապա հրեաները և հավատափոխ հրեաները (դյոնմե) միասին բացարձակ մեծամասնություն էին: Պատահական չէ, որ Սալոնիկն այդ ժամանակ կոչվում էր *«Բալկանների Երուսաղեմ» (Jerusalem of the Balkans)*:[14] Կ.Պոլսում 1908-1913թթ. Բրիտանիայի դեսպան սըր Ջերար Լոութերը (Sir Gerard Lowther, 1858-1916) արտգործնախարարությանը հասցեագրած իր 29 մայիսի 1910թ. թվակիր նամակում բերում է հետևյալ տվյալները. *«[Սալոնիկի] բնակչությունը մոտավորապես 140 000 է, որից 80 000 հրեա է, և 20 000 Սաբաթայ Լևիի [Շաբթայ Ցվիի]* [15] *աղանդից է կամ ծպտված հրեա, որոնք առերես իսլամ*

*են դավանում»*:[16] Քաղաքում մեծ թիվ են կազմել հույները, բուլղարները, վալախները [ռումինները]: Քրիստոնյաները եղել են առնվազն 13 հազ. հոգի:[17] Հայերը շատ քիչ են եղել, ընդամենը՝ 45 հոգի:[18] Այսինքն, Մուստաֆայի ծննդյան տարիներին մուսուլման է եղել (ոչ միայն թուրք) Սալոնիկի յոթը բնակչից միայն մեկը, իսկ հրեա կամ դյոնմե՝ չորսից երեքը: Թուրքերը, ինչպես բնորոշել է այդ տարիներին Սալոնիկում ապրած թուրք քաղաքական գործիչը, շատ չէին, ընդամենը *«ավել էին մի քանիսից» (more than a few)*:[19]

Խիստ կարևոր հանգամանք է նաև այն իրողությունը, որ Մուստաֆայի ընտանիքն ապրել է Սալոնիկի ոչ-մուսուլմանական թաղամասում:[20] Եթե հաշվի առնենք օսմանյան հասարակության համայնքային կառուցվածքը (millet system), երբ ամեն համայնքի ներկայացուցիչ ապրում էր իր հավատակիցների և ազգակիցների շրջապատում, ապա այս հանգամանքը խիստ կարևոր է դառնում:

Հաջորդ իրողությունը, որին պետք է ուշադրություն դարձնել, կրկին կապ ունի օսմանյան հասարակության համայնքային բնույթի հետ: Կայսրության մեջ ամեն մի համայնք ուներ սեփական միջոցներով պահվող իր դպրոցներն ու կրթարանները: Բացառություն էր կազմում միայն իշխող թուրք տարրը, որի համար կային պետության կողմից հովանավորվող դպրոցներ: Հայտնի փաստ է, որ Մուստաֆային նախ շատ կարճ ժամանակ ուղարկել են *Հաֆեզ Մեհմեդի (Hafiz Mehmet)* թուրքական դպրոց,[21] ապա տեղափոխել են *Շեմսի էֆենդու (Şemsi Efendi)* դպրոցը:[22] Շեմսի էֆենդու (բուն անունով Շիմոն Ցվի կամ Զվի, Shimon Zwi)[23] դպրոցը Սալոնիկի դյոնմե համայնքի դպրոցներից մեկն էր: Բանն այն է, որ օսմանյան հասարակության մեջ դպրոցները ոչ միայն ըստ համայնքների էին, այլև շատ հաճախ ըստ ներհամայնքային բաժանումների: Որովհետև Սալոնիկի դյոնմե համայնքը Սաբաթայի տեղապահի հարցի շուրջ[24] իր հերթին բաժանված էր 3 խմբի՝ յակուբիներ, կարակաշներ և կապանչիներ (*Yakubiler, Karakaşlar, Kapanciler*),[25] ապա նրանցից յուրաքանչյուրն ուներ իր դպրոցը՝ *Ֆրիզ-ի Ատի (Fryz-I Ati)* յակուբիների համար, *Ֆեյզիյե (Feyzie)* կարակաշների համար՝ հիմնված 1883-84թթ., և *Յադիգար-է Թերակի (Yadigar-i Terakki)* կապանչիների համար՝ հիմնված 1879թ.:[26] Քանի որ մենք վստահաբար գիտենք, որ Մուստաֆա Քեմալը հաճախել է Ֆեյզիյե դպրոցը, որի մասին ինքն է վկայել դեռևս 1922թ. մի հարցազրույցի ժամանակ,[27] ապա կարող ենք մեծ հավանականությամբ ենթադրել, որ նա դյոնմեների կարակաշ

խմբից էր: Ի դեպ կարակաշ խմբից էր նաև Մեհմեդ Ջավիդ բեյը, ով մինչև 1908թ.-ին Օսմանյան կայսրության ֆինանսների նախարար դառնալը Ֆեյզիյե դպրոցի տնօրենն էր:[28]

Խիստ անհավանական է, որ Մուստաֆան [հետագայում՝ Քեմալ և Աթաթուրք], թուրք լինելով հանդերձ, հաճախեր դյոնմեների դպրոց: Օսմանյան հասարակությունը, ինչպես արդեն նշել ենք, համայնքային կառուցվածք ուներ և այդ տարանջատումը բծախնդրորեն պահպանվում էր: Ուստի, ամեն համայնքի ընտանիք իր զավակներին ուղարկում էր միայն ի՛ր համայնքի դպրոցը: Օրինակ, չնայած Օսմանյան կայսրությունում գործող հարյուրավոր դպրոցների մեջ կային առնվազն մի քանի բարձր կրթություն ապահովող հայկական դպրոցներ, մենք չունենք անգամ մի եզակի վկայություն, որ որևէ թուրքական ընտանիքի զավակ երբևէ հաճախել է այդ հայկական դպրոցներից մեկը: Եթե մինչևիսկ ընդունենք, որ *Ալի Ռիզան*՝ Քեմալի հայրը, խիստ առաջադեմ էր, իսկ նման եզրակացության համար մենք որևէ հիմք չունենք, և սաստիկ ուզում էր իր զավակին եվրոպական կրթություն տալ, ինչպես հիմա փորձում են ներկայացնել ոմանք, ապա Սալոնիկում այդ ժամանակ արդեն կային ավելի հարմար ֆրանսիական և իտալական դպրոցներ:[29]

Միևնույն ժամանակ հարկ է ընդգծել, որ դյոնմե համայնքը խիստ ինքնամփոփ համայնք էր: Որևէ օտարի մուտք այդ համայնք բացառված էր: Դյոնմեների վարքականոնը պահանջում էր, որ նրանք խուսափեն այլ մուսուլմանների հետ հարաբերություններից:[30] Այսինքն, եթե Մուստաֆան դյոնմե չէր, ապա նրա հաճախելը դյոնմեների դպրոց անընդունելի կլիներ և՛ ուղղահավատ մուսուլմանների, և՛ դյոնմեների համար:

Պետք է նաև հիշել, որ Օսմանյան կայսրության դպրոցները չունեին մեկ միասնական կրթական ծրագիր, և երեխաներն իրենց համայնքային դպրոցներում ոչ միայն կրթություն էին ստանում, այլև ազգային/կրոնական դաստիարակություն: Պետք է նշել, որ Օսմանյան կայսրությունում, ինչպես նաև այլուր այդ տարիներին, ժամանակակից առումով աշխարհիկ դպրոցներ չկային: Բոլոր դպրոցներն էլ, ինչքան էլ առաջադիմական համարվեին, ներառում էին կրոնական կրթության տարրեր: Դասերը մեծ մասամբ սկսում էին տվյալ կրոնի կամ հարանվանության հիմնական աղոթքով: Ինչպես նշում են հարցի լավագույն ուսումնասիրողները *«Շեմսի էֆենդու դպրոցում շարունակում էին սովորեցնել և կիրառել դյոնմեների*

*կրոնական ծեսերը»*:[31] Միևնույն ժամանակ դպրոցի նպատակներից էր դյոնմեների միջև հարաբերությունների հաստատումը:[32] *«Ի տարբերություն մյուս մուսուլմանների, դյոնմեները պահպանել էին հավատն առ այն, որ Շաբթայ Ցվին մեսիա է, կատարում էին կաբալիստական ծեսեր, աղոթում էին լադինո (հրեա-իսպանական)՝ օսմանյան հրեաների, լեզվով»*:[33]




Պատահական չէ, որ Մուստաֆայի ուսուցչապետ Շեմսի էֆենդու տապանագրի վրա գրված է հետևյալը. *«Muallim Şemsi Ef.[endi] Atatürkün hocasi» – «Ուսուցիչ Շեմսի էֆ.[ենդի] Աթաթուրքի դաստիարակ»*: Հատկանշական է, որ Շեմսի էֆենդին (Շիմոն Ցվի կամ Զվի, Shimon Zwi) անվանվում է ոչ թե պարզապես Աթաթուրքի *ուսուցիչ (muallim)*, այլ *հոջա (hóca)*՝ դաստիարակ, առաջին հերթին՝ կրոնական դաստիարակ:

Ի դեպ Քեմալի հավատը կաբալիստական նշանների՝ գաղտնագրերի, ուժի հանդեպ մնացել է ողջ կյանքում: Մի վկայությամբ նրա սեղանի վրա փակցված է եղել կանաչ գույնի քառակուսի կտոր, որի վրա պատկերված են եղել գաղտնագրեր: Նույն վկայությամբ իսլամի տեսանկյունից անհավատ Քեմալը հավատում էր այդ նշանների զորությանը:[34] Ի վերջո մարդ հավատում է այն բաներին, ինչին փոքրուց սովորեցնում են հավատալ:

Ըստ այդմ, կարող ենք արձանագրել, որ Շեմսի էֆենդու դպրոցում Քեմալը ոչ միայն ընդհանուր կրթություն էր ստացել, այլև ստացել է կրոնական դաստիարակություն: Այս դաստիարակությունն այնքան խորն է եղել, որ անգամ տասնամյակներ հետո էլ նա դեռ հիշում էր իր սովորած աղոթքները:

Անտարակույս, վերոհիշյալ բոլոր իրողությունները Մուստաֆա Քեմալի դյոնմե լինելու օգտին խոսող լուրջ փաստարկներ են: Հիմա տեսնենք՝ ի լրումն նշված փաստարկների, պահպանվե՞լ են արդյոք ուղղակի վկայություններ նրա դյոնմե լինելու մասին: Ինչքան էլ տարօրինակ է՝ պահպանվել են:

Նշյալ վկայությունների մեջ անշուշտ ամենակարևորը Իթամար Բեն-Ավիի (Itamar Ben-Avi) հուշագրության մեջ վկայված հանդիպման (1911թ.) նկարագրությունն է Քեմալի հետ՝ Երուսաղեմի Կամենից հյուրանոցում, երբ վեջինս ճամփորդում էր Լիբիա՝ մասնակցելու

իտալա-թուրքական պատերազմին: Իթամար Բեն-Ավին (1882-1943) *«արդի եբրայերենի հայր»* Էլիզեր Բեն-Յահուդայի (Eliezer Ben-Yahuda) որդին էր, նոր ժամանակներում եբրայերենով խոսել սկսած առաջին երեխան: Նա հետևյալ մեջբերումն է անում Մուստաֆա Քեմալի խոսքերից. *«Տանը ես Վենետիկում տպագրված մի շատ հին Թանախ*[35] *ունեմ և, եթե ճիշտ եմ հիշում, հայրս ինձ ուղարկեց Կարայիտ*[36] *ուսուցչի մոտ, որն էլ ինձ սովորեցրեց այն կարդալ. որոշ բառեր դեռ մեջս են մնացել … Այդ պահին նա մի պահ լռեց, և նրա աչքերը [այնպիսի արտահայտություն ստացան կարծես] ինչ-որ բան էր որոնում օդի մեջ: Հետո, նույնքան անսպասելիորեն, հիշեց. "Շըմա Յիսրոէյլ, ադոյնոյ էլոյհեյնու, ադոյնոյ էհոդ* [37] *": "Դա մեր մեծագույն աղոթքն է, պարո՛ն կապիտան": "Նաև իմ գաղտնի աղոթքն է, սիրելի՛ պարոն", – պատասխանեց նա և երկուսիս էլ խմիչք լցրեց»*:[38]

Ոմանք, առավելաբար առաջնորդվելով քաղաքական նկատառումներով, կասկածի են ենթարկել սույն վկայությունը: Որպես հիմնական կռվան նրանք նշում են, որ կապիտան Քեմալը իտալա-թուրքական պատերազմին (18 դեկտեմբերի, 1911թ. – 24 հոկտեմբերի, 1912թ.) մասնակցելու համար ծովով է Ստամբուլից հասել Ալեքսանդրիա (Եգիպտոս), հետևաբար այդ ժամանակ չի եղել Երուսաղեմում:[39] Սա փաստերի աղավաղում է, եթե ոչ՝ նենգափոխում: Փաստերն անհերքելիորեն վկայում են, որ Քեմալը ցամաքային ճանապարհով է գնացել Լիբիա և անցել է Սիրիայի և Պաղեստինի միջով: Ահա թե ինչ է գրում բրիտանացի հետախույզ և միջինարևելյան հարցերին լավատեղյակ Հարըլդ Արմսթրոնգը. *«Բացի Սիրիայի և Եգիպտոսի վրայով անցնող երկար ճանապարհից, Թուրքիան կտրված էր Հյուսիսային Աֆրիկայից: Իտալացիները վերահսկում էին ծովը և փակել էին Դարդանելը: (…) Երկու ընկերների հետ Մուստաֆա Քեմալը բռնեց ցամաքային ճանապարհը: Նրանք ճանապարհորդեցին Փոքր Ասիայի վրայով, ապա Սիրիայով և Պաղեստինով ներքև, օգտվելով երկաթուղուց, որտեղ այն կար, իսկ մնացածն անցնելով ձի հեծած կամ սայլով»*: [40]

Միանգամայն անտրամաբանական է կարծել, որ Իթամար Բեն-Ավին իր հուշերում սուտ պատմություն է հորինել, քանի որ անհասկանալի է մնում դրդապատճառը: Բեն-Ավին իր հուշերը գրելիս մինչևիսկ չգիտեր՝ իր հուշագրությունը կտպագրի երբևէ, թե՝ ոչ: Նա մահացել է 1943թ., իսկ հուշագրությունը տպագրվել է 1961թ.-ին, և երկար ժամանակ վերոհիշյալ հատվածն աննկատ է մնացել:

Ինքը՝ Մուստաֆա Քեմալը, շատ հետաքրքիր պատասխան է տվել իր մոտ ընկերներից մեկի՝ Նուրի Ջոնքերի (Nuri Conker) գրեթե ուղղակի հարցին իր ծագման մասին: Քեմալը պատասխանել է. *«Իմ մասին ոմանք ասում են, որ ես հրեա եմ, որովհետև ծնվել եմ Սալոնիկում: Բայց պետք չէ մոռանալ, որ Նապոլեոնն էլ իտալացի էր Կորսիկայից, բայց մահացավ որպես ֆրանսիացի և որպես այդպիսին էլ մտավ պատմության մեջ»:*[41]

Վստահաբար կարելի է ասել, որ անկախ իր ծագումից Մուստաֆա Քեմալն ապրել և մեռել է որպես թուրք, իսկական թուրք, բառի հայերեն իմաստով՝ թուրք: Այս դեպքում հարց կարող է առաջանալ՝ ուրեմն ի՞նչ տարբերություն, թե ի՞նչ ծագում է ունեցել Մուստաֆա Քեմալը: Ինձ համար՝ ոչ մի: Բայց, քանի որ թուրքական ռասիստական հասարակության համար դա կարևոր է, ուստի և նրանց համար ենք ի մի բերել բոլոր այս տեղեկությունները: Բարի վայելումն:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Հետաքրքրական է, որ հրեաները դյոնմեներին կամ ավելի ճիշտ սաբաթայցիներին կոչում են աղանդավորներ՝ մինիմ (եզ.՝ մին, מין): Այսինքն, նրանց չեն համարում գոյիմ (եզ.՝ գոյ, גוי, բառացի թրգմ.՝ ազգ, հեթանոս)՝ ոչ հրեաներ, այլակրոններ, այլ միայն հուդայականության աղճատված ուսմունքի հետևորդներ, հերետիկոսներ:
2. The Break-up of Turkey. The Times History of the War, London, 1920, vol. XXI, p. 433.
3. The Sort of Man Mustafa Kemal is. The Literary Digest, 14 Oct 1922, v. 75, no. 2, p. 50-3.
4. Թալեաթի դյոնմե լինելու մասին մի ուշագրավ վկայություն է պահպանվել հայտնի լրագրող Զեքերիյա Սերտելի (Zekeriya Sertel, 1890-1980) ամուսնական հուշերի մեջ: Նկարագրելով, թե ինքը ինչքան դժվարություններ է հաղթահարել, որպեսզի ամուսնանա դյոնմե Սաբիհա Դերվիշի (Sabiha Dervis) հետ, նա գրում է. «Մեր նշանադրության ժամանակ աղջկա կողմի ներկայացուցիչն էր այդ ժամանակվա վարչապետ Թալեաթ փաշան»: (At our engagement, the representative for the girl's side was then-Prime Minister Talat Pasha.) [Bali R. A Scapegoat for All Seasons: The Donmes of Crypto-Jews of Turkey. Istanbul, 2008, p. 161.]
5. Takes Issue with Turk's Statement about Armenians. The Associated Press, The Evening Progress, 3 Jul 1920, p. 5.
6. Abdullah A., Anavi L. The Rise of Mustapha Kemal Pasha from Obscurity. The Bridgeport Telegram, 28 Sep 1922, p. 4.
7. Gunther J. Procession. NY, 1965, p. 98; Gunther J. Inside Europe. NY, 1938, p. 417.
8. Prinz J. The Secret Jews. NY, 1973, p. 122.
9. www.jewishvirtuallibrary.org/jsource/judaica/ejud_0002_0005_0_05294.html
10. www.jewishvirtuallibrary.org/jsource/judaica/ejud_0002_0012_0_11019.html
11. US Diplomatic Documents on Turkey, Family life in the Turkish Republic of the 1930's (ed. Bali R.), Istanbul, 2007, p. 57.
12. Bali R. A Scapegoat for All Seasons: The Donmes of Crypto-Jews of Turkey. Istanbul, 2008, p. 227.
13. Նույն տեղում:
14. Նույն տեղում, էջ 250:

15. “Shavatai Tzvi” or “Shabtai Zvi”; the “Geyik” is simply the Turkish equivalent of Zvi, meaning “deer” or “stag” [Bali R. Ibid, p. 39].
16. Kedurie E. Young Turks, Freemasons and Jews. Middle Eastern Studies 1971;7(1):94.
17. Baer M. Globalization, Cosmopolitanism, and the Donme on Ottoman and Turkish Istanbul. J World History 2007;18(2):150.
18. Duru K.N. (1876-1967) Arnavutluk ve Makedonya Hatiralarim (1959). In: Bali R. Ibid, p. 119.
19. Նույն տեղում:
20. Նույն տեղում, էջ 244:
21. Walker B., Erol F., Erol M. To Set Them Free, The Early Years of Mustafa Kemal Ataturk. New Hampshire, 1981, p. 26.
22. Armstrong H. Gray Wolf, Mustafa Kemal – An Intimate Study of a Dictator. NY, 1933, p. 5.
23. Bali R. Ibid, p. 36-37:
24. The Donmes in the Memoirs of Fuat Andic. In: Bali R. Ibid, p. 126.
25. Sisman C. The History of naming the Ottoman/Turkish Sabbatians, p. 50; in: Studies on Istanbul and Beyond. The Freely Papers 2007, v. I, p. 37-53.
26. Bali R. Ibid, p. 126; Baer M., Ibid, p. 154.
27. Reported by Emin A. (Yalman), “Buyuk Millet Meclisi Reisi Başkumandan Mustafa Kemal Paşa ile bir mulâkat [An Interview with Mustafa Kemal Pasha, President of the Grand National Assembly and Commander-in-Chief, in Turkish]”, Vakit (Turkish Daily), 10 Jan 1922.
28. Bali R. Ibid, p. 120.
29. Նույն տեղում, էջ 126:
30. Baer M. Ibid, p. 143.
31. Նույն տեղում, էջ 153:
32. Նույն տեղում:
33. Նույն տեղում, էջ 143:
34. Armstrong H.C. Ibid, p. 143.
35. Թանախ (կամ Թենախ, תַּנַ"ךְ), իրեական Աստվածաշնչի անվանումը: Հապավում է՝ TaNaKh: Առաջացել է 3 բառերի (Թորահ, Նեվի’իմ, Խետուվիմ) առաջին տառերի անվանումներից:
36. Կարայիտ՝ դրիմցի թուրք-հրեա:
37. שְׁמַע יִשְׂרָאֵל יְהוָה אֱלֹהֵינוּ יְהוָה אֶחָד׃ – Լսի՛ր, Իսրայէ՛լ, Տէր Աստուած մեր՝ Տէր մի է (Երկրորդումն օրինաց, 6:4):
38. Ben-Avi I. Im Shahar Atzmautenu: Zichronoto shel HaYeled Ha’lvri HaRishon (At the Dawn of Our Independence: the Memoirs of the First Hebrew Child), 1961, p. 213-8.
39. Mango A. Ataturk. London, 1999, p. 452.
40. Armstrong H.C. Ibid, p. 31.
41. Bali R. A Scapegoat for All Seasons: The Donmes of Crypto-Jews of Turkey. Istanbul, 2008, p. 248.


*08 փետրվարի, 2011թ.*

## ՃԷ. Մի հստակեցման անհրաժեշտություն

ՄԱԿ-ը մեղադրում է Լիբիայի իշխանություններին՝ <u>մարդկության դեմ հանցագործություն</u> կատարած լինելու մեջ:

*Ազգ on-line, 2011-03-03*

Մտքերն արտահայտվում են բառերի միջոցով: Հետևաբար, ճիշտ բառի կամ բառակապակցության գործածումը վճռորոշ է մտքի ճշգրիտ ընկալման համար: Առավել ևս, երբ խոսքը վերաբերում է բառերի նկատմամբ այնպիսի զգայուն ոլորտների, ինչպիսիք են միջազգային հարաբերությունները կամ միջազգային իրավունքը:

Օրերս Միջազգային քրեական դատարանի գլխավոր դատախազը հայտարարել է, որ հետաքննելու է Մուամար Քադաֆիի ու նրա շրջապատի գործունեությունը և պատասխանատվության է ենթարկելու *«քաղաքացիական բնակչության ջարդերի համար»*: Դատախազը նշյալ անձանց գործունեությունը որակել է որպես *“crime against humanity”*:

Չնայած *“crime(s) against humanity”* բառակապակցության թարգմանությունը հաճախ է գործածվում հայերենում, քանի որ առնչվում է նաև *<u>ցեղասպանություն</u>* հանցատեսակի հետ, այսուհանդերձ, գրեթե միշտ, սխալ է թարգմանվում: Այն թարգմանվում է որպես *«մարդկության դեմ հանցագործություն/ներ/»*, թեև ճիշտ թարգմանությունն է *«հանցագործություն/ներ/ ընդդեմ <u>մարդկայնության</u>»* կամ *«<u>մարդկայնության</u> դեմ ուղղված հանցագործություն/ներ/»*:

*Մարդկության* և *մարդկայնության* միջև էական տարբերություն կա: Մարդկությունը բոլոր մարդկանց ամբողջական, ըստ էության վերացական, համախումբն է *(humankind, mankind, человечество)*, իսկ *մարդկայնությունը* մարդուն բնորոշ հատկանիշ, վարքականոնային պահվածք է *(humanity, человечность)*: Վերջինիս շարքում հայերենում ունենք *մարդկային, անմարդկային* բառերը:

Անգլերեն *“humanity”* բառը հայերենում կարող է նշանակել և՛ *մարդկություն*, և՛ *մարդկայնություն*: Նույնը ռուսերենում՝ *человечество* և *человечность*: Կարծում եմ, որ բուն սխալը հայերեն է սպրդվել ռուսերենից, քանի որ ռուսերենում էլ են այն մեծ մասամբ սխալ գործածում: Արդարության համար պետք է նշել, որ սխալը հիմնականում լրագրության ոլորտում է, իսկ որակյալ իրավաբանները (օրինակ՝ ՌԴ նախագահ Մեդվեդևը) կամ բարձրակարգ դիվանագետները (օրի-

նակ՝ ՌԴ ԱԳ նախարար Լավրովը) գործածում են ճիշտ՝ *«преступление против человечности»* ձևը: Օրինակ, *“Действия ливийских властей по разгону демонстрантов могут рассматриваться как преступление против человечности. Уничтожение гражданского населения должно быть прекращено”,* – говорится в специальном заявлении президента России Дмитрия Медведева, опубликованном 25 февраля.[1] Կամ՝ *“Для деяний, квалифицированных трибуналом в Нюрнберге как преступления против человечности, срока давности нет и быть не может”, – подчеркнул Лавров.*[2]

Միջազգային իրավունքին վերաբերող բոլոր ամենահեղինակավոր և ուղենշային հրատարակությունները *humanity* բառը միանշանակորեն թարգմանում են՝ *մարդկայնություն, человечность*: Դրանցից որպես կարևորագույն օրինակներ կարելի է նշել երկու աշխատություն՝ ՄԱԿ-ի հովանու ներքո պատրաստված *Զինված հակամարտությունների և միջազգային մարդասիրական կազմակերպությունների օրենքի եզրաբանական ձեռնարկը (14(B)¢161)*[3] և *Միջազգային հանրային իրավունքի (խաղաղության) և միջազգային կազմակերպությունների եզրաբանական ձեռնարկը (6(B1)¢273)*:[4]

Անհրաժեշտ եմ համարում նաև նշել, որ *«մարդկայնության դեմ հանցագործություն» (crime against humanity)* բառակապակցությունն առաջին անգամ գործածվել է 1915թ. մայիսի 24-ին, Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի և Ռուսաստանի համատեղ հայտարարության մեջ՝ Օսմանյան կայսրության կողմից հայերի բնաջնջման քաղաքականությունը որակելիս:[5]

Հուսանք, որ այս բացատրությունից հետո հայ լրագրողները, ինչպես նաև քաղաքագետներն ու դիվանագետները, կգործածեն միայն ճիշտ՝ *մարդկայնության դեմ հանցագործություն/ներ/* ձևակերպումը:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Действия ливийских властей – преступление против человечности. Голос России, 25.02.2011, rus.ruvr.ru/2011/02/25/46193001.html
2. www.er-portal.ru/about/text.shtml? 16/9965,110991 , 21.11.2010.
3. Paenson I. Manual of the Terminology of Armed Conflicts and the International Humanitarian Organizations. Brussels, 1989, p. 413.
4. Նույն տեղում, p. 331.
5. Gaeta P. The UN Genocide Convention: A Commentary. Oxford, 2009, p. 5.

*03 մարտի, 2011թ.*

## ՃԸ. **Սահմանի և ինքնիշխանության մասին**
*կամ*
## **Եվս մի հստակեցման անհրաժեշտություն**

Համաձայն ՊԲ օպերատիվ տվյալների, փետրվարի 27-ից մարտի 5-ն ընկած ժամանակահատվածում ղարաբաղա-ադրբեջանական <u>հակամարտ զորքերի շփման գծում</u> հակառակորդի կողմից հրադադարի ռեժիմը խախտվել է շուրջ 240 անգամ, որի արդյունքում արձանագրվել է ավելի քան 1200 կրակոց:

*ԼՂՀ ՊԲ լրատվական ծառայություն, 5 մարտի, 2011թ.*

Դիվանագետի, քաղաքական գործչի կամ պետական կառույցի համար բառը աշխատանքի հիմնական միջոցներից է: Նրանք բառի միջոցով են ձևակերպում իրենց շահերը, բառերի միջոցով են փոխանցում իրենց ուղերձը հասարակությանը: Ըստ այդմ, այստեղ անփութությունը կամ սխալ ձևակերպումներն անընդունելի են:

Լեռնային Ղարաբաղի Հանրապետությունն իրեն համարում է անկախ պետություն: Թող այդպես լինի, թեև ես, հիմք ընդունելով Հայաստանի Հանրապետության սահմանադրության նախաբանի և Անկախության հռչակագրի մեջ ամրագրված դրույթները, այն համարում եմ Հայաստանի Հանրապետության մաս: Սակայն խոսքը հիմա դրա մասին չէ: Երկու դեպքում էլ պաշտոնական հաղորդագրությունները պետք է ունենան այլ ձևակերպումներ, քան այսօր են: Եթե ԼՂՀ-ն անկախ երկիր է կամ ՀՀ մաս, ուրեմն այն Ադրբեջանի հետ ունի ոչ թե շփման գիծ, այլ պետական սահման: Հետևաբար, Ադրբեջանի կրակոցները ԼՂՀ ուղղությամբ ոչ թե *«հակամարտ զորքերի շփման գծում»* հրադադարի ռեժիմի խախտումներ են, այլ հրադադարի ռեժիմի խախտման միջոցով հարձակումներ ԼՂՀ պետական սահմանի վրա: Հիշենք, որ ըստ միջազգային իրավունքի *«սահմանն այն գիծն է, որով զատորոշված է պետությունների կամ միջազգային կագավիճակ ունեցող այլ միավորների իրավասության տարածքային ընդգրկումը»*:[1]

Այսինքն, երբ գործածում ենք *«հարձակում սահմանի վրա»* ձևակերպումը, մենք շեշտում ենք, որ ԼՂՀ-ն և Ադրբեջանի Հանրապետությունն ունեն տարբեր ինքնիշխանություններ, այսինքն՝ տարբեր պետություններ են: Իսկ երբ գործածում ենք *«հակամարտ ուժերի կամ զորքերի շփման գիծ»* ձևակերպումը, ապա ընդունում ենք, որ գծի երկու կողմերում միևնույն

ինքնիշխանության երկու հակոտնյա տարածքներ են, որոնք գտնվում են երկու տարբեր զինված խմբավորումների վերահսկողության ներքո: Օրինակ, այնպես, ինչպես այսօր Լիբիայում կա *«հակամարտ ուժերի շփման գիծ»* քաղաքական և հակաքաղաքական ուժերի միջև:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. “... a line which determines the limit of the territorial sphere of jurisdiction of States or other entities having an international status.” [Bothe M. Boundaries, Encyclopedia of Public International Law (ed. Berhardt R.), v. 1, Amsterdam, 1992, p. 443.]

*05 մարտի, 2011թ.*

## ՃԹ. Ադրբեջանահայության դերն ու նշանակությունը հայ-ադրբեջանական հարաբերություններում

*/ելույթ Ադրբեջանահայության համագումարին/*

Նախ թույլ տվեք Մոդուս վիվենդի կենտրոնի անունից ողջունել ադրբեջանահայության առաջին համագումարի մասնակիցներին և մաղթել արդյունավետ աշխատանք:

Ադրբեջանահայություն ասածը խիստ պայմանական հասկացություն է: Ըստ էության, ադրբեջանահայություն ասելով այսօր մենք հասկանում ենք ԼՂՀ վերահսկողությունից դուրս գտնվող նախկին Ադրբեջանական ՍՍՀ շրջանների և բնակավայրերի հայությունը: Ընդհանուր առմամբ ճիշտ է, քանի որ չունենք այլ, ավելի հարմար բնութագրիչ բառ: Հետևաբար, անհրաժեշտ է որոշակի հստակեցում: Ադրբեջանահայությունը բաղկացած է եղել 2 մեծ՝ փոխադարձաբար սերտաճած ու հարափոփոխ, հատվածից: Առաջինը՝ Բաքվի և Կասպից ծովի արևմտյան ափի բնակավայրերի ու դրանց մերձակայքի գաղթականասերունդ հայություն: Երկրորդը՝ Արցախի, Ուտիքի և Նախիջևանի բնիկ հայություն: Ըստ այդմ, այս 2 խմբերը միջազգային իրավունքի տեսանկյունից ունեցել են տարբեր կարգավիճակներ, ուստիև՝ տարբեր իրավունքներ: Այսու, նրանց իրավունքները գոնե մասնակիորեն վերականգնելու համար պետք է գործադրվեն տարբեր գործիքներ:

Նախ անդրադառնանք առաջին խմբի՝ այն է Բաքվի և համանման կարգավիճակ ունեցող հայության իրավունքներին: Այս խմբի իրավունքները կարելի է բաժանել 2 մակարդակի՝ անհատական իրավունքներ և համայնքային իրավունքներ: Մեր կարծիքով այս խմբի ոտնահարված իրավունքների վերականգնումը հիմնականում պիտի ընթանա գույքային իրավունքների վերականգնման կամ համարժեք հատուցումներ ստանալու ուղով:

Պաշտոնական վիճակագրությամբ 1989թ. միայն Բաքվում ապրում էր 179.900 հայ: Շրջակա բնակավայրերի հայերի հետ միասին հայության այս խումբը գրեթե 350 հազար էր: Նրանց մի զգալի մասն ուներ բավականին բարեկեցիկ վիճակ: Շատերն ունեին պետության, ուզում եմ շեշտել՝ Սովետական Միության և ոչ թե Ադրբեջանի կողմից անհատույց օգտագործման տրված բնակարաններ, գույք, բանկային հաշիվներ և այլն: Վերոհիշյալ հայությունը հիմնականում 1990թ. հունվարին այս ամենից ապօրինաբար զրկվեց: Այստեղ հարկ եմ համա-

րում մի կարևոր շեշտադրում անել. ի տարբերություն հայաստանաբնակ ադրբեջանցիների, որոնց զգալի մասը շարժական գույքն իր հետ տարավ, իսկ անշարժ գույքի դիմաց հատուցում ստացավ ՀՍՍՀ կառավարության կողմից, ադրբեջանահայությունն իրենից ապօրինաբար խլված իր գույքի դիմաց երբևէ որևէ հատուցում չի ստացել: Անհրաժեշտ է ընդգծել, որ սեփականության պաշտպանությունն ամրագրված է *Մարդու իրավունքների եվրոպական կոնվենցիայի* 1952թ. մարտի 20-ի արձանագրության 1-ին հոդվածում:[1] Կարծում եմ այսօր ադրբեջանահայությունից 1990թ.-ից հետո խլված գույքի մասին դեռ խոսողներ կլինեն:

Ես առավելապես ուզում եմ անդրադառնալ հարակից մեկ այլ հարցի, որն անարդարացիորեն դուրս է մղված մեր ուշադրության դաշտից: Նախ ուզում եմ հիշեցնել, որ ներկայիս Ադրբեջանական Հանրապետությունը 1991թ. հոկտեմբերի 18-ի *Պետական անկախության վերականգնման սահմանադրական ակտով* իրեն հայտարարել է Ադրբեջանի առաջին հանրապետության ուղղակի իրավահաջորդը: Ըստ այդմ, չեղյալ են հայտարարվել սովետական տիրապետության ժամանակահատվածում ընդունված իրավական ակտերը և վերականգնվել է նախասովետական իրավական վիճակը: Սա նշանակում է, որ Բաքվի նավթահանքերը և նրանց հարակից գազի հանքերը մասնավոր սեփականություն են, և նրանց շահագործումը Բաքվի ներկա իշխանությունների կողմից անօրինական է: Անօրինական է նաև հայազգի անհատներին և կազմակերպություններին պատկանող հազարավոր շենքերի ու կառույցների օգտագործումը Բաքվի ներկա իշխանությունների և անհատների կողմից: Սովետական իշխանության տարիներին վերոհիշյալ սեփականությունները պետականացվել են սովետական դեկրետներով, որոշումներով և այլն: Ես հիմա չեմ քննարկի, թե ինչքանով են օրինական եղել այդ իրավական ակտերը: Պարզապես ուզում եմ շեշտել՝ չեղյալ հայտարարելով սովետական շրջանը, այն է՝ նաև այդ շրջանում ստեղծված իրավական հիմքերը, այսօր Բաքուն սեփականության հարցում ստեղծել է իրավական վակուում: Հետևաբար, Բաքվի իշխանությունները կամ պետք է նշյալ սեփականությունները վերադարձնեն օրինական տերերին կամ, եթե ուզում են դրանք ազգայնացնել, պիտի վճարեն համարժեք, կրկնում եմ <u>համարժեք</u>, հատուցում: Հեղափոխությունների և հեղափոխական բռնազավթումների ժամանակները վաղուց են անցել: Առանձնակի ուզում եմ ընդգծել, որ սա մեզ համար ոչ միայն որոշ ընտանիքների

իրավունքների վերականգնման հարց է, այլև առաջին հերթին ազգային անվտանգության հարց:

Շատերին գուցե ասածս անիրագործելի թվա: Սակայն մի հայտնի խոսք կա. «*Եթե ինչ-որ մեկը ինչ-որ մի տեղ դա կարող է անել, ուրեմն նույնը կարող ես նաև դու անել*»: Քչերը գիտեն, որ, օրինակ, հրեաներն Արևելյան Եվրոպայի երկրներից, հատկապես Լեհաստանից, ավելի քան 4 մլրդ դոլար են ստացել իրենցից ապօրինաբար խլված գույքի դիմաց և դեռ շարունակելու են ստանալ: Այդ հատուցումների իրավական հիմքը նույնն է՝ սովետական տիրապետության իրավական ակտերի չեղյալ հայտարարումը: Այս ամենի մասին ինձ պատմել են իսրայելցի իրավաբաններն անցյալ տարի Ժնևում կայացած Օսմանյան կայսրության տարածքում հայոց լքյալ գույքի ճակատագրին նվիրված միջազգային իրավագիտական հավաքի ժամանակ: Ավելին, իսրայելցի իրավաբանները պատրաստակամություն են հայտնել մեզ օգնելու հայերից խլված գույքի դիմաց հատուցումներ ստանալու հարցում: Իհարկե այս ծառայություններն անհատույց չեն: Այսօր իսկ Իսրայելում կան մի քանի տասնյակ իրավաբանական գրասենյակներ, որոնք մասնագիտացած են անօրինականորեն խլված գույքի դիմաց հատուցումների վճարման հարցերում: Այդ գրասենյակները գործում են հետևյալ կերպ. հայցվորը գրասենյակ է ներկայացնում իր սեփականությունը փաստող փաստաթղթերի և այլ ապացույցների փաթեթը: Գրասենյակը նախնական քննության է ենթարկում հարցը և, ըստ հաղթելու հավանականության, որոշում՝ ընդունել հայցը ընթացք տալու համար, թե ոչ: Եթե որոշվում է հայցին ընթացք տալ, ապա կնքվում է երկկողմ համաձայնագիր, որով, ըստ գործի դժվարության, որոշվում են հատուցման ստանալու պարագայում՝ հատուցման բաժանման համամասնությունը և շահառուները: Ուզում եմ ընդգծել, այս դատավարությունները դյուրին գործեր չեն: Դրանք երբեմն տարիներ են տևում, երբեմն միլիոնավոր դոլարի աշխատավարձեր են վճարվում և ծախսեր են կատարվում: Սակայն այստեղ կարևորն այն հանգամանքն է, որ հայցվորը նախապես գումար չի վճարում:

Ինչպես ինձ բացատրեց իմ իսրայելցի գործընկերը՝ գործի ելքը մեծապես պայմանավորված է նախապատրաստական փուլում կատարված աշխատանքով: Այսինքն, սեփականությունը փաստող փաստաթղթերի և այդ սեփականության նկատմամբ ունեցած ժառանգական իրավունքը հաստատող վավերագրերի առկայու-

թյամբ: Վստահ եմ, որ համապատասխան աշխատանքի դեպքում կարող ենք ի մի բերել առնվազն մի քանի հարյուր խիստ մեծագումար հայցերի իրավական հիմքեր:

Հիմա բերեմ որոշ տվյալներ, որ գոնե մոտավորապես պարզ լինի ինչպիսի սեփականության մասին ենք խոսում: Օրինակ, թեև 1905թ. քանակային դրսևորմամբ Բաքվի անշարժ գույքի մեծ մասը պատկանում էր ադրբեջանցիներին, այնուհանդերձ գնային դրսևորմամբ հայերին էր պատկանում գույքի 43.5%, իսկ ադրբեջանցիներին՝ ընդամենը 34%-ը:[2] Անվիճելիորեն հայերը գերակա դիրքեր ունեին արտադրության և ծառայությունների մատուցման բոլոր, այդ թվում նաև բանկային, ոլորտներում: Սակայն ամենակարևորը նավթարդյունաբերության ոլորտն էր: Այստեղ հայերը բացահայտ գերակա դիրք էին գրավում՝ Լիանոզով, Մանթաշև, Միրզոև, Ղուկասով, Տեր-Ակոպով, Բեժանով, Ծատուրով, Փիթոև ընտանիքների անունները առ այսօր ծանոթ են շատերին:

Հիմա ընդհանուր դատողություններից անցնենք կոնկրետ առաջարկներին: Մենք ունենք Անվտանգության խորհուրդ, որն ի պաշտոնե կոչված է նպաստելու մեր երկրի անվտանգության ամրապնդմանը: Ճիշտն ասած ես չգիտեմ, թե ինչ գործառույթներ է իրականացնում հիշյալ կառույցը, քանի որ որևէ արդյունք դեռևս չեմ տեսել: Սակայն մի բան հաստատ գիտեմ՝ անվտանգությունն ապահովվում է ուժերի հավասարակշռության պահպանմամբ: Հետևաբար միջազգային դատարաններում Բաքվի տնտեսության հիմքը հանդիսացող նավթարդյունաբերության սեփականության վիճարկումն իսկ կարող է էապես նպաստել ՀՀ և ԼՂՀ անվտանգությունների մակարդակների բարձրացմանը: Կարծում եմ, որ սույն համագումարն առաջարկով պիտի դիմի Անվտանգության խորհրդին, որպեսզի վերջինս հանդես գա որպես փաստահավաք խմբի պատվիրատու: Այսինքն, պիտի հովանավորի նպատակային աշխատանքային խմբի գործունեությունը, որը պիտի իրականացնի ներկայումս Ադրբեջանի իշխանությունների անօրինական տնօրինման ներքո գտնվող հայկական գույքի անձնագրավորումը: Խոսքը վերաբերում է և՛ անհատական, այսինքն՝ ընտանեկան սեփականություն հանդիսացած գույքին, և՛ համայնքային, այսինքն՝ դպրոցներին, եկեղեցիներին, բարեգործական կազմակերպությունների սեփականությանը, և ամենակարևորը՝ նավթի հանքերին: Ասեմ, որ նման մի բան դեռևս 1920-ականներին իրականացվել է Ալեքսանդր Մյասնիկյանի հրամանով: Ուզում եմ հստակեցնել: Անձ-

նագրավորում նշանակում է ոչ թե ընդհանուր տվյալների մեկտեղում սեփականության մասին, այլ ամեն մի առանձին շենքի, կառույցի, նավթի հանքի, հողակտորի վերաբերյալ ամեն տեսակի փաստերի հավաքում և դասակարգում: Փաստեր, որոնք դատարանում կարող են ընդունվել որպես վկայություններ տվյալ գույքի պատկանելության մասին: Օրինակ, ես առիթ եմ ունեցել խոսել նշածս հարցի ամերիկյան մասնագետների հետ, և իրենք բերել են հետևյալ օրինակը: Եթե կա ասենք 1919թ. թերթ, որտեղ նկարված է շենք և գրված է այսինչայսինչյանի սեփականությունը, դա ևս կարող է տեղ գտնել ապացուցողական փաթեթի մեջ: Երկրորդ փուլում անհրաժեշտ է, որ մեկ այլ խումբ՝ հիմնականում իրավաբաններ, առկա անձնագրավորված սեփականություններից առանձնացնեն մի քանի տասնյակ ամենահետանկարային գործերը և կատարեն որոշակի նախապատրաստական աշխատանքներ: Մասնավորապես պետք է կատարեն պաշտոնական և վավերացված թարգմանություններ, իրականացնեն սեփականության ժառանգորդների որոնումներ և բանակցություններ նրանց հետ: Նոր արդեն երրորդ փուլում վերոհիշյալ մասնագիտացված իրավաբանական գրասենյակների հետ պետք է կնքել եռակողմ համաձայնագրեր (ՀՀ որևէ կառույցի, սեփականատիրոջ ժառանգների և իրավաբանական գրասենյակի միջև) և ըստ կարգի սկսել դատավարությունները: Ուզում եմ շեշտել, որ մինչևիսկ անկախ դատական գործընթացների վերջնական արդյունքից, սա այն դեպքն է, որ ինքնին գործընթացն ադրբեջանցիների հետ հարաբերություններում մեզ կարող է ընձեռնել ազդեցության նոր լծակներ:

Հիմա համառոտակի անդրադառնանք, զուտ պայմանականորեն ասած, ադրբեջանահայության երկրորդ խմբի՝ այն է Ռուսական կայսրության Ելիզավետպոլի նահանգի բնիկ հայության իրավունքներին և դերակատարությանը համահայկական գործընթացներում: Անձնական և համայնքային գույքի հատուցումների մասին Բաքվի հայության կապակցությամբ վերն ասվածը կարելի է ամբողջությամբ կիրառել նաև հիշյալ հայության հարցում: Սակայն այս հայությունն ուներ և ունի մեկ այլ շատ ավելի կարևոր դերակատարություն: Դա հայ-թաթարական սահմանազատման հարցում այդ հայությանը վերապահված վճռորոշ դերակատարությունն է:

Երբ 1917թ. բոլշևիկյան հեղաշրջման հետևանքով Ռուսական կայսրությունը սկսեց տրոհվել և հարավային Կովկասում հռչակվեցին 3 անկախ պետություններ, բնականաբար սրանց միջև սահմանների

հարցում ի հայտ եկան լուրջ խնդիրներ: Այդ ժամանակ կողմերն առաջ էին քաշում իրարամերժ հավակնություններ: Օրինակ, քանի որ Թիֆլիսը համարվեց վրացական քաղաք, ապա անհասկանալի տրամաբանությամբ վրացիները սկսեցին հավակնություններ ցուցաբերել Թիֆլիսի ողջ նահանգի նկատմամբ: Նույնը Ադրբեջանը. քանի որ Ելիզավետպոլը (Գանձակը) համարվեց ադրբեջանական քաղաք, ապա Ադրբեջանը սկսեց հավակնել Ելիզավետպոլի նահանգի ողջ տարածքի վրա: Հարկ է նշել, որ Փարիզի խաղաղության վեհաժողովը, որի իրավասությունների շրջանակում էր նոր պետությունների ճանաչման հարցը, մերժեց այս մոտեցումը: Այսինքն, մերժեց նորաստեղծ պետությունների սահմանները նույնականացնել Ռուսական կայսրության վարչական սահմանների հետ: Ավելին, քանի դեռ կար Ռուսաստանում օրինական իշխանության վերահաստատման հույսը, միջազգային հանրությունը մերժում էր ընդհանրապես այս երկրների ճանաչումը: Միայն 1920թ. հունվարին Փարիզի խաղաղության վեհաժողովը, հանձինս Գերագույն խորհրդի (Supreme Council of the Paris Peace Conference) երկրներ Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի և Իտալիայի, ճանաչեց Հարավային Կովկասի երկրները՝ սահմանների հստակեցման հարցը թողնելով հետագային: Ճանաչումից մի ամիս հետո՝ 1920թ. փետրվարի 24-ին, նույն վեհաժողովի Հայաստանի սահմանները որոշող հանձնաժողովը (Commission for the Delimitation of the Boundaries of Armenia) Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և Ճապոնիայի ներկայացուցիչների մասնակցությամբ, արդեն Ազգերի լիգայի խորհրդի անունից, համատեղ զեկույցով հստակեցրեց Հարավային Կովկասում սահմանազատման (delimitation) սկզբունքը: Այնտեղ մասնավորապես ասված էր հետևյալը.

*«Ինչ վերաբերում է Հայաստանի պետության և Վրաստանի, ինչպես նաև Ադրբեջանի սահմանին, ապա Հանձնաժողովը գտնում է, որ ներկայումս նախընտրելի է սպասել վերոնշյալ սահմանների հստակեցման վերաբերյալ այնպիսի համաձայնության արդյունքներին, որոնց երեք հանրապետություններն իրենք կհանգեն պայմանագրերի մեջ:*

*Այն դեպքում, եթե սույն հանրապետություններն իրենց սահմանների վերաբերյալ չեն հանգի որևէ համաձայնության, ապա հարցը պետք է փոխանցվի Ազգերի լիգայի իրավարարությանը, որը կստեղծի միջդաշնակցային Հանձնաժողով՝ տեղում որոշելու*

*վերոնշյալ սահմանները՝ հաշվի առնելով, որպես սկզբունք, ազգագրական տվյալները:»*[3]

Այսինքն, հայ-ադրբեջանական, ինչպես նաև հայ-վրացական, սահմանազատման հարցերը վերապահված էին Ազգերի լիգային, որն էլ իր որոշումը պիտի խարսխեր ազգաբնակչության տեղաբաշխման տվյալների վրա, այն է *«հաշվի առնելով, որպես սկզբունք, ազգագրական տվյալները» (taking into account, in principle, ethnographical data)*: Բնականաբար, այս հարցում կարևորագույն դեր էր վերապահված, այսօրվա բառով ասած, «ադրբեջանահայությանը»: Ցավոք սրտի, այս որոշմանը վիճակված չէր իրականություն դառնալ, քանի որ արդեն 1920թ. ապրիլից Ադրբեջանը, իսկ 1920թ. դեկտեմբերից Հայաստանը բռնազավթվեցին (օկուպացվեցին) բոլշևիկյան 11-րդ բանակի կողմից և նշյալ պետությունները դադարեցին գոյություն ունենալուց: Հետագան ավելի է հայտնի. նորահաստատ սովետական իշխանությունները կուսակցական որոշումով վարչական վերաբաշխումներ արեցին և հայաբնակ զգալի տարածքներ, որոնք Փարիզի վեհաժողովի սկզբունքի կիրառման դեպքում անվիճելիորեն հայաստանյան պիտի լինեին, դրեցին Բաքվի վարչական ենթակայության ներքո:

Այսուհանդերձ, առ այսօր Ազգերի լիգայի նշյալ որոշումը որևէ մեկը չեղյալ չի հայտարարել: Այն, այո՛, չի իրագործվել, սակայն նաև չեղյալ չի հայտարարվել: Հետևաբար, ԽՍՀՄ տրոհումից և հատկապես 18.10.1991թ. Ադրբեջանի *Պետական անկախության վերականգնման սահմանադրական ակտից* հետո, երբ, ինչպես արդեն նշել էինք, ներկայիս Ադրբեջանը դարձավ Ադրբեջանի առաջին հանրապետության իրավահաջորդը, միակ օրինական փաստաթուղթը մնաց Ազգերի լիգայի 1920թ. փետրվարի 24-ի նշյալ որոշումը: Հիշեցնեմ, որ ըստ այդ որոշման սահմանները պիտի որոշվեին *«որպես սկզբունք»* ընդունելով *ազգագրական տվյալները*: «Որպես սկզբունք» դարձվածքը նշանակում է, որ Ազգերի լիգան ընդունում էր, որ որոշ վայրերում, բնակչության խիստ խառը բնակեցված լինելու պատճառով, հնարավոր չի լինի որոշել սահմանը և անհրաժեշտություն պիտի առաջանա նաև բնակչության փոխանակման: Ինչպես, օրինակ, հետագայում իրականացվեց Հունաստանի և Թուրքիայի միջև:

Հիմա տեսնենք՝ ինչ ունենք ներկայումս, ինչպես ասվում է՝ գետնի վրա: Ադրբեջանի նախահարձակ պատերազմի հետևանքով ակամայից տեղի է ունեցել բնակչության տարանջատում և ըստ այդմ սահմանների հաստատում ըստ Ազգերի լիգայի առաջ քաշած սկզբունքի:

Հայերը որոշակի տարածքներ են կորցրել Դաշտային Ղարաբաղում և Հյուսիսային Արցախում, իսկայական սեփականություն՝ Բաքվում, փոխարենը որոշ տարածքներ են ձեռք բերել ԼՂԻՄ-ին հարող շրջաններում: Եթե որևէ մեկն ուզում է, որ հայերը վերադարձնեն Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզին հարող շրջանները, ուրեմն նաև հայերին պիտի վերադարձվեն մինչև 1991-1994թթ. զինված ընդհարումները, ինչպես նաև Ազգերի լիգայի 1920թ. փետրվարի 24-ի որոշման պահին հայերով բնակեցված բոլոր տարածքները և հայերի ունեցած սեփականությունները: Այլապես դա կլինի հերթական անարդարությունը հայերի նկատմամբ, հետևաբար՝ միանգամայն անընդունելի: Որևէ օրենք կամ որոշում չի կարող գործել միակողմանիորեն:

Ամփոփելով՝ կարելի է անել հետևյալ եզրակացությունները.

**1.** ՀՀ կառավարությունը և հասարակական կառույցները պետք է գործնական քայլեր ձեռնարկեն ադրբեջանահայությունից, մասնավորապես Բաքվի հայությունից, ապօրինաբար խլված գույքի և սեփականության դիմաց համարժեք հատուցումներ ստանալու համար: Խոսքը վերաբերում է ոչ միայն 1990-ականներին, այլև 1920թ. ապրիլի 28-ից առ այսօր խլված գույքին:

**2.** Ըստ Ազգերի լիգայի որոշման՝ ադրբեջանահայությանն առաջնային դեր է վերապահված հայ-ադրբեջանական սահմանի որոշման հարցում: Առանց ադրբեջանահայության ձայնը լսելու ոչ ոք իրավունք չունի որոշելու հայ-ադրբեջանական սահմանի հարցը: Առանց 1920թ. փետրվարի 24-ից առ այսօր հայերից խլված տարածքների վերադարձի, անօրինական, անտրամաբանական ու անարդար է քննարկել որևէ տարածքի վերադարձի հարց: ԼՂԻՄ-ին հարող շրջանները պետք է դիտարկել ոչ միայն որպես անվտանգության գոտի, այլև հատուցում ադրբեջանահայության կորուսյալ տարածքների և գույքի դիմաց:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. "Every natural or legal person is entitled to the peaceful enjoyment of his possessions. No one shall be deprived of his possessions except in the public interest and subject to the conditions provided for by law and by the general principles of international law." [Article 1, The European Convention on Human Rights, Protocol to the Convention for the Protection of Human Rights and Fundamental Freedoms, Paris, 20 Mar 1952]
2. Дадаян Х. Армяне и Баку (1850-ые гг. – 1920г.). «Нораванк», Ереван, 2007, с. 51.
3. United States National Archives. Records of the Department of State Relating to Political Relations between Armenia and other States, 1910-1929, 760J.6715/60-760J.90C/7.

*13 մարտի, 2011թ.*

## ՃԺ. Համանախագահներն ընդամենը միջնորդ են
*կամ*
## Առանձին վերցրած մի տարածաշրջանում ստալինիզմի հարության փորձ

Սեփական լիազորությունների՝ մանդատի, շրջանակում գործելը օրինապահության կարևորագույն հիմնասյուներից է: Սա անվերապահորեն վերաբերում է նաև միջազգային իրավունքի հիման վրա ստեղծված և միջազգային հարաբերություններում գործող կառույցներին:

Այսուհանդերձ, թվում է, որ այս պարզ ճշմարտությունը գնալով ավելի ու ավելի հաճախ է անտեսվում ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահների կողմից: Ասածիս ամենավերջին վկայությունը նշյալ խմբի 2011թ. մարտի 24-ի զեկույցի մեջ տեղ գտած *«Լեռնային Ղարաբաղին հարակից Ադրբեջանի յոթը գրավյալ շրջաններ» ("the seven occupied territories of Azerbaijan surrounding Nagorno-Karabakh (NK)")* ձևակերպումն է: Ակնհայտ է, որ իր զեկույցի մեջ գործածելով նման ձևակերպում, վերոհիշյալ խումբը բացահայտորեն գերազանցել է իր լիազորությունները և ոտնահարել իր իսկ մանդատը:

Համանախագահների խմբին որևէ մեկը չի լիազորել որոշելու որևէ տարածքի կարգավիճակ կամ ճակատագիր: Ո՞վ է այդ խմբին իրավունք տվել Լեռնային Ղարաբաղը (տեքստում՝ Nagorno-Karabakh) նույնացնել նախկին ԽՍՀՄ նախկին Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզին: Դա հակամարտության կողմերի որոշելիքն է: Համանախագահների լիազորությունը սահմանափակվում է միայն միջնորդությամբ, այն է՝ ուժի կիրառման բացառման հիման վրա բանակցային գործընթացին նպաստելով: Դա միանշանակորեն և հստակ ամրագրված է Մինսկի խմբի համանախագահների մանդատի մեջ. *«քաջալերել հակամարտության առանց ուժի կիրառման լուծումը և ի մասնավորի նպաստել խաղաղ և համապարփակ կարգավորմանն ուղղված բանակցություններին» ("Promoting a resolution of the conflict without the use of force and in particular facilitating negotiations for a peaceful and comprehensive settlement.") [Mandate of the Co-Chairmen of the Conference on Nagorno-Karabakh under the auspices of OSCE ("Minsk Group", Vienna, 23 March 1995, DOC.525/95)*: Հիշյալ մանդատի 15 կետերից և ոչ մեկով Համանախագահներին որոշելու կամ վճիռներ կայացնելու լիազորություն չի տրված:

Առավել տարօրինակ է և կատարելապես հիմնազուրկ նախկին ԼՂԻՄ-ի հարակից տարածքներն անվանել *«Ադրբեջանի տարածքներ» (territories of Azerbaijan)*: Կարծում եմ, որ Համանախագահները որպես բարձրաստիճան և փորձառու դիվանագետներ ինձանից ավելի լավ գիտեն, որ միջազգային իրավունքի մեջ ցանկացած տարածքի *իրավատիրություն (legal possession)* որոշվում է տվյալ *տարածքի տիտղոսով (title to territory)* և ոչ թե՝ վարչական կառավարմամբ: Եթե նրանք, կամ թեկուզև որևէ մեկը, կարողանա վկայակոչել մի որևէ միջազգային օրինական փաստաթուղթ *(international legal document)*, կրկնում եմ՝ *<u>միջազգային</u>*, կրկնում եմ՝ *<u>օրինական</u>* փաստաթուղթ, և ոչ թե կուսակցական որոշում, որով Լեռնային Ղարաբաղի Հանրապետության ներկայիս տարածքի թեկուզև մի թիզ հողակտորի վրա երբևէ ճանաչված է եղել Ադրբեջանի Հանրապետության տիտղոսը, ես հրապարակավ ներողություն կխնդրեմ իմ անտեղյակության համար: Իսկ եթե դա չարվի, ուրեմն ճիշտը ես եմ և որևէ մեկը, առավել ևս միջնորդ մարմինը, իրավունք չունի գործածելու չհիմնավորված ձևակերպումներ:

Հարց կարող է առաջանալ. իսկ ի՞նչ ձևակերպում պիտի գործածվի: Կարծում եմ՝ *«նախկին Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի հարակից տարածք»*: Առանց *«Ադրբեջան»* տեղանվանման, քանի որ ԼՂԻՄ-ը ԽՍՀՄ ինքավար մարզ է եղել, որը միջնորդավորված ենթակայություն է ունեցել երկրի իշխանություններին, այսինքն՝ վարչական կառավարման է ենթարկվել ԽՍՀՄ մեկ այլ վարչատարածքային միավորի միջոցով: Հիշեցնեմ, որ ԽՍՀՄ ունեցել է քառաստիճան վարչատարածքային բաժանում և, անկախ տվյալ վարչատարածքային միավորի աստիճանակարգից, բոլոր միավորներն էլ ունեցել են միևնույն տիտղոսը: Այդ բոլոր միավորների վրա ճանաչված է եղել միայն մի ինքնիշխանություն (sovereignty), այն է՝ ԽՍՀՄ ինքնիշխանությունը:

Շեշտեմ նաև, որ ստալինյան վարչատարածքային բաժանումը չի կարող օրինական հիմք հանդիսանալ պետությունների սահմանազատման (delimitation) համար, քանի որ միջազգային իրավունքը հստակ է. հանցագործությունը չի կարող իրավունքի հիմք հանդիսանալ *(Ex injuria jus non oritur)*: Մոռացկոտներին հիշեցնեմ նաև, որ Համանախագահներին լիազորություններով օժտած նույն ԵԱՀԿ-ն (իր խորհրդարանական վեհաժողովի 2009թ. հուլիսին 3-ի *«Պառակտված Եվրոպան միավորվեց»* բանաձևով, (Resolution

*“Divided Europe Reunited”*, Vilnius, July 3, 2009), ստալինիզմը հավասարեցրել է նացիզմին: Միթե՞ այսօր Եվրոպայում որևէ մեկը պատրաստ է վերադառնալ Հիտլերի գծած սահմաններին: Իսկ ինչո՞ւ եք կարծում, որ Հարավային Կովկասում կարելի է հարություն տալ ստալինիզմի հանցագործություններին:

*24 մարտի, 2011թ.*

## ՃԺԱ. Մեկնաբանություններ իմ մեկնաբանության մեկնաբանությունների վերաբերյալ

ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահների զեկույցի վերաբերյալ իմ վերջին մեկնաբանությունը [տե՛ս էջ 459՝ *«Համանախագահներն ընդամենը միջնորդ են կամ առանձին վերցրած մի փարածաշրջանում սպալինիզմի հարության փորձ»*, 24 մարտի, 2011թ.] մի շարք մեկնաբանությունների տեղիք է տվել: Հարկադրված եմ մեկնաբանություններով պատասխանել իմ մեկնաբանության մեկնաբանություններին:

1. В декабре 1991 года в Соглашении о создании СНГ союзные республики признали независимость друг друга и неприкосновенность существующих границ. (Artur, Armenia Today) [1991թ. դեկտեմբերին միութենական հանրապետությունները ԱՊՀ ստեղծման մասին համաձայնագրով ճանաչեցին միմյանց անկախությունը և գոյություն ունեցող սահմանների անձեռնմխելիությունը]:

Նախ պետք է ընդգծել, որ ԱՊՀ ստեղծման մասին համաձայնագիրը (08.12.1991թ.) և՛ ՍՍՀՄ օրենսդրության, և՛ միջազգային իրավունքի տեսանկյունից խիստ խնդրահարույց փաստաթուղթ է: Իհարկե, ՍՍՀՄ սահմանադրությունը ՍՍՀՄ հանրապետություններին տալիս էր անկախանալու իրավունք, սակայն այդ անկախացումն ուներ օրենքով ամրագրված հստակ ընթացակարգ, որը չի պահպանվել: Հարց է առաջանում՝ արդյո՞ք քաղաքական նպատակահարմարությունը կարող է օրինականացնել հիշյալ փաստաթուղթը ստորագրողների *ultra vires* (լիազորությունները գերազանցող) գործողությունը: Անշուշտ՝ ոչ: Կարծեմ, ՍՍՀՄ հանրապետություններից միայն Հայաստանում են պահպանվել այդ պահին գործող օրենքի պահանջները՝ անկախության հանրաքվեի հայտարարում, նախատեսված ժամկետի պահպանում, հանրաքվեի անցկացում և այլն: Այդ տեսանկյունից ՍՍՀՄ նախկին հանրապետությունների անկախացումներից (ներառյալ՝ Բալթյան երկրները) օրենքի տեսնակյունից միակ անթերին Հայաստանի Հանրապետության անկախացումն է:

Հետո, միջազգային իրավունքն ունի իր պահանջները, ի մասնավորի՝ օրինապես միջազգային հարաբերությունների մեջ մտնել և միջպետական պարտավորություններ ստանձնել կարող են միայն միջազգային իրավունքի սուբյեկտները: Այսինքն, միջազգային համայնքի կողմից ճանաչված երկրների ճանաչված կառավարությունների համապատասխան լիազորություններով օժտված ներկայացուցիչները: Անշուշտ, 1991թ. դեկտեմբերի 8-ին ՍՍՀՄ դեռևս հանդես էր գալիս

որպես միջազգային իրավունքի մեկ միասնական սուբյեկտ: Բազմաթիվ վկայություններ կան՝ օրինակ, ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի նիստերը ՍՍՀՄ մասնակցությամբ: Հետևաբար, միևնույն պետության սուբյեկտների փոխադարձ պարտավորությունները չեն կարող դիտարկվել որպես միջպետական պարտավորություններ:

Սակայն ենթադրենք, որ հիշյալ փաստաթուղթն օրինական է: Տեսնենք ինչ է ասում այն *«սահմանների անձեռնմխելիության»* մասին: Փաստաթղթի 5-րդ հոդվածը հայտարարում է. *«Բարձր պայմանավորվող կողմերը Համագործակցության շրջանակում ճանաչում և հարգում են միմյանց փարածքային ամբողջականությունը և սահմանների անձեռնմխելիությունը: Նրանք երաշխավորում են Համագործակցության շրջանակում սահմանների բաց լինելը, քաղաքացիների փեղաշարժի և փեղեկափվության փոխանցման ազափությունը»:* (*Высокие Договаривающиеся Стороны признают и уважают территориальную целостность друг друга и неприкосновенность существующих границ в рамках Содружества. Они гарантируют открытость границ, свободу передвижения граждан и передачи информации в рамках Содружества.*)

Նախ ասեմ, որ պայմանավորվածություններ պարունակող բոլոր փաստաթղթերը, սկսած թաղապետարանի հետ ձեր ստորագրած կոնտրակտից, վերջացած միջպետական փաստաթղթերով, ամբողջական փաստաթղթեր են: Այսինքն, միևնույն փաստաթղթի մեջ ներառված պայմանավորվածությունները փոխկապակցված են և գործում են միասնաբար: Օրինակ, եթե կողմերից մեկը, ասենք՝ թաղապետարանը, պարտավորվում է ծառայություններ մատուցել, ապա մյուս կողմը, դիցուք՝ շենքի բնակիչը, պարտավորվում է դրա դիմաց վճարել: Կամ հակառակը: Բնականաբար, եթե կողմերից մեկը չի կատարում իր պարտավորությունները, ապա ինքնըստինքնյան մյուս կողմն ազատվում է իր պարտավորություններից: Նույնը միջպետական հարաբերություններում է:

Հիմա հասկանանք՝ ինչ է ասում վկայակոչված հոդվածը: Այո՛, այն ասում է, որ կողմերը *«ճանաչում և հարգում են միմյանց փարածքային ամբողջականությունը և սահմանների անձեռնմխելիությունը»*: Սակայն միաժամանակ նույն հոդվածն ասում է. *«Նրանք երաշխավորում են ... սահմանների բաց լինելը, քաղաքացիների փեղաշարժի և փեղեկափվության փոխանցման ազափությունը»*: Հստակ է, որ *«փարածքային ամբողջականության և սահմանների անձեռնամխելիության»* ճանաչումը պայմանավորված է *«սահմանների բաց լինելով և քաղա-*

*քացիների ազատ տեղաշարժով»*: Արդյո՞ք Ադրբեջանը, 24.09.1993թ. միանալով ԱՊՀ ստեղծման մասին համաձայնագրին, կատարել է իր պարտավորությունները: Ակնհայտորեն՝ ոչ: Այդ օրվանից առ այսօր հայ-ադրբեջանական սահմանը փակ է մնում և չկա քաղաքացիների ազատ տեղաշարժ: Արդյո՞ք, չկատարելով իր պարտավորություննե-րը, Ադրբեջանը կարող է ունենալ օրինական հիմք՝ ակնկալելու, որ պարտադիր կարող է համարվել միևնույն համաձայնագրի պարտա-վորությունների միայն մի մասը: Իհարկե՝ ոչ: Կրկնում եմ՝ պարտավո-րությունները մեկ ամբողջականություն են և փոխկապակցված: Կամ ինչպես Իլֆն ու Պետրովն էին ասում իրենց հերոսի բերանով. *«Утром деньги, вечером стулья, вечером деньги, утром стулья.»*:

Կա մի կարևոր հանգամանք ևս: Երբ 18.02.1992թ. Հայաստանը միացավ քննարկվող փաստաթղթին, Ադրբեջանը դեռևս մաս չէր կազմում այդ փաստաթղթին: Ադրբեջանը ԱՊՀ ստեղծման մասին համաձայնագրին է միացել Հայաստանից 19 ամիս հետո՝ 1993թ. սեպտեմբերի 24-ին: Այսինքն, Հայաստանը *«տարածքային ամբողջականության հարգում և սահմանների անձեռնամխելիության ճանաչում»* պարտավորությունը, այն էլ որոշակի հանգամանքներով պայմանավորված, ստանձնել է միայն փաստաթղթին տվյալ պահին մաս հանդիսացող երկրների՝ Ռուսաստանի, Ուկրաինայի, Բելառուսի, Ղազախստանի, Թուրքմենստանի, և Ուզբեկստանի, նկատմամբ:

Եվ վերջապես ամենակարևորը: Ի՞նչ կապ ունի տարածքային ամբողջականությունն ու սահմանների անձեռնմխելիությունը Լեռ-նային Ղարաբաղի հակամարտության հետ: Եթե Ադրբեջանը Լեռ-նային Ղարաբաղի ժողովրդի կամքի ազատ և խաղաղ դրսևորմանը (ցույցեր, հանրահավաքներ, հանրաքվեներ, հայցադիմումներ, կոչեր և այլն) հակադրել է բռնի ուժը, խաղաղ բնակչության դեմ ներքին զորքերի օգտագործմամբ ձեռնարկել է ոչ համարժեք պատժիչ գործողություններ, կազմակերպել է Ադրբեջանական ՍՍՀ հայ բնա-կիչների ջարդեր (Սումգայիթ, Բաքու, Կիրովաբադ և այլն), քաղա-քացիական բնակչության նկատմամբ, վարձկանների օգտագործմամբ (ուկրաինացիներ, աֆղաններ, ռուսներ և այլն), սանձազերծել է անողոք պատերազմ ու խայտառակ պարտություն է կրել, որի հե-տևանքով կորցրել է վերահսկողությունն իր կողմից իրենը համարող տարածքի մի մասի նկատմամբ, ապա դա բնավ կապ չունի վերոհիշյալ՝ տարածքային ամբողջականության ու սահմանների անձեռնմխելիության դրույթների հետ: Հիշյալ դրույթները գործում են

միջպետական հարթությունում և բնավ խոչընդոտ չեն ինքնորոշվող հանրության սեփական ճակատագիրն ըստ իր հայեցողության տնօրինելու իրավունքի կենսագործման համար:

Ավելին, Ադրբեջանի վերոհիշյալ գործողությունները պատմության մեջ մտան ոչ միայն որպես անպատիժ մնացած հանցագործություններ, այլև մնալու են որպես խարան միջազգային հանրության քաղաքական խղճի վրա, որը ոչինչ չարեց բնաջնջումից փրկելու Արցախի խաղաղ բնակչությանը: Միթե՞ Բենգազիում ապրող մարդկանց արյունն ավելի կարմիր է, քան Ստեփանակերտում կամ Հադրութում ու Մարտակերտում ապրողներինը: Ո՞վ պիտի հաստատեր ոչ թռիչքային գոտին մանկապարտեզներն ու դպրոցները ռմբակոծող ադրբեջանական օդանավերի դեմ: Ո՞վ պիտի իրականացներ մարդասիրական միջամտությունը (humanitarian intervention)՝ փրկելու համար տասնյակ հազարավոր մարդկանց կյանքը: Դա չարեց միջազգային հանրությունը հավաքաբար և ողջ ծանրությունը մնաց այդ հանրության միայն մեկ անդամի՝ Հայաստանի Հանրապետության, ուսերին: Հասել է պահը, որ միջազգային հանրությունը արժեվորի ՀՀ մարդասիրական միջամտությունը և լիարժեքորեն հատուցի վերջինիս կրած մարդկային և նյութական կորուստների համար:

2. Со-председатели Минской конференции являются не только посредниками. Они руководят переговорным процессом. (Artur, Armenia Today) [Մինսկի կոնֆերանսի համանախագահները ոչ միայն միջնորդներ են հանդիսանում: Նրանք ղեկավարում են բանակցային գործընթացը]:

Ղեկավարել առաջին հերթին նշանակում է որոշումներ կայացնել: Եթե ղեկավարել ասելով սա ենք հասկանում, ապա նման բան չկա: Մինսկի խմբի համանախագահների իրավասությունները հստակորեն սահմանված են համապատասխան մանդատով [տե՛ս՝ *Mandate of the Co-Chairmen of the Conference on Nagorno-Karabakh under the auspices of OSCE "Minsk Group", Vienna, 23 March 1995, DOC.525/95*]: Հիշյալ փաստաթղթի 15 կետերից և ոչ մեկով նրանց *«բանակցությունները ղեկավարելու»* մանդատ չի տրված: Ըստ այդմ, մանդատն օգտագործում է համապատասխան բառապաշար՝ *համատեղ ջանքեր գործադրել, զարգացնել միասնական հիմք, աջակցել, զեկուցել, համատեղ այցելել և այլն (make joint efforts, develop a common basis, assist, report, visit jointly, etc.)*:

Հետո, սկզբունքորեն չի կարող լինել նման բան: ՄԱԿ-ի Կանոնադրության 33-րդ հոդվածը հստակորեն ամրագրում է վեճերի խաղաղ կարգավորման ձևերը, իսկ միջազգային իրավունքը հստակեցնում է

դրանց բովանդակությունը: Լայն առումով *միջնորդությունը (mediation) հաշտեցման (conciliation)* ձևերից մեկն է: *Վեճերի խաղաղ կարգավորման Հաագայի կոնվենցիայի (1899թ.) 4-րդ հոդվածը* (*The Hague Convention on the Pacific Settlement of Disputes of 1899, Article 4*) միջնորդությունը սահմանում է որպես *«հակադիր պահանջների հաշտեցում» (reconciling the opposing claims)*: Միջազգային իրավագիտությունն պարզաբանում է սույն սահմանման բովանդակությունը և հստակեցնում միջնորդի դերը. *«միջնորդի հիմնական գործառույթը կողմերից բովանդակային առաջարկներ ընտրելը և դրանք հաշտեցնելու ուղի գտնելն է»:* (*main function is to elect substantive proposals from the parties and to find a way for reconciling them.*):[1]

Ակնհայտ է, որ միջնորդները որևէ բան որոշելու կամ վճռելու իրավունք չունեն: Նրանք միչևիսկ սեփական առաջարկներ ներկայացնելու իրավունքը չունեն: Նրանց լիազորությունները սահմանափակված են միայն հակամարտության կողմերի առաջարկները բանակցությունների առարկա դարձնելով և այդ առաջարկները հաշտեցնելով:

3. Урегулирование конфликта осуществляется на основе регионального соглашения – Хельсинкского Заключительного Акта СБСЕ от 1975 года. (Artur, Armenia Today) [Հակամարտության լուծումն իրականացվում է տարածաշրջանային համաձայնագրի՝ 1975թ.-ի ԵԱՀԿ Հելսինկիի եզրափակիչ ակտի, հիման վրա:]

Ինչո՞ւ: Ո՞նց իմացաք: Նախ՝ Հելսինկիի եզրափակիչ ակտն ընդամենը քաղաքական փաստաթուղթ է, սոսկ ժողովի արձանագրություն: Այն *«իրավականորեն ոչ պարտադիր համաձայնություն է» (legally non-binding agreement)*,[2] ընդամենը *«բարոյական հանձնառություն» (a moral commitment)*:[2] Այն իրավական փաստաթուղթ չէ, ըստ այդմ էլ գրանցված չէ ՄԱԿ-ի պայմանագրերի ռեգիստրում (UN Treaty Registry),[2] ինչը պարտադիր պայման է *«բոլոր պայմանագրերի և բոլոր միջազգային համաձայնագրերի»* համար [ՄԱԿ-ի Կանոնադրություն, հոդված 102]:

Հետո՝ Հելսինկիի եզրափակիչ ակտը վերաբերում է Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, Երկրորդ համաշխարհային պատերզամի հետևանքով Եվրոպայում առաջացած իրավիճակին: Այն ոչ մի կապ չունի նախկին ՍՍՀՄ տարածքում ՍՍՀՄ տրոհման հետևանքով առաջացած իրավիճակին: Բացի այդ, Գերմանիաների միավորումով, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի և ՍՍՀՄ տրոհումով, նախկին սոցիալիստական ճամբարի շատ երկրների՝ Եվրոմիությանը և ՆԱՏՕ-ին անդամակցումով, այն վաղուց արդեն ժամկետանց փաստաթուղթ է: Տվյալ փաստաթղթի

հիմնական նպատակը՝ երկու հակադիր ճամբարների միջև անվտանգության ու համագործակցության հարցերի կարգավորումը, այսօր ընդհանրապես գոյություն չունի, քանի որ գոյություն չունեն այդ ճամբարները: Նորից եմ կրկնում՝ փաստաթղթերը գործում են ամբողջության մեջ. չի կարող նույն փաստաթուղթը չգործել Բալկաններում, սակայն ուժ ունենալ Հարավային Կովկասում:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Louis B. Sohn, Peaceful Settlement of Disputes, in: R. Berhardt (ed.), Encyclopedia of Public International Law, Instalment 1 (1981), p. 156.
2. Daniel Thureer, Soft Law, in: R. Berhardt (ed.), Encyclopedia of Public International Law, volume IV (2000), p. 455.


*30 մարտի, 2011թ.*

## ՃԺԲ. Մարդու իրավունքների, պետքարտուղարության զեկույցի և մեր ապագայի մասին

Օրերս հրապարակվեց ԱՄՆ պետնախարարության՝ Հայաստանի մասով Մարդու իրավունքների զեկույցը՝ 63 էջ: Ի դեպ, Թուրքիայի մասն ընդամենը 46 էջ է, որը նշանակում է, որ ավելի քիչ բան կար գրելու: Սա այն դեպքն է, որ ինչքան քիչ գրեն, այնքան լավ: Ընդհանուր ակնարկը ցույց է տալիս, որ ամերիկացիների գրածը ճիշտ է: Գուցե ուրիշներն այլ շեշտադրումներ անեին, քան ամերիկացիները, այսուհանդերձ զեկույցի փաստական մասը և գնահատականները ճիշտ են: Հիմա ոմանք դեմքերին նորից զարմանքի արտահայտություն են տվել: Ինչո՞ւ: Ի՞նչ է, մենք չգիտեինք, թե ինչ է կատարվում մեր իրավապահ համակարգում, բանակում, խոսքի ազատության ոլորտում կամ գործարարության դաշտում: Մենք ամերիկացիներից ավելի լավ գիտեինք և գիտենք, պարզապես նրանց խոսքն ավելի ծանրակշիռ է և բնականաբար ազդեցությունն ավելի զորեղ: Սա իրողություն է, որը ժամանակակից աշխարհում որևէ իշխանություն չի կարող անտեսել:

Հիմա ուզում եմ անդրադառնալ որոշ հարակից հարցերի, որոնք էական են հենց զեկույցի ընկալման համար: Ձայներ են հնչում, որ որևէ պետություն իրավունք չունի միջամտելու այլ պետության ներքին գործերին: Համաձայն եմ, սակայն մարդու իրավունքները վաղուց արդեն պետությունների ներքին գործը չեն: Ներկայումս մարդու իրավունքերն ունեն համաշխարհային ընդգրկում և բնույթ: Պատահական չէ, որ այդ իրավունքները կոչվում են մարդու համընդհանուր իրավունքներ (Universal Human Rights): Բացի այդ, գրեթե բոլոր երկրները, այդ թվում նաև Հայաստանը, ստորագրել են մարդու իրավունքներին վերաբերող բազմաթիվ կոնվենցիաներ, ըստ այդմ իրենց պարտավորություններին տվել են իրավական ձևակերպումներ և ստանձնել են անսակարկ հանձնառություններ: Եթե երկրներ էլ կան, որ չեն ստորագրել նման փաստաթղթեր, թեև ես նման բան չեմ հիշում, միևնույն է, բոլորն են պարտավոր դրանք հարգել, քանի որ մարդու իրավունքները հարգելու նորմն արդեն միջազգային իրավունքի հիմնարար սկզբունք է (*jus cogens*):

Մյուս առարկության ձևն էլ այն է, որ սկսում են մեր երկիրը համեմատել հարևանների հետ կամ ընդհանրապես համեմատու-

թյուններ անել տարբեր երկրների միջև: Նախ, մարդու իրավունքները հարաբերական չեն, այլ բացարձակ արժեք են: Հետո, եթե ոմանց թվում է, որ մեզ խիստ են մոտենում և, եթե դա ճիշտ է, ուրեմն պետք է բողոքել ոչ թե խստության դեմ, այլ պահանջել, որ նույն խստությունը պահպանվի այլ երկրների նկատմամբ ևս:

Հիմա ամենակարևորի մասին: Ցավոք մեզանում չկա այն ընկալումը, որ մարդու իրավունքների հարցը Հայաստանի համար, գուցեև ի տարբերություն շատ այլ երկրների, կենսական կարևորության հարց է: Պարզաբանեմ միտքս: Օրինակ, վստահաբար Սոմալիում կամ Չադում մարդու իրավունքերի վիճակն ավելի վատ է: Սակայն մեր և նրանց միջև կա հսկայական տարբերություն, քանզի մեր առջև ծառացած խնդիրներն են ուրիշ: Նշածս երկրները կարող են մի 50 տարի ևս այս վիճակում գոյատևել այն հույսով, որ ի վերջո հետո լավ կլինի: Մենք այդ 50 տարին չունենք: Մենք 30 տարի էլ չունենք: Մեր երկիրն արագորեն մարդաթափ է լինում, կա բնակչության ծերացում, սաստկանում է բնակչության և կապիտալի արտահոսքը երկրից, ծայրահեղորեն մաշված են ենթակառուցվածքային բոլոր համակարգերը, խորանում է իշխանությունների նկատմամբ անվստահությունը, մարդիկ խորթանում են սեփական երկրից և այլն, և այլն: Քսան տարվա ընթացքում մենք արդեն սպառել ենք մեր ժառանգությունը: Գտնվելով նման աշխարհաքաղաքական վիճակում, ինչի մեջ ենք մենք և լինելով փաստացի պատերազմի վիճակում, այս ամենը կարող է ճակատագրական լինել ոչ միայն մեր պետության ապագայի, այլև հայ ժողովրդի հավաքական գոյության համար: Կան բազմաթիվ բռնապետական երկրներ, որոնք նավթ ու գազ ծախելով կարող են երկիր պահել: Մենք դրա հնարավորությունը չունենք: Մեր միակ ուղին օրենքի գերակայության և անխախտ ժողովրդավարության միջոցով մարդկանց և կապիտալի ներհոսքի ապահովումն է երկիր: Մարդկանց ստեղծագործ գործարարության բացահայտման համար պայմանների ստեղծումը: Այդ դեպքում գուցեև կկարողանանք դիմակայել ահագնացող վտանգներին: Սակայն քանի դեռ մեր իշխանությունները և ընդհանրապես հասարակությունը մարդու իրավունքերի պահպանումը չի ընկալել որպես կենսապահովման միջոց և երկրի կառավարման ամենաարդյունավետ ձև, այլ արևմտյան թիթիզություն կամ մութ ուժերի կողմից մեր դեմ պարզած դագանակ, մենք չենք կարողանա ապահովել առաջընթաց:

Ի՞նչ մեղքս թաքցնեմ: Ինքս հեշտությամբ չեմ եկել այս եզրա-հանգմանը: Առաջ մտածում էի, որ հասարակության զարգացման որոշակի փուլում հանուն ընդհանուր շահի կարելի է սահմանափակել մեկ անհատի իրավունքները: Սակայն փորձը ցույց տվեց, որ այդպես չի լինում: Քանի որ հասարակությունը բաղկացած է անհատներից, ուստի 1 մարդու իրավունքների ոտնահարումն ի վերջո բերում է ողջ հասարակության իրավունքների ոտնահարման:

Մարդու իրավունքների անշեղ իրականացումն է մեր ազգային և հասարակական բոլոր իղձերի, մեր դարավոր երազանքների կենսագործման անսասան հիմքը: Մենք պարզապես այլընտրանք չունենք, քանզի առանց մարդու իրավունքների պահպանման մենք պարզապես ապագա չունենք:

*10 ապրիլի, 2011թ.*

## ՃԺԳ. Միթե՞ պատմությունը կրկնվում է

*կամ*

## Նորից բանակցային տրամաբանությունը փոխելու անհրաժեշտության մասին

Հին, բայց ոչ հնացած խոսք է. պատմությունը կրկնվում է: 20-րդ դարում Ռուսական կայսրությունը 2 անգամ (թեև երկրորդ անգամ ՍՍՀՄ անվանումով) տրոհվեց՝ 1917-18թթ. և 1991թ.: 2 անգամ էլ Հարավային Կովկասում առաջացան պետություններ, 2 անգամ էլ տարակարծություններ առաջացան այդ պետությունների սահման-ների վերաբերյալ և 2 անգամ էլ այդ իրավիճակը հանգեցրեց պա-տերազմների: 2 անգամ էլ այդ պատերազմներում հայոց բանակը (նկատի ունեմ Հարավային Կովկասի մասով) հաղթող դուրս եկավ:

Առաջին անգամ միջազգային հանրությունը Հայաստանի Հան-րապետությանը համոզեց-պարտադրեց հայկական զինված ուժերը դուրս բերել Ղարաբաղից կամ նորերը չտեղակայել այնտեղ: Օրինակ, լայնորեն հայտնի է Արևելյան Անդրկովկասում Անտանտի երկրների զինված ուժերի հրամանատար բրիտանացի գեներալ Վիլյամ Թոմսոնի (William Thomson) 1918թ. դեկտեմբերի 2-ին (ինչպիսի խորհրդանշանական ամսաթիվ) ներկայիս Բերդաձոր գյուղում զորավար Անդրանիկին փոխանցված նամակի պատմու-թյունը: Նամակով Թոմսոնն Անդրանիկին հորդորում էր այլևս առաջ չշարժվել և չմտնել ԼՂ, քանի որ առաջիկայում Փարիզի խաղաղու-թյան վեհաժողովում քննարկվելու էր նաև Հարավային Կովկասի նորաստեղծ պետությունների սահմանների հարցը: Ակնարկն այն էր, որ պետք չէր ավելորդ բարդություն ստեղծել. առանց այդ էլ Արցախը հայաստանյան էր լինելու, քանի որ բացառապես հայաբնակ էր: Հետագայում ղարաբաղցիներն առանց Անդրանիկի էլ կարողացան ընդհանուր առմամբ պաշտպանել իրենց երկրամասը, իսկ Ադրբեջանի Հանրապետությունը, չնայած հավակնություններին և հոխորտանքին, երբեք՝ անգամ Թուրքիայի ռազմական օժանդա-կությամբ, ի վիճակի չեղավ լիակատար վերահսկում (effective control) սահմանել ԼՂ նկատմամբ: Նկատի ունեմ իհարկե մինչ այն պահը, երբ ղարաբաղցիները կերան բոլշևիկյան կուտը:

Թոմսոնը ճիշտ էր կամ մասամբ ճիշտ էր: Փարիզի վեհաժողովը որոշեց, որ Լեռնային Ղարաբաղը, ինչպես նաև Դաշտային Ղարա-

քաղի զգալի մասը, պիտի մաս կազմեին Հայաստանի Հանրապետությանը: Սակայն առանց այդ երկրամասում հայկական զորքերի առկայության արդյո՞ք այդ որոշումն ի կատար ածվեց:

Ներկայումս, հաշվի առնելով հետևանքները, կարելի է տարբեր մոտեցումներ ունենալ Անդրանիկի արարքի հանդեպ: Սակայն հիշենք ժամանակի իրավիճակը և համեմատենք ներկա իրավիճակի հետ. ա) Ադրբեջանի հիմնական դաշնակիցը և քաղաքական տատմերը՝ Թուրքիան, պատերազմում ջախջախիչ պարտություն էր կրել: Այսօր իրավիճակը բնավ այդպես չէ: բ) Ադրբեջանը, թեև հռչակել էր իր գոյությունը, սակայն այն գոյություն չուներ ոչ *de facto*, քանի որ չուներ արդյունավետ վերահսկում քիչ թե շատ նշանակալից որևէ տարածքի վրա և ոչ էլ *de jure*, քանի որ չուներ որևէ երկրի ճանաչում: Այսօր իրավիճակը բնավ այդպես չէ: Օսմանյան ճանաչումը տվյալ պահին չուներ իրավական հետևանք, քանի որ սույն կայսրությունն ինքն անվերապահ կապիտուլյացիայի հետևանքով (30.10.1918թ.) դադարել էր միջազգային իրավունքի սուբյեկտ լինելուց: գ) Միջազգային հանրությունը հակամարտությունների լուծման հիմք միանշանակորեն ընդունում էր ժողովուրդների ինքնորոշման սկզբունքը, որն առաջ էր քաշվել ԱՄՆ նախագահ Վիլսոնի կողմից իր հայտնի 14-կետանոց ուղերձի (*Fourteen Points*) մեջ 08.01.1918թ.: Այս անվիճելի սկզբունքն էր դրված բոլոր զինադադարների և նոր պետությունների սահմանների հիմքում: Այսօր իրավիճակը բնավ այդպես չէ: Ի դեպ, Ազգերի լիգայի՝ Հայաստանի սահմանները որոշող հանձնաժողովը 24.02.1920թ. հայ-վրացական և հայ-ադրբեջանական սահմանների մասով վերահաստատեց այս դիրքորոշումը: դ) Դաշնակից ուժերն Հարավային Կովկասում, ի սատարումն իրենց խոսքերի, ունեին 23 հազարանոց ուժեղ զորաբանակ: Այսօր իրավիճակը բնավ այդպես չէ: Խոսվում է խաղաղապահների մասին, որոնք, ըստ վերջին տասնամյակների դառն փորձի, ի վիճակի չեն եղել իրենց իսկ պաշտպանել կամ կատարել ստանձնած առաքելությունը Բալկաններում կամ Ռուանդայում:

Այս համեմատությունները կարելի է դեռ շարունակել և, ցավոք, դրանք չեն լինելու հօգուտ մեր ժամանակների: Տեսնենք՝ ի՞նչ ունենք հիմա, կամ ի՞նչ են մեզ առաջարկում: Առաջարկում են զորքերը դուրս բերել մեր իսկ երկրից (կասկածողներին խորհուրդ կտամ կարդալ Ազգերի լիգայի 1920թ. փետրվարի 24-ի զեկույց-առաջարկը)՝ դիմացը խոստանալով համոզել Ադրբեջանին չսկսել պատերազմ, գոնե մի քանի տարի: Իհարկե, պատերազմը բնավ ցանկալի զարգացում չէ:

Սակայն արդյո՞ք ազատագրված տարածքների հանձնումը երաշխավորում է խաղաղություն: Իհարկե՝ ոչ: Իմ խորին համոզմամբ այն ավելի է հավանական դարձնում պատերազմի վերսկսումը Ադրբեջանի կողմից: Եվ հակառակի նման, չկա և չի լինելու նախկին 23 հազարանոց զորաբանակը, որ կանխի այդ պատերազմը: Թեև, արդարության համար պետք է նշել, որ որևէ զորաբանակի տեղակայում մեր տարածաշրջանում տևական չի լինելու: Մյուս գործոններին չեմ էլ անդրադառնում՝ այնքան ակնհայտ են տարբերությունները:

Հիմա ամենակարևոր հարցը՝ ի՞նչ անել: Անել այն, ինչը նախատեսված է նման դեպքի համար: Դեռ ժամանակին հենց այսօրվա քաղաքական մեծավորները որոշել էին. Անդրկովկասի երկրներին տրվում էր խիստ սահմանափակ ժամանակահատված (որն ավարտվել է 22.11.1920թ.) փոխադարձ համաձայնությամբ սահմանավեճերը կարգավորելու համար: Փոխադարձ համաձայնությամբ հարցերը չլուծվելու պարագայում սահմանները որոշվում են Ազգերի լիգայի (ներկայումս՝ ՄԱԿ) հովանու ներքո գործող հանձնաժողովի իրավարարությամբ (arbitration) «*սկզբունքորեն հիմք ընդունելով ազգագրական փվյալները» (taking into account, in principle, of ethnographical data)*:[17] Այսօր այս սկզբունքը կարող է կիրարկվել 2 տարբերակով՝ նախնական (հիմք ընդունելով 1920թ. տարեվերջի ազգագրական տվյալները), որով ոչ միայն Լեռնային, այլև Դաշտային Ղարաբաղն էր ՀՀ մաս: Սակայն ՀՀ-ն Ադրբեջանին է զիջում մերձարաքսյան որոշ տարածքներ: Կամ, հաշվի առնելով վերջին 90 տարվա զարգացումները (հիմք ընդունելով ներկայիս ազգագրական պատկերը), որով ՀՀ-ին են անցնում հայկական ուժերի կողմից ներկայումս վերահսկվող տարածքները, իսկ Դաշտային Ղարաբաղի տիտղոսը ՀՀ-ն զիջում է Ադրբեջանին:

Այսօր ակնհայտ է, որ բանակցային գործընթացը, չնայած հայկական կողմերի բոլոր ջանքերին և քաղաքական չափազանց փափկանկատությանը, հայտնվել է փակուղու մեջ: Հիմնական պատճառն այն է, որ Ադրբեջանը պատրաստ չէ դյուզն իսկ զիջման: Ըստ էության, նա Լեռնային Ղարաբաղին առաջարկում է ավելի ցածր կարգավիճակ, քան ԼՂԻՄ-ն ուներ մինչև 1988թ.: Այստեղ պետք է շեշտել, որ միջազգային հանրությունը, հանձինս միջնոր-

---

[17] Report and Proposals of the Commission for the Delimitation of the Boundaries of Armenia, signed by representatives of British Empire, France, Italy, Japan. In: Arbitral Award of the President of the United States of America Woodrow Wilson (prepared by A. Papian), Yerevan, 2011, p. 106.

դական խմբի, ունի մեղքի իր բաժինը: Փոխանակ Ադրբեջանին պարտադրելու իրականացնել իր իսկ պարտավորությունները (լայն առումով՝ ժողովուրդների ինքնորոշման սկզբունքը հարգելու, իսկ ավելի նեղ առումով՝ զինադադարը հարգելու), իրականացնում է Ադրբեջանին սիրաշահելու խիստ վտանգավոր քաղաքականություն: Ի վերջո, խաղաղության պահպանմամբ ոչ միայն հայկական կողմերը պիտի շահագրգռված լինեն: Ադրբեջանի կորցնելիքը հաստատ ավելի շատ է լինելու և հետևանքն ավելի աղետալի: Նաև թող մի քիչ էլ Արևմուտքի գլուխը ցավի իր ներդրումների ապագայի համար: Հաստատ մետաղի ջարդոնի գինն ավելի նվազ է, քան նավթային աշտարակների կամ նավթա-գազամուղների:

Հասկանալի է, որ ներկայումս խիստ դժվար է փոփոխել բանակցային գործընթացի տրամաբանությունը, որի ակունքները գալիս են գրեթե 2 տասնամյակի խորքից: Սակայն այլ ելք չկա: Հատկապես քանի դեռ համաձայնեցված չէ ամբողջը, ուրեմն համաձայնեցված չէ ոչինչ: Երբեմն այլընտրանքի բացակայությունն է դառնում հիմնական շարժիչ ուժը, մեծ ջանքերի ու փոփոխությունների հիմնական մղիչը:

Ի վերջո, եթե աշխարհի քաղաքական մեծավորները այսօր պարաստ չեն կենսագործելու առնվազն 3 փաստաթղթի մեջ (տե՛ս՝ Հայաստանի սահմանները որոշող [Ազգերի լիգայի] հանձնախմբի զեկույցը և առաջարկները, 24 փետրվարի, 1920թ.; Սևրի պայմանագիր, հոդված # 92, 10 օգոստոսի 1920թ.; Վիլսոնի իրավարար վճիռ, հավելված 1, թիվ #2) ամրագրված իսկ որոշումները, ապա ի՞նչ երաշխիք, որ վաղը հավատարիմ կմնան իրենց այսօրվա կիսաբերան խոստումներին:

*21 հունիսի, 2011թ.*

## ՃԺԴ. Հայաստանի հանրապետությունների իրավահաջորդության հարցը միջազգային իրավունքի տեսանկյունից

Վերջին հարյուրամյակում եղել է հայկական 3 տարածքային միավոր (territorial entity), որոնց անվանման մեջ եղել է *«հանրապետություն»* բառը: Այս միավորների իրավահաջորդության հարցը, թեև առաջին հայացքից զուտ իրավագիտական բնույթի է, սակայն խորքի մեջ ունի էական դեր ՀՀ արտաքին քաղաքականության հնարավորությունների շրջանակն հստակեցնելու գործում:

Հարցն ունի 2 ընդգրկում՝ ՀՀ իրավահաջորդության հարցը.

1. Հայաստանի Խորհրդային (սովետական) Սոցիալիստական Հանրապետության նկատմամբ, և
2. Հայաստանի առաջին Հանրապետության (1918-1920թթ.) նկատմամբ:

Նախ ընդհանրապես պետությունների իրավահաջորդության մասին: *Պետությունների իրավահաջորդությունը խարսխված է տարածքի իրավատիրության վրա:* (State succession is based on legal possession of the territory.) Այսինքն, երբ որևէ նորաստեղծ պետություն ժառանգում է կամ այլ ձևով իր իրավունքն է հաստատում որոշակի տարածքի վրա, ապա այդ պետությունը ստանձնում է տվյալ տարածքին ամրագրված իրավունքներն ու պարտավորությունները: *Պայմանագրերի մասով պետությունների իրավահաջորդության մասին* Վիեննայի 1978թ. կոնվենցիայի և *Պետական գույքի, արխիվների և պարտքերի մասով պետությունների իրավահաջորդության մասին* Վիեննայի 1983թ. կոնվենցիայի համապատասխան հոդվածները (երկուսի մեջ էլ նույնական՝ #(2(1)(a)) պետությունների իրավահաջորդությունը (state succession) սահմանել են որպես *«մի պետության փոխարինումը մեկ այլով [այլ պետությամբ]՝ միջազգային հարաբերություններում <u>տարածքի</u> պատասխանատվության առումով» ("the replacement of one State by another in the responsibility for the international relations <u>of territory</u>"):*[1]

Այսինքն, իրավահաջորդության հիմքը տարածքն է, և իրավահաջորդության մասին հռչակագիրը կամ այլ համահունչ փաստաթուղթը բնավ պարտադիր պայման չէ իրավահաջորդության փաստի առկայության համար: Ավելին, անգամ հակառակի պնդումը,

այսինքն, առ այն որ նորաստեղծ պետությունը չի հանդիսանում նախորդ պետության իրավահաջորդը, բնավ չի ազատում տարածքի հաջորդ իրավատեր երկրին տարածքի նախորդ իրավատիրոջ պարտավորություններից: Այսպես, ՌՍՖՍՀ (հետագայում նաև ՍՍՀՄ-ը) կամ Թուրքիան ամեն կերպ ժխտում էին համապատասխանաբար Ռուսական կայսրության և Օսմանյան կայսրության իրավահաջորդը լինելը, սակայն, քանի որ նրանք երկուսն էլ ժառանգել էին իրենց նախորդող երկրների տարածքների հիմնական մասը, միջազգային հանրության կողմից համարվում էին նշյալ երկրների իրավահաջորդ երկրներ, և դա բազմիցս ամրագրված է միջպետական փաստաթղթերով, դատական վճիռներով ու միջազգային պրակտիկայով: Օրինակ, 2 երկրներն էլ տեր կանգնեցին իրենց նախորդների անշարժ գույքին արտասահմանում կամ ստանձնեցին և վճարեցին նախորդների պարտքերը:

Հիմա անդրադառնանք հարցի առաջին մասին՝ ՀՍՍՀ նկատմամբ ներկայիս ՀՀ իրավահաջորդությանը:

**Հայաստանի ներկայիս Հանրապետությունը չի հանդիսանում ՀՍՍՀ իրավահաջորդը**, ինչն անհիմն կերպով պնդում են ոմանք, այն պարզ պատճառով, որ *«[պետությունների] իրավահաջորդություն կարող է տեղի ունենալ միայն միջազգային իրավունքի առնվազն երկու սուբյեկտների (ենթակաների) միջև:» ([State] succession can only take place between at least two subjects of international law.)* [1]

Ակնհայտ է, որ ՀՍՍՀ երբեք չի եղել միջազգային իրավունքի սուբյեկտ ոչ միայն և ոչ այնքան այն պատճառով, որ այն երբևէ ճանաչված չի եղել արդեն օրինական ճանաչում ունեցող որևէ այլ պետության կողմից, այլև որովհետև երբևէ չի բավարարել պետականության 4 չափորոշիչներից և ոչ մեկին, որոնք ամրագրված են Մոնտեվիդեոյի (1933թ.) կոնվենցիայի մեջ:[2] Այն է՝ ա) ՀՍՍՀ չի ունեցել բնակչություն (ՀՍՍՀ-ում բնակվողները եղել են ՍՍՀՄ քաղաքացիներ), բ) ՀՍՍՀ չի ունեցել տարածք (եղածը ՍՍՀՄ տարածք էր), գ) ՀՍՍՀ չի ունեցել կառավարություն (եղածը ՍՍՀՄ կառավարության ստորաբաժանում էր) և դ) ՀՍՍՀ չի ունեցել օտար պետությունների հետ հարաբերությունների մեջ մտնելու կարողություն, քանի որ չի ունեցել այդ երկրներում հավատարմագրված արտակարգ և լիազոր դեսպաններ:

ՍՍՀՄ-ը եղել է դաշնակցային (ֆեդերատիվ) պետություն, այսինքն՝ բաղկացած որոշակի ներքին ինքնավարությամբ օժտված մի շարք վարչատարածքային միավորներից (տվյալ պարագայում՝

քառաստիճան), իսկ դաշնակցային պետությունը միջազգային իրավունքի տեսանկյունից ունի ընդամենը մեկ ինքնություն:[3]

Անդրադառնանք հարցի 2-րդ մասին՝ Հայաստանի առաջին և ներկա հանրապետությունների իրավահարաբերություններին:

Ինչպես նշել էինք վերը, իրավահաջորդությունն իրավական գործողություն է միջազգային իրավունքի սուբյեկտների (ենթակաների) միջև, այն է՝ *«իրավահաջորդությունը տեղի է ունենում միայն այն դեպքում, երբ միջազգային իրավունքի մի սուբյեկտ (ենթակա) ստանձնում է մյուսի իրավունքները» (A case of succession arises only when one subject of international law enters into the rights of another.)* [1] Հաշվի առնելով, որ իրավահաջորդությունը պայմանավորված է տարածքի օրինական իրավատիրությամբ, [իսկ ներկայիս Հայաստանի Հանրապետությունը կայացել է այն որոշակի տարածքի (կամ դրա մի մասի) վրա, որի վրա վերջին պետականությունը (միջազգային իրավունքի վերջին սուբյեկտը) եղել է 1918-1920թթ. Հայաստանի Հանրապետությունը,] ապա ներկայիս ՀՀ-ն ինքնին իր գոյությամբ կարող էր ստանձնել և ստանձնել է իր տարածքի վրա իրեն նախորդած պետականության իրավունքները:

Այսինքն, անկախ այն հանգամանքից, թե ՀՀ-ն ինչ իրավական դիրքորոշում է որդեգրել կամ ինչ հայտարարություն է արել իրավահաջորդության հարցի առնչությամբ, տարածքը ժառանգելու պատճառով և հենց դրա հիման վրա, այն հանդիսանում է առաջին հանրապետության իրավահաջորդը:

Այս անվիճելի դրույթն ունի լրացուցիչ փաստարկներ ևս: Խնդրո առարկա իրավահաջորդությունն ամրագրված է նաև ՀՀ հիմնարար փաստաթղթերում: Հայոց ներկա պետականության հիմնարար փաստաթղթերը երկուսն են՝ Հայաստանի Անկախության մասին հռչակագիրը և ՀՀ Սահմանադրությունը: Թեև սրանք առանձին փաստաթղթեր են, այսուհանդերձ գտնվում են երկմիասնության մեջ: Ըստ այդմ, երբ ՀՀ Սահմանադրությունը որպես հիմք է ընդունել *«Հայաստանի անկախության մասին հռչակագրում հաստատագրված հայոց պետականության հիմնարար սկզբունքները եւ համազգային նպատակները» (տե՛ս՝ ՀՀ Սահմանադրության նախաբանը)*, ապա դրանով իսկ Հռչակագրի մեջ ամրագրված դրույթներին տրվել է հիմնական օրենքի կարգավիճակ:

Հայաստանի Անկախության մասին հռչակագրի (23.08.90թ.) 5-րդ կետով, իսկ հղման միջոցով նաև ՀՀ Սահմադրությամբ, ամրագրված

է հետևյալը. *«Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը՝ արտահայտելով Հայաստանի ժողովրդի միասնական կամքը … զարգացնելով 1918 թվականի մայիսի 28-ին ստեղծված անկախ Հայաստանի Հանրապետության ժողովրդավարական ավանդույթները … հռչակում է անկախ պետականության հաստատման գործընթացի սկիզբը:»*

Այսինքն, հայոց նորանկախ պետությունն իրեն հռչակում է *«1918 թվականի մայիսի 28-ին ստեղծված»* պետականության շարունակությունը, քանի որ *«զարգացնել»* հայերեն առաջին հերթին նշանակում է՝ շարունակել:[4]

Անհրաժեշտ է ընդգծել, որ ՀՀ Սահմանադրության նախաբանի դրույթները, ինչպես նաև ՀՀ Անկախության մասին հռչակագրի պահանջներն ունեն իմպերատիվ (պարտադիր, անսակարկելի) բնույթ (տե՛ս՝ 2009թ. հոկտեմբերի 10-ին Ցյուրիխում ստորագրված հայ-թուրքական արձանագրությունների մասին ՀՀ Սահմանադրական դատարանի որոշման [12 հունվարի, 2010թ.] 5-րդ կետը):

Այսպիսով՝

- **Հայաստանի ներկայիս Հանրապետությունը չի հանդիսանում ՀՍՍՀ իրավահաջորդը:**
- **Հայաստանի ներկայիս Հանրապետությունը հանդիսանում է 1918-1920թթ. Հայաստանի առաջին հանրապետության իրավահաջորդը:**

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Wilfried Fiedler, State Succession, p. 641. [Encyclopedia of Public International Law, (ed. by R. Berhardt) v.4, Amsterdam, 2000, p. 641-656].
2. Montevideo Convention, Article 1: The state as a person of international law should possess the following qualifications: a ) a permanent population; b ) a defined territory; c ) government; and d) capacity to enter into relations with the other states.
3. Montevideo Convention, Article 2, The federal state shall constitute a sole person in the eyes of international law.
4. Էդ. Աղայան, Արդի հայերենի բացատրական բառարան, Երևան, 1976, հ. 1, էջ 364:

*22 հոկտեմբերի, 2011թ.*

## ՃԺԵ. Օսմանյան կայսրության և Թուրքիայի Հանրապետության իրավահաջորդության // շարունակականության հարցի շուրջ

Օսմանյան կայսրության և Թուրքիայի Հանրապետության իրավահաջորդության // շարունակականության (succession//continuity) հարցը, թեև առաջին հայացքից զուտ իրավագիտական բնույթի է, այսուհանդերձ, ըստ էության, ավելի լայն ընդգրկում ունի և վճռորոշ է Հայոց ցեղասպանության պատասխանատվության, ինչպես նաև Օսմանյան կայսրության միջազգային պարտավորությունների տեսանկյունից: Չնայած ներկայիս թուրքական պետության ներկայացուցիչները և նրանց տեսակետի սպասարկուները հաճախ փորձ են անում մոլորեցնել միջազգային հանրությանը Օսմանյան կայսրություն–Թուրքիայի Հանրապետություն իրավահաջորդության հարցում, սակայն միջազգային իրավունքն ու միջազգային դատական վճիռները միանշանակորեն հաստատել և ամրագրել են այդ իրավահաջորդությունը, մինչևիսկ՝ իրավական շարունակականությունը (legal continuity):

Նախ՝ ընդհանրապես պետությունների իրավահաջորդության մասին: Պետությունների իրավահաջորդությունը խարսխված է տարածքի իրավատիրության վրա: (State succession is based on legal possession of the territory.) Այսինքն, երբ որևէ նորաստեղծ պետություն ժառանգում է կամ այլ ձևով իր իրավունքն է հաստատում որոշակի տարածքի վրա, ապա այդ պետությունն ստանձնում է տվյալ տարածքին ամրագրված իրավունքներն ու պարտավորությունները: *Պայմանագրերի մասով պետությունների իրավահաջորդության մասին* Վիեննայի 1978թ. կոնվենցիայի և *Պետական գույքի, արխիվների և պարտքերի մասով պետությունների իրավահաջորդության մասին* Վիեննայի 1983թ. կոնվենցիայի համապատասխան հոդվածները (երկուսի մեջ էլ նույնական՝ # (2(1)(a)) պետությունների իրավահաջորդությունը (state succession) սահմանել են որպես *“մի պետության փոխարինումը մեկ այլով [այլ պետությամբ]՝ միջազգային հարաբերություններում **տարածքի** պատասխանատվության առումով”* (*“the replacement of one State by another in the responsibility for the international relations of **territory**”*):[1]

Հիմա թուրքական պետությունների իրավահաջորդության կամ շարունակականության մասին: Թուրքիայի Հանրապետությունը սաղմնային վիճակով միջազգային հարաբերությունների ոլորտ է

մուտք գործել Լոզանի պայմանագրով (24.07.1923թ.): Պայմանագրի նախաբանի մեջ, որտեղ շարադրված են պայմանագրի նպատակները, առաջին իսկ պարբերությամբ խոսվում է 1914թ.-ից տարածաշրջանում ընթացող պատերազմական վիճակին վերջ տալու համատեղ ցանկության մասին: (*Being united in the desire to a final close the state of war which has existed in the East since 1914.*): Երկրորդ պարբերությամբ խոսվում է բարեկամության և առևտրական հարաբերությունների *վերահաստատման* ձգտման մասին: (*Being anxious to re-establish the relations of friendship and commerce ...*).

Ակնհայտ է, որ Թուրքիայի Հանրապետությունը կարող էր ստորագրել Օսմանյան կայսրության հայտարարած, սկսած և վարած պատերազմին վերջ տալու պայմանագիրը միայն այն դեպքում, եթե ինքը և պայմանագրի մյուս մասնակիցները (Բրիտանական կայսրությունը, Ֆրանսիան, Իտալիան, Ճապոնիան, Ռումինիան, Հունաստանը) աներկբայորեն ընդունում էին Օսմանյան կայսրությանը՝ Թուրքիայի Հանրապետության իրավահաջորդ լինելը: Միջազգային իրավունքն այդ հարցում միանշանակ է. ամեն մի պետություն միջազգային հարաբերությունների մեջ կարող է մտնել, այդ թվում նաև՝ պայմանագրեր կնքել, միմիայն ի՛ր անունից: Այս դրույթն ամրագրված է Վիեննայի *Պայմանագրերի օրենքի վերաբերյալ* 1969թ. կոնվենցիայի (*Vienna Convention on Law of Treaties, 1969*) 34-րդ հոդվածում: Լոզանի պայմանագրի վերոնշյալ 2-րդ պարբերությունը խոսում է հարաբերությունների ոչ թե հաստատման, այլ *վերահաստատման* մասին: Այսինքն՝ ամրագրում է պետությունների նույնականությունն ու շարունակականությունը: Նույն՝ Լոզանի պայմանագրի, 1-ին հոդվածը խոսում է պաշտոնական հարաբերությունների *վերահաստատման* և ոչ թե՝ հաստատման մասին: (*Official relations will be resumed on both sides ...*).

Բացի վերոշարադրյալից, Թուրքիայի Հանրապետությունը Լոզանի պայմանագրով պայմանավորվող կողմերի հետ համաձայնությունների է եկել մի շարք հարցերի շուրջ, հստակեցրել որոշ տարածքների իրավական կարգավիճակը՝ հիմք ընդունելով Օսմանյան կայսրության կնքած պայմանագրերը: Մասնավորապես, պայմանագրի 12-րդ հոդվածով Թուրքիայի Հանրապետությունը *հաստատում է* (*confirm*) միջերկրածովյան մի խումբ կղզիների կարգավիճակը՝ հիմնվելով Լոնդոնի կոնֆերանսի 1914թ. փետրվարի 13-ի որոշման, Լոնդոնի 1913թ. մայիսի 17-30-ի պայմանագրի և Աթենքի 1913թ. նոյեմբերի 1-14-ի պայմանագրի վրա: Եթե Թուրքիայի

Հանրապետությունը չհանդիսանար Օսմանյան կայսրության շարունակությունը, ապա բոլոր նշյալ հարցերը պետք է կարգավորվեին առանձին, նոր պայմանագրերով: Թուրքիայի Հանրապետությունն իրավասու չէր հաստատելու կամ մերժելու որևէ պայմանագրի կամ համաձայնության որևէ դրույթ, որին ինքը մաս չի կազմել: Նույնը վերաբերում է Լոզանի պայմանագրի 14-22-րդ հոդվածներում քննարկված ինքնիշխանության հարցերին և տարածքային պատկանելության հստակեցումներին: Նաև Լոզանի պայմանագրի 99-րդ հոդվածում թվարկվել են բոլոր այն պայմանագրերն ու համաձայնագրերը, որոնք Լոզանի պայմանագրի հետ միաժամանակ կրկին անգամ (ուշադրություն դարձրեք՝ *կրկին անգամ*) ուժի մեջ են մտնելու (*shall enter again into force*), քանի որ Օսմանյան կայսրությանը պատերազմի հայտարարումով դրանք դադարեցրել էին իրենց լիազորությունները: Լոզանի պայմանագրի 2-րդ բաժինն ամբողջությամբ (1-ին բաժինը վերաբերում է Օսմանյան հանրային պարտքին (Ottoman Public Dept), իսկ 2-րդ բաժինն՝ այլ ֆինանսական հարցերի) Օսմանյան կայսություն-Թուրքիայի Հանրապետություն իրավահաջորդության աներկբա ապացույց է: Ի դեպ, Թուրքիայի Հանրապետությունը ստանձնել է Օսմանյան պարտքը և այն կարողացել է մարել միայն 1944թ. հունիսին:[2]

Այսու, ամփոփելով Լոզանի պայմանագրին առնչվող մասը, կարելի է լիովին համաձայնել միջազգային իրավունքի մեծագույն մասնագետներից Յան Բրոունլիի (Ian Brownlie) եզրակացությանն առ այն, որ Թուրքիան որպես քաղաքական նոր միավոր, ըստ Լոզանի պայմանագրի դրույթների, նույնական է Օսմանյան կայսրության հետ: (*Turkey as a new political entity was held to be identical with the Ottoman Empire in provisions of the Treaty of Lausanne.*) [3]

Լոզանում, բացի Խաղաղության պայմանագրից, նույն օրը կնքվել են նաև մի շարք այլ միջպետական փաստաթղթեր, որոնք դարձյալ վկայում են թուրքական կայսրության և հանրապետության իրավահաջորդության և շարունակականության մասին: Մասնավորապես, *Համաներման հռչակագրով և արձանագրությամբ* (*Amnesty Declaration, and Protocol*) Թուրքիայի Հանրապետությունը ներում է շնորհել Թուրքիայի բնակիչներին՝ 1914թ. օգոստոսի 1-ից մինչև 1922թ. նոյեմբերի 20-ը ժամանակահատվածում կատարած տարաբնույթ հանցանքների համար: Բնականաբար Թուրքիայի Հանրապետությունը ներում կարող էր շնորհել Օսմանյան կայսրության հպատակներին

կայսրության գոյության տարիներին կատարած իրավախախտումնե-րի համար, եթե հանրապետությունը հանդիսանում էր և ճանաչվում էր կայսրության իրավահաջորդը: Նույնը վերաբերում է *Օսմանյան կայսրության կողմից տրված որոշ առանձնաշնորհումների վերաբեր-յալ արձանագրության* (*Protocol relating to certain Concessions granted in the Ottoman Empire*) իրավահետևանքներին: Թուրքիայի Հանրապե-տությունը ոչ թե վերակնքել է տնտեսական բնույթի համաձայնու-թյունները կամ նախկին ընկերություններին վերաշնորհել է որոշակի առանձնահատուկ իրավունքներ, այլ նշյալ արձանագրության 1-ին հոդվածով պարզապես ընդունել է դրանց շարունակականությունը: (*Concessionary contracts and subsequent agreements relating thereto, duly entered into before 29 October 1914, between the Ottoman Government or any local authority, on the one hand, and nationals (including companies) of the Contracting Powers, other than Turkey, on the other hand, are maintained.*)

Օսմանյան կայսրություն–Թուրքիայի Հանրապետություն իրավա-հաջորդությունն ամրագրված է նաև իրավական վճիռներով: Այսպես, միջազգային իրավունքի մեծագույն մասնագետներից պրոֆ. Բորելը (Borel), ով իր՝ *Օսմանյան պարտքի իրավարարությունը* աշխատությունում (*Ottoman Debt Arbitration, 1925*) հանդես է եկել որպես իրավարար, հավաստում է Թուրքիայի Հանրապետության և Օսմանյան կայսրության միջազգային իրավական նույնականությունը: (*The Turkish Republic enjoys the same international personality as the Ottoman Empire.*)[4] Մեկ այլ իրավական որոշում, տվյալ դեպքում՝ դատական վճիռ, կրկին ամրագրում է Օսմանյան կայսություն–Թուրքիայի Հանրապետություն իրավահաջորդությունը: Ամստերդամի շրջանային դատարանն իր՝ *Ռոզելիուսն ու ընկ. ընդդեմ դկտ. Քարստենի և Թուրքիայի Հանրապետության* (*Roselius and Co. v. Dr. Karsten and the Turkish Republic intervening, 1926*) գործի վճռի մեջ միանշանակորեն ամրագրել է, որ թեև Թուրքիան այլևս կայսրություն չէ, և նրա չափսերն էապես կրճատվել են, այսուհանդերձ հանրապետությունը կայսրության իրավահաջորդն է: Ավելին, դատարանը որոշում է կայացրել, որ նոր հանրապետությունը նախորդ պետության շարունակությունն է և հանդիսանում է նախորդի բոլոր իրավունքների ու պարտավորությունների կրողը:[5] Կայսրություն–հանրապետություն իրավահաջորդությունն ամրագրված է նաև *Մավրոմատիս – Պաղեստինի առանձնաշնորհումները (դատավճիռ)* (*Mavrommatis – Palestine Concessions (Jurisdiction), 1924*) դատական գործում:[6]

Ըստ վերոշարադրյալի՝ անվարան կարելի է պնդել, որ իրավահաջորդությունը փոխանցվում է ոչ թե կառավարության կամ վարչախմբի գծով, այլ երկրի և բուն պետության. *«Միջազգային իրավունքներն ու պարտավորությունները պատկանում են պետություններին և ոչ թե կառավարություններին, նոր կառավարությունը "ժառանգում է" դրանք միայն այն առումով, որ դառնում է այն պետության կառավարությունը, որին վերաբերում են դրանք»: (International rights and obligations belong to states and not to governments, and the new government 'succeeds' to them only in the sense that it becomes the government of a state to which the are attached.)*

Ամփոփելով՝ կարելի է միանշանակորեն եզրակացնել, որ ներկայիս Թուրքիայի Հանրապետությունը հանդիսանում է Օսմանյան կայսրության իրավահաջորդը, հետևաբար լիովին կրում է Օսմանյան կայսրության ժամանակ և այդ կայսրության իշխանության ներկայացուցիչների կողմից հայ ժողովրդի նկատմամբ իրականացրած ցեղասպանության ողջ պատասխանատվությունը, ներառյալ ցեղասպանության հետևանքների վերացման պարտականությունը, այդ թվում՝ ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի Իրավարար վճռով ստանձնած հանձնառությունը:

*Հղումներ և ծանոթագրություն*


1. Wilfried Fiedler, State Succession, p. 641. [Encyclopedia of Public International Law, (ed. by R. Berhardt) v.4, Amsterdam, 2000, p. 641-656].
2. Оттоманский долг, Дипломатический словарь, т. 2, Москва, 1950, ст. 295.
3. Ian Brownlie, Principles of Public International Law, Oxford University Press, 5-th ed., 2001, p. 670.
4. Reports of International Arbitral Awards, v. 1, UN Publications, 1948, p. 573.
5. Annual Digest and Reports of Public International Law Cases, (Ed. by Lauterpacht, H.)1925-1926, Case No. 26. Ti-Chiang Chen, The International Law of Recognition, London, 1951, p. 57. Brierly J.L., The Law of Nations, An Introduction to the International Law of Peace, Oxford University Press, 1963 (sixth edition), p. 153. Krystyna Marek, Identity and Continuity of States in Public International Law, Geneve, 1968, p. 17.
6. Permanent Court of International Justice, ser. A. No. 2. A.W. Sijthoff's Publishing Co., Leyden. Thomas Buergenthal & Harold G. Maier, Public International Law, (2nd edition), St., Paul, Minn., West Publishing Co., 1990, p. 5.
7. Brierly J.L., The Law of Nations, An Introduction to the International Law of Peace, Oxford University Press, 1963 (sixth edition), p. 145.


*16 նոյեմբերի, 2011թ.*

## ՃԺՁ. Ամերիկայի Միացյալ Նահանգների սենատի կողմից Հայաստանի մանդատի քննարկման իրավական հետևանքների և հարակից հարցերի շուրջ

*"Ինչո՞ւ Վիլսոնը, որ գիտեր, որ իր սենատը երբեք չի ընդունիր մանդատը, ըսավ այո, ես կփորձեմ:"* Ռիչարդ Հովհաննիսյան, ԵՊՀ, 18.11.2011թ.

Այն, որ ԱՄՆ սենատը մերժելու էր Հայաստանի մանդատի ստանձնումը՝ ակնհայտ էր բոլորին, թերևս առաջին հերթին ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնին: Փորձառու և խորագետ իրավաբան Վիլսոնի համար պարզ էր, որ անգամ քաղաքական կամքի առկայության դեպքում բացակայում էր իրավական հիմքը, որը Միացյալ Նահանգներին թույլ կտար ստանձնել Հայաստանի մանդատը, քանի որ մանդատային համակարգը խարսխված էր Ազգերի լիգայի կանոնադրության (The Covenant of the League of Nations) 22-րդ հոդվածի վրա: Այսինքն, միայն այն երկրներն էին կարող ստանձնել որևէ մանդատ, որոնք մինչ այդ արդեն ընդունել էին հիշյալ Կանոնադրությունը կամ համընթաց պիտի ընդունեին: Ըստ այդմ, քանզի ԱՄՆ սենատը մինչ այդ հավանության չէր արժանացրել Ազգերի լիգայի կանոնադրությունը, (այն է՝ Վերսալի պայմանագիրը, որի անքակտելի 1-ին մասն էր [1-30 հոդվածներ] հենց խնդրո առարկա կանոնադրությունը) ցանկության դեպքում անգամ, իրավական հիմքերի բացակայության պատճառով, չէր կարող ստանձնել Հայաստանի մանդատը:

Հետևաբար, ինչո՞ւ էր Վիլսոնը 1920թ. մայիսին սենատ բերում Հայաստանի մանդատի հարցը, ինչո՞ւ էր հարվածի տակ դնում սեփական վարկը: Այդ քայլը բացատրել *"պատմության մեջ բարի գործ կատարած մարդու անուն թողնելու"* ցանկությամբ առնվազն անհամոզիչ է: Ընդհանրապես, Վիլսոնը պատմության մեջ մնալու առումով հայերի հույսին չէր, քանի որ Ազգերի լիգայի գաղափարի ջատագովության համար արդեն իսկ արժանացել էր 1919թ.-ի Նոբելյան խաղաղության մրցանակին:

Մինչև բուն պատասխանին անդրադառնալը անհրաժեշտ է մի հստակեցում ևս: Մանդատի մերժումը վնասելու էր Վիլսոնի հեղինակությանը, բայց ոչ՝ հայերի անվտանգությանը, ինչպես ներկայացնում են ոմանք: ԱՄՆ-ն Առաջին աշխարհամարտի ժամանակ պատերազմի մեջ չէր եղել Օսմանյան կայսրության դեմ: Հետևաբար, հայերին պաշտպանելու համար Սենատը, համաձայն ԱՄՆ

սահմանադրության 1-ին հոդվածի 8(11) կետի, նախ պիտի պատերազմ հայտարարեր Օսմանյան կայսրությանը: Մի բան, որը բացառվում էր սկզբունքորեն: Դրա մասին գիտեին բոլորը՝ և՛ հայերը, և՛ թուրքերը, հետևաբար մանդատի մերժումը որևէ նոր իրավիճակ չէր ստեղծում: Այս եզրակացության օգտին է խոսում նաև այն փաստը, որ քեմալականները Հայաստանի Հանրապետության դեմ հարձակումը սկսեցին ոչ թե մանդատի մերժումի լուրն առնելուն պես (իսկ մանդատը Սենատի կողմից մերժվել է 1920թ. հունիսի 1-ին),[1] այլ բոլշևիկների հետ 1920թ. օգոստոսի 24-ի փոխօգնության գաղտնի համաձայնագիրը կնքելուց հետո միայն:[2]

Հիմա անդրադառնանք բուն հարցին՝ ի վերջո ինչո՞ւ էր Վիլսոնը, ով ծանր առողջական վիճակի պատճառով հետզհետե կորցնում էր իր քաղաքական կշիռը, չարդարացված հարվածի տակ դնում իր վարկը: Իսկ միգուցե՞ այդ քայլն արդարացված էր և նպատակը ոչ թե մանդատի ընդունումն էր, այլ այդ հարցի ինքնին քննարկումը:

Հիշենք՝ ինչ վիճակ էր տիրում 1920թ. մայիսին Հարավային Կովկասում: Բոլշևիկյան 11-րդ բանակը 1920թ. ապրիլի վերջին արդեն գրավել էր Ադրբեջանը: Մայիսին Հայաստանում առաջին հեղաշրջման փորձն էր արվել: Անկախ Հայաստանի օրերը հաշվված էին: Ժամանակի ամերիկյան դիվանագիտական գրագրությունը միանշանակորեն ցույց է տալիս, որ ամերիկացիները լիովին տեղեկացված էին ստեղծված իրավիճակի մասին: Չկար որևէ ուժ, որն ի վիճակի լիներ դիմակայելու բոլշևիկաքեմալական հարձակմանը ՀՀ վրա: Միայն անսպասելի ռազմական զարգացումները լեհական ճակատում հետաձգեցին Հայաստանի վրա հարձակումը: 1920թ. ապրիլ-մայիսի լեհական հակահարվածը բոլշևիկներին ստիպեց հիմնական ուժերը տեղափոխել Արևմտյան ճակատ: Իսկ քեմալականները միայնակ չհամարձակվեցին հարձակվել ՀՀ վրա, քանի որ հայկական բանակը ապրիլ-մայիսին դեռևս բավարար չափով չէր բարոյալքվել բոլշևիկյան պրոպագանդայի քայքայիչ ազդեցության տակ:

Վուդրո Վիլսոնն իրատես քաղաքական գործիչ էր և ստեղծված իրավիճակում իր գործողությունները հետապնդում էին հիմնականում մի նպատակ՝ հնարավորինս ստեղծել և կայացնել ՀՀ իրավունքների մնայուն և անսասան իրավական հիմքեր, այն հույսով, որ մի օր ՀՀ-ն կվերագտնի իր անկախությունը և կկարողանա սեփական իրավունքներին տեր կանգնել՝ ապավինելով նշյալ հիմքերին: Հենց այս տրամաբանության մեջ պետք է դիտարկել նաև Հայաստանի

Հանրապետության և Թուրքիայի սահմանը որոշող Իրավարար վճռի կայացումը հայոց պետականության գոյության թեկուզև վերջին օրերին (22 նոյեմբերի, 1920թ.) և հատկապես այդ վճռի կնքումը Միացյալ Նահանգների պետական մեծ կնիքով:

Վուդրո Վիլսոնը նախագահ լինելուց առաջ, բառիս բուն և փոխաբերական իմաստով, նախ իրավագետ էր: Նա ԱՄՆ նախագահներից միակն է, որ գիտական աստիճան է ունեցել՝ այն էլ իրավագիտության դոկտորի կոչում: Որպես իրավագետ Վիլսոնը լավ հասկանում էր, որ սենատում Հայաստանի մանդատի հարցի մուտքագրումը և քննարկումը պիտի սենատի մակարդակով և նրա կողմից ամրագրի այն դրույթները, որոնց վրա խարսխված է մանդատային համակարգը և որոնց հիման վրա մանդատի հարցը ենթակա է քննարկման: Արդեն վերը նշել էինք, որ ընդհանրապես մանդատների համար հիմք էր հանդիսանում Ազգերի լիգայի կանոնադրության 22-րդ հոդվածը: Այդ հոդվածը մասնավորապես արձանագրում է, որ մանդատները հաստատվում են *“այն գաղութների և տարածքների վրա, որոնք վերջին պատերազմի <u>հետևանքով դադարել են լինել այն պետությունների գերիշխանության տակ,</u> որոնք նախկինում կառավարել են դրանք”: (To those colonies and territories which as a consequence of the late war <u>have ceased to be under the sovereignty of the States</u> which formerly governed them.)*

Այսինքն, մանդատ կարելի էր հաստատել միայն այն *“գաղութների և տարածքների”* նկատմամբ, որոնց վրայից արդեն իսկ վերացված էր նախկին գերիշխանությունը: Այսինքն, ԱՄՆ Սենատը, 1920թ. մայիսին քննության վերցնելով Հայաստանի մանդատի հարցը, այդ իսկ գործողությամբ, անկախ քվեարկության ելքից, հաստատում էր այն իրավական փաստը, որ խնդրո առարկա տարածքի վրայից վերցված էր թուրքական գերիշխանությունը *(sovereignty):* Հակառակ պարագայում սենատն իրավասու չէր քննարկելու որևէ երկրի գերիշխանության ներքո գտնվող տարածքի կարգավիճակի հարց: Հիշյալ 22-րդ հոդվածի 4-րդ պարբերությունը մասնավորեցնում է, որ մանդատային համակարգը վերաբերում է նաև *“որոշակի համայնքների, որոնք նախկինում պատկանել են Թուրքական կայսրությանը” (Certain communities formerly belonging to the Turkish Empire).* Այսինքն, հստակեցված է 2 դրվագ. առաջինը՝ մանդատային համակարգը վերաբերում է նաև *“Թուրքական կայսրությանը”,* և երկրորդ՝ Ազգերի լիգայի կանոնադրության ուժի մեջ մտնելու պահից (10.01.1920թ.) և

դրա հետևանքով, խնդրո առարկա տարածքների վրայից վերցված էին *“Թուրքական կայսրության”* տիտղոսն ու գերիշխանությունը (title and *sovereignty*) = *“նախկինում պատկանել են Թուրքական կայսրության” (formerly belonging to the Turkish Empire)*:

Ամփոփելով՝ կարող ենք ասել, որ ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի կողմից Հայաստանի մանդատի հարցի առաջադրումը, այնուհետև դրա քննարկումը և քվեարկությունը ԱՄՆ սենատում, անկախ քվեարկության ելքից, խնդրո առարկա տարածքի վրա թուրքական գերիշխանության բացակայության փաստի ամրագրում էր սենատի կողմից:

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Rayford W. Logan, The Senate and the Versailles Mandate System, Washington, 1945, p. 100-102.
2. Vemian V., Two Little Known Letters of Enver Pasha, Written from Moscow, The Armenian Review, vol. I, No. 3, Summer, July, 1948, p. 57.

*18 նոյեմբերի, 2011թ.*

## ՃԺԷ. Ցեղասպանությունների ժխտման քրեականացման մասին

Իմ երիտասարդության տարիներին մի խոսք կար՝ *դանիական կուփ ուտել*, այսինքն՝ կամավորապես ստանձնել ուրիշի համար ձեռնտու դիրքորոշում: Ճիշտն ասած՝ առ այսօր չգիտեմ՝ ինչո՞ւ էր կոչվում հատկապես դանիական: Բայց, որ այսօր որոշ մարդիկ կերել են թուրքական կուտը, դա ակնհայտ է: Իսկ ի՞նչ է թուրքական կուտը, դա ես արդեն գիտեմ, քանի որ Ֆրանսիայի Ազգային ժողովի վերջին քննարկումների առիթով ոմանք, մինչևիսկ հայեր, գրում էին և են, որ ցեղասպանությունների հանրային ժխտման քրեականացումը սխալ է, քանզի սահմանափակում է ազատ խոսքը, ինքնուրույն կարծիք ունենալու իրավունքը: Այդ ո՞ր օրվանից հանցագործության պաշտպանությունը դարձավ «խոսքի ազատություն» կամ «կարծիք ունենալ»: Գնացե՛ք, օրինակ, Կանադա և հանրայնորեն «կարծիք արտահայտեք» որ, օրինակ, սևամորթները կամ հայերը փնթի են կամ ալարկոտ: Գիտեք, չէ՞, ձեզ ինչ կանեն «ատելություն հրահրելու» (hate speech) համար. կհայտնվեք բանտում կամ կկրեք այլ պատիժ: Գերմանիայում ասե՛ք, որ Հիտլերն իր պատճառներն ուներ հրեաներին կոտորելու համար: Մի՛ ժխտեք Հոլոքոստը, այլ պարզապես փորձեք որոշակի արդարացում-հիմնավորում բերել դրա համար: Հետևանքները, կարծում եմ, ինձանից լավ գիտեք: Բա ո՞ւր մնաց «խոսքի ազատությունը»: Թե՞ որոշ մարդիկ կարծում են, որ հայերս ավելի ժողովրդավար ենք, քան կանադացիք կամ գերմանացիք:

Ընթացիկ երևույթները հասկանալու համար անհրաժեշտ է ընդգծել մի շարք կարևոր հանգամանքներ. ցեղասպանությունը, այդ թվում և հատկապես հայերի, զուտ պատմական անցք չէ, անցյալի իրադարձություն: Այն ծանրագույն հանցագործություն է, ինչպես բնութագրում են իրավագետները՝ «հանցագործությունների հանացագործությունը» (crime of the crimes), քանզի իր մեջ պարունակում է մի շարք ծանրագույն հանցագործություններ՝ սպանություն, բռնաբարություն, մանկապղծություն, ստրկավաճառություն, մարդուն ապօրինի ազատությունից զրկում, ուրիշի ունեցվածքի յուրացում կամ փչացում, մշակութային արժեքների ոչնչացում կամ յուրացում և այլն: Ըստ էության, այս հանցագործությունն իր մեջ ներառում է քրեական ողջ օրենսգիրքը: Հետևաբար, ցեղասպանության

հանրայնորեն ժխտումը հանցագործությունն արդարացնելու փորձ է, ըստ էության, հանցագործության խրախուսում է, իսկ դա արդեն ոչ միայն հանցակցություն է, այլև հանցագործություն: Կրկնում եմ, ցեղասպանությունը պատմական երևույթ չէ, որի մասին լինեն տարբեր կարծիքներ, այն հանցագործություն է, իսկ հանցագործությունն ունի միայն մեկ վերաբերմունք՝ դա պատիժն է, իսկ պատժի կիրառման անհնարինության դեպքում՝ դատապարտումը, որոնց նպատակներից է հանցագործության կանխարգելումը: Ոչինչ չի խրախուսում ոճրագործին և դրդում նրան նույն արարքը կրկնելու, որքան անպատիժ մնացած հանցագործությունը:

Ես վերը գրել էի. «ցեղասպանությունը, <u>այդ թվում և հատկապես հայերի</u>, զուտ պատմական անցք չէ, անցյալի իրադարձություն:» Ինչո՞ւ «հատկապես հայերի»: Շատ պարզ պատճառով, որովհետև հայերի ցեղասպանությունը միակ ցեղասպանությունն է, որը դեռ շարունակվում է, քանի որ սույն հանցագործության հետևանքներն ունեն շարունակական բնույթ: Բացատրեմ միտքս. բոլոր նախորդ ցեղասպանության մեղավորները այս կամ այն կերպ պատժվել են, զոհերը մասնակի կամ ամբողջական հատուցումներ են ստացել և դեռ ստանում են, այսինքն ցեղասպանության հետևանքները որոշակիորեն հաղթահարվել են: Հայերի ցեղասպանությունը միակն է, երբ ոչ միայն հանցագործները միջազգայնորեն պատժված կամ գոնե դատապարտված չեն (հայերի կողմից իրականացված արդարահատույց գործողությունները չեն կարող դիտարկվել որպես միջազգային), այլև ցեղասպանությունն ընթացքի մեջ է, քանի որ շարունակվում են ցեղասպանության հետևանքները: Հայաստանն այսօր շրջափակելի է դարձել ցեղասպանության պատճառով, ՀՀ-ն ցեղասպանության հետևանքով է կորցրել իր տարածքների զգալի մասը, հետևաբար կորցրել է զարգացման համար այդքան անհրաժեշտ ելքը դեպի ծով և կենսատարածքը, ինչպես նաև դարձել է ռազմականապես շատ ավելի խոցելի: ՀՀ քաղաքացիների զգալի մասն այսօր վատ է ապրում: Դրա համար կան բազում պատճառներ՝ այդ թվում բազմաթիվ ներքին: Բայց էական են, եթե ոչ վճռորոշ, արտաքին պատճառները: Իսկ արտաքին պատճառներից կարևորագույնը Հայոց ցեղասպանության մնայուն հետևանքներն են: Հետևաբար, քանի դեռ ցեղասպանության հետևանքները վերացված չեն, ՀՀ քաղաքացիները չեն կարող ունենալ ապահով և բարեկեցիկ կյանք: Իհարկե լավ կառավարման միջոցով կարելի է հասնել որոշա-

կի բարելավման, սակայն դա կլինի խիստ սահմանափակ, անկայուն և խոցելի: Մնացած տարաբնույթ խոսակցությունները կամ իշխանության գալու խաբեպատիր քարոզ են կամ ազնիվ ինքնախաբեություն: Երկրի հզորությունը, հետևաբար քաղաքացիների բարեկեցությունը, խիստ նյութական հասկացություն է և խարսխվում է նույնքան նյութական հասկացությունների վրա: Իհարկե կառավարման ձևը հույժ կարևոր է, անգամ ունի առօրյա նշանակություն, առանց որի հնարավոր չէ բնականոն կյանքը: Այն նման է թթխմորի, առանց որի չես կարող որակյալ հանապազօրյա հացդ ունենալ: Սակայն եթե չունես ցորեն կամ այն հողը, որի վրա պիտի աճեցնես ցորենը, թթխմորը դառնում է արագ փչացող ճոխություն:

Պետք է հասկանալ, որ Հայոց ցեղասպանության ճանաչումը, դատապարտումը կամ ժխտման քրեականացումը Հայոց ցեղասպանության հետևանքների վերացմանը նպատակաուղղած քայլեր են: Առավել ևս տվյալ պարագայում, երբ Ֆրանսիայում առաջին անգամ փորձ է արվում Հայոց ցեղասպանությունը դնել Հոլոքոստի հետ նույն հարթության վրա՝ այդտեղից բխող բոլոր իրավական հետևանքներով:

*22 դեկտեմբերի, 2011թ.*

## ՃԺԸ. Չինգիզ խանից մինչև Ֆյոդոր Մարտենս
*կամ*
## Ինչո՞ւ ամեն կոտորած դեռևս մարդկայնության դեմ հանցանք չէ, առավել ևս՝ ցեղասպանություն

Ֆրանսիայի Ազգային ժողովի կողմից ցեղասպանությունների ժխտման օրենսգծի ընդունումից հետո ավելի հաճախադեպ դարձավ մինչ այդ էլ հնչող այն միտքը, որ՝ եթե հայերի կոտորածները պետք է որակել որպես ցեղասպանություն, ապա ինչո՞ւ դա չի կարելի անել, ասենք, ամերիկյան հնդկացիների ոչնչացման կամ Չինգիզ խանի կոտորածների համար: Առաջին հայացքից տրամաբանական, բայց միանգամայն հիմնազուրկ պնդում:

Ցանկացած հասարակության մեջ որևէ արարք կարող է համարվել հանցանք, եթե տվյալ արարքը ոտնահարում է հասարակության կողմից ամրագրված այնպիսի հիմնադրույթ, որի ոտնահարումը տվյալ հասարակարգը որակել է որպես հանցագործություն: Ակներև է, որ միևնույն արարքը մի հասարակության մեջ կարող է դիտարկվել որպես հանցանք և պատժվել, օրինակ՝ ոգելից խմիչքի գործածումը Սաուդյան Արաբիայում, բայց միանգամայն օրինական, անգամ համատարած լինել, մեկ այլ հասարակության մեջ, օրինակ՝ Ռուսաստանում: Կամ, միևնույն արարքը կարող է օրինական լինել տվյալ հասարակության զարգացման որևէ ժամանակահատվածում, բայց կատարելապես անօրինական լինել մեկ այլ փուլում, օրինակ՝ ստրկատիրությունը և ստրկավաճառությունը Միացյալ Նահանգներում կամ նացիստական գաղափարախոսությունը Գերմանիայում: Հետևաբար, հանցագործություն հասկացությունը փոփոխական է ժամանակի և տարածության մեջ: Եթե խիստ պարզեցնենք հարցը և ներկայացնենք, օրինակ, քրեական իրավունքի տեսանկյունից, ապա կարող ենք ասել հետևյալը. եթե քրեական օրենսգրքում չկա տվյալ արարքին վերաբերող և այն որակող ու պատիժ նախատեսող հոդված, ապա տվյալ արարքն այդ հասարակության համար տվյալ ժամանակահատվածում հանցագործություն չէ: Նույն դրույթը սկզբունքորեն վերաբերում է նաև միջազգային հարաբերություններին և միջազգային իրավունքին:

Հնուց ի վեր պատերազմների ժամանակ խաղաղ բնակչության կոտորածները կամ այլ ձևով ոչնչացումը գրեթե համատարած է եղել: Դարեր շարունակ, ցավոք սրտի, բնական է ընկալվել ռազմագերինե-

րի կամ գրավված բնակավայրերի բնակչության կոտորածն ու ստրկացումը: Դա պատմության ցավալի, անգամ դատապարտելի, ընթացքն էր, սակայն այդ երևույթները երբեք չեն դիտարկվել որպես անօրինական, առավել ևս որպես հանցագործություն, քանի որ չեն եղել դրանք և նման արարքներն օրենքից դուրս հայտարարող միջազգայնորեն ճանաչված իրավական պայմանավորվածություններ և պարտավորություններ: Մինչև 1899թ., այսինքն մինչև Հաագայի 1-ին համաժողովը, պատերազմի ընթացքում խաղաղ բնակչության, ինչպես նաև կռվողների, հարցը դիտարկվել է որպես հակամարտության կողմերի կամ խնդրո առարկա երկրի ներքին հարց: Նշյալ հարցերի վերաբերյալ իրավական գնահատականներ կարող էին տրվել միայն ներքին օրենսդրության տեսանկյունից կամ երկկողմ համապատասխան փաստաթղթերի և պայմանավորվածությունների հիման վրա, եթե իհարկե այդպիսիք կային: Եվ միայն 1899թ. հուլիսի 28-ին Հաագայում ստորագրված *Ցամաքում պատերազմի օրենքների և սովորույթների վերաբերյալ երկրորդ միջազգայնագրի (կոնվենցիայի)* (Convention (II) with Respect to the Laws and Customs of War on Land) 1900թ. սեպտեմբերի 4-ին[1] ուժի մեջ մտնելուց հետո էր, որ *"ազգաբնակչությունը և կռվողները" (populations and belligerents)* դրվեցին միջազգային իրավունքի պաշտպանության և իրավասության ներքո:

1899թ. վերոհիշյալ միաջազգայնագրի նախաբանում ամրագրված է հետևյալը. *"Մինչև պատերազմի մասին ավելի ամբողջական վարքականոնի ընդունումը, Բարձր պայմանավորվորող կողմերը հարկ են համարում հոչակել, որ այն դեպքերում, որոնք ներառված չեն նրանց կողմից ընդունված Կանոնակարգի մեջ, <u>ազգաբնակչությունը և կռվողները մնում են միջազգային իրավունքի այն սկզբունքների պաշտպանության և իրավասության ներքո</u>, որոնք բխում են քաղաքակիրթ ազգերի միջև հաստատված սովորույթներից, մարդկայնության օրենքներից և հանրային խղճի պահանջներից:" (Until a more complete code of the laws of war is issued, the High Contracting Parties think it right to declare that in cases not included in the Regulations adopted by them, <u>populations and belligerents remain under the protection and empire of the principles of international law</u>, as they result from the usages established between civilized nations, from the laws of humanity, and the requirements of the public conscience.)*

Ի միջի այլոց, Հաագայի համաժողովի կողմից ամրագրված վերոհիշյալ իրավական դրույթը միջազգային իրավունքում հայտնի է

*Մարտենսի հիմնադրույթ // վերապահում (Martens Clause, оговорка // декларация Мартенса)* անունով:[2] Այն այդպես է կոչվում ի պատիվ հիշյալ դրույթի հեղինակ, գերմանական ծագումով ռուսաստանցի իրավագետ, Հաագայի համաժողովում Ռուսաստանի կայսրության լիազոր ներկայացուցիչ, Ֆրիդրիխ Մարտենսի (Friedrich Fromhold Martens, Фёдор Фёдорович Мартенс, 1845-1909):

Անհրաժեշտ է ընդգծել, որ Թուրքիան եղել է սույն միջազգայնագիրը ստորագրած հիմնադիր անդամների թվում և խնդրո առարկա փաստաթուղթը վավերացրել է 1907թ. հուլիսի 12-ին:[3] Ի դեպ, հենց այս փաստաթուղթն ու այդ փաստաթղթի՝ Թուրքիայի կողմից վավերացված լինելն է, որ Դաշնակից տերություններին (Ֆրանսիա, Բրիտանական կայսրություն և Ռուսաստան) հիմք տվեց 1915թ. մայիսի 24-ին Թուրքիային մեղադրելու "*մարդկայնության և քաղաքակրթության դեմ հանցանքների" (Crimes against humanity and civilazation)* մեջ:[4] Ի ցավ մեզ, սա միջազգային հարաբերությունների մեջ միջազգային իրավունքի սույն ձևակերպման առաջին կիրառման դեպքն էր:[5]

**Այսպիսով, թեև մինչև 1900թ. պատմության մեջ եղել են բազմաթիվ դեպքեր, որոնք իրենց բնութագրիչներով համապատասխանում են մարդկայնության դեմ հանցաքների (crimes against humanity) տարատեսակներին՝ թերևս նաև ցեղասպանությանը, այսուհանդերձ դրանք միջազգային իրավունքի տեսանկյունից չեն կարող որակվել որպես այդպիսիք, քանզի դրանց իրավական որակում տվող և դատապարող միջազգային փաստաթուղթն ուժի մեջ է մտել միայն 1900թ.-ից:**

*Հղումներ և ծանոթագրություն*

1. The Laws of Armed Conflicts, A Collection of Conventions, Resolutions and Other Documents, [ed. D. Schindler & J. Toman], Leiden/Boston, 2004, p. 56.
2. Manual of the Terminology of the Armed Conflicts and International Humanitarian Organizations, [ed. by I. Paenson] Brussels, 1989, pp. 126-127.
3. The Hague Court Reports, [ed. James Brown Scott], New York, 1916, p. CII.
4. United Nations War Crimes Commission, History of the United Nations War Crimes Commission and the Development of the Laws of War, London: His Majesty's Stationary Office, 1948, p. 35.
5. Benjamin B. Ferencz, Crimes Against Humanity, Encyclopedia of Public International Law, [ed. Rudolf Berhardt] v. I, Amsterdam, 1992, p. 870.

*25 դեկտեմբերի, 2011թ.*

## ԱՄՓՈՓՈՒՄ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԻ ԼՈՒԾՄԱՆ ՀԱՅԵՑԱԿԱՐԳ

### ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԻ ԼՈՒԾՈՒՄԸ ՈՐՊԵՍ ՀԱՅՈՑ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԶՈՐԱՑՄԱՆ ԵԶԱԿԻ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ ԵՒ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՐԱՏԵՎՄԱՆ ՄԻԱԿ ՈՒՂԻ

Եւ եղիցին գործք արդարութեան խաղաղութեամբ. եւ կալցի արդարութիւն զհանգիստ. եւ յուսացեալքն եղիցին՝ մինչեւ յավիտեան:

***Մարգարէութիւն Եսայեայ, գլ. ԼԲ, 17-18***

Եւ արդարության գործը կլինի խաղաղություն, և արդարության արդյունքը՝ հանգիստ ու հավիտյան ապահովություն:

***Եսայիայի մարգարեությունը, գլ. ԼԲ, 17-18***

# Հայկական հարցի լուծման հայեցակարգ

Պետականությունը հասարակության կազմակերպման բարձրագույն ձևն է: Ազգային պետականությունը՝ ազգի՛ կազմակերպման բարձրագույն ձևը, ազգի առջև ծառացած խնդիրների լուծման հնարավորությունը, նրա դեմ ուղղված անվտանգության մարտահրավերների չեզոքացման ամենաարդյունավետ միջոցը: Ազգային պետությունն է տվյալ ազգի լինելիության գրավականը, ազգային ինքնության պահպանման ու տնտեսական զարգացման անսասան հիմքը: Ըստ այդմ, երբ ազգային գոյության, ինքնության պահպանման և տնտեսական զարգացման տեսանկյունից ենք քննում արդի հայոց պետականությունը, ապա ակնհայտ է դառնում, որ առանց Հայկական հարցի լուծման հայոց արդի պետականությունը ներկա սահմաններով և ներկա ձևով ոչ միայն ի զորու չէ և ի զորու չի լինելու երաշխավորելու վերոհիշյալ գործառույթների իրագործումը, այլև խիստ խնդրահարույց է մնալու նրա՝ որպես պետական ինքնիշխան և ինքնուրույն միավորի հարատևելու հնարավորությունը: Ընդսմին, Հայոց հարցի մասնակի լուծումը (օրինակ, միայն արևելյան սահմանների, այսինքն՝ Արցախի առումով) չի լուծելու հայոց պետականության առաջ կանգնած հիմնախնդիրները և չի չեզոքացնելու մեր գոյությունը վտանգող մարտահրավերները:

## 1. Հայկական հարցի լուծման բուն նպատակը

Ներկայումս Հայաստանի Հանրապետությունը կանգնած է լուրջ մարտահրավերների առջև: Հայկական հարցի լուծումը, այն է՝ ՀՀ և հայ ժողովրդի իրավունքների վերահաստատումն ինքնանպատակ չէ: ՀՀ-ն՝ որպես քաղաքական ինքնուրույն և արժանապատիվ միավոր, կա՛մ կարող է գոյություն ունենալ միայն իր անօտարելի և անժամանցելի իրավունքների հաստատումով, կա՛մ ընդհանրապես չի կարող գոյություն ունենալ՝ որպես այդպիսին:

***Հայկական հարցի լուծման բուն նպատակը հայոց կենսունակ պետականության ստեղծումն է, անվտանգության և զարգացման համար անհրաժեշտ նվազագույն պայմանների ապահովման ճանապարհով հայերի՝ որպես մարդկության անբաժանելի և ինքնատիպ հատվածի հարատևման ապահովումը:***

**2. Հայկական հարցի լուծման հրամայականը**

Առանց հայկական հարցի լուծման հայոց պետականությունը կմնա քաղաքականապես անհաստատ, ռազմականապես խոցելի, տնտեսապես կախյալ և հոգեբանորեն վեհերոտ: Հարցականի տակ կդրվի հայոց պետականության ինքնին իմաստը, քանի որ այն կունենա զուտ ձևական բնույթ և չի լուծի պետականության հիմնական խնդիրները.

- Պետության ինքնիշխանության և այդ պետության քաղաքացիների անվտանգության ապահովում,
- Երկրի տնտեսական զարգացման և այդ երկրի քաղաքացիների բարեկեցության համար նպաստավոր պայմանների ստեղծում;
- Նախորդ երկուսի հենքի վրա՝ այսինքն՝ ապահով և բարեկեցիկ երկրի մեջ, ազգային ինքնության և մշակույթի զարգացում:

Ընդսմին, Հայկական հարցի լուծումը կենսական կարևորություն ունի ոչ միայն հայոց պետականության համար, այլև սեփական հայրենիքում որպես հավաքական հանրություն ապրելու հայ ժողովրդի ընդհանրական իրավունքի կենսագործման համար:

**3. Հայկական հարցի լուծման հրատապությունը**

Այսօր ՀՀ առջև ծառացել են լուրջ մարտահրավերներ, առանց որոնք հաղթահարելու երկիրը չի կարող հասնել կայուն կենսաապահովման: Հայկական հարցի որոշակի լուծումը հնարավորություն կտա.

- Չեզոքացնել կամ թերևս ՀՀ քաղաքական կամքից լուրջ կախվածության մեջ դնել, մեր երկիրը շրջանցել ու մեկուսացնել ձգտող այնպիսի ծրագրեր, ինչպիսիք են. Բաքու-Թբիլիսի-Ջեյհան նավթամուղը, Բաքու-Թբիլիսի-Էրզրում գազամուղը և Կարս-Ախալքալաք-Թբիլիսի երկաթուղին:
- Նվազագույնի հասցնել Թուրքիայի բացասական ներգրավվածությունը ղարաբաղյան հակամարտության մեջ և ստիպել նրան առավելապես կենտրոնանալ սեփական խնդիրների վրա:
- Առանց քաղաքական կամ այլ զիջումների բացել, այսպես կոչված, հայ-թուրքական սահմանը: Ապահովել Տրապիզոն նավահանգստի և դեպի այն տանող ճանապարհի օգտագործումն անվճար կամ արտոնյալ սակագներով:
- Հայ-վրացական հարաբերություններին հաղորդել նոր բնույթ: Համարժեք լծակի միջոցով դուրս բերել Հայաստանը բեռնափոխադրումների հարցում Վրաստանից ունեցած միակողմանի

կախվածությունից: Էական լծակներ ձեռք բերել Վրաստանի և Թուրքիայի հարաբերությունների վրա:

- Հիմքեր ստեղծել տարածաշրջանում Հայաստանի առաջանցիկ տնտեսական զարգացման համար՝ ապահովելով ներդրումների և եկամուտների նոր, ոչ ավանդական աղբյուրներ: Հայ-թուրքական դիմակայությունը, որը մինչ այժմ մեզ համար եղել է միջոցներ սպառող կամ միջոցներ ստեղծելուն խոչընդոտող, վերափոխել, հեղաշրջել և դարձնել միջոցներ տրամադրող:
- Հաշվի առնելով ամերիկա-թուրքական ներկա լարվածությունը՝ այն դարձնել եթե ոչ անշրջելի, ապա գոնե տևական: Ամերիկա-թուրքական հարաբերությունների մեջ ներդնել նոր գործոն:
- Վերարծարծել ԱՄՆ, եվրոպական և ոչ եվրոպական մի շարք ազդեցիկ երկրների՝ ՀՀ նկատմամբ իրավական, քաղաքական և բարոյական պարտավորությունների հարցը:
- Հաշվի առնելով Թուրքիայի շարունակական ձգտումը անդամակցելու Եվրոպական Միությանը և ԵՄ մի շարք երկրների՝ դրան ընդդիմանալու բացահայտ կամ ծածուկ ճիգերը, եվրոպացիների գործածության համար քաղաքական շրջանառության մեջ մտցնել Թուրքիայի անդամակցության նոր չափորոշիչ:
- Իրավական և քաղաքական հիմքեր նախապատրաստել, որպեսզի աշխարհաքաղաքական հետագա և անխուսափելի տեղաշարժերից ոչ միայն չտուժենք, այլև օգտվենք:

Հույժ հրատապ և խիստ կարևոր են ՀՀ շարունակական քայլերը՝ հայոց իրավունքներին տեր կանգնելու ուղղությամբ: Պատեհապաշտ հայտարարություններն ու պահանջատիրական քայլերի տևական բացակայությունը կարող են լուրջ խնդիրներ ստեղծել հետագայում: Հայկական հարցն անտարբերության մատնելու և պահանջատիրության ուղղությամբ քայլեր չձեռնարկելու ՀՀ արդեն գրեթե 2 տասնամյակ տևող քաղաքականությունն առաջիկայում Թուրքիային հնարավորություն կտա վկայակոչելու *էստոպելի* կիրարկումը (այսինքն, երբ ՀՀ իր գործողություններով կամ դրանց բացակայությամբ ցույց է տալիս, որ հաշտվել է ստեղծված իրավիճակի հետ) և դրանով իսկ էապես հակազդելու հայոց հետագա հնարավոր պահանջներին:

### 4. <u>Հայկական հարցի լուծման ուղին</u>

Հայկական հարցի լուծումն ունի միայն մեկ ուղի. դա խաղաղ միջոցներով, փոխզիջումների ճանապարհով, հետևողական և տևա-

կան աշխատանքի շնորհիվ արդյունքի հասնելու ուղին է: Միևնույն ժամանակ, հաշվի առնելով, որ ՀՀ և հայ ժողովրդի հավաքական ներուժը քաղաքական, տնտեսական կամ ռազմական ոլորտներում զիջում է և դեռ զիջելու է Թուրքիայի ու Ադրբեջանի, ինչպես նաև նրանց քաղաքական հոլովույթի մեջ աքցանված Վրաստանի, ընդհանուր ներուժին, ուստի անհրաժեշտ է պայքարի ու դիմակայության ողջ գործընթացը տեղափոխել այլ ոլորտ, ուր ՀՀ-ն ոչ միայն չի զիջում նրանց, այլև ունի շոշափելի առավելություն:

***Այսինքն, անհրաժեշտ է Հայաստանի Հանրապետության և նրա իրավունքները ոտնահարած երկրների միջև եղած հարաբերությունները տեղափոխել միջազգային իրավունքի դաշտ և այդ հարաբերություններում առկա բոլոր խնդիրներին տալ իրավական ձևակերպումներ և լուծումներ:***

## 5. Հայկական հարցի էությունը ներկա փուլում

Որպես միջազգային հարց և քաղաքական խնդիր՝ Հայկական հարցն ունեցել է մի քանի փուլ: Սկզբնավորվելով որպես Օսմանյան կայսրության հպատակ հայերի անհատական և հավաքական անվտանգության և արժանապատվության հարց՝ այն աստիճանաբար վերաճել է հայոց պետականության և այդ պետականության ոտնահարված իրավունքների վերահաստատման հարցի:

***Ներկա փուլում Հայկական հարցն արդի Հայաստանի Հանրապետությանը միջազգային իրավունքով հատկացված կամ վերապահված տարածքային, նյութական և բարոյական իրավունքների վերականգնումն է:***

## 6. Հայկական հարցի լուծման փուլայնությունը

Հայկական հարցի լուծման ողջ գործընթացը կարելի է բաժանել երեք հաջորդական և փոխլրացնող փուլերի.

***ա. Նախնական փուլ.*** Հայկական հարցի (չշփոթել Հայոց ցեղասպանության հետ) լուծմանը նպատակամղված փաստաթղթերի հավաքման, հետազոտման ու համադրման փուլ: Այս փուլի վերջնական արդյունքը պետք է լինի Հայկական հարցին (այլ ոչ թե նրա չեզոքացմանն ուղղված թուրքական հանցագործությանը՝ Հայոց ցեղասպանությանը) վերաբերող և հայոց պահանջատիրությունը հիմնավորող փաստաթղթի ժողովածուների պատրաստումը, այդ ժողովածուների տարածև և բազմալեզու հրապարակումը: Այս փաստաթղթերի մեջ առաջնահերթությունը պատկանում է ԱՄՆ նախագահ Վուդրո

Վիլսոնի՝ Հայաստանի և Թուրքիայի միջև սահմանը որոշող իրավարար վճռի և առդիր զեկույցի, ինչպես նաև հարակից պաշտոնական փաստաթղթերի ամբողջական հրապարակմանը: Պետք է հետևողական աշխատանք իրականացնել այդ հարցի մասին հանրությունն իրազեկելու և տեղեկացնելու ուղղությամբ:

***բ. Միջին փուլ.*** Այս փուլում անհրաժեշտ կլինի ներգրավել միջազգային իրավունքի, դատական վարույթի և ընթացակարգերի հեղինակավոր մասնագետների, փորձառու գործող իրավաբանների: Փուլի վերջնական արդյունքը պետք է լինի իրավագիտության տարբեր ոլորտների խորագետների մասնակցությամբ ՄԱԿ-ի Միջազգային դատարանում դատական գործի պատրաստումն ընդդեմ Թուրքիայի Հանրապետության (ԹՀ): Այս փուլում նպատակահարմար կդառնա համահայկական ներկայացուցչական կառույցի գումարումը: Կկայանորվի հարցն ուսումնասիրող, հետամտող և հանրայնացնող մասնագիտացված կենտրոնի ստեղծումը:

***գ. Վերջնական փուլ.*** Դատական հայցի առաջադրման և դատընթացի սկզբնավորման այս փուլում պետք է ապահովել ՀՀ՝ որպես հայոց պահանջատիրության հիմնական իրավունքների առաջնային կրողի լիակատար ընդգրկումը գործընթացի մեջ: Հասնել այն բանին, որ ԹՀ կողմից միջազգային իրավունքը ոտնահարելու և ստանձնած միջազգային պարտավորությունները չկատարելու հարցն ներառվի ՄԱԿ-ի Միջազգային դատարանի օրակարգ (տվյալ կառույցի Կանոնակարգի #36 հոդվածի 2-րդ կետի շրջանակում): Փուլի վերջնական արդյունքը պետք է լինի ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդում (ՄԱԿ-ի Կանոնակարգի #34 և #35 հոդվածների շրջանակում) ԹՀ ստանձնած միջազգային պարտավորությունների չկատարման հետևանքով տարածաշրջանային խաղաղությանն ու անվտանգությանը սպառնացող վտանգների հարցի քննարկումը, ինչպես նաև գործնական քայլերի նախաձեռնումն իրավիճակը շտկելու ուղղությամբ: Այսինքն՝ միջազգային օրենքի շրջանակում պարտադրել ԹՀ-ին, ինչպես նաև այլ հանձնառու երկրներին, կյանքի կոչելու ստանձնած պարտավորությունները, որոնք մասնավորապես ներառված են Վիլսոնի՝ 22 նոյեմբերի 1920թ. իրավարար վճռի մեջ, և ապահովելու միջազգային օրենքի լիակատար իրագործումը տարածաշրջանում և օրենքի ոտնահարման հետևանքով առաջացած հետևանքների ամբողջական հաղթահարումը:

7. <u>Հայկական հարցի բովանդակությունը ներկա փուլում</u>

Հայկական հարցը ներկա փուլում ունի 3 հիմնական բաղադրիչ՝ տարածքային, նյութական և բարոյական: Հետևաբար, Հայկական հարցը կարելի է լուծված համարել միայն նշյալ 3 բաղադրիչներից բխող խնդիրների լիակատար լուծման՝ այն է՝ ամբողջական կամ մասնակի հատուցման դեպքում:

***ա. Հայկական հարցի տարածքային բաղադրիչը.*** Վերոնշյալ եռամիասնության մեջ տարածքային բաղադրիչն ամենաէականն է: Թեև 1920-23թթ. ՀՀ-ն ունեցել է տարածքային զգալի կորուստներ, այսուհանդերձ դրանք ոչ թե *de jure*, այլ միայն *de facto* կորուստներ են: Այսինքն՝ չնայած այդ տարածքները բռնազավթվել են (occupied) օտար ուժերի կողմից և հետագայում բռնակցվել են (annexed) այլ երկրների՝ բայցևայնպես ՀՀ-ն շարունակում է պահպանել դրանց տիտղոսը և դրանց նկատմամբ իր ունեցած օրինական իրավունքները, քանի որ ՀՀ տարածքային իրավունքները խարսխված են միջազգային իրավունքի անբեկանելի սկզբունքների, պետությունների կողմից ստանձնած պարտավորությունների, ինչպես նաև կատարման համար պարտադիր վճիռների և իրավական փաստաթղթերի վրա:

ՀՀ տարածքային իրավունքները հստակեցնող և տիտղոսն ամրագրող փաստաթղթերից կարևորագույնը ԱՄՆ նախագահ Վուդրո Թոմաս Վիլսոնի՝ Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի միջև սահմանը որոշող Իրավարար վճիռն է (Arbitral Award)՝ կատարված և ուժի մեջ մտած 1920թ. նոյեմբերի 22-ին: Սույն իրավական փաստաթղթով ՀՀ տիտղոսը ճանաչվեց և իրավունքները հաստատվեցին հայության բնօրրան-հայրենիքի մի փոքր մասի՝ նրա հյուսիս-արևելյան հատվածի վրա: Իրավարար վճիռն իր կայացման և ուժի մեջ մտնելու իսկ պահից (22.11.1920թ.) կատարման համար անվերապահ, պարտադիր, իրավաբանական տեսանկյունից անբեկանելի և իրավական հետևանքների առումով անժամանցելի փաստաթուղթ է:

Քանի որ Իրավարար վճիռը կայացվել է երկու փաստաթղթերի՝ այն է՝ Դաշնակից ուժերի անունից հանդես եկող Գերագույն խորհրդի (Բրիտանական կայսրություն, Ֆրանսիա և Իտալիա)՝ 26.04.1920 թվակիր իրավարարության հայցադիմումի (compromis) և Սևրի դաշնագրի մեջ 89-րդ հոդվածի տեսքով ներառված իրավարարության հայցադիմումի հիման վրա, ուստի Իրավարար վճիռը նշյալ երկու փաստաթղթերի կողմ հանդիսացող երկրների և նրանց իրավահաջորդ պետությունների համար անսակարկ իրավական

պարտավորություն է և անխուսափելի քաղաքական հանձնառություն: Ըստ այսմ.

- Քանի որ Բրիտանական կայսրության վարչապետը, իր համաձայնությունը տալով Իրավարար վճռի՝ 26.04.1920 թվակիր հայցադիմումին, հանդես էր գալիս այդ ժամանակ Բրիտանական կայսրությանը մաս հանդիսացող կամ նրա քաղաքական ենթակայության տակ գտնվող բոլոր երկրների անունից, ինչպես նաև նկատի ունենալով, որ իրավահաջորդ երկիրը շարունակում է կրել տարածքի միջազգային հարաբերությունների պատասխանատվությունը,[1] ուստի ՀՀ և Թուրքիայի սահմանը որոշող Իրավարար վճիռը (22.11.1920թ.) կատարման համար պարտադիր իրավական փաստաթուղթ է (legally binding document) ներկայիս Միացյալ Թագավորության և Բրիտանական կայսրության իրավահաջորդ բոլոր երկրների համար: (Այս երկրների ցանկը տե՛ս՝ հավելված I, սյունակ 3):
- Քանի որ Ֆրանսիայի Հանրապետության վարչապետը, իր համաձայնությունը տալով Իրավարար վճռի՝ 26.04.1920 թվակիր հայցադիմումին, հանդես էր գալիս այդ ժամանակ Ֆրանսիայի երրորդ հանրապետությանը մաս հանդիսացող կամ նրա քաղաքական ենթակայության տակ գտնվող բոլոր երկրների անունից, ինչպես նաև նկատի ունենալով, որ իրավահաջորդ երկիրը շարունակում է կրել տարածքի միջազգային հարաբերությունների պատասխանատվությունը, ուստի ՀՀ և Թուրքիայի սահմանը որոշող Իրավարար վճիռը (22.11.1920թ.) կատարման համար պարտադիր իրավական փաստաթուղթ է Ֆրանսիայի Հանրապետության և Ֆրանսիայի 3-րդ հանրապետության իրավահաջորդ բոլոր երկրների համար (հավելված I, սյունակ 4):
- Քանի որ Դաշնակից ուժերի (Անտանտ) Գերագույն խորհուրդը՝ Մեծ եռյակը, լիազորված էր հանդես գալու և հանդես էր գալիս բոլոր դաշնակից ուժերի անունից, ուստի ՀՀ և Թուրքիայի սահմանը որոշող Իրավարար վճիռը (22.11.1920թ.), կատարված նաև Իրավարար վճռի 26.04.1920 թվակիր հայցադիմումի հիման վրա, հանդիսանում է կատարման համար պարտադիր իրավական փաստաթուղթ Դաշնակից ուժերի և նրանց իրավահաջորդ բոլոր երկրների համար (հավելված I, սյունակ 5):
- Քանի որ ՀՀ և Թուրքիայի սահմանը որոշող Իրավարար վճիռը (22.11.1920թ.) կատարվել է նաև Սևրի դաշնագրի (10.08.1920թ.)

մեջ 89-րդ հոդվածի տեսքով ներառված իրավարարության հայցադիմումի հիման վրա, ուստի Իրավարար վճիռը կատարման համար պարտադիր իրավական փաստաթուղթ է Սևրի դաշնագիրը ստորագրած բոլոր երկրների և նրանց իրավահաջորդ պետությունների համար (հավելված I, սյունակ 6):

- Քանի որ Կենտրոնական ուժերից (Central Powers) յուրաքանչյուրը՝ Գերմանիան, Ավստրիան, Հունգարիան և Բուլղարիան, իրենց կնքած խաղաղության պայմանագրերի մեջ կանխավ պարտավորվել էին ճանաչել *«բոլոր այն պայմանագրերի և համաձայնությունների լիազորությունները, որոնք ուժի մեջ կմտնեն ապագայում … և ճանաչել դրանցով որոշվող սահմանները»*, ապա ՀՀ և Թուրքիայի սահմանը որոշող Իրավարար վճիռը (22.11.1920թ.) կատարման համար պարտադիր իրավական փաստաթուղթ է նաև բոլոր վերոնշյալ երկրների համար (հավելված I, սյունակ 7):

***Ամփոփում***

– Նկատի ունենալով, որ ներկա Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության սահմանը հստակորեն և հանգամանալից նկարագրված ու ամրագրված է ԱՄՆ նախագահ Վուդրո Վիլսոնի՝ 22.11.1920 թվակիր Իրավարար վճռի մեջ:

– Ընդունելով, որ թեև հայ ժողովրդի իրավունքները պատմականորեն հաստատված են Հայկական բարձրավանդակի և նրա հարակից տարածքների մի մասի վրա, այսուհանդերձ, ներկայումս ՀՀ ինքնիշխանությունն ու տիտղոսը անբեկանելիորեն ճանաչված են և իրավականորեն սահմանափակվում եմ միայն նախկին Օսմանյան կայսրության Վանի, Բիթլիսի, Էրզրումի և Տրապիզոնի նահանգների մի մասի վրա:

– Հաշվի առնելով, որ պետությունները, ուղղակիորեն կամ անուղղակիորեն իրենց մասնակցությունը բերելով իրավարար վճռի հայցադիմումին, դրանով իսկ նախապես տվել են իրենց անվերապահ համաձայնությունը՝ կայացվելիք ցանկացած վճիռ ընդունել որպես պարտադիր, ուստի.

**ԱՄՆ նախագահ Վիլսոնի՝ Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի սահմանը որոշող Իրավարար վճիռը (22.11.1920թ.) կատարման համար պարտադիր փաստաթուղթ է ներկայումս ՄԱԿ-ի 192 անդամ պետություններից 142-ի, այդ թվում ՄԱԿ-ի**

**Անվտանգության խորհրդի մշտական 5 անդամներից 4-ի համար՝ ԱՄՆ, Ֆրանսիա, Միացյալ Թագավորություն և Չինաստան:**

Այսպիսով, սա **<u>աննախադեպ</u>** երևույթ է միջազգային հարաբերությունների և միջազգային իրավունքի մեջ. չկա մի որևէ այլ պետական սահման, որը խարսխված լինի նման իրավական ամուր հիմքի վրա, որքան Հայաստանի Հանրապետության և Թուրքիայի Հանրապետության *de jure* սահմանը:

***բ. Հայկական հարցի նյութական բաղադրիչը.*** Ի սկզբանե պետք է հստակ լինի, որ նյութական հատուցումը որևէ կապ չունի *«արյան գնի»* հետ: Նյութական հատուցումն առաջին հերթին պետք է ընդգրկի հայության և ՀՀ կրած ուղղակի նյութական կորուստները, որոնք զանազան հաշվարկներով և ներկա փոխարժեքային դրսևորմամբ կազմում են 40-100 մլրդ ԱՄՆ դոլար:

Քանի որ հատուցման ընդհանուր սկզբունքն առնվազն նախնական վիճակի վերականգնումն է, ուստի հատուցումը պետք է նախատեսի հայության ամենացավագին կորստի՝ մարդկային կորուստների վերականգնման ծրագիր: Թուրքական իշխանությունները, միջազգային հանրության և կառույցների վերահսկողության ներքո, պետք է ստեղծեն հատուկ հիմնադրամ, որն, անկախ քաղաքացիությունից, կխրախուսի հայերի բազմազավակությունը և նյութական զգալի աջակցություն կցուցաբերի Հայոց ցեղասպանությունը վերապրածների ժառանգների բազմազավակ ընտանիքներին:

Նյութական հատուցումը պետք է ընդգրկի ԹՀ տարածքում առկա հայկական ժառանգության՝ թուրքական իշխանությունների կողմից միտումնավոր ոչնչացված կամ վնասված հայկական հուշարձանների և այլ ժառանգության վերականգնման ծախսերը: Թուրքական իշխանությունները օրինական տիրոջը՝ հայ ժողովրդին, պետք է վերադարձնեն թանգարաններում, արխիվներում և այլ, այդ թվում նաև մասնավոր հավաքածուներում պահվող հայ ժողովրդի ժառանգությունը հանդիսացող արվեստի նմուշները, առարկաներն ու նյութերը:

Առանձին քննարկման առարկա պետք է դառնան.

- Օսմանյան կայսրությանը պատկանող կամ նրա տարածքում գործած բանկերում՝ հայերի ի պահ տված գումարների հարցը;
- հայերից բռնագրավված ոսկու, այլ թանկարժեք մետաղների ու թանկարժեք քարերի հարցը;
- հայերի կյանքի, առողջության և գույքի ապահովագրական գումարների հարցը;

– թուրքական պետության և անհատ թուրքերի կողմից հայ համայնքին և անհատ հայերին պատկանած անշարժ գույքի (տներ, դպրոցներ, եկեղեցիներ և այլն) և հողամասերի անօրինական գործածության (1920թ. նոյեմբերից առ այսօր) վարձավճարների հատուցման հարցը;
– Օսմանյան կայսրության հայազգի քաղաքացիական և զինվորական անձանց ապօրինի աշխատանքի դիմաց չվճարված գումարների հարցը;
– նյութական կորուստների այլ դրսևորումները:

Մասնավոր քննության առարկա պետք է դառնա.

- Գերմանիայի՝ որպես Օսմանյան կայսրության կառավարման մեջ ներգրավված, հետևաբար և հանցակից երկրի,
- Ֆրանսիայի՝ որպես Կիլիկիայի մանդատը ստանձնած, սակայն միջազգային պարտավորությունը չկատարած, ինչպես նաև ներպետական օրենսդրության և միջազգային իրավունքի խախտումով ընթացող անօրինական շարժմանը (քեմալականներին) ռազմական օգնություն ցուցաբերած երկրի,
- Իտալիայի՝ որպես ներպետական օրենսդրության և միջազգային իրավունքի խախտումով ընթացող անօրինական շարժմանը (քեմալականներին) ռազմական օգնություն ցուցաբերած երկրի,
- Ռուսաստանի՝ որպես ներպետական օրենսդրության և միջազգային իրավունքի խախտումով ընթացող անօրինական (քեմալականների) շարժումը հրահրած, նրան լայնորեն աջակցած ու անմիջականորեն մասնակցած և տվյալ շարժմանը ռազմական օգնություն ցուցաբերած երկրի և
- այլ երկրների անօրինական գործողությունների պատճառով հայ ժողովրդի կրած վնասների հատուցման հարցը այդ երկրների կողմից:

*Ամփոփում.* ***Հայաստանի Հանրապետությունը և հայ ժողովուրդը պետք է ամբողջական հատուցում ստանան իրենց կրած բազմաբնույթ նյութական կորուստների համար, որպեսզի վերականգնեն կորուստներին նախորդած վիճակը, ինչպես նաև կայացնեն բնականոն զարգացման պարագայում ստեղծվելիք նյութական իրավիճակը:***

***գ. <u>Հայկական հարցի բարոյական բաղադրիչը</u>.*** Բարոյական հատուցումը պետք է ընդգրկի ոչ միայն ԹՀ կողմից Հայոց ցեղասպանության ուղղակի ճանաչումն ու աներկբա դատապարտումը, այլև, որ

ավելի կարևոր է, պետք է խորանա հաշտեցման ծրագրի իրականացմամբ: ԹՀ իշխանությունները թուրք հասարակության համար պետք է իրականացնեն պատմական իրականությունը բացահայտող քարոզչական և ուսումնակրթական համապարփակ բազմափուլ ծրագրեր:

**8. <u>Հայկական հարցի լուծման ձևախեղման վտանգը</u>**

Վերջին 50 տարում Հայկական հարցի լուծումն ընթացել է Հայոց ցեղասպանությունն ընդունել տալու ճանապարհով, ինչը հիմնականում պայմանավորված է եղել հայոց պետականազուրկ վիճակով և գոնե որոշակի հաջողություններ գրանցելու ձգտումով: Եթե նման քաղաքականությունը որոշակի վերապահումով կարելի է արդարացնել այն ժամանակների և հնարավորությունների համար, ապա 1991թ. հայոց պետականության վերահաստատումից հետո նման քաղաքական հիմնուղին ժամանակավրեպ է և անարդյունավետ: Նմանապես երբ Հայոց ցեղասպանության միջազգային ճանաչման դրույթը սոսկ ընդգրկվում է ՀՀ արտաքին քաղաքականության գերակայությունների մեջ առանց ՀՀ իրավունքների վերականգնման և Օսմանյան կայսրության իրավահաջորդ ԹՀ կողմից տարածքային, նյութական և բարոյական հատուցման զուգորդման, այդպիսի քաղաքականությունն անպտուղ է և մինչևիսկ վտանգավոր: Հարցի նման առաջադրումը ստեղծում է հարցի հնարավոր լուծման պատրանքային վիճակ. այն կլանում է հսկայական մարդկային և նյութական միջոցներ և փոշիացնում է բուն նպատակին հասնելու քաղաքական կամքը: Ներկա փուլում Սփյուռքի քաղաքական բոլոր կառույցների համար հույժ կարևոր է վերաձևակերպել առաջնահերթությունները, վերասահմանել թիրախային նպատակները և, համապատասխանաբար, վերաբաշխել մարդկային ու նյութական միջոցները: Հայկական հարցի անգամ մասնակի լուծումը, այն է՝ Հայոց ցեղասպանության ճանաչման ընդլայնումը կամ Արցախի հարցի մինչևիսկ կատարելապես հայանպաստ ելքը, էապես չեն փոխելու ՀՀ աշխարհաքաղաքական վիճակը: Հայաստանը մնալու է նույնքան խոցելի և շրջափակելի, գոյատևման և զարգացման համար խիստ սահմանափակ հնարավորություններով: Հետևաբար, ՀՀ համար կենսականորեն անհրաժեշտ է, որ երկրի իշխանությունը խորապես գիտակցի պետականությանը սպառնացող մարտահրավերները, դրսևորի ինքնախաբեկանքի վիհից դուրս գալու քաղաքական կամք և, համապատասխանաբար, իրականացնի այդ վտանգները չեզոքացնելու համար Հայկական հարցի լուծմանը նպատակամղված լուրջ քաղաքականություն:

9. <u>Հայկական հարցի լուծման դրսևորման ձևերը</u>

Հայկական հարցի լուծումը հնարավոր է, և այն կարող է ունենալ դրսևորման բազմազան ձևեր: Այսուհանդերձ, Հայկական հարցի լուծումը հնարավոր կլինի, եթե այն խարսխված լինի իրատեսության վրա, այսինքն՝ հաշվի առնի ներկայիս ժողովրդագրական, ռազմական, քաղաքական և տնտեսական իրողությունները: Միևնույն ժամանակ, որպեսզի Հայկական հարցի լուծումն իրագործելի լինի, այն պիտի գործնականում նպաստի ողջ տարածաշրջանում կայուն խաղաղության հաստատմանը, տնտեսության բազմակողմանի զարգացմանը, գործակցական մթնոլորտի ձևավորմանը, ինչպես նաև ծառայի համաշխարհային ուժային կենտրոնների որոշակի շահերի կենսագործմանն ու նրանց՝ տարածաշրջանի հարցերի մեջ ավելի լայն ներգրավմանը:

Տարակույս չկա, որ 1920թ. նոյեմբերի 22-ից Վիլսոնի Իրավարար վճռով ՀՀ իրավատիրությանն անցած տարածքները (նախկին Օսմանյան կայսրության Վանի, Բիթլիսի, Էրզրումի և Տրապիզոնի վիլայեթների զգալի մասը) առ այսօր իրավականորեն ՀՀ մաս են կազմում: Սակայն կարծել, թե ԹՀ-ն դրանք կամավոր կամ միայն միջազգային օրենքների ճնշման տակ՝ առանց ռազմական ճնշման կվերադարձնի իրավատիրոջը, իրատեսական չէ: Ուստի, անհրաժեշտ է գտնել ՀՀ և ԹՀ համար երկուստեք ընդունելի, Իրավարար վճռին մաս կազմած երկրների հավանությանն արժանացած, համաշխարհային ուժային կենտրոնների շահերը հաշվի առնող և միջազգային իրավունքով ամրագրելի ձև: Ընդսմին, այդ ձևը պիտի լինի այնպիսին, որ փարատի հայկական կողմի անվտանգության մտահոգությունները, հնարավորություն ընձեռի ՀՀ տնտեսությանը հարաճուն և շարունակական զարգանալու համար, ինչպես նաև երաշխավորի հայկական մշակութային արժեքների պահպանումը: Միևնույն ժամանակ, հարցի լուծումը էականորեն չպիտի ոտնահարի ԹՀ շահերը և թուրքական կողմին պետք է հնարավորություն տա զգալու և մեկընդմիշտ հասկանալու, որ առաջարկվող լուծումը երկուստեք արժանապատիվ ելք է ստեղծված իրավիճակից:

**Ըստ այդմ, Հայկական հարցի հնարավոր լուծում է խնդրո առարկա տարածքին որոշակի նոր կարգավիճակ շնորհելը տարածքային վարձակալության ճանապարհով. այդ դեպքում Հայաստանի Հանրապետության *de jure* իրավատիրությունը կհամադրվի Թուրքիայի Հանրապետության *de facto* տնօրինման հետ:**

Այսինքն՝

I. Թուրքիայի Հանրապետությունը Հայաստանի Հանրապետությունից միջազգային երաշխիքներ պարունակող երկկողմ պայմանագրի հիման վրա և ողջամիտ վարձավճարով[2] վարձակալում է *«Վիլսոնյան Հայաստանը»*: Նշյալ պայմանագիրը և կից համաձայնագրերը ամրագրում են կողմերի իրավունքներն ու պարտականությունները, ինչպես նաև միջազգային կառույցների և շահագրգիռ երկրների մասնակցության ձևն ու ընդգրկվածության ծավալը խնդրո առարկա տարածքում: Վարձավճարի չափը, վճարման ձևն ու պարբերականությունը որոշվում է համապատասխան համաձայնագրով:

II. Թուրքիայի Հանրապետության և Հայաստանի Հանրապետության քաղաքացիներն, անկախ բնակության վայրից, պահպանում են իրենց քաղաքացիությունը, օգտվում են այդ քաղաքացիության ընձեռած բոլոր իրավունքներից, կատարում են իրենց քաղաքացիական պարտականությունները: Երկու երկրի բոլոր քաղաքացիները ստանում են տարածքում ազատ տեղաշարժի, բեռնափոխադրման, բնակության և տնտեսական գործունեություն ծավալելու ազատ ու անկաշկանդ իրավունք: Տարածքում գործունեություն ծավալած ընկերությունները և անձինք, բացի տեղական հարկերից ու վճարներից, համապատասխան օրենսդրությամբ նախատեսված չափով հարկեր են վճարում՝ ըստ գրանցման վայրի և քաղաքացիության:

III. Երրորդ երկրների տարանցիկ փոխադրումներից (ներառյալ նավթամուղներից և գազամուղներից) ստացած եկամուտները գնում են տեղական ենթակառույցների (ճանապարհներ, երկաթուղիներ, ընդհանուր օգտագործման հանրային տարածքներ) բարեկարգմանը և զարգացմանը:

IV. Տարածքն ապառազմականացվում է, այսինքն՝ տարածքից դուրս են բերվում «Եվրոպայում սովորական սպառազինությունների մասին» պայմանագրով (Treaty on Conventional Armed Forces in Europe, CFE, 1990) առանձնանշած հարձակողական բնույթի 5 զինատեսակները:[3] Տարածքի վերահսկողությունը, անհրաժեշտության դեպքում՝ պաշտպանությունը, իրականացնում են համապատասխան լիազորություններով օժտված և ՄԱԿ-ի անվտանգության հովանու ներքո գործող միջազգային խաղաղապահ ուժերը: Համայնքներում կարգուկանոնն ու անվտան-

գությունն ապահովում են համայնքային ոստիկանությունը, անհրաժեշտության դեպքում՝ ներքին զորքերը: Տարածքում տեղակայվում են միջազգային ռազմական և քաղաքացիական դիտորդական ու խորհրդատվական առաքելություններ:

V. Առանձին քննարկման հարց պիտի դառնա և լուծման դրսևորում պիտի ունենա նախկին Ռուսական Կայսրության և Հայաստանի Հանրապետության (1878-1918/20թթ.) Կարսի մարզի, Բաթումի մարզի հարավային հատվածի և Սուրմալուի գավառի տարածքների կարգավիճակի հարցը: Ներկայումս այդ տարածքները կազմում են ԹՀ Կարսի (9.587 քկմ; 130 հազ. բնակիչ), Արդահանի (5.661 քկմ; 120 հազ. բնակիչ), Արդվինի (7.436 քկմ; 192 հազ. բնակիչ) և Իգդիրի (3.587 քկմ; 180 հազ. բնակիչ) նահանգները: Ընդամենը՝ 26.241 քկմ (3,4%) և 779 հազ. բնակիչ (1,1%) (մանրամասները տե՛ս՝ հավելված II): Այս տարածքների վրա, ի տարբերություն Վիլսոնյան Հայաստանի, անմիջականորեն պիտի հաստատվի հայաստանյան ուղղակի ինքնիշխանություն:

## 10. <u>Հայկական հարցի լուծման գործընթացը որպես Հայաստանի Հանրապետության հզորացման միջոց և նախադրյալ</u>

ՀՀ անկախ ու արժանապատիվ գոյության համար կենսական նշանակություն ունի ոչ միայն Հայկական հարցի վերջնական կամ ընդունելի լուծումը, այլև լուծման գործընթացն ինքնին վճռորոշ նշանակություն ունի հայոց պետականության հզորացման, հետևաբար նաև նրա չընդմիջվող գոյության համար:

Քաղաքագիտությունը վաղուց է մշակել պետության հզորության հաշվարկի բանաձևը: Ամերիկյան քաղաքագիտության մեջ այն հայտնի է Յաբլոնսկու (Jablonsky) բանաձև անունով.[4]

$$\mathbf{P_p = (C+E+M) \times (S+W)}$$

Այս բանաձևում. $P_p$ (Perceived power) հաշվարկվող հզորությունն է, C (Critical mass: population + territory)՝ որոշիչ զանգվածը. բնակչությունը + տարածքը, E (Economic capability)՝ տնտեսական կարողությունը, M (Military capability)՝ ռազմական կարողությունը, S (Strategic purpose)՝ հեռագնա (ստրատեգիական) նպատակը, W (Will to pursue national strategy)՝ ազգային հեռագնա (ստրատեգիական) նպատակը հետապնդելու կամքը:

Բանաձևից ակնհայտ է, որ պետության հզորությունը որքան որ պայմանավորված է հեռագնա նպատակի առկայությամբ և դրան

հասնելու պետական նպատակամղվածությամբ, նույնքան էլ բնակչությամբ, տարածքով, տնտեսական և ռազմական հզորությամբ:

Պետության հզորությունը որոշակի ցուցանիշների սոսկական հանրագումար չէ, այլ շոշափելի, նյութական ցուցանիշների բազմապատկումն է՝ նպատակի և նպատակամղվածության գումարի ցուցանիշով: Անկախ տարածքի, բնակչության, տնտեսական և ռազմական հզորությունից, եթե պետությունը չունի նպատակ, հետևաբար և դրան հասնելու կամք, պետության հզորությունը ոչինչ է, քանի որ հայտնի է. ցանկացած թիվ զրոյով բազմապատկելիս արդյունքում զրո է ստացվում:

Այսօր Արցախի հարցը մի շարք առարկայական և ոչ առարկայական պատճառներով համազգային նպատակ չի հանդիսանում:

Հայոց ցեղասպանությունը ճանաչել տալու քաղաքական գործընթացն, ըստ էության, չի կարող լինել համազգային, առավել ևս պետական նպատակ, քանի որ բացակայում է նպատակի հստակ ձևակերպումն ու որևէ էական արդյունքի հասնելու հնարավորությունը: Հետևաբար, ոչ միայն Հայկական հարցի լուծումն է հայոց պետականության հզորացման եզակի հնարավորությունը և հայ ժողովրդի հարատևման միակ ուղին, այլև Հայկական հարցը լուծելու գործընթացն անգամ, այսինքն՝ նման նպատակի առկայությունն ու դրան հասնելու քաղաքական կամքը հայոց պետականության հզորության ամրապնդման անփոխարինելի գործոն է, քանզի ***Հայրենիքը, որ նպատակ չունի, սոսկ բնակավայր է:***

**<u>Եզրակացություն</u>**

**Վերլուծելով վերոշարադրյալը, ինչպես նաև նկատի ունենալով Հայկական հարցի լուծմանը վերաբերող վերոհիշյալ հիմնադրույթները՝ կարելի է անել հետևյալ եզրակացությունը.**

- **Հայկական հարցի լուծումն իրատեսական է և իրագործելի:**
- **Հայկական հարցի լուծումն այլընտրանք չունի: Հայկական հարցը չլուծելու դեպքում Հայաստանի Հանրապետությունը մշտապես կախված է լինելու հարևան երկրների իրավիճակից կամ բարեհաճությունից:**
- **Հայկական հարցի լուծումը հայոց պետականության հզորացման եզակի հնարավորությունն է և հայ ժողովրդի հարատևման միակ ուղին:**

*Հղումներ և ծանոթագրություն*

1. Vienna Convention on Succession of States in respect of Treaties 1978, Article 2, (b).
2. Ողջամիտ կարելի է համարել Թուրքիայի Հանրապետության ՀՆԱ-ի 1%-ին համարժեք վճարը՝ 8.6 մլրդ ԱՄՆ դոլար, քանի որ այդ տարածքը կազմում է Թուրքիայի կողմից վերահսկվող տարածքի գրեթե 13%-ը (ավելի քան 100 հազ. քկմ) և այնտեղ ապրում է Թուրքիայի բնակչության ավելի քան 8%-ը (մոտավորապես 5.6 մլն մարդ): (Վերոհիշյալի մեջ չեն հաշվարկված նախկին Ռուսական Կայսրության և Հայաստանի Հանրապետության (1878-1918/20թթ.) Կարսի մարզի, Բաթումի մարզի հարավային հատվածի և Սուրմալուի գավառի տարածքները: Մանրամասների համար տե՛ս սույն հայեցակարգի 9-րդ կետի V ենթակետը:)
3. Այդ զինատեսակներն են՝ տանկերը, զրահամեքենաները, հրանոթները, մարտական ինքնաթիռներն ու հարձակողական ուղղաթիռները:
4. Jablonsky D. National Power. Parameters 1997;27(1):34-54.

*Հոկտեմբեր 2008թ. – մարտ 2009թ., Երևան–Օտտավա*

## Երկրների ցանկ, որոնք գտնվում են միջազգային պարտավորության ներքո, քանի որ կողմ են հանդիսացել հայ-թուրքական սահմանին վերաբերող իրավարարությանը

Հաշվարկը կատարվել է ըստ ՄԱԿ անդամության ցուցակի:
Մգեցված հենքով երկրները չեն գտնվում պարտավորության ներքո:

| № | **Արդի անվանումը** (հաջորդականությունն ըստ ՄԱԿ-ի անգլերեն ցանկի) | ըստ Դաշնակից ուժերի Գերագույն խորհրդի Սան Ռեմոյի հայցադիմումի (*compromis*) (26 ապրիլի, 1920թ.) | | | ըստ Սևրի պայմանագրի մեջ ներառված (հ-ծ # 89) իրավարարության հայցադիմումի (compromis) | **Ծանոթագրություն** |
|---|---|---|---|---|---|---|
| | | Մաս են կազմել Բրիտանական կայսրությանը *կամ* գտնվել են նրա քաղաքական ենթակայության ներքո | Մաս են կազմել Ֆրանսիական (III) Հանրապետությանը կամ գտնվել են նրա քաղաքական ենթակայության ներքո | Մաս են կազմել Դաշնակից ուժերին – 6 | | |
| **I** | **II** | **III** | **IV** | **V** | **VI** | **VII** |
| 1. | Աֆղանստան | | | | | |
| 2. | Ալբանիա | | | **+** | | |
| 3. | Ալժիր | | **+** | | | |
| 4. | Անդորրա | | | **+** | | |
| 5. | Անգոլա | | | | | որպես Պորտուգալիայի անդրծովյան տարածք |
| 6. | Անտիգուա և Բարբուդա | **+** | | | | |
| 7. | Արգենտինա | | | | | |
| 8. | Հայաստան | | | **+** | **+** | |
| 9. | Ավստրալիա | **+** | | **+** | **+** | |
| 10. | Ավստրիա | | | | | ըստ Սեն Ժերմենի պայմանագրի, հ-ծ 87, ¢ 2 |
| 11. | Ադրբեջան | | | | | |
| 12. | Բահամներ | **+** | | | | |
| 13. | Բահրեյն | **+** | | | | որպես Բրիտանիայի պրոտեկտորատ |
| 14. | Բանգլադեշ | **+** | | **+** | | |
| 15. | Բարբադոս | | | | **+** | |
| 16. | Բելառուս | | | | | |
| 17. | Բելգիա | | | **+** | **+** | |
| 18. | Բելիզ | **+** | | | | |

